Gregory, Narekatsi, Saint 951-1003
Srboyn Horn Meroy ...

# ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

# ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՏԵԱՆ ՃԱՌԻՑ

Յորում Պատմութիւն սրբոյ Խաչին Ապարանից, ներբողք ՚ի սուրբ Խաչն ամենակալ, ՚ի սուրբ Աստուածածինն, ՚ի սուրբ Առաքեալսն և ՚ի սուրբն Յակոբ Հայրապետ Մծբնայ, հանդերձ Գովեստիւք Հոգւոյն սրբոյ, և Եկեղեցւոյ, և Խաչին.

՚Ի հաւաստագոյն ընտրութիւն օրինակացն, և ըստ [illegible] սահմանել [illegible]կութեան, ըստ այնմ նախկին աշխատութեան հաստատեալ կանոնաց.

Հ. ԳԱԲՐԻԷԼ ԱՒԵՏԻՔԵԱՆ
ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏ
՚Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ

Հրամանաւ Արհիապատիւ Տն. Սուքիասայ Սոմալեան
Արքեպիսկոպոսի և Ընդհանրական Աբբայի
Մխիթարեան Միաբանութեան.




՚Ի ՎԵՆԵՏԻԿ
՚Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1827. ՌՄՀԶ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Զառ 'ի վաղ ժամանակաց զգովելի հաճառումն բանաւո-րաց յանձն առեալ էր ածել 'ի կատարումն, զհետ Նարեկացւոյ մատենին ՍԲյ վարդապետին մերոյ Գրիգորի՝ 'ի շար արկանել հանդերձ և զնորուն ընդարձակ Ճառս ընծայեալս 'ի գովեստ ՍԲյ Խաչին և Սրբուհւոյ Ածածնին, այլովքն հանդերձ որ 'ի մէջ Առաքելոց, և 'ի մեծն Յակոբ Մծբնայ հայրապետ, զոյգ ընդ Գանձուցն ուղերձատորաց 'ի պատուեց ատեանս նորա: Այս՝ երկրորդ մասն կարգեալ Թուեցի առ նախընծայ մասն Նարեկացւոյն. յորում թէ էր Նարեկացւոյ հոգեւորն պատուեցաւ զմեր Գրիգոր երանելի, յերկրորդումս մեծարեալ ձանեցի որդարն Հռետոր Ճարտարաբան՝ առաւել քան յառաջնումն խորախօս. որով և բազմապատկելոյ յամէր ևս կարօտեալ, և 'ի նոյն մեղ կանխագոյն ևս արդեօք քաւեալի, եթէ առ չեռն զհատատարեմ և զուղղակէր օրինակս Ճառուցն դէպրն էր ունել՝ յընդարութէ վրիպանաց և եկամուտ յաւելուածոց: Ուղղակեր աւելն օրինակս, որք յանկցայ և 'ի չգիտուն գրչաց չեցեն աղաւաղեալ յանգայութէ և կամ յեղծումն սասցուածոցն: Այս առաւել հաստատութեան հայցեալ, յորս չեռն օտարի կամ օտարաց չեցէ 'ի ներքս արկեալ գողաբար զեւրն ծնունդ մտաց, եթէ յորդեգիրս զայն տալով բնիկ մատենագրին, զնորին յացեալ անուան ծառանգեալ և զյարգանս:

Այս ասեմ քանզի յաճախեալ առ ոմանս յերբեմն ժամանակի առ անգիտութէ դարուց, երանի թէ պահանեալ ընթեալ էր եւպա, և ոչ 'ի մօտաւոր 'ի գիտնական դարս չգեալ զեւրն ժառանգացուցին հնգուածս: Այլ ոմանց դեսա, և դեսանք ցարդ՝ մասն մեալ 'ի գեղեցիկ մատենագրութեն առաջնոց, ո՛չ միայն ուր առանձնակի գրուածս ոք կամիցի էր վաճն յերկերեւ, այլ ուր պղակէր արջանացուցանէ յարեան հատուածոց՝ հանեալ խառնանց զառաջնոց ուրուք մատենագրի ընչութէ. միով մասամբ՝ նախանձ բարի յանձին երևեցուցեալ զհայրենականացն երկասիրութեան դալ 'ի վայելումն որդւոցն աշակերտելոց, բայց այլով՝ գործ զղրմեցանի կատարելով 'ի բարուոյն երկրագործութե. անհաւատարիմ առ բուն մատենագիրն, դառաձան առ վերծանողս, առ երկասիրողս անդարկաս. եղեալ 'ի մասն թէ մատենագիրն չէմանոյ՝ զի չէ 'ի մէջ, և ընթերցօղ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ականաւոր անցս սբյ Խաչին Ապարանից՝ ընդ անգէտ դիպուածս մարդկայինս լինէր արդարև դասել՝ և իբր ընդ չե-ղեալս, թէ ոչ բարեհնախանձն արթնութիւն Ստեփանոսի մոկաց դիտապետի շարժէր յորդորական նամակաւ զմերոյ սբյս Գրի-գորի զթռչականն գրիչ՝ արձանագրել զգործեցեալսն յիշատակ անկորուստ։ Յանձն առ զարժանահայց խնդրելին արագա-լուրն այն և իմաստախոհ դպիր արքայութեան, մտադիւր յա-ւելուածով ևս տարեալ 'ի գլուխ, ոչ զպատմականն եւեթ ճառ-արտադրելով, այլև զներբողականսն առասացուխս 'ի սբ Խաչն ածընկալ և 'ի սբ կոյս Ածամայրն. զոր օրինակ խոստանայ յա-ւարտ Պատմութեանն ասելով. * Զկնի գծագրութեան զումարա-հօլով պատմաբանութեանս խաւանել դուն ինչ դրութիւս համա-ռօտագիր դրուատից, նախ՝ նմին իսկ կենդանարարն տնագրու-թեան ածեան Խաչին, և զկնի սորին՝ սբյ Տիրուհւոյն և Ածած-նին ‖. զորս և կատարեալ ասէ 'ի Յիշատակագիր նամակին առ նա ինքն Ստեփանոս։

Այլ քանզի բազմադրուագ յօրինուածոցն աղագաւ մթայլ ունի պատմութիւն Նարեկեան, անկաւոր համարիմք 'ի կանխա-բանիս մեկն տեսութ զհանդիպումն իրացդ համառօտել։ Դէպ եղև յաւուրս տիեզերակալութ երկոցունց եղբարցն Վասլի և Կոստանդեայ՝ առն միում մակացւոյ 'ի տանէ ազատաց դիմել զինուորել 'ի դրան ինքնակալացն։ Սա եղբօրորդի լեալ սրբա-կրօն և նշանագործ տն Դաւթի մոկաց եղելոյ դիտապետի, ունէր առ իւր մասն 'ի նշխարաց հողոյ տապանի Հօրեղբօրն երջանկի, իբր պահպանիչ և մխիթար յուրում օտարութ. յորմէ և նշանք բժշկութ առ բազումս ախտացելոցն գործէին 'ի Թագաւորական քաղաքին։ Իրազեկ եղեալ այնմ ինքնակա-լացն բարեպաշտից, և առաւել ևս պատուասիրեալ զմոկա-ցին իբր ազգային այնպիսում նշանագործ հովուի, 'ի վերայ ևս հասեալ տեղեկանային՝ թէ իւր իսկ քեռորդի Ստեփանոս անուն՝ անցեալ կայ յաթոռ դիտապետութեան փոխանակ եր-ջանկին Դաւթի. և կամէին մեծապարգև հանդերձանօք ըն-ծայաբեր լինել 'ի զարդ հանգստարանի նորա։ Այլ այրն հան-ճարեղ՝ փոխան երկրային նիւթոց պատուականաց՝ ընտրեաց հրամանաւ նոցունց իսկ ինքնակալաց հարցեալ գիտել՝ թէ զինչ ինչ 'ի հոգևորականաց ունել փափագիցեն իւրքն ազ-

դայինք. և սորին վասն նամականար զոք առաքեալ 'ի բուն դաւառն, ընկալաւ առ 'ի նոցանէ պատասխանի՝ մեծ և չառ ևս լինել, եթէ 'ի պարգևի շնորհեսցի նոցա մասն 'ի կենաց փայտէն։ Գովութբ̃ հաճեալ ինքնակալացն ընդ բարեպաշտութե̃ն խնդիր, յառաջամիտք ևս գտան յաւելուլ 'ի փայտն կենաց 'ի միում ոսկէձոյլ քառաթևամանի մասն 'ի Դենջակէն՝ որով տ̃րն սփածաւ, և 'ի Փշոցն և 'ի Սպնգանէն, 'ի Բևեռացն և 'ի Խանձարրոցն։ Զայն պարգև երկնաւոր ինքնին բարձեալ մեծարանօք այրն պայազատ՝ միջնորդն բարեայապարտ, զոր պատմութիւս ծանուցանէ պատուոյ անուամբն Աւթ՝ Մանգլատ կոչելով, և հասեալ 'ի բնագաւառն Մոկաց առ քեռորդի իւր Ստեփանոս, ամփոփեցին զգանձն տէրունի նախ առաջին մօտ 'ի հանգստարան Դաւթի երջանիկ դիտապետին, և ապա 'ի տաճար սբյ Կարապետին Յովհաննու, և անտի յաւուր մեծի Ուրբաթուն 'ի տաճար սրբուհւոյ Աճածնին. զորս նա ինքն Ստեփանոս նախակերտեալ բովանդակեաց մեծագործ շինուածովք։ Յայն բազմահանդէս փոխադրութե̃ն առաջիկայ գտան երեքին թագազարմ եղբարք արծրունիք՝ Սենեքերիմ, Գուրգէն և Աշոտ հանդերձ նախարարակոյտ ազատօք և անհամար ժողովրդովք։ Կատարեցաւ այս 'ի հայկականս թուաբերութե̃ն նլ̃ը (432) այն է ամ տ̃ն 983։

Այս քեզ աւասիկ մեկնօրէն պատկեր՝ համառօտիւ ընդարձակ զրուցելոցն 'ի Նարեկեան պատմութես. վորոյ զժամանակ թէ երբ արդեօք, կամ քանի ամաւ յետ իրացն գործելոյ խընդրեցաւ 'ի Ստեփանոսէ մոկացւոյ, և 'ի սբյ Նարեկացւոյն գրեցաւ, չունիմք սահմանել ճշգրտաբար։ Եւ առաւելագոյն ևս տարակուսանաց խնդիր է, արդեօք ճառս պատմական որպէս 'ի Նարեկացւոյն գրեցաւ՝ եկա՞ց մնա՞ց այնպէս անյաւելուած, թէ յետ այնր յայլոց ոմանց խառնեալ ինչ իցեն բանք ազգի ազգի։ Իրաւացի ապաքէն ամենայն ոք տեսանիցէ զերկբայութիւս, եթէ զոր միանգամ յայս խնդիր զհաւաստիսն ընտրեցեմք նախ, որով անհաւաստիքն ինքնին գայցեն 'ի յայտ։

Հաւաստի նախ առաջին այն է, զի հանդէս եկաւորութե̃ն սբյ Խաչին Ապարանից կատարեցաւ 'ի հայ թուականին նլ̃ը. որպէս պատմութիւն ինքնին զեկուցանէ։

Երկրորդ հաւաստի, զի Աղօթամատոյցն մատեան նորին սբյ Վարդապետի կատարեցաւ 'ի թուին նծա̃ կամ նծբ̃. ըստ որում Յիշատակարան նորա յայտ առնէ, այս է՝ յետ նախագրեալ անցիցն իբր քսանիւք ամօք։

Երրորդ հաւաստի, զի վաղ քան զԱղօթսն յօրինեալ իսկ էր Ներբող սբյ Աճածնին. որ և 'ի բանն Ձ. յաղօթսն առ նա յիշատակի. * Խառնեալ զբանն իմ նախնի մեծիդ ներբողի 'ի քոյդ պաղատանս ‖։ Եւ յայտ իսկ է, թէ զոյգ այնմ գրեցաւ նաև Պատմութիւն, և Գովեստ սբյ Խաչին։

Այլոցիկ հաւաստի գիտացելոց զհետ գայ աներկբայաբար, թէ Պատմագրութիւն և որ կից այնմ, գրեցաւ զկնի նլ̃ը թուա-

կանխեն, և յառաջ քան զնոսա։ Այլ մեզ հարցաքննելի, որ-չափ յառաջ արդեօք, և յորում տարակուսելի այսու՝ զի բա-զում ինչ զրուցաբանեալ տեսանեմ 'ի պատմութեանս յաղագս գործոց կայսերացն Վաղէի և Կոստանդեայ, որոց ժամանակ իրագործութեանն՝ ըստ գրելոյ Կեդրենոսի յոյն վիպասանի, և ըստ հայ պատմագրաց իսկ՝ գայ անկանի առ Թուականաւն նլե, կամ նլը, կամ նխը. նխթ, մանաւանդ այլ ևս դէպք ա-մանք կատարեալք 'ի նկն Թուականի. որով և Պատմագրու-թեան ժամանակ ոչ միայն սակաւ ամօք յառաջ քան զաղօթսն կարծիցի, այլ յետոյ ուրեմն քան զնոյնս։ Զայսցանէ համա-ռօտ ևեթ ակնարկութի տուեալ աստանօր, 'ի ծանօթութեցն կարգի հատուցուք զիւրաքանչիւր անցիցն զհամար։ Այլ 'ի մի բան գլխաւորեալ զպատճառս տարակուսանացն, որչափ ինչ շարագրեալ զրուցին 'ի պատմութեանս յաղագս ընդար-ձակութեան և յաղթողական տիրապետութեան Վաղէի կայ-սեր յարևելս և յարևմուտս, ճշմարտեալք տեսանին միայն 'ի նորա յետին ամս տէրութեանն, ուստի և ամօք բազմօք յետ գրութեան Նարեկեան Աղօթիցն.

Բայց քանզի յանընդունելեաց է այս, և ոչ զյայտնի ընդ-դիմութիւն մարթ է օրինաւոր պատասխանեօք 'ի բաց փարա-տել, հարկ ուրեմն է խոստովանել թէ յետ տարւոյ սբյ Նարեկա-ցւոյն զիւրն պատմաբանութի, ձեռն այլոյ ուրուք մխեալ իցէ յայն՝ յընդարձակել և 'ի զարդարել, յաւելեալ 'ի նոյն գլխ-տոյ գործեցեալսն. համարձակութի թերևս առեալ 'ի շնորհ-մանէ նորին իսկ Նարեկացւոյ 'ի յիշատակագիր նամակին. * Զթերին լրութեան և զպակասն ամբողջութեան շնորհել ‖։ Առ այսու, քանզի Նարեկացի ինքնին խոստովան լինի անտա-նօր, * Անընտել գոլ տեսութե բաղձալի վայրիցն և սբց խո-րանացն ‖, կարի դժուարին և անհաւանելի թուի թէ 'ի լսե-լոյ ևեթ տեղեկացեալ, կարողանայր այնչափ մանրամասն նկա-րագրել զվայրս և զշինուածս, և զազգի ազգի որոշմունս տա-ճարացն և հանդերձանաց նոցա։ Ահա և այս նշանակ գրչի օտարի։ Բե՛ր յաւել և զիրաւադատ զարմացումն բանագէտ քննողաց, որք 'ի հիւսուած պատմագրութեանս այսմ ուշ ե-դեալք, բազում ինչ 'ի յարմարումն բանիցն, յիմաստն, 'ի քերդողական կամ 'ի հռետորական շարագրութիւն ոչ վայել-չականս տեսանեն ընտրողական դատման սբյ Նարեկացւոյն։

Իսկ արդ՝ թէև ըստ հաւաստաբանութեանցս՝ նշմարեն 'ի պատմագրութեանս հետք օտար ձեռին միոյ ուրուք կամ ա-մանց, բայց բուն առաջին հաստուածոյն մատենագրող՝ նա ինքն Նարեկացի իրաւապէս համարելի է. և որպէս հաւանա-բար զհետ գայ ցայսվայր ասացելոցս, ոչ յետ բազում ամաց անցանելոյ իրացն. քանզի զԱծածնին գովեստ ներբողի՝ բան նախնի կոչէ յաղօթսն. յայտ արարեալ, թէ վաղու ևս քան զնծն Թուական յօրինեալ էր. և ոչ կարծել արժան է թէ Ստեփանոս բարեխնդիր դիտապետ՝ անագան ուրեմն յետ

փառանալոյ իւրացն յայց ներեալ իցէ արձանագրութեանն ։ Ապա հաւանիմք կնքել, թէ յետ սակաւ ամաց՝ իբր 'ի թուականին ՌՆԷ կամ ՌՆԸ գրեալ իցէ հարազատ պատմութիւն յարակցելովքն հանդերձ ։

Յառաջիկայ տպագրութեա յանդիման ունելով մեր զտպագրեալսն 'ի Կոստանդնուպօլիս, և 'ի բաց սրբելով յայնցանէ զվրիպակս գործարանի՝ որպէս զիարդ իմաստքն ցուցանէին, կալաք և զայլ գրչագիր գաղափար գտեալ 'ի կոստանդնուպօլիս, յորում կայր Պատմութիւն՝ գովեստիւ հանդերձ սրբոյ Խաչին, և սրբուհւոյ Ածածնին ։ Ըստ պատմական մասինն տանելի էր հաւատարմութի գաղափարին, բայց եւեթ ունելով զանազանութի, և քան զնախ տպագրեալն առաւել վստահելի, թէպէտ և 'ի տեղիս ուրեք պակասորդ ։ Բայց 'ի ներբողական ճառսն՝ եթէ սրբոյ Խաչին, և եթէ Ածածնին՝ այլափոխութի բազում յոյժ բանից և կարգի ասացուածոցն 'ի ներքս երևէր, յայտնապէս զօտարի ուրուք՝ և ոչ զնարեկացւոյն բերելով զկերպարան. որով ոչ վստահելի, քան թէ կշտամբանաց իրք և դատախազութի իմաստակին այնմ, որ յայն եղև ձեռներէց ։ Սորին վասն 'ի կարգի մերոց լուծմանցս և ծանօթութեանց՝ միայն 'ի պատմականին, և ոչ 'ի ներբողականսն յիշեցուցանեմք զտարբերութիս ինչ օրինակացն ։ Այլև 'ի պատմականսն չափ եւեթ յաւելումք տեղեկութիս ուր միանգամ իմաստքն խնդրեն ։ Քանզի 'ի վաստակս մտաց երանելւոյ մերս Նարեկացւոյ յանձն առեալ եմք լինել միջամուխ, իսկ առձայն օտարաց զհետս պնդել ոչ ախորժեմք ։

Սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի ասացեալ Ճառս, Յիշատա-կագրութիւն պատմաբանութիւն Ս. Ապարանից Նշանի Ս. Աստուածածնեան Խաչին : Որ 'ի վերուստ ամենահայեաց նախատեսեան անճառելոյն՝ 'ի սոսորին հողմանց կողից աշխարհի աշխարհաց յանկարծ՝ բերեալ հանգուցաւ 'ի սահմանս վայրեց գաւառին մերոյ, [1] 'ի շի-նուած բնակութեան ուխտին Սրբութեան, որ կոչի Ապա-րանք :



Ա. Ընդ աւուրս ժամանակաց [2] բազմավրդով սասանութեանց, որ 'ի կայս և 'ի կոյս կողմանցն յու-նաց հարազատութե արեան զարմին եսաւայ, և որ դւեցն մոլիցն արևու, որ յաւարտումն եւրոպէի՝ և 'ի ծագ գլխաւորութեան մասին ասիայ, յարեալ և յարմարեալ 'ի հիւսիսոյ լմբիախառն, և խիտ ընդ-ծիրանածաւալ ծովային ծոցոյն ասպարէս. ունելով զդարձ դիտելոյ դիմացն 'ի թեման. [3] որ ըստ ոմանց լեզուաց միջօրեայ կարդացեալ. որպէս ըստ եբրայա-կանին՝ հարաւ համբաւեալ. որ այժմ կոչի քուր-հալք, իբր թէ հալք և մարզիչք ըստ մերս դիտմանց՝ բազում գոյուեց պատուական նիւթոց : 'Ի սոյն [4] եր-կաքանչիւր քանակաւորոյս բազմածին լերանց հզօ-րաց և բարձրագունից՝ խիստ և հաստ հակառակու-թեց, որք կառուցան կազմեցան կարգեցան կանգնե-ցան կացին 'ի կիցս կայից խարսխաց բարձից տանողացն ոտից, իբր նախ քան զսոյն՝ սէիր և հագար, ընդդէ-մահարք միմեանց և ներհակակիրք : Որք կ'ուռ և կարծրածածկոյթ վառելովք կառօք, լեզգինախումբ կաճառօք, ճարտարաձիգ ամրոստեան մատանցն [5] զինուք, մի ընդ միոյ մարտուցեալ 'ի հարուստ աւուրս և յերկայն ամանակս : Մինչև իսկապէս սաստկուճ հերքեաց ըստ դանիէլի՝ նոխազն ծովային զխոյն ցա-մաքային. զարևմտային զայն՝ արևելայինն : Որպէս երբեմն կամբիւսեանն կիւրոս զքաբելացին :

Բ. Եւ ամբարձման բարձրացան 'ի պատիւ փառաց ճոխութեան կայսերական ոսկեփայլ գահոյից պճնութեան, եւ վայելչաբար բազմեցան և հանդարտութեամբ հանգուցեալ նստան: Շառաւիղս ամենավստահս 'ի խոնարհ առաքեալ՝ [6] ոստքն սքանչելուղէշ բարունակին բարձրութեան, տիրական և արքայական հաստարմատ տնկոյն, Եղբարքն երկոքին հարազատք միաշաւիղք համակցորդք և զուգածիրանիք՝ Վասիլ և Կոստանդին: Վասնզի մարտուցեալքն ընդ ա̃ծաշէն ամուրս նոցա՝ ընկլան կորացան և իսպառ սուզան մերձ առ գարշապարս ընթացից ոտից հզօրաց, և 'ի [7] սպասաւորութիւն հպատակութեան նոցա պատրաստեալ գտան. որք երբեմն անձանց նոցա յուսային տիրել: Եւ եղեն վայրք բնակութեան ատելեաց նոցին անսապատ յետին. և կուրացան շաւիղք նոցա, իբրև ընդդիմողաց կամաց գթութեան խնամոց բարձրութեանն աջոյն ա̃յ:

Գ. Եա՛ զի և [8] յիշատակս քարոզելիս՝ բազմադիմակս և յոքնապիսիս՝ անեղծականս և անստուերագիծս 'ի դէմս երեսաց պատկերաց անզգայականաց վիմաց մատուցին: Զի իբր 'ի բարբառ բերանոյ բանից՝ անդանդաղ ձայնիւ և անդուլ գոչմամբ մշտնջենաւորապէս հնչեալ պատմեցի տիեզերալուր համբաւ գովելի գործոցն նոցա: Յորոց մեքենայից ա̃ծատուր հանճարոյ խորին խորհրդոյ իմաստիցն նոցա՝ [9] բնական բարոյից ընտանի սովորութիւք այլ ընդ այլոյ յեղանակեցան: Վասնզի վտակք լայնակալակք ջրականաց գետոց յորդաբուղխ ուղխից՝ իբր երասանաւ փոկոյ նահանջեալ շնչականապէս՝ ընկրկեալ յետին կացուցան: Եւ որպէս զերիվարս վարժողական կրթականութք դաստիարակեալք՝ յոր ընթացս և մուտք կառավարին կամիցին, նմանաբար և նոքին՝ լքին զճանապարհս հետոց խաղացման իւրեանց. և գնացին ըստ մարգարէութեան երջանկին դաւթի՝ գետք ընդ անջրդիս: Եւ կարծրակերտ կարկառք պնդակցորդք քարապատուարք վիմահողովք՝ մահարձանօք պարսպաց՝ ուժգին շարժութեամբ իսպառ սասանեալ՝ եղեն 'ի հարթ ճանապարհս: Եւ տիրեաց բազկի նոցա արիութի՝ լայնութեան տարած-

ման մեծութեան երկրի։ Որպէս [10] արարիչն աշխարհի՝ երկնի և երկրի ։

Դ. Նաև ահագնութիւնք [11] աշխարհապարունակ՝ երկրապարփակ՝ տիեզերապատ պտուտկացն պխիդոնի, որպէս սիդոնին սիոնի՝ 'ի սպաս երևելի քրովբէանկար և սրբազգումար ամենայարմար նաձևայօձառ, սքանչելի սխրալի և սօսատարամն տրահի իմաստունն սաղոմոնի, իբրև զզոյգս ձիոց լծելոց հանդարտական հպատակութեամբ զմկանունս մասանց մարմնոց անդամոց իւրեանց՝ մատուցին յընդունակութիւն հանգստեան իրանաց նոցին։ Նաև հետս շաւղաց երթևեկութեանց փայտակերտ լաստաց՝ անխարխուխ յարկաց և անշունչ կառաց՝ գերագոյն դիմաց՝ երկնագոյն դաշտաց՝ լուծական լերանց՝ անկայուն յատակաց՝ 'ի կոյտս կոհակաց՝ կապոյտ կուտակաց, իբր 'ի թռիչս օդոց 'ի թևս թեթևս և յարագընթացս ամպաշու թռչնոյ երկթևեան կենդանւոյ՝ զամենեքումբք անցեալ տիրեցին։ Նաև [12] ևս 'ի քիլս ձեռին և 'ի քայլս ոտին՝ թեպէտ և ոչ զբնաւին տարերս, այլ զբազում տեղիս չափեցին։ Նաև 'ի կշիռս բանից իմաստից խօսից՝ զյօդուածս քանակեցին։ Նաև միանգամայն ասել՝ երկնօրէն լայնութեամբ՝ ամենահաս թևոցն ձգմամբ՝ զմիջոց բացուէ ընդարձակատարր յարկի բնաւին աշխարհի բազմունակ ծոցոյ անթիւ ամբարոյ, իբր զմի հօտ 'ի միում խմբի, և զմի սիւնհոդոս 'ի մի եկեղեցի, և զմի հարսն 'ի միում առագաստի, և զմի սիրելի 'ի միում սենեկի, և զմի ամուսին 'ի միում տաղաւարի, և զմի ընդակից 'ի միում վերարկուի, և զմի զուգակից 'ի միում խորանի խորհրդարանի, 'ի սէր փափագման տենչանաց աչաց, 'ի գաւիթ կամաց անձկութեան սրտի, կամ 'ի սահման միջոցի անդաստանի գործոյ գրկի, երկուց միջնորդաց համալծակցաց բարի գործակցաց՝ բերողաց բազկաց դիւրաբամբ բարձին ։

Ե. Արդ այսքանեօք և այսպիսեօք բարեպատեհ պատահմամբ ծածային համբաւով հզօրապէս արիութբ հաւասարաբար հարթեցին տապալեցին ընկրկեցին ընդոտնեցին և 'ի կոր կործանեցին զլեռնակար֊

կառ մոլութիւն [13] հարաւային բռնութեան որդւոցն Հա-
գարու : Եւ հաստատախարիսխ հիմամբ կառուցին պատ-
րաստեցին յօրինեցին յարմարեցին յարդարեցին գե-
ղազարդեցին 'ի զարդս պայծառս և երբերգելիս զքրիս-
տոնէիցս եկեղեցի : Եւ ձգեցին ձգտեցին զդաստակս
ձեռացն աշխարհակալաց ինքնիշխան մատանցն 'ի
տիեզերս եզերաց երկրի և ծագաց նորա : Եւ ման-
րախոյզ շօշափմամբ աջոյ՝ [14] զեղջիւրս արքայից և
կայսերաց մեծաց՝ աւազակոյտ ազանց տոհմին վրաց
և խմբից հագրաց՝ քաջաց Ձենաց և հայկականաց՝
արիապէս և յաղթողաբար ըմբռնեալ կալան ըստ
Ամբակումայ և Զաքարիայ [15] կանուխ պատգամա-
գրաց :

Ջ. Եւս և հիացուցանող համբաւ տէրութեան
վեհիցն հարազատաց երկոցունցն՝ մարմնացեալ մա-
տուցեալ 'ի կերպ պատկերի դիմաց [16] քարտէսի
սպիտակերանգ ըղձալին դաշտի, հասին 'ի խուժս և
'ի սկիւթացիս : Եւ [17] քառաքանակեան շրջանակու-
թեան շուտաժիր շտապով յընթացս թեւոց հողմավար
ամպոյ՝ երագեցին և յառաջեցին . [18] մինչև գրաւե-
ցին պատանդեցին և ուռկանեցին 'ի մի ծածկութի
պաշարման վարմի կայտառունակ ցանցի՝ զցիրս ցրն-
դման բաժանման երկրի որդւոց աշխարհի : Եւ փորա-
գրեցին՝ գեղերեսեցին՝ ձեռնաձուլեցին տապարատաշ
որագործ անդրագիր արձան պատմաբանական և ան-
ջնջական. յիշատակարան 'ի փռիւգացի քարանց այ-
լայլականաց գեղազարդ և գեղեցկագիւտ գունոց
գոյութի : Եւ միահաղոյն զոլորտս ամենից բոլորից
լրութեան՝ 'ի պատուար ամուր և 'ի ցանգ հրեղէն և
յաշտարակ հզօր ապաստանեցին, և բարձրագոյն
բերս բիւրուց բարեաց հեռաւոր երկրիս պտղաբե-
րեցին :

Եւ զխաղաղութեան հաստատութի յամենեսին ա-
ւետարանեցին . և ձիրս ընծայից պայծառ պարգևաց
ազգանազեան զարմիս բաշխեցին : Եւ զհրաշաշնորհ
զարմանազան [19] զերջանկացն հանդիսարան՝ զմեծա-
նունն վկայարան սրբամուունդ և երանուհի տիկնոջն
Սոփիայ՝ եւս քանզեւս գեղեցկապանծ նոր պայծառու-
թեան և ամրական դրութեան նորոգապէս վայելչացու-

ցին . և զսայթաքեալն 'ի տատանմանէ դողման շար-
ժութե վերին բարկութեն՝ պատկանապէս պատսպա-
րեցին . և անստուեր և անապական և անյաղթական
20 զճշմարտութեն բան՝ ամենայն ազգաց ծանուցին :
21 Բայց քանզի բանականապէս ողբայ պատմութիւ
զկաւսն 'ի վատթար կրօնս կորստական կամաց մոլո-
րութեն Թէոդորի և դիոդորի յոյժ հակամիտեալ :
Համառօտեցից աստանօր զբանս իբր անվայելուչ 'ի
շաւիղս երկուց ընթացից՝ գովեստից և պարսաւա-
նաց միատեսակ դիմօք հետևիլ :

Է . 'Ի ժամանակս և 'ի դարս աւուրց տիեզերա-
կալութե և արքայութե սոցա երկոցունց՝ Մաղի և
Կոստանդեայ , որք 'ի միանկատումն կամաց խորհրդոյ
երկեակ մարմնով և միով սրտիւ կենցաղավարեցան :
Նոյն որպէս զէութիւն երկուց տարազուց անձին և
մարմնոյ 'ի մի կերպարան շարունակեցան : Նոյն զի-
մաստնականն նախասաց բան յանձինս գծագրեցին ,
եղբայր յեղբօրէ օգնեալ իբրև զքաղաք ամուր ան-
կործան : Նոյն Ճշմարտաբար միութե առանց այլայլ-
ման կացին անբաժին : Նոյն զարարչականն Թելա-
դրութի երկիւղագին սրտիւ պահեցին , ամենայն Թա-
գաւորութիւն յանձն հաստուածեալ՝ արմատովք իւ-
րովք խլեսցի : Այլ Թէպէտ և բազում սրտից տա-
րակուսելոց՝ երկայնմտութե հետս հորդեցին , յա-
ւէտ առաւել հիւսիսայնոցս արևելականաց տանս
Թորգոմայ աղբիւրս շնորհաց կենաց անձրևաց 'ի
գթութեց իւրեանց ցօղեցին :

Ը . Քանզի արք ոմանք երևելիք 'ի տոհմային
պայազատութեց , 'ի ներքէ վեհից , 'ի զարմէ դիւցա-
զանց , 'ի տանէ սպետաց , 'ի գնդէ գովելեաց , 'ի դա-
սակարգէ քաջաց , 'ի շառաւիղէ հարազատութե 22
արեանն մելքիսեդեկի , որոյ նախանկարն խորհուրդ-
տպաւորեցաւ յընտրեալն 'ի քանանէ և 'ի սիդոնէ ,
այսպէս սոքա ըստ ամենայն մասանց պատուելիք :
Իսկ ըստ քրիստոսաւանդն դաւանութե՝ անմանք և
անհաւասարք : Յորոց մին ընտրեալ յայ և հաւատա-
րիմ ծառայ Յի , և կամակատար սրտի բարձրելոյն ,
որոյ անունն Ճանաչիւր Դաւիթ , հանգունակից ա-
ռաջնոյն՝ անուամբ և իրօք : Սա 'ի ձեռն ձեռին մե-

ծութե ա՟ծութեն . [23] Նախանկար հրաւիրանօք , ըստ յառաջ գուշակելոյ հոգւոյն ք՟ի , առ 'ի բարեպարիշտ և 'ի պարկեշտակրօն ծնողացն իւրոց խրատեալ և դաստիարակեալ , լցեալ լիացեալ և ուղերձեալ , և իբր զեփրեմեան լերին հոգիընկալ հզօր դիտապետն՝ զերկրորդ սկիզբն երջանկաց , և զառաջինն կաճառից նահապետաց՝ զմարգարէածինն տեսանօղ՝ հաճոյ գըտեալ մարդկան և ա՟յ , վարուք մաքրուե : Մինչև ընծայեալ մատուցաւ առաքելական մասին կցորդութե , վիճակին այցելութե ա՟ծախնամ տնտեսութեն , երկնաձիր և ա՟ծատուր փառացն ժառանգութեան , որ և երանելի ուխտին պայծառութե , զգեստաւորեալ վայելչութ՟բ 'ի պարկեշտ պատիւ եպիսկոպոսութե : Նա յաւուրս ոչ սակաւս այսքանեօք բարուք բարութ՟բ բազմացեալ բերկրեալ և բարդեալ 'ի ծագ աւարտմանն լրութե հասակի իւրոցն կենաց , իբրև զցորեան հասեալ 'ի ժամանակս հնձոց արմտեաց հաւաքման արդեանց համբարոց , հանգեաւ 'ի ՏՐ՟ն : Ո՟ որոյ երջանկի և առաքինւոյ զմաքուր ոսկերըն , ընձայական և հրեշտակական բազմապատիկ նուագերգութեամբ ամփոփեալ հաւաքեցին 'ի քարապատուար շիրիմ անձկութեան յարկի , կարծրաձեղուն խորանի , նսեմաստուեր մթութե հողախշտի հանգըստի : 'Ի ձեռն որոյ երկրապատեան և գետնածածկոյթ վերարկուի՝ շնորհս բժշկութեան հրաշակերտս և հաչակելիս ընդ բազում տեղիս պարգևեալ տարածեցաւ :

Թ . Արդ զկնի տիրահրաւէր հանգստեան նորա սրբանեալ ումն պատանի՝ որդի դստեր համածինն եղբօր նորա , ըստ հաւաստի ազգաբանութե քաղցրածաղիկ ծառոյն բարետիպ պտուղ , 'ի նմին իսկ յերանելւոյ ուսեալ . և հրեշտակահանգէտ կարգօք հրահանգեալ , և 'ի ձեռն ա՟ծամերձ ձեռին նորա ձեռնադրեալ 'ի քահանայութի , և վանականաց 'ի վերակացութի : Որ նկարագրեաց իբր զտարացոյց գեղոյ պատկերի ձևոյ տեսակի՝ զնմանութի նորին 'ի յանձին գեղեցկապէս հետևեալ նախնեացն : Իսկ 'ի դատումն ընտրութե վարժից՝ առաքելադէտ և մարգարէածանօթ և աւետարանաժառանգն գիտու-

թեանց և այլոց բազմաց [24] սոփեստից, վայելչապէս համբուրիւ պատահեալ։

Ժ. Նստանօր 'ի սոյն ամանակի՝ եղբայր մօր սորա երջանկի և բարեպաշտուհւոյ, ըստ պատահման իրիք հանդիպման՝ խոյս տուեալ և Թիկունս փոխանակ դիմաց դարձուցեալ, թողեալ լքեալ և արտակացեալ 'ի յարկէ բնակութե հայրենեայն իւրոց, 'ի գաւառէն մոկաց [25], 'ի լերանցն կորդուաց, 'ի գնացս ընթացից բազմօրեայ հետոց ուրհանդակօրէն խաղացմամբ յառաջ երագեալ 'ի յարեգ կուսէ կողմանց հիւսիսոյ մինչև 'ի սպառուած ծայրիցն [26] ասիայ և սկզբանն իտալիայ, 'ի կայանս նորոգն դազմատիայ, յարքայարանն յունաց ազգացն եդովմայ գեմեալ հասանէր, 'ի բուն բնակութե ծովածաւալ ջրափակ անդրնդափոս ահագնապարիսպ բազմաբնակ քաղաքին և [27] անմարտնչելի ամրոցին աքանչելւոյն Կոստանդնուպօլսի։ Ուքն այր երագամիտ, և ըստ կարգաբանութե խօսից անթարթափ լեզուոյ՝ յոյժ պատկանաւոր, իսկ ըստ ա̃ծային հոգելոց իմաստութեն՝ յաւէտ պարարեալ, մատուցեալ 'ի յօգոստաբնակ պայծառապսակ պատկառատեսակն պաղատ զինուորէր։

ԺԱ. Սա նախ յորժամ տարաբաժանէր 'ի հայրենեացն, զտարաբնակութիւն օտարութեն յակովբու զմտաւ ածեալ. որ [28] 'ի նեցուկ ցպոյն միայն յեցեալ, ոչ ինչ բերելով Թօշակ մարդկային մարմնական կենաց 'ի ծնողացն՝ բայց միայն զօրհնութի երկնաշնորհ և տիրապարգև՝ անդրանկարարն ձեռնադրութե. որովք յաւէտ առաւելութբ̃ անստուէր և անթարշամ փառօք կրկին պսակեցաւ, մեծաւ միջօցաւ գերազանց գտեալ քան զհօրմածինն։ Սոյնպէս և սորա անփոյթ արարեալ զբազմածախ և զյոքնաշահ ինչս ստացուածոց գանձուց հայրենեացն, միայն [29] 'ի դրից դամբանէ շիրմի եղբօր հօրն իւրոյ դաւթի սրբազնազարդ և ք̃նակարգ եպիսկոպոսի, զորոյ զգովութիւն բաղձալի [30] անուանն նախ նկարեցաք, անտի օղջունիւ բարձեալ ընդ ինքեան սուղ ինչ չափ դուզնաքեայ հողոյ, և այնու շատացեալ անզուգական և անհամեմատ բերկրանօք [31] բնակէր 'ի սէիր, քան թէ

սիրեցեալ սերմն սափատայ՝ մաքուր մաշկեկաւ մեծին Հեղինէ 'ի կատար ամբարձման գլխոյն կարմեղայ: Որով Հանգունապէս և Հաւասարաբար ըստ օրինի նմանութեան նորին՝ յայտանկատ աչաց տեսողաց պայծառ պանծանօք կարգաց յարգեցաւ: Քանզի իբրև տեսին զշնորհ պարգևաց անզղջականաց Հրաշակերտ նշանաց՝ ինքնակալքն յունաց, որ 'ի [32] նշխարաց Հողոյ քնապահեստն գանձարանի ածարեալ եղբօր Հօրն նորա, նոյնժամայն ըստ ընդաբոյս բնածին բարի բարուցն բուսոյ՝ սրբասէր և երկիւղածամեծար սրտին իւրեանց ցանկութեան, և ընտանի սովորութեան որ առ մեզ սպասաՀարկութեան կատարեալ կամացն յօժարութեամբ անդէն վաղվաղակի անդանդաղ սրտից բաղձանօք՝ զանընտել օտարականն՝ զՀեռաւոր աշխարհային՝ զանմերձաւորն աչաց սիրելեաց՝ զանՀպաւորն Հարազատաց, իսկ և իսկ 'ի նմին աշխարՀախումբ երկրագումար և բիւրակաճառն ատենի 'ի փառս բարձրութեան պարգևընկալ պանծանաց պատուոյ կարգէին:

ԺԲ. Արդ՝ իբրև այս ըստ սմին տեսակի մասին յանդեցաւ և յարմարեցաւ, և այրն տարաշխարհիկ՝ պատուաւոր և սպասաւոր և ծանօթ ընտելական կայսերացն երեսաց եղև, Հարցման բանից Համարձակութեամբ արժանի գտեալ. և զդարձուածոն անդէն ընդ նմին կարգի 'ի ճահ փոխադրեաց: Յիշատակեցաւ [33] նորոգեցաւ և պատճառն առաջին յանակընկալն Հանդիպութեան, այլ և աւանդն նը մաքուր ընծայիցն, զոր 'ի յերկրէն իւրմէ ընդ իւր կրեալ բերէր: Իբրև երկրորդ սկիզբն եղև իւրն յայտնութեան, և կրկին պատմեցաւ թէ յորմէ այսքան սքանչելիք նշանաց Հրաշից գործեցան, արդ իբրև զբավանդակն բնաւին լրութեամբ իւրով իմացեալ ծանեան, և ճշմարտեալ ստուգեցին [34] այսգոյն տեսութեամբ՝ եթէ եղբայր Հօրն նորա է պատճառ այնր գովելոյ և պատուելոյ իրին, այնու ընդ նմա առաւել 'ի փափագ գթութեան սիրոյ յորդեցան: [35] Նա ընդ նմին և զայս ևս Հոգացին և գիտել խնդրեցին, եթէ ո՛վ ոք յընտրելոց Հովուէ զտեղի բնակութեան պաշտելի այնր Հանգստի կենդանի մեռելոյ: Իբրև ուսան յառնէն

թէ [36] որդի քեռն իմոյ ընտրեալ իցէ 'ի սոյն գործ պաշտաման սպասու, ընծայս պարգեւաց պայծառականաց խոստացան շնորհել 'ի պատառն պիտոյից նորոգման հանդերձանաց խնկեալ ոսկերացն։ Իսկ եթէ զարդարն եւ զաներկեանն ստուգապէս իսկութեամբ պատմեաց, թէ չունին կարիս պիտոյից երկրաւոր իրի, նախ հարազատն իմ քեռորդի, եւ ապա հովուեալքն 'ի նմանէ։ Բայց թէ կամք վեհիցդ իցէ, քննեցից եւ 'ի խոր խուզեցից զխնդիրս կարեաց նոցին տենչանաց։

ԺԳ· Եթէ կարի հոգեպէս տարփանօք սրտի՝ ըղկամս կայսերացն առ իւրն անձուկ յեղյեղեաց, ապա [37] նամակս հրովարտակաց ինքնագիրս այրն հանճարեղ եւ ճարտարաբան՝ յերկոցունց կողմանց մեքենաւորեաց. եւ ինքն հրեշտակ զոմն նամակակիր 'ի սեպհական իւր հայրենական գաւառն առաքեաց։ Իսկ ըստ յաջողելոյ կամաց քաղցրութե անեղին՝ մինչ դեռ թագաւորքն յունաց 'ի նոյն շաւիղ խորհրդոյ բարւոյ հանդիսացեալ մտաբերէին, դարձաւ անդրէն սուրհանդակն պատճէնաբեր, ունելով գիր նկարեալ 'ի դէմս երեսաց գոյութե դիմաց քառատեսակ քարտէնի, հաւաքեալ 'ի ծոց իւր յիշատակարան բարեբուղխ բանից մեծի խորհրդոյ։ Եթէ ծանեան զփափագ տարփանաց հոգեւոր խնդրոյն, զի ոչ ըստ մարդկային բնաբարն բնութե բարուց բաղձանաց՝ երկրաւոր ինչ նիւթ սիրեցին, այլ մասն փրկութե անանց մեծութե 'ի կենսակիրն կենդանագրութենէ անվախճան եւ անգին գանձուն երկնային պարգեւ՝ անստուերափայլն լուսոյ անկապուտն կենաց՝ անստերիւր եւ սրբակցորդն ստացուածոյ քնեան՝ Իշանին, գովեցին յարգեցին եւ դրուատեցին զշաւիղ խորհրդոյ մտաց խնդրողին։ Իսկ հաստատապէս սեռն ստուգութե զանձունակ կամս անխոտորնակս զհայցողին եւ սիրողի այնր բարձրութեան՝ հրատարակեցին։

ԺԴ· Ապա փութաբար եւ վաղվաղակի կազմեցին եւ պատրաստեցին ոսկեկուռ ձուլածոյ քառատեսակ յօրինմամբ զձեւ տեսակի ածեանն խաչի։ Ի նմին կառուցեալ մասն հատուածոյ 'ի կենսակիրն փայտէ

[38] տէրունեան փառացն թագմականէ ։ Եւ վասն առաւել փառս ընծայելոյ նմին նշանի, զքնաւին վկայս կեցուցիչ մահու վչտացն Յնի՝ ընդ նմին պատկանութե՛ գեղազարդեցին, ուստի ճաշակեացն, և սփածաւ, և պսակեցաւ, և սեւեռապէս պնդմամբ մածուցաւ, և որով 'ի ծննդեանն աւուր տնանկաբար վերասքողեցաւ ։ Զայս ամենայն մասունս ըղձականս ընդ խաչին հիւսեալ միատարրեցին. և պատեհ պատրաստութե՛ 'ի ստեղն ծխոյ [39] թացուստ 'ի թաց 'ի ծագս եզերացն 'ի ներքոյ ըռնկացն դրանց՝ երկբացիկ սեւնեկացն պարագրողաց՝ արձանացուցեալ 'ի հանգիստ նշանին լուսոյ, առաւելապէս թաղձանս յուսոյ ընդ նոյն խառնեցին ։ Եւ զբուրման կենացն բուրվառ այսպիսի կայծակամբքս՝ ընդ կնդրուկն ցեալ 'ի ձեռն նորին իսկ յարդարողի այնր խորհըրդոյ մեծին Մանգլաւտի, պարգեւս բարեաց աշխարհին հայոց կողմանցն արեւելից լերանցն կորդուաց գաւառին մոկաց վերառաքեցին ։ Որոյ իսկոյն իսկ բարձեալ մեծագին և ոսկեթել վերարկուօք՝ պայծառ վարշամակօք և անկշռելի բերկրանօք՝ բերեալ բնակեցոյց հուպ 'ի պատուական [40] վայրս հանգստարանի հօր եղբօրն իւրոյ սքանչելագործ և կենդանական ոսկերացն ։ Որ և պատճառ իսկ [41] ժառանգութե այսր նախ նա ծանուցաւ ։

ԺԵ. Արդ իբրև եկն եհաս այրն շնորհընկալ և պարգեւաբեր խաչունակ և նշանաբարձ փրկութենակիր գովեալն գանձու, եդիտ բազմեալ 'ի գահոյս տէրական ի̃ծառաքն աստիճանի հանդարտական հեզութե սրբամատոյցն աթոռոյ՝ զորդի քեռն իւրոյ. ընտրելոյ. մեծաւ բարձրութե՛ վսեմական գովութե՛՝ գերարփի շնորհիւ՝ [42] վեհագոյն գոլով քան զհօրն իւրոյ հարազատ՝ և զհօր եղբայր նորին, անդէն 'ի նմին ազգային և բնաբնակ լեռնահոլով և կարծրախարիսխ գաւառին մոկաց մայեկաց մրգաց, 'ի տեղի հանգստեան հոգենորոգ մարմնոյ հօր եղբօրն իւրոյ երանեալն Դաւթի մեծի եպիսկոպոսի ։ Որ նորոգեաց զնշխար համբաւեալ ազգին՝ երկանունն և բազմանշոյլն յաւազանէ և 'ի կոչմանէ. ոստ տոհմին, և շառաւիղ զարմին. ընտրեալն 'ի Թիւ հա-

մարդոյ Հանդիսի դասու եպիսկոպոսաց: Որոյ անունն ըստ յորջորջմանց կոչման վերստին ծննդեանն աւուր փրկութեան, Ստեփաննոս կարդացեալ, որ ըստ ելլադականին՝ Պսակ առձայնի: Նոյն զի՝ հաւաստի ըստ կոչմանն իւրոյ եղև պսակ պարծանաց՝ պանծալի [43] ցանկալի ըղձալի բաղձալի գովելի և երանելի վայրիցն այնոցիկ: Ո՛չ անգի ոչ թերացոյց, քանթէ լիացոյց. և ոչ պակասեցոյց, քան թէ աճեցոյց զպատրաստութիւն նորոգման վայելից այնր բնակութեան: Որ 'ի բնէ իսկզբանէ 'ի վաղուց հետէ 'ի հին պատմութենէ և 'ի հարուստ զրուցաբանութենէ արանց ծերունեաց և երիցագունից, ժառանգութիւն կայից դոյզն ապարանից գոյն ինչ շինուածոց նախագրեցեալ էր իւրեանցն հաւուց հզօրացն հարց:

ԺԶ. Օ այս՝ սա վերստին ստեղծմամբ 'ի զարգպաճուճանաց զարմանագործեաց, և գրեթէ երկին երկնի 'ի յերկրի վայելչապէս գեղով յօրինեաց: Նա զկազմած պատշաճողութեան հրաշակառոյց խորանացն՝ [44] քրովբէաբնակն յարկաց՝ բարենշան կերպիւ հիմնադրեաց: Նա նմանասէր սրովբէագաւիթ որահին սիոնի սրբատենչակ տեսիլ տիրագրեաց: Նա [45] համանման երկնաքերձ կայից կանգնեալ ամբոցին, որ 'ի համար համբարոյ զինուցն օճառաց՝ սայրասուր սլաքաց՝ ոսկեկուռ նիզակաց՝ հազարաւոր վահանաց՝ յապաւինութիւն պահեստի թիկանց, բազմուն գնդաց գումարտակաց մարտկաց եբրայականաց արանց քաջաց որ 'ի թալպիովթ, թագադիտակ փառօք պսակեաց: Նա ըստ ամբարձման կամարի վերնայարկն գնտի ձգման գմբեթի՝ ճշգրտաբար ճարտարապետեաց: Նա գունակ խորախարար և բազմահաւաք խորին խնճոյից նոր հարսնարանին՝ զՆածամօրն սրբասահման տենչալի տաճարն՝ ամենաբուեստ հիւթիւ յարդարեաց. և անդանօր համանգամայն զանդրանկացն բոյլ՝ 'ի միում խմբի բոլորեաց: Նա իբր քաղաք կենդանեաց շինեալ այ, խօսեալ Յնի, մայր մաքուր որդւոց, հանդէպ տեսակի դիմաց օրհորդաց փեսային, երգօք պարողաց առագաստապաց ընտրելականաց, անդրդուելի արուեստաւորեաց: Նա լայնատարած դրամբ անան-

ձուկ կայան բանակի բիւրաւոր զօրաց հրեշտակականաց գերվարագուրեաց։ Եւ ես քան զես՝ անստուեր փայլմամբ քան զմովսիսեան շինուած վրանին վկայականի՝ զանգակագանչ՝ բեհեզազանգուած՝ մետաքսահիւս՝ ոսկետակապատուաստ՝[46] կարմրայարմար շաղաշարման զարիւնագեղ անձառն խորհուրդհանրահռչակեաց։ Եւ իբր սարդենոսեր անպահ պահանգաց շնորհապատար արարուածոյ յարկի դաւթեան համբակին ձեմարանօրէն արուեստիւ սադրեաց։ Որմոցն վերադրութի՝ վիմախարիսխ արձանակառոյց կերպիւ առկայեաց։ Եւ իբր յականց վանեաց յեռելոց ձարտարագործ արուեստայարմար՝ բազմատեսակ երփնիւ նորոգեաց։ Եւ զեզեկիելեան տեսլեանն երևոյթ անյօդն էութ՝ նոր նմանութք իբր զգայութի իրի արծարծեաց։ Եւ իբր [47] զմիաստանի վերարկու գեղեցկատիպ յանգուածով զբովանդակն սկսեալ յարմարեաց։

ԺԷ. Ի նոյն և զաներևոյթ հանդերձեալ բարեացն ծանօթութի փառացն ապառնեաց՝ 'ի ներկայումս աստ՝ ակներև տպիւ գծագրեաց։ Եւ իբր [48] զփայլուած լուսածագ բոցոյ բորբոքման զսրբամատոյց տիեզերալոյսն տեղի ցանկեալ պարսպեաց։ Եւ զարտաքին որմոցն զարձանս [49] մաքրապար տեղւոյն բերկրութեան՝ ձառագայթանշոյլ բեհեզատիպ զգեստուքն պճնեաց։ Իսկ զդիմաց դրանդեացն դիրս՝ սքանչելի քանդակագործեալ քառաշուրթն զարմանազան՝ իբր զծաղկեղէն զգեստուց հանդերձանս սրբաբեհեզն սպատմուճանի առագաստանուէր գեղապանծ հարսինն՝ 'ի գլուխ ծայրից լրութ թեզանեաց շրջապարուրեաց։ [50] Իսկ զդրանցն երեսաց տիպ՝ նկարակերտ յանգուածատաշեալ կարմրերփեան փայտիւք՝ և փղաց ոսկերօք [51] սեռակոտոր այլայլակ գունովք երանգոց՝ յարակից կայիւք 'ի պէսպէս մասանց արհեստիւ կապեաց։ Իսկ զմէջ դաւթի յատակացն իբր զկոնք մի ապակեղէն ամենահարթ գոյիւ անխորշ պնդութք պատշաձ պատրաստեաց։ Իսկ զբարձրավանդակ սրբարանն դիտանոցի երկնատեսակ բարձրութե բեմբին՝ դաբիրայօրէն յօրինմամբ ըստ սարասի անհուպ և փայլեալ վերին եթերին՝ 'ի

ստորնայնոցս սաստի մեկուսեաց։ Իսկ զվարագուրացն անջրպետարան իբր զպատրուակ անքոյթ տեսութե՟ ՚ի պատիւ պատրաստութե՟ ՚ի պաշտօն զգուշութեն խորհրդոյ մեծի, ՚ի պատուական հիւթ պայծառ-պաստառաց եգիպտացի դիպակակիտուած բազմա-տեսիլ [52] ոսկեփառ և հրակերպ՝ երկնաձև և երկվե-րարկու՝ շնորհազարդ շքով պաճուճեաց։ Իսկ զտի-րաւանդ և զարարչատուր կտակիս պաշտամանն գոր-ծի՝ սրբութե [53] սեղանոյն զսքանչելի զգեստն, իբր զնոր սրբութե սուրբերին մաքրութե՟ և զփայլունն աղօտականին աստ պայծառութե, և ճշմարտութի ստութեն, և զնոր լրութի նախնոյն թերութեանն, զվերընդունակն անբաւ բնութե տէրունոյն մարմ-նոյ, ՚ի զանազան թելոց գունելոց երկնակերպ կա-պուտակատիպ յեղիմացի կղզեաց ծովայնոց, ծիրա-նածուէն կերպասիւք պճնեաց։ [54] Իսկ զկապ պա-տուածոյ գօտեացն, եթովպացի և բաբելոնացի բազմագանձ ականց՝ բոցանշոյլ յակնթաց՝ գարնա-նագեղ զմրխտաց, աստեղազարդ մարգարտաց, թխատիպ սաթացն կապուտակաց յեռամամբք առ ի-բեարս, ամենապատիկն համատակօք կրկնելովք զու-գայարեաց։ Այլ որպէս զդշխոյ ումն թագակալ հան-դէպ ճակատոյ պայծառ պատկերի դրուատելի դի-մաց դիտակի սրբութե սեղանոյն՝ մածուցեալ կա-պեաց։ Իսկ զգմբեթին վերամբարձութի որպէս կա-ռուցումն ափան անդամոց՝ ցանկալի հասակի մարմ-նոյ գլխոյ գագաթան մեծ արքայուհւոյ, ՚ի [55] կարծ-րակուփ քարանց քերելոց քուաքատակեաց։ Իսկ զդեղանկար ծաղկայօրինուորակ պատկերացն կեն-դանագիր տեսակի գեղոցն զստուերացեալ հին ա-մանակացն [56] զաներևոյթն աչաց ներկայիցս, իբր զերևոյթ յայտնի տեսակի ունողաց ընչոյ և զգայու-թե արգասաւորեաց։ Այլ ամենայնիւ զամենայնն յամենեցունց մասանց նիւթելոց, ՚ի մի կերպարան տեսակի զօդեաց։ Այլ որպէս զարձանն եւթնատես վիմին զօրաբաբելի՝ յանդիման աչացն Յեսի ուղղեաց։ Որպէս զոտիցն տ՟ր տեղի ՚ի վերայ հաւատոյ վիմին հաստատեաց։ Այլ իբր զընդարձակ ծոց արարածոց և երկրի արեգականն շրջադրութե՟ կանթեղաբոր-

բաց ջահավառ դամբարանաշոյլ լուսով փայլեցոյց . և գրեթէ բոցեղէն յեղանակաւ 'ի մարմնի հողեղինի ։

ԺԸ . Իսկ զարտաքին գաւթացն յատակս և զդարաստանայն խրախճանութիւնս , ըստ իւրաքանչիւր պատշաճ խորհրդոյ պայծառ պատկանեաց ։ Նա տնկեաց հաստատեաց և մշտնջենաւոր հիմնեցոյց [57] խիտս բիւրաւորաց բուսոց անտառաց , ծառս գեղասաղարթս , շնորհաշառաւիղս , ամբարձուղէշս , հաստաստեղունս , մարդադարմանս , բազկաստածուս , աճունաճիւղս , վայելչատերևս , բարեբողբոջ բոյս վարսաւոր փայտից , այլայլասեռ տարազոց մրգոց , համեղահամ դիւրամարսելիս կրից կոկորդաց ։ Նա և'ս քան զևս յաճախեաց 'ի ցեղից ցեղից ցանկալեաց ցցեալ 'ի գետինս գիրապարարս` արգաւանդահողս տենչալի վայրից , իբրև զծառսն տ̃ն և զմայրսն Լիբանանու լերինն ծուրայ` առատապէս պայծառազարդեաց ։ Տունկս բերրեաց բերողաց բարեաց , ծաղկընծիւղս` պտղածինս` արմախարխախս` մրգամատոյցս պատուաստակիրս` պտղապարգևս . անդս ամենունակս ջրահոսս և շուշանափայլս . սահմանս վտակաբբուս` ուղխապարարս` անձրևասնունդս` ցօղամատոյցս ։ Երկիր` զոր տէր ա̃ծ ըստ մեծին Մովսէսի գթութ̃ք խնամոց իւրոց դարմանէ , հանապազ աչք տեսչութ̃են ողորմութ̃են ա̃յ քան թէ երևսաց նարա` 'ի վերայ նորին , 'ի մտից ամին մինչև ցելս տարւոյն` 'ի գրգել տածել և յանձանձել ։ Արդ զայս ամենայն զպատճառ նիւթոյ բանից պատմութ̃ես , նախայիշատակեալ մեծ եպիսկոպոսն պսակ սիոնի և ծառայն Յոնի , [58] երկակի յորջորջմամբ անուանեալն ըստ բարբառոյ ձայնի եսաւայ և իսմայելի յանգեալ կատարեաց ։ Վասնզի որպէս սողովմոն զաւակն դաւթի զկնի հանգստեան հօրն իւրոյ վեհի` զանուանակիրն շինեաց ա̃յ տաճար` սրահին փրկութ̃են տանն յուդայ և իսրայելի , նմանապէս և սա ընդ նմա զհնոյն 'ի նորս արծարծեաց զշնորհ ։

ԺԹ . Նա իբրև զամենայն զայս այսպէս կարգեաց , և եդեմ երկրորդ` փառօք [59] առաջնոյն լուսանորոգեաց , ապա այնուհետև զընկալեալն 'ի տ̃նէ շնորհ

զփայտն գործակից կենացն արդարութեան, զնշանակն համբերութեան կամաւոր մահուն Յսի, ընդպատկերն պարկեշտութե անձանց ձգնաւորաց, ընդհաճութի կամաց ածութեն հօր, զգործի իրի բարձրութե փառացն էմմանուէլի, զնշանն լուսոյ քնեան խաչին, մեծաւ ահիւ և զգուշական երկիւղիւ բարձեալ հանգուցին, յօրինեալ տեղի հրաշակառոյց խորանի նազելի յարկի նը Կարապետին. զոր յաւուրս իւրոյ վանականութեն սկսեալ, 'ի նմին կատարեաց ընտրեալն յայցելութի մաքուր դիտողութե սքն եպիսկոպոս: Նա սրբոյ և ընտրելոյ առաքելոյն Ստեփաննոսի մարտիրոսարանի անուանն իւրոյ նարոգ յիշատակ՝ 'ի հանգիստն գերեզմանաց նախնեաց
60 մեռելոց 'ի հրաւէր խոստման անսուտն յարութե, նպաստաւորեաց յառաջագոյն քան զյայտնիլ սրբոյ խաչին գալստեան: Բայց զԿարապետին տիրաքնակ և հոգիազարդ տաղաւարն՝ 'ի խորհուրդ յուսոյ աներկբայ դիտման խաչին գալստեան իբր ընծայութի մաքրութե ուխտի նուիրեաց նախ քան զաթոռոյն վերակացուն: Սան որոյ և 'ի գալուստ ծագման փրկականն փայտի՝ իբր 'ի զուշակումն անուան խոստացեալն շնորհի՝ 'ի նմին սեպհականեցաւ, հանգուցեալ 'ի տաճար մեծի մարգարէին յովհաննու: Իսկ զԱծածնին չքնաղ կազմուած սքանչելաշուք բնակութեն
61 զուգամամն կրօնից բարեզարդն եպիսկոպոսութե կառուցեալ, սկիզբն արարեալ 'ի սկզբան տէրութե իւրում նախագահութեն: Ուստի և հանճարեղ խորհրդածութք 'ի նոյն տաճար վերագայիլ պատրաստեաց նշանին սրբոյ՝ 'ի յաւուր ուրբաթու մեծի պասեքին: Ոի յիշատակ գովութե պաշտելի անուանցն երկոցունց վեհից Խաչին և Ածածնին, 'ի միասին երկրպագեսցին, համբաւեալ զոմն ծնող, զոմն ծանուցող մարդացելոյ միոյ այ յսի քնի, հօրն փառակցի:

Ի. Իսկ 'ի կողմանն աջոյ կայից հիւսիսոյ, ըստ առակողին ընթացից հետոց աջողակ հողմոյն, ունի զԱռաքեալսն տիրապատիւս, և զԼուսաւորչին նը դաւանարանն: Իսկ ըստ հարաւոյ դիմաց դարումայ՝ զեբրայեցի ընտրեալ պատանին զմարտիրոսն

Ապդլմըսեհ։ Իսկ համբարձեալ վերադրեաց գերա-
գոյն դրան երջանիկն առաքելոց 'ի սեան ունողի խո-
րանի նր. ծածամօրն՝ 'ի շինուած միջոցի որմոյն կա-
ռուցման՝ զսրբոյն ոսկերս [62] զՄկրտչի զարարչին
ջրով, և մաքրելոյն 'ի նմանէ հոգւով։ Օ Նախավը-
կայն՝ [63] զերկրորդն աբէլ, և նորոյս ադամայ զվըշ-
տացն ծնունդ երանեալ, որ եղև հրաւիրող մեռե-
լոցն 'ի նախնին ընդ դրունս մտից երկրին կենդա-
նեաց։ Օ Յակոբայ որդւոյն յովսեփայ որ կոչիւր
արդար, և սակս [64] սննդական կենցաղակցութեն՝ եղ-
բայր Յոի։ Օ մեծի առաքելոյն Անդրէի։ Օ հզօ-
րացն վկայից զընտրեալն Ատոմանց։ Օ քառասնիցն
որ 'ի պոնտոսէ երկրին գամրացոց նր. զինուորացն։
Օ Սոզոմնյի և զՊամիանոսի զնահատակացն։ Իսկ [65]
ըստ կայից հօրաւոյ 'ի սեան խորանին՝ զնր. պատա-
նեկին Ապդլմըսեհի։ Օ Կիպրիանոսի զկարքեդոնա-
ցւոյն որ յափրիկեայ նր. և երանեալ եպիսկոպոսի և
վկայի։ Իսկ Յուստինեայ կուսի իմաստնոյ՝ անա-
րատի և մարտիրոսի։ Օ մերազնեայ վկայից ծածաշը-
նորհ քահանայից փառաւորեալն Ղևոնդեանց։
Այսպէս զամենեսին զսրբոցն պարս՝ ունի հաւաքեալ
ընդ Թևովք իւրովք իբր զմայր երանեալ ամենայն
կենդանեաց՝ Տիրուհին և Ածածինն։

ԻԱ. Արդ ծագեաց նորանշոյլ փայլումն սրբոյ նշա-
նիս 'ի մտից լուսոյ ականն արևու՝ 'ի սահմանս ընա-
կութե լերանց սիոնի, կողմանց հիւսիսոյ, յաւուրս
ունողաց տանս վասպուրականի՝ եղբարց երից վեհից
և հզօրաց հարազատաց, 'ի յարենէ արքայից, 'ի
սերմանէ սքանչելեաց, 'ի տանէ տերանց, 'ի գաւա-
զանէ հսկայից, 'ի Թուոյ Թագազնից, 'ի բնութենէ
արեաց, 'ի յազգէ ազնուաց, 'ի տոհմէ տիրողաց, 'ի
գլխաւորութենէ գեղեցկաց, 'ի [66] զարմէ զօրեղաց,
յերկրակալ զաւակաց, սկզբնաւորեալ յերևելի և
յերանելի նախնեաց, 'ի քեռն աստուրայ դստեր սե-
մայ որդւոյ նոյի։ 'Ի ծննդաբանութե նախապետու-
Թեն նեբրովթայ, որդւոյ քուշայ, զաւակի քամայ։
Որ անդուստ իսկ 'ի շինել նախակործան և վաղա-
սասանականն բրգան, պետ և գլխաւոր հրամանա-
տար նոցա յաջորդեալ, տիրեաց 'ի սենիար և 'ի քա-

ղանէ, խառն ընդ բաբիլօն։ Աստի և ասուր՝ եղբայր մօր Նեբրովթայ՝ շինեաց հրամանաւ Նեբրովթայ զասուր, յորմէ ասորիք մեծք և քաղջագօտիք, մինչև եւթներորդն 'ի նմանէ Նինոս, որ յիւր անուն փոխարկեալ Նինուէ անուանեաց։

ԻԲ. Արդ յայսքան հեռաւորութէ ամաց և կանխութէ աւուրց դարուց վաղընջուց, 'ի ստամբակ գոռոզութէ դիւցապաշտ ինքնակալութեն, ընտրեալ շառաւիղք ածպաշտութեն սոքա երեքեան։ Անուն կրտսերոյն զհաւոյն եդեալ Սենեքերիմ մակագրեն. իսկ միջնոյն՝ Գուրգէն, և նախնւոյն՝ Աշոտ։ Բայց 'ի փրկագործն ծննդեանէ աւազանին նորոգութեան՝ ածութեն որդեգրութեն, անդրանկին՝ Սահակ, երկրորդին՝ Խաչիկ, վերջնոյն՝ Յովհաննէս։ Թագաւորեալք և փառաւորեալք 'ի մի ամանակի արք բարիք և ածասէրք, խոհեմութե համձարոյ առաւելեալք, և ըստ պատահման դիմաց պատկերի տեսման երեսի յաւէտ ցանկալիք։ Իսկ 'ի սէր սրբոց, 'ի պատիւ ընտրելոց, 'ի յարգումն հեզոց, յընդունելութի ուղղոց, 'ի զարդ եկեղեցեաց, 'ի պայծառութի սրբութե տեղեաց և քնեան նշանաց, 'ի սպաս մարտիրոսաց, անկշիռք և անզուգականք։

ԻԳ. Սոքա իսկ մեծաւ հաւատով առեալ ընդ իւրեանս զգումարս և զկոյտս նախարարուե սեպուհն ազատաց, ընդ առաջ խաղացին ածեան խաչին, զորմէ պատմութիս է։ Եւ վերբերեալ մեծաւ ընծայիւք՝ 'ի սահմանեալ և յուխտեալ տեղին ածէին, որ է 'ի ծործորս միջոցի լերանցն կորդուաց վիճակին մոկաց, և յանձանձեալ անչափ գրգանօք, 'ի [67] սրբոյ ուխտին տաճար հանգուցին։ 'Ի թիւս չափոյ քանակութե համարոյ եղանակական շրջանակի, հոլովման արուսեկի, որ ըստ ընթացման ամանակի այսմիկ նկատի, չորեքհարիւրորդի, երեսներորդի երկրորդի, յաբեթական տոհմիս տումարի։ Եւ անդ գումարեցին խռնեցին ժողովս բազմութե տօնողաց ազանց. հռչակեցին և աւանդեցին պաշտօն օրհնութե կատարել աւուրց յաւուրս։ Եւ մատուցին ընծայեցին շուրջ զնովաւ ակումբ զբուրումն խնկոց ջահիւք վառելովք՝ և ծխովք անուշիւք կնդրկի և կասիայի [68]

խառն ընդ երկրպագութս հոգւոյնմին պատարագ։ Նաև աղաղակեցին բերկրալիր բերանով օրհնաւաք բարբառով, 'ի շրթանս ընտիրս, 'ի լեզուս մաքուրս [69], 'ի հնչմամբ երգոց, 'ի տաւիղ օրհնութեց, 'ի գոչմամբ ազդմամբ, 'ի ձայն ցնծութե, 'ի քնար հնչաւոր, 'ի փող անձնաւոր, 'ի խնձոյս հոգևոր, 'ի ծնծղայս մարմնեղէն, 'ի ծափս ձեռին, 'ի տրոփմամբ կայթելոյ կաքաւման ոտին, ասելով զհոգեպարգևն և զածաշունչն սաղմոս, Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան։

ԻԴ. Նաև անդր քան զօրինակն գերազանցեաց ճշմարտութիւն 'ի նշանս և 'ի սքանչելիս։ Որպէս զի վսեմապէս խնդութբ գեղեալ եպիսկոպոսն երջանիկ՝ ծնողօքն ածասիրովք և հարազատ եղբայրական համբակօքն, բնաւին ազգայնովքն որբասիրովք, և բազմաթիւ պաշտօնէիւքն եկեղեցականովք, համդերձ ռամկացն գնդովք, ըստ օրինի նորածին համբակաց հօտից, խայտացեալ առաւելապէս, քան թէ մեծն դաւիթ 'ի հանգչել ստուերագրիծն տապանակին։ Քանզի նա զսաստ [70] մահահրաւէր վերին բարկութեն կարկտաբեր ամպով որոտայր։ Իսկ նշանս այս ածընկալ՝ զողորմութի և զշնորհս և ստուգութի յիւրումն բարձեալ քսանկար տեսակի՝ առաջի երեսացն այ բերեալ զցնծութի բիւրուց ազանց բաշխեալ աւետարանէ։ Նաև [71] զերաշխէպ վշտաց կեցուցիչն կրից՝ բոլորն իսկ խորհրդածութբ հաւաքեալ յինքեան՝ իբրև զգլուխ մարմնոյ անդամոց զտեսութի ազդման՝ հինգ զգայութե, առ 'ի յայտ առնելոյ թէ ոչ վայրապար ինչ գործ՝ կամ խառնախորթ խորհրդածութի 'ի վերայ խաչին կատարիւր։ Այլ տեսանողացն յառաջատես և նախագուշակ երգաբանութի՝ որ զկենսատու չարչարանաց և զինքնաժառանգն փառաց ամենակալն յոի, պատմեալ վկայէին ըստ գուշակելոյ 'ի նոսա հոգւոյն քի։

ԻԵ. Այսպիսեաւ մեծ իմն հրաշազարդութբ նշանս այս առաւելաւ 'ի խումբս և 'ի [72] հոյլս հոմասեռիցն։ Քանզի որք 'ի բազում տեղիս բաշխեցան, և 'ի քառակուսեան եզերս աշխարհի սփռեալ տարածեցան, յատուկ միայնակ 'ի յաշտարակէ կենսատու փայտին

մանմնաւորեցան ։ Իսկ ա̃ծատուեղծս այս [73] բարեյրու-
թէ նորոգիչ և կենդանարար նշան, որպէս թէ զխաչն իսկ խաչելութեան՝ եղեալն փառօք՝ յինքեան ունելով, զամենեցունց մտաց տեսութե ՚ի սոյն յանկուցեալ միշտ պակուցանէ ․ և արեգակնօրէն նշուլիւք աննուազ փայլումն արձակէ ։ Վասնզի զխանձարուրան խորթնածածկոյթս յիշատակ կորուսելոյ փառացն աղամայ, և զմաշկեղէնն ծառայական սփածանելիս, փոխանակ տերևոյ տնկոյ թզենայն, որով նախահայրն պատսպարեցաւ, ՚ի պատկեր յօղուածոյ բարձիցն վերբերելով ՚ի հօրն օրինակ՝ զորդւոցն զարշապարս օժանդակեաց ։ Նաև զփուշն դաժանաբոյս ընդ ծաղկածինն վայրից դրախտին ։ Նաև զարիւներանգն կարմիր ՚ի տարացոյց խակութե մտաց յանցաւորին, և պատերազմական փրկչին մարտի նշանակ ։ Նաև զդժնդակատեգն սևեռս, ՚ի թեւադրութի նահանջման անարգելն ձեռաց, որ ներհակ հրամանի արարչին ձայնի յանդգնեալ ձգտեցաւ ՚ի փայտին պտուղ ։ Նաև զսպունգն դառնաթօրմի, ընդ ախորժելի քաղցր ճաշակմանն ։ Նաև զարկանելիս ըզգեստու արարչին ծնողի ՚ի շուք պատկառանաց պարտաւորին մերօք եւայի ։ Օ այսոսիկ զոսին ՚ի միում տեսակի մասին, իբր զգանձարան կենաց պարգևաց փրկութե ձրից [74] յա̃ծունակն իւր քառադրուհի ամբարձեալ բերէ ։ Որպէս զի ըստ էական ամենանկատ տեսութե աչացն ՚ի յեւթնամասնեայ շաւիղ գթութե ՚ի սեռս ստորիցս ստեղծականաց անաղօտական ծագմամբ երգեսցի ։

ԻԶ․ Նաև [75] արդ՝ զգիր ընթացից պատմութե բանիս աստուստ կնքեսցուք ․ և փոխատրեալ այլաբանեսցուք ՚ի զանազան բարեբաստութիս ներբողական արհեստահիւսակ առասացութի, պատեհ պատշաճողութի, սկզբնաւորեալ ՚ի պրակապատճէն պիտառութե ՚ի պարս կարգի բանիս հոլովման, զի ՚ի հաւասարութի հարթուե միամասնեայ նկատման խառնեալ միացեին ։ Նաև [76] արդ ահա սկսցուք զկնի գծագրութե գումարահոլով պատմաբանութեան՝ խառնել դաւն ինչ դրութիս համառօտագիր գրուատից, նախ նմին իսկ կենդանարարն ա̃նագրութե ա̃ծեան

Խաչին, և զկնի սորին՝ որդւոյ Տիրուհւոյն և Ածածնին, ընծայ մատուցեալ պտուղ հաճութեան կամացն էութեան անճառն խնկութեան՝ զշուէշ շնորհաց, բերկրալից շրթանց, ՚ի հոտ անուշից : Բայց արդ՝ սկսանիմք ՚ի մէջ առեալ զմնացեալն մեզ իմաստս բանի այժմ յայնցանէ, որք նախ քան զմեզ հոգւովն վարժեալ, և վերին իմաստութեամբն կարապետեալ, նախակարգ յառաջադրութեամբ զայսն սքանչելի և խորին խորհուրդ՝ կանխահանդէս խմբիւ սքանչելի բանիւ տօնեցին : Նոյնպէս և մեք ըստ ազդման շնորհի մերումս իմաստից՝ 77 ՚ի վերնատուողէն բանից զօրութեամբ, բազմաձայնեսցուք երգողաբարբառ բարեբանութեամբս, այս խաչանիշ նորոգ նշանի, նորոգանուագ նկարս բանի, ՚ի կարգ գովեստի նորոգ ներբողի :

---

## Ծանօթութիւնք ՚ի Պատմութիւն Խաչին :

1. ՚Ի շինուած եկեղեցւոյ ուխտին օրհնութեան : ՚Ի ձեռ. օրին. չիք ուխտին օրհնութեան :

2. Բազմանհրդող ստանանէց : Կամեցեալ Պատմութեանս մեծացուցանել զյաղթողական տիեզերակալութիւն կայսերացն Վասլի և Կոստանդեայ, առ որովք դիպան անցք սոյ Խաչին Աղուանից, անդուստ ՚ի վերուստ առեալ ընդարձակէ զհանդամանս տէրութեան Յունաց՝ ըստ դրից երկրի նոցա, ըստ ծագման ազգի, և ըստ բազմավրդով պատերազմաց զոր ընդ այլևայլ ժողովուրդս մղեցին և տիրեցին նոցա, և առաւել ևս ընդ Բուլղարս : Սոյ զայնման ասէ, հորդաշփութեան արեան զորմին Եռասոյ, և զկնի դարձեալ, յորդայորդանն յանձոյ աղբերցն Եդովմայ, այլ և զքուն զԿոստանդնուպօլիս Սէիր անուանէ : ( Համար Ժ. Ժա : ) ՚Ի Յաւանայ սերունդք գոլով յունաց՝ որ ծնունդ էր Յաբեթի, և ոչ Սեմայ, զիարդ եդովմայեցիք կոչեցին : Անվայելուչ է կարծել թէ համաբարոյ գոլով յունաց՝ եղբայրասպանք իբրև զԵդովմ կամ զԵսաւ, ՚ի նորին անուն առակեցան : Այդ կարի թշնամիք են յունաց, և նախանձոտք թշուառացեալ քաղաքին, զորս մանաւանդ ՚ի գովեստ առնուն ընծայեալ պատմութեանս, և բարբարոս զնոսա առ այլ ազգս ցուցանեն, առաւել ևս առ հայս : Այլ թուի զայդ կարծիս ունել ՚ի գրեալն յառաջին Մակաբայեցւոց. ( ԺԲ. 21. ) ուր Դարեհ արքայ սպարտացւոց գրեալ առ Ոնիա քահանայապետ, ասէ՝ գտեալ ՚ի հին մատեանս թէ Սպարտացիք և Հրէաստանեայք եղբարք են՝ յաբրահամէ : Եւ թէ սպարտացիք սկզբնաւորք են ՚ի մէջ յունաց, ոչինչ ընդդէմ է՝ զնոցայն ծագումն առ համօրէն յոյնս ստորագրել պատմութեանս : Իսկ ասելն, որդւոցն Մինին արեանց, ցուցանէ զգլխաւորսն ՚ի պատերազմողաց ասպատակայց, այսինքն զբուլղարս : Զհետ այսր ասացեալն, որ յառաջ փոխեն Եդովմէ, նկարագրէ զգիրս Յունաստանի, մանաւանդ Կոստանդնուպօլսի, որ ՚ի հիւսիսի կայ Լիբիայ կամ Աֆրիկայ, և ինքն

երեւելի մաքառմամբք Վասլի ընդ Բուլղարս սպանեալ 'ի նմէ Թուփն, մերձին յաղթութեան՝ զոր պատմութիւն յիշատակէ, կատարեցաւ 'ի Թուին նկէ. այս է՝ 'ի 989 ամէն մինչեւ 'ի 1014 : Ըստ առաջին յաղթութեանն ամենայնութեան առնէ և Յիշատակարան Ասողկայն իբր 'ի նոյն կամ նմին Թուին. բայց կատարեալ յաղթութիւն անցք յետոյ են քան զգրել Ասողկայն:

8. Ցիւշափոխ փարոդէլէոս : Արժանի յիշատակոյ և կոթողս կանգ-նեսցին 'ի զանազան տեղիս: անօփանէրագէլծա, ոչ միայն գրեալս, այլ քանդակեալս. որով և անեղծանելի պահին: Յիշէ այս և 'ի Յիշատակա-րանի Ասողկայն :

9. Բնական Բարոյից : Իմաստութիւն կայսերացս այլ ընդ այլ փոփոխե-ցան բնաւորական հանդամանք իւրեանց : Ո՛չ այլասանութիւն է 'ի տեղւոջս, որպէս թէ զհեշտասիրութիւն յունաց 'ի պարկեշտութիւն փոխեալ իցեն. այլ զի ըստ յաջորդ բանիցն՝ առաջարկէ զբնական ընթացս հաստատեալ գե-տոց՝ ընդ այլ կողմն գնացուցին ըստ բերելոյ պատերազմական հնարից : Զայդ 'ի ներ արկեալ Վասլի պատմէ կեդրենոս իբր առ Նկէ Թուականաւ. զի զծոց գետոյն որ գնայր առ քաղաքաւ մոգլենաց՝ այլուր դար-ձուցեալ, փորեցին զհիմունս պարսպացն, և արկեալ խարոյկ կործանե-ցին անհնարին սասանմամբ. զոր ահա և պատմութիւն տայ 'ի կարգին, Նարինափ փարապոփոսարփ : և այլն : Ահա և այս անցք յետոյ են իբր 12 ամօք քան զգրութեն Ասողկայն :

10. Որդէս որարէնն : Ասաւելուբ է առացեալս, յայտ առնել թէ յայնմ ժամանակի ոչ գոյր 'ի Թագաւորս երկրի այլ իշխեցող հզօր եւս զրունացն :

11. Աշխարհապարունակ, Երկրապարփակ, փերիգերապար պարափիկոյն : Ձեռ. օրին. աշխարհապարփակ, փերիգերապարունակ երկրապարփակ : Ահագին ընդարձակութիւնք դիոփրոնի կիւ՜ պոսիդոնի, այսինքն համատարած ծովուն ծաւալեցին հպատակութիւ 'ի պէտս կայսերացս, որպէս սիրոն ծա-ռայեաց 'ի պէտս շինուածոյ տաճարին սողոմոնի : ( Գ. Թագաւ. Ե : ) Եւ բազմութիւն նաւաց իշխեցին ծովեզերեայ գաւառաց. և գրեթէ զամենայն երկրի զցամաքայինս և զծովայինս՝ 'ի մի հօտ, 'ի մի հարազատ հան-դարտութիւ ընդգրկեցին և այլն : Այսպէս ուրեք 'ի փիլոքսէնոս, զօրու-թիւ զինուց, և ուրեք 'ի փոյլո ափէն, անձամբ գնալով, զբազում մայրա-ցամաքի և ծովու չափեցին, գծագրելով նաև զշիրս տեղեացն : Այլև 'ի նշէլոս Բանից, գրաւորական յիշատակօք զանցս տեղեացն, և զյաղթու-թիւս, և զարժանիսն գիտելոյ աւանդեցին :

12. Ակնեալ, Եւ նա 'ի փիլո յնոպն, մինչեւ, դիսորաբար Բարչին, պա-կասի 'ի ձեռ. օրին :

13. Հարաւային Բանուէ : Յետ մեռանելոյ Վասլի 'ի գաւառին վերաց իբր 'ի նմին Թուականին, դիմեաց 'ի միւնոնէկէ ըստ գրելոյ կեդրենոսի, և ե-հար զամիրայս արաբացւոց, զամասկոսի, տեւրոսի, և բերիոսեայ : Պատ-մէ և Ասողիկ, պատերազմեալ նորա ընդ ամիրային եգիպտոսի, և հա-ւանեալ զարաբացիս և զլիբիացիս : Ահա և այս անցք գիտան մօտ յամս գրութեն Ասողկայ :

14. Զէղշիտրս արփոյից ն կոյսերոց : Հզօր բազումք ինքնակալացս ձգեալ ընդ հեռաւոր աշխարհս, կալան զեզերս արքայից բուլղարաց. և կայսերաց տարատամբաց, որպիսիք էին երկոքին Վարդքն. իշխեցին առա-ջին վիճաց՝ առ նմին Թուականաւ. այլև խոժելոց հաղորդ, այսինքն խազրաց որ էին առ դ. հիւսիսային մայրենի. և զայս պատմէ կեդրենոս յետ Նկէ Թուին : Այլեւ հոյխոխանաց առնէ. զոր եթէ իմանամք յաղագս անձնա-տուր լինելոյ Սենեքերիմայ արքայի Վասպուրականի՝ փոխադրելով 'ի Վասիլ զիւրն իշխանութեն, ահա և այս ըստ կեդրենոսի պատմի առ

23. Սկսեալ. Նախանձոր հրաւիրանօք, մինչև, զմարգարէածինն փեսանօղ, պակասի 'ի ձեռ. օրին: Նմանեցուցանէ բանս զերջանիկն Դաւիթ մակացի՝ այլում առն երանելւոյ, զոր կոչէ Եփրեմեան մէրէն հզօր տիփագէփ: Իսկ թէ ո՞ իցէ սա, Յակոբ Պատրիարգ յանուանէ եփրեմեան լերին 'ի միտսն բերէ զնմն Եփրեմ խուրին ասորի, և նմին պատշաճեցուցանէ զբոլոր ասացեալսն: Այլ ինքնին յիշատակեալ լեառն՝ իբր փողով ազդառնէ թէ Սամուէլ է նա, հզօր և հոգեկիր դատաւոր Իսրայէլի. որ յԱրիմաթեմ 'ի լերին եփրեմի ծնաւ, անդ կալաւ միշտ զբնակութին, և անդ թաղեցաւ: (Ա. Թագաւ. Ա. 1. Է. 17. ԻԵ. 1:) Նա ինքն իբր մակդիր անուամբ մարգարէածին փեսանօղ կոչի յազօթսն. 'ի բանն հա. 3: ուր եթէ մարգարէածին իմանամք՝ ծնօղ մարգարէի, ոչ ըստ մարմնոյ ծնողութին առի, այլ ըստ տուչութեն շնորհին. զի նա եա մարգարէանալ սաւուղայ, և նա ինքն էր հայր և գլուխ պարուց մարգարէից: (Ա. Թագաւ. Ժ. 5. ԺԹ. 20:) Իսկ եթէ իմանամք՝ ծնեալ, արդարև իբր մարգարէութբ եղև ծնունդ նորա բանիւ Հեղեայ քահանայի. (Ա. Թագ. Ա. 17. 18. 26. 27.) և մայր նորա երանուհին Աննա մարգարէական իմն հանդիպեցաւ շնորհի, այլև ինքն Սամուէլ ծնեալ էր 'ի լինել մարգարէ. մինչ զի դեռ մանուկ գոլով, վերին յայտնութեց եղև խորհրդակիր, և յամենայն Իսրայէլ հաւատարիմ եղև: (Ա. Թագ. Գ. 19. 20. 21:) Արդ՝ զնա կոչէ Երկրորդ սիւղէն Երջանկաց, այսինքն արանց երանելեաց յածպաշտութն և 'ի սրբութն, զորս և այլուր սովոր է Նարեկացին Երջանիկ կոչել, (բան. հա. 1. 3. գա. 3:) վասն զի յեա Մովսեսի առաջնոյ օրէնսդրի ածպաշտութն՝ երկրորդ եկաց Սամուէլ նորոգիչ ածպաշտութն յԻսրայէլի. որպէս և ասէ գիրն՝ առ նորին առաջնորդութբն յարեալ ամենայն տունն Իսրայէլի 'ի կոյս առ Տր. (Ա. Թագ. Է. 3. 4. 5. 6:) Սորին վասն 'ի մեռանել Սամուէլի՝ զայն մեծարանս ազգ արար նմա ժողովուրդն, զոր և Մովսեսի արարեալ էր: (Բ. Օրին. ԼԴ. 8: Ա. Թագ. ԻԵ. 1:) Եւ սաղմոսերգուն 'ի Մովսեսէ առ Սամուէլ հանդուցանէ զբանն. * Մովսէս և Ահարոն երիցունք նորա, Սամուէլ ընդ այնոսիկ որ կարդան զանուն նորա: Կարդային առ Տր, և նա լսէր նոցա. և 'ի սիւն ամպոյ խօսէր ընդ նոսա: || (Սաղմ. ՂԸ, 6. 7:) Իսկ յաւելուածն, առաջինն կաճառից նահապետաց, իմանի՝ Սամուէլ եղև առաջին 'ի կացուցանել զինքն իշխան նահապետս կամ գլուխ Իսրայէլացւոց, այսինքն զթագաւորս. զի նա օծ ինքնին զերկուս թագաւորս՝ զՍաւուղ և զԴաւիթ, և յայնմ հետէ ձգեցաւ գաւազանն թագաւորական, դադարելով դատաւորական իշխանութեն:

24. Բազմաց ոսկենափից ... պապանձեալ: ձեռ. օրին. ոսկենափաց ... պապանձեաց: Ասացեալս գովեստ առ տեղեաւս հայի առ նա ինքն Ստեփաննոս եպիսկոպոս, որ զձառ պատմութես խնդրեաց. և չափով իսկ է սատանօր՝ առանց աւելոյ մարդահաճութեն կարծիս:

25. 'Ի մէրանցն կորդուաց: այլ օրի. 'ի մէանցն:

26. Ասիայ, Եփեսեայ, Դաղմատեայ: այլ օրի. ասիայ եւն:

27. Անմարփնէելի ամրոցին: ձեռ. օրին. անմոփնէելի:

28. 'Ի նեցուկ ցայոյն մրայն յեցելոյ: ձեռ. օրին. յեցուցեալ:

29. 'Ի դրից դամբանէ: ձեռ. օրին. դամբարանէ:

30. Անուանն նախ նկարեցաւ: ձեռ. օրին. նախանկարեցաւ:

31. Բնակէր 'ի սէիր: Այսինքն հաճուքն կայր 'ի կոստանդնուպօլիս, զոր սէիր ասէ՝ յանուն մայրաքաղաքին եդովմայեցւոց. զորմէ տես ծան. 1: Առաւել հաճեալ կայր անդ ասէ՝ գոյգն նշխարաւ հողոյ երջանկին Դաւթի հօրեղբօր իւրոյ, քան թէ եղիւէէ ողջի սափառայ մաշկեկան

45. Սկսեալ, Ես համանման, մինչև, որոշէօրին սուրբեաց, պակասի 'ի Ձեռ. օրին։

46. Կարմրայարմար շաղաշարման։ Առաւել մեծապայծառաքան զմիւսեանս խորանն միայնութեն կազմեալ 'ի հիւսուածս այնպէս նիւթոց 'ի մի շարելոց և մանելոց, հաշակելի արար զուրիանոգէղ, զանձառ խորհուրդ խաչին Քնի՝ սքիլ պատարագաւն։ Զբարձրութեն ոսկոյն իբր յականց ղա- նեաց, 'ի բիւրեղաց կամ յախճապակի պատուածով գունագոյն նորո- գեաց, որով զգալի կամ երևելի կացոյց զբեթէ 'զեղեկնեկեան տեսիլն, որ անյօգն էութբ, այսինքն անզգալի էր՝ լոկ երևակայութբ ձևացեալ, ոչ մարմնական նիւթովք կազմեալ։

47. Զմշտափանի վերարկու. այսինքն 'ի միոյ կտաւոյ առարկեալ։ Ձեռ. օրին. զմիտափայնի. այսինքն միակտուր տասյնեալ կամ անկեալ։

48. Իբր զփայլուած լուսածագ բոցոյ։ Ձեռ. օրին. որպէս փայլուած լու- սոյ ծաւալման։

49. Մաքրաղար փեղկոյն. այսինքն ուր մաքուր անձինք միայն մտանեն։ Ձեռ. օրին. ուրէամաքուր։

50. Քանդակագործեալ քառաշարբն։ Զգրանդիս գրանցն կմ զսեամն զմերին և զկողմանցն՝ քանդակօք քառեակ շրթամբք (այսինքն զէհիւք) յօրինեաց շուրջանակի ծաղկանմամբ վերուստ 'ի վայր, իբրև հանդերձանք զգեստու հարսին՝ զարդարեալ ժապաւէնիւք։

51. Սեռակոփոր ոյլայլակ։ Զերեսս գրանցն 'ի կարմիր փայտից անշէ- լոց, և ազուցիւք փղոսկրէիւք՝ ըստ իւրաքանչիւր սեռի կամ տեսակի նոցա կատարելով, այլևայլ գունովք յարմարեաց։

52. Ոսկեփայլն հրաշերով։ Ձեռ. օրին. հրաշալերով։ Զմարգարտոյս սքւյ սեղանոյն արար յեգիպտացի գինակաց՝ ոսկեթել գործեալ և հրաշալի։ Երկնային, կամարաձև կամ 'ի բարձանց կախեալ. և Երկներարկու, երկ- րայնեկ տրոշմամբ, կամ կրկին՝ մեծ և փոքր։

53. Սեղանոյն զոտանդէլն զգեստն։ 'Ի բազմաթել բազմագոյն կերպաս- սուց արար զծածկոյթ սքւյ սեղանոյն, յորոյ վերայ հանգչի մարմին Քնի 'ի նշ խորհրդեան. ուսանի է վերընդունակ անէսս բնութե տէրունեան մարմնոյն. այսինքն գոյացութե մարմնոյն Քնի՝ որ ըստ տեղւոյ և տա- րածմանբ ոչ բովանդակի յայն սեղան, այլ տաւանց պարագրելոյ ուրեք՝ զատանի յանթիւ սեղանս, որպէս և առի յաղօթսն, բան. խե, և նոյն կայ յերկինս։ Սովին մտօք անդարագիր ասի և 'ի գով. Խաչին (համար. ժդ.) Այն ծածկոյթ կամ սեղան՝ ասէ, է իբր աթոռ սքնց փոխա- նակ տասնեռակաւոն, և այնր տրօտ լուսոյ՝ այս պայծառութիւն է, և Ճշմարտութե սրունն. այսինքն բուն իրն կամ իսկութիւն փոխանակ ստուերաց հնոյն, և կամ փոխանակ տուա կազմածոյ հեթանոսաց։

54. Սկսեալ, Նոյ զնար զմփուածոյ, մինչև, Նածուոցեալ նաղեաց, պա- կասի 'ի Ձեռ. օրին։

55. 'Ի նործրանոր տարանց տուատափակեաց։ այսինքն իբրև քիւ (աւշախ) 'ի կախեալ քարանց ձևացոյց զգմբէթն։ Ձեռ. օրին. տանդակեաց։

56. Զանէրեոյբն ոլոց։ Պեղանկար պատկերօք զմարդիկ կմ զՍուրբս սուսաջին ժամանակաց իբրև ներկայ երևելիս եցոյց՝ կենդանիս և ոււնօղս զգայութեան։ Եւ միով բանիւ ասել, զտանձարն ողջոյն ըստ ամենայն մասանց այնպէս յարմարեաց, որպէս թէ մի կերպարան՝ մի նիւթ իցէ. որով ձևացոյց զայն իբր վէմ կամ արձան մի, բայց ունօղ եօթնեակ ա- շաց՝ ըստ առակին զօրաբաքելի. և որպէս թէ բովանդակ ծոց երկնի էր, և արեգակն 'ի նմա շրջանակեալ, այնպէս լուսափայլ պայծառանայր ջահիւք և կանթեղօք։

57. Խնկոտ Էնոպատորաց Էոլոոց։ այլ տպ. Էանաւորաց. որ վրիպակ է։

58. Երկանի յորձորձանք. Յառաջ յիշատակեալ եպիսկոպոսն Սեւ_ երիանոս՝ զայս ամենայն շինութիւն՝ որ եղեն նիւթ պատմութեանս, բովան_ դակեալ կատարեաց : Յաղագս երկանի կոչմանն տե՛ս 'ի վեր. ծան. 42. և յաւելուլն՝ ըստ բարբառոյ Եսաւայ և Իսմայէլի, գուցէ իմանի, որպէս երկանունէին և նոքա, այսինքն Եսաւ կոչիւր նաև Եդովմ, և Իսմայել Հագար : Բայց ոչ Նարեկացւոյն համարիմ զբանս, զի նա վայելչագոյն եւս ունէր ածել յօրինակ զՅակոբ և զԻսրայել, զՍիմոն և զՊետրոս :

59. Փառօք առաջնոյն լուսանորոգելոյ : Ձեռ. օրին. լուսոյ նորո_ գելոյ :

60. 'Ի հրաւէր խրախճան : Ձեռ. օրին. 'Ի հրաւիրան : 'Ի տեղի գերեզմա_ նաց նախնեացն իւրոց կառոյց զտաճար սբյն Սեւերիանոսի, եւրև առա_ ցոյց խրախճան յարութեն նոցա :

61. Զուգաձայն կրծից : Զհրաշակերտ եկեղեցի սրբուհւոյ Ածած_ նին շինեաց զոյգ, կամ անդէն 'ի ժամանակի ձեռնադրելոյ իւրոյ յե_ պիսկոպոսութիւն. իսկ զՅովհաննու Կարապետին և Սեւերիանոսի ա_ րարեալ էր յառաջս վանականութեն իւրոյ : Իսկ զկենաց փայտն 'ի տաճար Ածածնին փոխադրեաց յաւուր մեծի ուրբաթուն. որպէս զի միանգամայն պատուեսցի յիշատակ երկոցունցն՝ Խաչին և Ածածնի, դաւանելով զոմն ծնօղ մարդացելոյն Այ, և զոմն ծանուցօղ նմին :

62. Զկրփնի զարդուքն ջրով : Պարզելի է շարադրութիւն. զոսկերս Մկրտչին սբյ, որ մկրտեաց զարարիչն զՔն ջրով, և ինքն մաքրեցաւ 'ի նմանէ հոգւով անդէն յարգանդի մօրն : Զայն մաքուր ոսկերս՝ վերա_ դրեաց ասէ՝ Գերագոյն դրան, այսինքն 'ի վերայ դրան տաճարի առաջե_ լոյ՝ 'ի մէջ սեանն՝ յորոյ վերայ կայր նաև խորան սբ Ածածնին : Այս է իմաստ բանիս, և ոչ թէ գերագոյն դուռն կոչի աստ սբ Յովհաննէս կարապետն :

63. Զերկրորդն աբէլ : Վայելչաբար զսբն Սեւերիանոս կոչէ երկրորդ Ա_ բէլ, առաջին մարտիրոս, և որդի վշտաց նորոյս Ադամայ Քսի. որ իւրով արիական նուիրմամբն, և հրաշալի տեսլեամբ բացման երկնից՝ եղև հրաւիրօղ յերկինս՝ մեռելոցն 'ի նախնին տղամ :

64. Մշտական կենցաղակցութեն, այլ տպ. կենցաղականութեն :

65. Սակեալ, և բոց հայեց, մինչև, անարգանի և մարտիրոսի, պակասի 'ի ձեռ. օրին :

66. Սկսեալ, 'ի զարմէ զօրեղաց, մինչև, վերջնոյն՝ Յովհաննէս, պակասի 'ի ձեռ. օրին :

67. 'Ի սրբոյ ուխտին փառաւոր : Թագաւորեալ եղբայրքն երեքին արծրու_ նիք մեծաւ հանդիսիւ հանգուցին զսբ Նշանն 'ի տաճար Յովհաննու կարապետին, որ էր եկեղեցի սբյ ուխտի վանացն :

68. Խառն ընդ երկրպագուօք հոգւոյ : Յայլ տպագիր վրիպակաւ ա_ ռանց պատուոյ եդեալ երկրպագուօք, իմացեալ լինէր՝ ինձ երկրպագութիւն կամ երկրպագողիս հոգւով. յորմէ եղև կարծել թէ նա ինքն սբ Նա_ րեկացին եւս առաջիկայ լեալ իցէ յայնմ տօնախմբութեան. յոր յաւելու եւս Յակոբ պատրիարքն յիւրում մեկն. եր. 742, թէ յայնժամ էր Նարեկացին իբր երկոտասան ամաց : Սակայն եթէ նա 'ի ՆԼԲ թուին էր ԺԲ ամաց, ապա 'ի ՆԻԶ թուին՝ յորում առար զմեկնութիւն երգոց եր_ գոյն, լինէր նա վեց ամաց. զի 26 հանեալ 'ի 32 էն՝ մնացեալն է 6 : Իսկ նոյն պատրիարք 'ի բուն նախադրութեան. եր. Գ. դնէ զՆարեկացին ծնեալ 'ի ՆԼԵ թուին : Այսպէս այլ և այլ գրողի երևին բանքդ : Բայց ըստ ուղիղ գրութեն բանիս իմանի, ընդ արտաքին բուրմունս ա_ նուշից և ընդ լուցմանց ջահից՝ մատուցին միանգամայն զհոգևոր պաշ_ տօն երկրպագութեն :

76. Սկսեալ, Ես արդ ահա ասացից, մինչև, 'ի հոգ անուանց, պակաս 'ի ձեռ. օրին:

77. 'Ի վերնագրութեանն բանից գրութեանն: ձեռ. օրին. 'ի փառողջն վերնոյ բանի գրութեանն: Զկնի, այս խոստանիմ, ձեռ. օրին. այս խաւէ: Արդարև որ նախ քան զմեզ վարժեալքն ասէ՝ վերին իմաստութիւն, ճարտար բանիւք մեծացուցին զխորհուրդ սոյն խաչին: Բայց և մեք զմնացեալն առ 'ի նոցանէ՝ նորոգ բանիւ արտայայտեսցուք՝ ըստ շնորհելոյ վերին զօրութեան: Կենացն փայտ և զօրութիւն նորա յայտնեալ է միշտ և բարձրացեալ, և ոչ եթէ այժմ ինչ նորոգ ճանաչելի կամ գովելի: Այլ զի այս խաչանիշ ընծայ՝ է նոր պարգև, նոր նուագս բանից նմին ընծայել արժան է:

---

Նորին ընթեր դրուն սոյնս առաջին յորինեալ հնչուն, ճառս ներբողի, ըստ առաջարկ Խաչի նշանի:

Ա. ՆՍՏՈՒՆՈՐ սկզբնաւորեալ [1] առ պատմական բանս յարակայ՝ նպաստաւոր ձեռնտու՝ խորհրդոյս առեալ զառածս պատգամաց ամովսականն եսայեայ համբուրիւ ողջունել: Նոյնպէս ասէ տէր, երկին աթոռ իմ է, և երկիրս պատուանդան ոտից իմոց: Նրդարև հրաշազնին զօրութիւն բանս ցուցանէ. ընդգրկեալ 'ի կայս կրաւորական երկկերպեան պատկերաց երկնի և երկրի էութեան: Նաւ զիա՞րդ զսա շարընթացելոց նիւթոց էութիւն մարմնոյ՝ հողազանգուածն քանակութեան մնեղէն էութեան հանգուցանել զօրեսցէ: Նաև անյօդական լուսանշոյլ պարզութիւն որպէս 'ի հեզս և 'ի խոնարհս ըստ անսուտն խոստման՝ բնակութեան տեղի ընկալցի: Նպա յայտնապէս խոստովանեալ հաւատասցի՝ թէ նախաճառս բանադրութիւն յապառնեացս խորհուրդ հոգւոյ ակամբն նայի: Յորում աւարտումն՝ գերազանցութիւն էութեանս՝ և 'ի ստորինս կոյս ծանուցաւ հանգուցեալ 'ի յօդատեսակ մարմնոյ խառնութիւն, և խոնարհ հնազանդութեան բազմեալ 'ի կառսն խոնարհութեան կենսակիր Տէր Խաչին: Վասնզի որքան էր զօրութիւն իշխանական անձնական գաւթի մարմնեղէն հանճարոյ մտաց տեսութեան, զանկիրն բարձրութեան երկնի գագաթան, և զանընդունակն լայնատարած դիմաց

երկրիս հարթութիւն, բովանդակապէս առ իւր պարփակել: Մանաւանդ զի փախուցեալ է նա յընթացս թևոց թեթևոց հողմոց անհաս երագամամբ 'ի մէգ մթութիւն իւրն ընտելութիւն հայրենի անծանօթծոցոյն սրբութիւն: Ապա ուրեմն 'ի հոգեւորցն լեզուէ բղխումն կայլակաց բանից վտակաց՝ բազմական էին դաւանեաց զերկին, և հանգչարան ոտից պատուանդան՝ զհրաշագան խաչս փրկական, անմահն իսկութեան յօդաւոր մարմնոյն խառնմամբ եղեալ օթարան: Նաև արդ եթէ զուրուականին տեսակ իրօրէն ճշգրտաբանեաց առ ճշմարտութեանն հաւատութիւն, և զունօղն էից պարունակեալ յէակաց՝ երգագրեաց բանիւ մեծն 'ի տեսանօղս երջանկագարմեանն ծաղիկ, մեք որքան կարօտանամք բացատական բանից զօրութիւն՝ համբաւել զճշմարտութեանս պայծառութիւն խորհրդոյ խաչիս զօրութիւն:

Բ. Զի թէ [2] 'ի տօթ անուն և հարաւային համբաւեալ բլրոյն բարձրութիւն ամովրհացոցն ամրոցի խորհրդականն սիոնի՝ դուշակողին միայն զերևոյթ ապագայից ըղձականութեանցն, այնքան ամենապատկառ պատուասիրութիւնք խորայել տօնէր, անզգայական տաւղաց երգարանօքն հնչէր, և զգուշապէս սրտի սարսափմամբ միշտ երկրպագէր, յարծաթունակ և յոսկիակիրն կորբան տապանակին ընդունարան 'ի սողոմոնեան կառուցեալ խորանն, անկատար քահանայութիւն, ըստ պօղոսի բանին քննութեան, և արդարութեան թլփատութեանն ուխտիւ 'ի քերմեղ քարոզիւր բնակիլ: Նաև դարձեալ ըստ այլ տեսութիւն մարգարէաձառ ակնարկութիւն, ծառք բուսոյ բնաւին անտառաց համայն հրճուանօք խրախուսեալ, ցնծան հոգեպէս, զյայտնութի երևման հաստչին ծանուցեալ: Նաև արդ՝ եթէ [3] այսօրիկ ստեղծուածքն փոքունք մեծն արարչութիւն, վայելչական և բերկրապատարն խնդութեամբ զտնկօղին և զհաստողի կենսաբեր դալրուստն 'ի բարբառ ձայնի անբան բերանոյ, և 'ի ձեռս անյայտս անտիպ տեսակի, և յոտս անքերօղս բնութիւն բարձից բազմադրուատ ձայնիւ նուադեն, 'ի ստուերականն դրոյ հրաման ընկալեալ, ապա որքան 'ի հրատարակին յայտնութեամբ կենսա-

տու ներքողեալ խաչիս մեծ նշան, անճնճական շնորհին գրաւական, և ծածկեցեալ փառացն յայտարան, ծնկովք կրկնելովք և պատկերովք պատկառեցելովք և զգայական դիմօք սքողելովք և ճնագիր երեսաց մեր գեղովք, 'ի խոնարհ մածուցմամբ 'ի հպումն հողոյ արժանապէս խոստովանեալ երկրպագեսցի: Քանզի յայսքան մեծամեծ շնորհս հաղորդեալ, և յերանութեան գլուխ ժամանեալ, ունող զօրինակ էին պատկերի մարդս բանական, զորպիսի ըղձական նուէրս ձայնի ոչ ընծեռեսցէ սոցին առ Թողի: Մանաւանդ զի և հոլովումն յադուածոյ բղխման երգաբանութեանս՝ ոչ [4] եթէ զարձան մովսիսագիր քերեալ 'ի քարանց կարծրանիւթ վիմաց կենդանասպառ օրէնի աղախնանուն հագարու՝ սարկածինն սինայի արտագծեալ 'ի թիւս որքանութեան չափոյ սիղղոբայիցն նախադասն ընտրականութեան, կասկածափորձ վարժողութեան, սկզբնաբոյս հասակի պատանեկաց պիտոյից ունի առաջի աչաց նպատակ, այլ զեւս գերազանցն նախագիծ նորա տեսութեանցն դիտմանց նախահրաւէր հրճուանաց: Ո՜ որ կեանս ծածկեալ յօրինականացն խուզողութեամբ բանն վկայեաց յաղագս անհիւթակիրն այ՝ յեղականն մարմնոյ թաքչելոյ: Որոյ աղագաւ մոլեգնականն եղեռնութեան ռոհմին յակոբայ՝ նախագուշակ բանիւ կշտամբի, այնք որք յանդգնութեամբ երագեալ փութային 'ի լրումն ճառի ձայնի պատմողին՝ խորախոյս միմեանց ձայնելով: * Եկայք արկցուք փայտ մահու 'ի հացն կենաց ||:

Գ. Յորում հեղուսեալ անայլայլակ նոյնութեամբ տէրն երկնի և երկրի 'ի բարձրն դիտանոց կառուցեալ 'ի մէջ ստորինս վայրի, և եւս յաւէտ անտի ամբարձեալ գովեալ գերունակութեամբ 'ի [5] ստորև վերինն վարագուրի նախագրոյ հայրականն ծոցոյ՝ պետն մաքրութեան համայն էակաց Յն. որ եմուտ 'ի սրբութիւն վերին սրբութեանցն: Վասն որոյ 'ի դիմումն երագման ընթացից նորին 'ի ստորինս վայրի եդոմականս կայից, 'ի բնակութէ հողածնաց մթնակերպ արիւնարակ ձորձովքս ծածկեալ, դասապետք հրեշտակացն անեղծից՝ ընդ. տեսիլ աչաց նկատման անպատմա-

կան պակուցմամբ յաւէտ պշուցեալ, ձայն ուժգնա-
հնչակ առմիմեանս սքանչելի հնչէին։ Ո՞վ է սա զար-
դարեալ 'ի գեղ պատմուճանի բոսորակայլակն որա-
կի, որ դիմեալ անցանէ ընդ այս վայր ահեղ սքան-
չելի. քանզի տեսանէին 'ի յիրան էին զխաչին պատ-
կեր։ Որով 'ի նմանէ և 'ի նոյն դիտմանէ ցուցեալ
ծանուցաւ 'ի հրաշօրէն հանդիսէ մեծ պատերազմէ
ապաքինիչն մահու զմրցանակն յաղթութեան պսակ
պարծանաց 'ի գլուխ ընկալեալ։ Առ որս և զպա-
տասխանի խաչապսակն փրկչի 'ի շար առաջնոյն յա-
ւելեալ հոգեկրին, ես եմ որ հարի զհնձան մեղացն
միայն. և հարեալ կոխեցի զթշնամին կենաց՝ գոր-
ծեաւս մահու պաշտաման։ Խոցեալ զնա քառասայր
սլաքաւ զօրեղ այս զինու՝ 'ի կորուստ զենեալ սա-
տակման մահու մահացուցչին զմոլար բռնութիւն։
Յայտնիկ ստուգագիր և դրուատականս գործ գո-
վելի՝ 'ի բացուստ 'ի հեռուստ իբր ընդ հուպ նայե-
ցեալ տեսանօղս զհիացուցանօղն խորհուրդ բանա-
կարգ բարեզարդութեան խաչիս քննութեան, 'ի զկնի
հետևօղս զհոգեշունչն տառ կարկառեալ անճառ-
գիտութեան պարզեալ ընծայեաց։

Դ. *Քանզի և [6] նոյն ինքն տէրն իբրև զնիւթ կե-
նաց նորոգութեան անկապուտ իշխանութեան առիթ հան-
գստեան վերստին յադին դրախտի դարաստան,
հաւանական կամօք էակիցն հօր՝ հանդերձ ինքնիշ-
խան հաճութեամբ անկիրն կարեաց վշտաց յանցանաց,
'ի յուս կենսունակ ա̃ծեղէնն աղբերի պայծառա-
պարծ պանծանօք արքայօրէն ճոխութեամբ յինքեան
ամբարձեալ։ Ամենատեսն իսկութեան գործօղն հրաշից
ամենայն գոյութեանց, յանդիման աչաց նկատման էից
ամենից, անպատկառ դիմօք, անդանդաղ ճեպով,
իբրև զըստեղն խնկոյ ծխոյ բուրելոյ, գայր 'ի կա-
տարած կտակի գրոյն ստուերի, հաստատել զարիւն
ուխտի նորոգ փոփոխման 'ի հրաւիրեալն տեղի։
Որով 'ի վեր ամբարձեալ 'ի քայլս հանդարտութեան
տիրական գնացից ոտից յեղյեղման, գերազանց
դարշապարացն յառաջ խաղացման, զկայ հանգըս-
տեան առնոյր խաչակիր հետոցն 'ի կատարս ծայ-
րից գողգոթայ։ Այս հաստատեալ զնոյն 'ի նկատեալ

տեղւոյն սեղան սպանդի, նուիրեցաւ 'ի վերայ նորին գառն անարատ, 'ի ծուխ պաղատման հօրն և ա̃յ գրաւ հաշտութեան: Վասն որոյ 'ի[7] հանդիպիլ այնմ տօսկալի անպարտական զենման տեսակի, ողողցան սաստիկ սարսափմամբ եղելութիք բնաւիցս բնութեան. և սաստկապէս ահիւ դղրդեալ սիւնք հաստատութեան հիմանց աշխարհի յայլայլութիւն նորոգ յեղյեղման: Այս և հուպ առ հուպ 'ի քթիթ աչաց միայն թարթափման, թնդեալ շառեմարան անքոյթն ստուերք ստորին անդնդոց, և 'ի մասունս յօդունս և զանազանակս հատեալ համառօտեալ 'ի սպառ հատուածէին բոյլք կառուցման կարծրանիւթ մարմնոցն սեւից, եթէ ոչ 'ի բանէ բանին ունողին զգոյս՝ սքանչելի փոփոխմամբ 'ի նորոգ գոյութիւն գեղեցկապէս արծարծեալ շրջէին: Վասն զի նորն ադամ վայելչապէս փառազարդեալ 'ի նմանահիւթ տնկոյն մահացուի, կամակար մոօք զքաղցուկն անարատ բեռօք սևեռեալ 'ի տերևասաղարթ տնկոյն տեսակ ամբափակ ուղերձեալ, դարձեալ զհրացանկն գաւիթ ընդարձակայարկ յատակաց վայրիցն ադինայ եբաց հնոյն ադամայ: Այլ զնախակապուտ բոյսն հեղասաղարթ պտղովքն անուշիւք՝ ուստի արտաքս նա անկաւ ըստ պարտուց, պիտակն 'ի պարտուց 'ի հասարակ անուն փայտն վշտացեալ, գերալըրապէս թագայօրէն պճնութբ̃ 'ի կառափեալ գագաթն՝ սեպհականեաց դարձեալ նմին մարդոյ յաւիտեան: Այլ 'ի սոյնս կառուցեալ 'ի գործի անիծիցն մահուան՝ կանգնեցաւ սոյաւ բռնութեան մահու ընդդիմամարտ և վանիչ ախոյեան: Ուստի յաւէտ նորոգմամբ կացին արարածք 'ի ձիրս շնորհի նախամարդոյն ստեղծողի:

Ե. Ո՜վ մեծի անպատմելի և քաղձալի երանութեանս որ շնորհեցաւ մեզ: Ո՛հ 'ի ձեռն բուսոյ արգաւանդաբեր սաղարթի, 'ի բնակութէ̃ հողակոյտ բլրոյն բասանու, և կամ բարձրաբերձ մայրիւք սանայիրասերմ ծառոցն, և կամ թէ զձիւղս ստեղնաձիգս[8] նոճիաճաղճախն անտառաց 'ի մէջ առեալ բանիս երգութեան գովեստիւք հռչակէ: Այլ փայտ մահատեսակ աչաց զգալեաց, ունելով թաքուցեալ առ

իւր զարմանան կենաց . յորում կենարարին մերում մարմնացեալ մարմինն մեղսօրէն դատամամբ, 'ի հայրենեաց պարգևաց սիրոյն երախտեաց ըստ պօղոսեան իմաստապատումն Ճառից՝ պատարագ մեզ փրկանաց և գրաւ Թողութեան մեղաց ։ Ի զանուանակն յանցման զանդրանիկն որդի՝ զմիածինն ծնունդ ծածուկն ծոցոյ՝ 'ի պարտիս պատժոց մեղուցելոց 'ի ծառն անիծից մահագործակն օրհնութեան աւիթն խաչի կամաւ ընծայեաց ։ Վասնզի առ սովաւ հրաման սոսկալի կամացն հօր՝ յորդւոյն աւարտեալ, որ շարժեալ 'ի փրկանս հօտին ցրուելոյ ածէր զսուրն 'ի վերայ հովուին սիրելոյ ։ Զարթի՛ր ասէ սուր 'ի վերայ հովուին իմոյ ընտրելոյ . զի քև զնա հարեալ սպանից . և զհօտն ցրուեցից, և դարձեալ իսպառ առ իս իսկ պարուրեցից ։

Զ. Յաղագս որոյ և զնոյն փրկօղ հովուոյ անուն նախաձայն յայտնութիւք տեսանողացն միայնակ իշխան ինքնակալ՝ գոյից տիրօղ տրոհմամբ տիրապէս՝ իւրաստեղծն հօտից տածօղ՝ բաղկաձիգ դառանցն ժողովօղ՝ 'ի հեռուստ նախապատմեցին, Տէր հովուեսցէ ասէ զիսրայէլ ։ Ո՞ւ տէր, որ հովուեսդ յակոբայ ընդ տանն եփրեմի, հայեաց 'ի խաշինս քոյոյ կամացդ արօտի ։ Նոյն դարձեալ յաւելու 'ի Ճառս ազգման այսմ հովուի գուշակման ։ Սա է ասէ՝ Ած Ած մեր, և սա հովուեսցէ զմեզ անփոփոխ և անսահման 'ի յաւիտենից մինչև յաւիտեան ։ Ընդ տոյն յարմարեալ և զերգ երգողին, որ յայտնէ քեզ զիղձս բաղձանաց հարսինն 'ի սէր փեսային ։ Ու՞ր հովուես քաջ հովիւ ասելով, ո՞ւր հանգուցանես ըզհօտ քո ընտրեալ 'ի մէջօրէի, հովանիւդ խնամոց նոցին կառուցեալ ։ Զսա և եսայի առձայնէ յերկրէ յերկինս ամբարձեալ . և հովիւն հօտին կարապետ անտանօր ընթացեալ ։ Սա որ հովիւս՝ լինի 'ի մեծէն յովհաննէ և զառն դաւանեալ . քանզի իբրև զգառն անմեղ 'ի զենումն ածաւ . և իբրև զոչխար անարատ 'ի սպանդ մատուցաւ՝ ըստ երեմիայի և եսայեայ ։ Այս հովիւս՝ հզօր Ճշմարիտ, Ճշգրտաքանուք միշտ նշանակեալ եդ զանձն իւր վասն ոչխարացն, իբրև զգառն անարատ 'ի վերայ սպանդի կենսատակս եա

չի։ Եւ զնախատինս նախատչաց հօրն իւր քամահրաղաց՝ որդին հարազատ՝ հնազանդ հաճութեամբ յանձն իւր ընկալաւ։ Եւ առաքեալ զհոգի մարդկութեանն [9] 'ի ձեռն նորին ընտրական քննութեան իբր զբուրումն անուշից հոտոյ կնդրկաց 'ի հաճունի հաշտութեան մարդկան փրկութեան։

Ե. Բայց զի՞նչ էր արդեօք պատարագարան կամ սեղան ընծայարան, ուր մատուցաւ զուարակս փըրկանք նորոգման։ Ոչ [10] 'ի բլուր բագնեաց բագմանիւթ բարձրաբերձ ձեռնաստեղծական սեղանոց կշռեալ քանակի անմահ զենումն, այլ 'ի փրկանիւթ քառադէմ չքնաղակերպ երկնահանգոյն սրովբէատիպ քառառաջեայ չորեքկերպեան անօթս խաչիս։ Ոչ 'ի սողոմոնեան սրահ տաճարին՝ որ զանբանիցն ջոկս ամփոփէր. այլ 'ի գիրկ միջոյ բնաւին աշխարհի, հողածին զարմիցս ծնողին, ընդ վերնայարկ անձեռագործ երկնից կամարաւ, հանդէպ ղամբարաց 'ի նմա կառուցեալ լուսածագողաց. որպէս զի սրբութեան յաւէտ առլցցին երկին և երկիր զանձեալ տօնացուածովք։ Աստի և զանաղօտ ծագումն ընկալեալ, և լոյս 'ի սմանէ էիցս զգեցեալ, ծխալից շարաւ մեշապին, շոգիամէգ մթին ստուերին մռայլ, շամանդաղ նսեմ խաւարին իսպառ իսկ ցնդմամբ 'ի բաց փարատեցաւ։ Եւ սուսեր մահաղէն մարտի յաղթանակ, ընդդիմակ միջոց միջնորդաց երկուց եղծման և նորոգման, կենդանարար նշան խաչիս ստոյգ ծանուցաւ։ Եւ ադամին վերին 'ի լրումն ներքնոյս փառացն լքման, [11] եղականապէս փոխաձևեալ. քանզի զհոգին ներհակ չնչական կարեաց անփորձ յանցանաց, 'ի հիւթ զանկուածոյ հողածինն մարդոյ 'ի լուսանորոգ խաչիս աշտարակ պարտաւորապէս առ հայր արձակեաց։ Վասն որոյ զապականագիր մուրհակն պարտեաց նախնոյն յանցանաց՝ աննորոգելի եղծմամբ պատառեաց։ Եւ զփախուցեալն յընտրականութեան դատման օրինին նախատուր կտակին, տիրաւանդ արարչապարգև սահմանին, ձգմամբ ձեռաց 'ի խաչն պարտեաց՝ զնմանասեր զանկուածն ըմբռնեաց։ Վասն որոյ երասանաւն հանդարտութեան զանկիրթն վարժից կալմամբ կապանաց հաւա-

տոյն յամ՝ յորդեգրութե կարգն վերածեաց ։ Այլ եթէ ոչ 'ի կամս ստեղծողին կամաւ նայեցող ստեղծեալ պատկերին կեցուցանողն՝ 'ի սահմանադրեալ միջոց պայմանի վճռին վրիժուց կանոնական անիծից զինքն հեղուսեալ, վերացեալ բարձրացեալ և մերկ մարմնովն պնդեալ 'ի խոշոր և 'ի դժուարակիրն այն ապաշխարան, սևեռակապ և խստապինդ բնութբ բևեռեաց։ Այլ սան որոյ և զընդվզեալն ապստամբութն 'ի համբերատարր հաւանութի, հպատակութբ խաչիս խորհրդոյ մատոյց մածուցեալ. առ որ և հայի խոստորնակին ձևոյ յայտանկատ տեսարան ։

Ը. Այլ արդ՝ [12] զի՞նչ է իմանալ իմաստիւք սրտի զհրաշանորոգ և զնծակերտ խաչիս եղանակ ։ Արդեօք տիրակա՞ն ինչ գոյացութի, եթէ սորկային սկզբնաւորութի ։ Ածականին դիտմա՞ն տեսութիւն, եթէ մարդկեղէն ինչ իմաստութիւն. արարչակա՞ն գծագրութի, եթէ ստորնային սկզբնաւորութե ։ Արդարև ոչ մարդկային յարմարումն ինչ իրի, քան թէ վերնային զսա նուագեմք ։ Քանզի 'ի զանազան տառից զշարադրեալ բանականիս էութի, որ 'ի զանազան մասանց շաղկապեալ աւարտեցաւ 'ի մի բոլոր լրութի, սա 'ի շտեմարանս հասեալ զգայութե նոցա իմաստից զքառահիւթ խառնուածոյ թանձրութե մարմնոյ 'ի թևս իւր կախեալ խաչակիրն ժուժկալութե, 'ի հոգի անօսր զսպեալ փոխադրէ. և իբր քառակողեան ստուար առասանաւ զխորոխտականն 'ի մեզ սանձեալ յարձակումն. և որպէս 'ի վհէ ամբարձմամբ հանեալ զծանրութի մարդոյս խակութե երագալացմամբ յիմանալիսն գերամբարձեալ՝ ածութենն ընծայեցուցանէ ։ Այսքիկ՝ ածագործ և անճառաշնորհ խաչիս են զօրութիք, զորս ընթաց բանիս զումարէ. մինչ զի զմոլորական մտաց խակութի զգաստ յարմարէ. զանբանական վրընջողութի ասուն կենդանեաց՝ ողջախոհաբար զգօնացուցանէ. զայլանդակականն օտար տեսութի՝ ընտանի զօրութբ աղխն համեմէ. զանհարթութիւն 'ի պատշաճականսն՝ ուղղակի միաւորութբ հանդէպ հաւասարէ ըստ քառադիրն ձևոյ պատկանատեսակ պատկերի իւրոյ ։

Մայլ մեծ բաց չափոյ նշանաւորն զօրութիւն մերոյ՝ կենդանաբար նը-
շանի Թծեան խաչիս այսուհետեւ յծնեայ յայն նախնոյ ըն-
ծայից՝ փաղչըրաքարեալ եանից օրհնութիւն :

Թ. ՄՍՏՈՒԱԾԱՅԻՆ անբաւ համձարոյն՝ ամենա-
նկատ տեսութեան աչացն՝ [13] յարմարական ձեւակերպու-
թիւ քնեան նշան : Որ եւ 'ի սկիզբն գոյանալոյն յեւէն
եակացս՝ տարածումն յատակաց գետնոյն կառուց-
ման, 'ի գուշակութիւն քումդ օրինակի 'ի կայս քա-
ռանկիւն կերպի հաստատեցաւ :

Ժ. Նարեքանեալ ես կենդանակիր ծծեան նշան
փայտիդ փրկութեան : Որ 'ի [14] հազարաւորս բիւրուց
բոցեղէն զուարթնոց՝ զգարմ զաւակի մարդկասերմ
բուսոց բանական բազմաթիւ բնութեան՝ քեւ դաստիա-
րակեալ 'ի կիրթ կցորդութ քում հաղորդութեան, խրա-
խոյս հանդիսիւ միախումբ դասակցութեամբ՝ միապար
երգակցութեամբ ընծայեցուցանես 'ի քեզ բազմերջո-
մաքուր օրհնաբանս :

ԺԱ. Գովեալ ես նշան փրկական փառացն Յնի :
Որ [15] մահատիպ տեսակաւ զկենացն ունիս զպարգեւ.
զոր յերգագիր տաւմն իմաստունն հոգիանիւթ հո-
սանօքն նախագիծ դիտմամբ նկատեալ զհրաշալի քո
խորհուրդ՝ բացերեւապէս լինի գոհաբան ասելով,
օրհնեալ է փայտն որով լինի արդարութիւն :

ԺԲ. Գովուատեալ ես նր. պանծալի նշան հրաշա-
զան խաչիդ : Որ 'ի [16] դրութիւն դիմակացն քառա-
կուսեան լծորդացն, զուգակշիռ հետեւմամբ, ան-
կարօտաձեմ ձախրանօք բազմատեսօղ յոքնաչեայ
քրովբէանիւթ ձեւացեալ կառացն, սերովբին սը-
րասուր սլացմամբ սխրասարաս սաւառնմամբ, ան-
տայթաքական գնացիւք՝ զքոյդ ճշմարտէր աքանչե-
լատեսիլ երեւումն կանուխ յայտնութեամբ : Նանզի
անիւ 'ի յանիւ խառնեալ խորհրդիւ, զդրութիւն խա-
չիդ անփոփոխադիր տեսակ 'ի յինքեան նկարէր, զո-
գի կենդանի էին ազդեցման՝ իբր զքո անդատա-
պարտ զաղափար յինքեան ընկալեալ : Նաեւ այլա-
սեռ նիւթոյն հալուած յելեքտրիան անուոցն կազ-

մամբ՝ զքո փոփոխումնդ 'ի բացուստ նկատեաց. քանզի 'ի վերայ քո հնչեաց բարբառ ձայնի Այ սադդայի: Աստի և յԱյ ոտիցն տեղիդ, գեղեցիկ երգաբանութիւք զանեղծն իսկութիւն 'ի քեզ պսակեն, օրհնեալ փառք Այն 'ի տեղւոջ իւրում:

ԺԳ. Նշանեալ ես նշան զօրութեան [17] արփիափայլ խաչիդ: Զոր տեսանողին նախագիտութիւն հոգելիցն բանի՝ աթոռ բարձրացեալ և վերացեալ ամբարձանիւդ ձգմամբ գուշակեաց Այ: Նա պաշտպանեալ սրովբէագումար շրջապարուք սաւառնացեալ թևոց ոլորմամբ զբազմեալն 'ի քեզ Երրորդական սրբերգենութիւք, տէր զօրութեանց դասուց անմահից՝ աւարտեալ ձայնիւ զնոյն դաւանեալ: Զորոյ իսկութիւն ծածուկ խորհրդոյ՝ պարզ և մեկին յայտնեալ յոհաննու՝ տեսիլ փառացն ասաց յոհ:

ԺԴ. Զօրացեալ ես և պաշտեցեալ անպատմելի պատուով նազելի նշան: Որ 'ի գուշակումն նշանակութեան քումդ խորհրդոյ զպատերազմական մրցման մարտին զտեսակ և զխնդիր վրիժուց տանն իսրայէլի գերեցելոցն 'ի բաբիլոնի՝ յաւարտումն ամանակի դարձին յակոբայ, [18] երիվար աշխետ կարմրերանգ գունոյ մարգարէին ընտրելոյ 'ի խորհուրդ ծածուկ նախածանուցար:

ԺԵ. Լակցին փառաց մեծութեան հօր նշան պաշտելի: Որ նախ քան զՃշմարիտ շնորհացդ քոց յայտնութիւն, յօրինակին տեսութիւն հայեցեալ եզեկիէլի՝ և հրաշալի հիացմամբ տեսլե տուեալ սքանչելեացն 'ի փախուստ պակեալ շրջեցաւ. և 'ի [19] քեզ անդբէն վերստին 'ի ձեռաց անեղին զօրացեալ դարձաւ:

ԺԶ. Ընդ ածային [20] անաղօտ և անպարագիր մարմնոյն Քի միացեալ խորհուրդ պատուելի խաչիդ: Քանզի իբրև զերեակ նմին և տեսակ կոչիս կրօղդ ինքեան նշանակ: Վասն որոյ պաշտի և երկրպագի Ած չարչարեալ 'ի քում պատկերի:

ԺԷ. Թագ անթարշամ զարդու սիոնի՝ նշան գովելի: Յորոյ ապացոյց նախանշանակ մարգարէն ընտրեալ որոշեաց 'ի քարանց յոգնուց զփայլակնանշոյլն: Նա [21] զօրինակն Ճշմարիտ քև փառաւորելոյ 'ի քառատաշեն ղեքօք պճնեալ պաճուճեաց, 'ի բեր

շրթանց բանաձարակ ոռոձման, 'ի կոչումն քաւից զքեզ համբաւեալ ։ Յորոյ օրինակ քում անեղ-ծութեան զմայրն ընդ նոձոյն, և զսարոյն ընդ սօս-ւոյն 'ի պատճառ փառաց մեծին այ վերանուա-գեն ։

ԺԸ. Ժողովեալ գումարութե [22] բանական հօտից նշան արարչաստեղծ ։ Որ 'ի վաղնջուցն կանխութէ զքոյդ տպաւորեալ զարմանագործութի 'ի գումար-տակ երամոյ գառնածին հօտից տանն Լաբանու ։ Քանզի 'ի քոյդ նշան գեղերփնեալ զուղէշ սիգնոնի՝ քում շառաւիղի, որ 'ի գոյն արեան որակի ներկեա զազգս այլալեզուս բազմաթիւ զարմի ։ Եւ կամ զդարձեալս 'ի հակակայս խայտաբղէտութե մեղացն գունով, 'ի մի աւազան շնորհիւ մաքրութե զամենե-ցուն տեսակ ընկղմեալ՝ միում Քի քան թէ Իսրայէ-լի ընծայեցուցանես ։

ԺԹ. Նակապէս լուսով նորոգեալ քնեան նշան ։ Որ 'ի յանմատոյց փառացն այ լուսաւորեցար ։ [23] մինչ զի նկարագիրն կենդանաստեղծ երեսաց մերոց հոգի տէր քո 'ի պատկեր տեսանելի մերում քև նշանակի ։ Որ երբեմն նոյն ինքն 'ի քեզ է յայտնի հանգուցեալ, որպէս և դու ընդ նմա ես միշտ միացեալ ։

Ի. Լուսաւորեալ ես ամենազօր նշան խաչիդ փր-կութե ։ Որ 'ի սաղմոսանուագ երգոյն յորդորման զքեզ [24] նկար մարմնոյս պահապան 'ի մեզ ընկալաք նշան փրկութե, անմարտնչելի սլաքին հարման, և չա-րին աղեղան ներհակ դու վահան ։

ԻԱ. Խոստովանեալ ես [25] խորհրդարան մեծութե էին, և նշան պարծունակ մահու յաղթողին ։ Քան-զի քև ձիաւորեալ գունեալն ձորձով ըստ մեծին յակոբայ յարիւն խաղողոյ, արագ ընթանայ 'ի դըժ-ուարակոխ մթին շտեմարան խորին դժոխոց՝ ած-ային հոգւոյն լոյս ծագեալ ։ Որ և դանիէլ աղ-դեաց մեզ յստակ, որ կայ 'ի խաւարի, և լոյս իւր ընդ նմա փայլէ համարձակ ։

ԻԲ. Ծնօղ զմեզ վերստին 'ի մահն Քի նշան ա-րարչակիր ։ Որ [26] սկզբնարարն բարեաց Յս մկր-տութի և բաժակ լուացման մեղաց և արքման կե-նաց զքեզ դաւանեաց ։ Եւ զկցորդութի փառաց

խնդրողաց որդւոցն որոտման, զկենսաւնակ խորհուրդ քո ազդեաց ։

ԻԳ․ Կացարան ²⁷ անբաժանելի հրաշից անմահին յոխ նշան անպարտելի ։ Վ՛անզի քեւ գօտեւորեալ միջապինդ ամրութբ բանն մարմնացեալ, տիրեաց յոքնաթիւ ազանց հեթանոսաց ․ 'ի շնորհ որդեգրութեն ծնողին իւրոյ զամենեսեան զմեզ հրաւիրեալ ։

ԻԴ․ Հանդիսակիր նահատակութեն նախկին վկայելոյն ²⁸ խաչ անեղակերտ ։ Վ՛անզի 'ի քեզ ծանուցաւ բեւեռեալն ած՝ մարդ երկրորդ՝ ստեղծիչ առաջնոյն ։ Եւ նա որ տարատրոհեաց 'ի կենաց դրախտէն զկողին պարտակից, նոյն դարձեալ 'ի քեզ զմահակիցն ինքեան յայն վայր ցանկալի եմոյծ հրամանօք իւրովք վերստին ։

ԻԵ․ Ձօնարան ընծայամատոյց ²⁹ զատուինն անմահի խաչ ամենազօր ։ Վ՛անզի լրումն և սկիզբն առաքելոց և մարգարէից, մաքրութեն կարապետն և առարչին նախընթաց, զբազմեալդ 'ի քեզ զառն անարատ այ և հօր, 'ի մկրտութեն աւուր մատամբն յայտնեաց ։ Զի բարձօղն մեղաց ընաւին աշխարհաց՝ զանձն իւր 'ի վերայ քո պատարագ նուիրեաց ։

ԻԶ․ Ղամբար անշէջ և անստուեր բոցով պայծառ փայլատակեալ նշան ամենազօր ։ Վ՛անզի 'ի քեզ անպարունակն ած մարդացեալ՝ ³⁰ արտաքոյ բանակին ածութեն ամենածախ հրոյն 'ի չարչարիլն ողջամբ կիզեալ՝ սրբութի մեզ ցուցաւ ։ Որ և անմահն անշնչութբ ըստ առակաւոր զոհիցն կիզման՝ զձարպ հնազանդութեն՝ հօր ձենձերեալ՝ զածային հոգին բուրումն անուշից կնդրուկ հաշտութեն նմին ախորժակ յերկինս արձակեաց ։

ԻԷ․ Ճեմարան և ընդունարան երկնից արքային նշան ածընկալ ։ Մեծ ³¹ են սքանչելիքն այ առ քեզ, քան թէ 'ի վրան սողոմոնի ։ Զի 'ի նա միայն աստեղք լուսատու շրջան առնուն ձեմելով, և վարագոյր տարածեալ 'ի մէջ փառացն այ ։ Բայց դու զծածկեալն 'ի նմանէ յայտնի շօշափեալ մեզ ընծեռեցեր ․ և 'ի ձաշակումն հաղորդութեն կենացն հացի՝ լուսաւորեալ զմարդիկ մատուցեր ։

ԻԸ․ Մաքրութի և բժշկութի ախտիցն մեղաց՝

քմահիր նշան կենսատու խաչիդ ։ Ի քեզ նորոգիչն խնամովք [32] 'ի ստորինս երկրի հետեւեալն ա̃ծ՝ զտիղմ չարութեան ժահահոտ յանցուածոց հրանշոյլ և անշէջ բոցով տոչորեաց ։ Ո որ հրեշտականութենն մաքրաքիաս աւետարանեալ կանուխ մեզ ազդեաց ։ Ծագեցից երկիւղածաց իմոց արդար արեգակն՝ բժշկութեան թեւովք սլացեալ ։

ԻԹ· Յանվախճան փառացն հաղորդութիւն զմեզ հրաւիրող երջանիկ նշան ։ [33] Առհաւատչեայ ուխտի խոստացեալ շնորհի աներկեւան ցնծութեան ։ Քանզի դու ես փոխանորդ գրաւական աննմանական բարւոյն հանգստեան ։

Լ· Նախահետեւօղ վերնական [34] անծանօթ և անընտել ամենանձուկ ճանապարհին փայտ նորոգութեան ։ Դու տիրապէս միշտ առաջնորդես զքեզ սիրողաց յերկիր կենդանեաց , խրամատեալ ինքնիշխան քո ընթացիւք՝ զցանկն անջրպետ սրոյ սրովբէին ։

ԼԱ· Շնորհատուր աւանդ լուսոյ պարգեւաց էին կեցուցիչ նշան ։ Որ թէպէտ 'ի [35] սահմանելի քառից տարերաց զգայականաց զետեղեալ որոշեցար , սակայն անդր քան զուշ խորհրդոյ իմաստից գերալրապէս բազմեցար ։

ԼԲ· Սնօղ յաղթութեան զօրեղն ուժգնութեան [36] տիրական արուեստից մարմնաւոր տնտեսութեան բնակաղին 'ի քեզ նշան ամենազօր ։ Որ 'ի յայտնութեան իբրեւ առակաւ պատմաբանեցար 'ի տեսողէն , զանցեալսն իբրեւ զապառնիս նշանակեալ, զառն հեծեալ 'ի ձերմակ երիվար · և զդիմեցումն ժպրհութեան վիշապին վանեալ ։ Աստի և խոստովանեցաւ 'ի վերին աթոռոյն շրջան բազմելոցն , տէր ամենակալ , որ էն և որ էր , և որ յապայն յուսով յայտնեցի ։ Քանզի արդարեւ 'ի քո դէմն լուսանկար փրկութիւքս այսօքիկ յանկեալ առլցան բարեաց լրութ̃բ 'ի փառս անեղին ։

ԼԳ· Զորեքծագեանս եզերաց [37] տիեզերաց կնիք պահպանական նշան ամենազօր ։ Որ խեթկիչ եղջերօք քառալծորդ զուգութ̃բ՝ յագեցուցանես զցասումն ա̃յ ըստ զաքարիայ 'ի չարին գումարս ։ Նաւ ձիրն

թաց երագմամբ 'ի կոյս չորս դիմեցմամբ՝ զազգաց և զազանց զսիրտ նուաճես ուղղութբ 'ի զգաստութեն միոյ երասանի պնդութէ ։ Նա զի և խորհրդական տեսչութբ՝ դէմք հետոց կառացն 'ի բնակութէ կոյս քումդ հանգստեան տեսաւորեցան ։

ԼԴ. Պայծառանշոյլ ջահ[38] վեհին ծագման փրկչին քոյ նշան անպարտելի ։ Որ վաղագեկոյց ազդմամբ գուշակեցար 'ի գրոյն նկարեալ. յորոյ օրինակ նաւեանն յեսու մանասեան՝ յովսեփայ բողբոջն անդրանիկ, իբր նախատիպ մերոյդ կտակի, զքարինս ամփոփեաց 'ի յորդանանէ՝ հնոյն իսրայելի նշանակ ուխտի ։ Բայլ զքեզ փրկութիւն յոյս երկնիցն փառաց նորոգն Ածն հեթանոսաց եւ եկեղեցեաց ։

ԼԵ. Ջրոյն կենդանւոյ[39] նորագործն աւազանի՝ մաքրարանդ նիւթ՝ նշանդ երկրպագեալ ։ Որ իբր խմոր անապական կենաց զանգուածոյ արկեալ յարգանդ մօրն եկեղեցւոյ, զառընկլմեալսն 'ի տղեղ գունոյն յեղեալ փոփոխես, և յընտանուն արեանն Ածի ներկեալ զարդարես. և նորոգ ծնեալսն ծածկոյթ լուսաւոր զքո զանձամբ արկանես ։

ԼԶ. Սահ կենսաչու ճանապարհի արդարոցն՝ խաչ
[40] փրկչին հեռեակ ։ Քանզի ախորժողացն զերկնիցն կայան՝ զքեզ եդ առաջի բանալիք բացարան. իբրև զընդդակից դաստիարակարան, տուեալ մեզ զմբդ տիրական հետոցն ուղղութե ։

ԼԷ. Սուր[41] ածամուխ բարձրացեալն այցելուէ, նշան աքանչելարուեստ փայլակնաձև փայլմամբ յեսանեալ. քառասայրեան գոլով բերանաւ, 'ի ձեռն աջողակ աջոյն Ածի յեղմամբ շողշողեալ ։ Որ 'ի փրկութե նորոգման մարդոյն՝ զջիլս ուժգնապիրկս չարին խստութե քև հատեալ, իսպառ պարուրեաց զօրեղ երթմամբ 'ի խոր խոցոտեալ. անպատուաստելի լուծեալ խորտակեաց ։

ԼԸ. Նաւն մեր մարդացելոյ արարչին[42] ազդուն ածային խաչ խորհրդական ։ Քանզի դու դիւրակործան բարուց հրեից խակամտութեն՝ գայթակղութի, և արտաքնախորհուրդ հեթանոսաց հռետորաց հանճարախոյզ խնդրանացն՝ յիմարութի ։ Բայց ապաւինելոցս 'ի քեզ՝ վէմ 'ի հաստատութիդ արձա-

նացուցիչ: Ի վերայ որոյ պօղոս շինեալ զհաւատս՝ 'ի խորհուրդ քում փրկութե զգործն աւարտեաց, և զմինն քո գործօղ անճառիցն մեկնապէս յայտնեալ քարոզեաց: Նաև զծայր կատարածի ընթացից բանին 'ի քոյդ գլխաւորեալ ուխտակցութի կամաց առաքչին: Վասնզի քև ընկալաք 'ի մեզ զքո զայ զօրութիւն և զիմաստութիւն:

ԼԹ. Տիեզերաց բաժանեալ ազգաց հրաւիրակ կոչման 'ի մի եկեղեցի նշան հաշտեցուցիչ: Վասնզի հեշտապէս մարդահոյլ հօտից բանի ունողաց[43] իբր գործի հնչման սաղմոսաց հոգիատաւիղ քնարահարութե՝ դու առաջնորդես, քան թէ անբանից ջոկաց հաւաքման: Վասնզի 'ի վայր դալարի անդորրապէս յուսով հանգստեան զամենեսեան գրգեալ պարաբես:

Խ. Բախճան[44] պատճառ հաշտութե մն անսկզբան ընդ ծառայն սխալական՝ նշանդ խաղաղութե: Վասնզի 'ի վերայ քո նուէրն բարեաց փրկողին արեան մեծաբարբառ առ նա յերկինս ձայնեաց: Նաև որպէս աբէլ որդի ադամայ՝ մահու դատաւ դուժատու, այսպէս և դու կարապետ կենաց յարութե ես աւետատու:

ԽԱ. Յանկացողաց երկնիցն փառաց[45] նորբական հետս շաւղաց նշան լուսապարգև: Վասնզի քև իշխանութի մոլեգնութե չարին պետութե յաւէտ կալտեցաւ. և ճանապարհ մոլից դրախտին լայն և ընդարձակ մարդկան հորդեցաւ:

ԽԲ. Դիւթ[46] ածային շնորհացն գուշակման քոառաքնք մարգարէիցն 'ի քեզ հանգուցեալ նշան հրաշագործ: Վասնզի զվաղաբարբառ երգոց նոցին կատարումն Յն հեծելութեն 'ի քեզ կրեցեր: Որ ճաշակմամբն լեղոյ ընդ զմուսեալ քացախին՝ զամենայնն 'ի լրումն ածեալ աւարտեաց. և փառաւորեալ մարդացեալ որդին այ, զերկրպագութի յիմանալեաց և 'ի զգալեաց՝ 'ի մի անուննն քո կրկնեաց:

ԽԳ. Փառք[47] անփոխանորդելի երկնից արքայութեն ժառանգողի նշան լուսապաճոյճ: Վասնզի զյաւաջադրութի խորհրդոյ կամաւոր մահուն իւրոյ Յն քարոզեալ, զայս քեզ անուն սեպհականեալ հաստա-

տեաց ։ Սրով և ժառանգեաց զփառս սրբասացութեան միշտ օրհներգութեան, որպէս 'ի վերնոց՝ և 'ի ներքնոց խաղաղարարն տիեզերաց, որ զթշնամութիւն հին 'ի քեզ նահանջեաց ։

ԽԴ. Քաղաքիս լուսոյ՝ նոր Երուսաղէմի՝[48] մահարձան անմատչելի ։ Քանզի զմոլարադանդ սատայօղն թիւր դաւանման՝ որք առաջս երևումն զմարմին բանին մարդկութեան համբաւեն շրթամբք նենգութեան, դու ցրես զնետս չարութեան՝ ընդդէմ կառուցեալ անվանն Տեառն արձան ։ Եւ հաստատես 'ի գիծ քառանման պատկառելի քոյին տեսութեան զանյայտն հեղուսեալ, զանմարմինն բևեռեալ, զանմահն մահացեալ, և մերայնովս՝ հօրն անեղի իսկակիցն որդի՝ 'ի չափն քո զհնազանդութիւն աւարտեալ։

ԽԵ. Ահա այսքանեօք և այսպիսեօք, և ևս ընտրականօք[49] բարեզարդ բանիւք միշտ բարեբանեալ քնեան նշան ։ Որ զձեռագործ պատուաստ պարծանաց պատուոյ պսակին՝ 'ի ձև պատկերի քումդ տեսակի մեք ժառանգեցաք ։ Եւ մուտն անձուկ դրախտին սենեկի՝ 'ի բոցեղէնն սրոյ պարփակեալ, քև մարդկան ազանց հորդեցաւ ։ Եւ[50] սիւնհոդոս կաթողիկէ անսասանական վերինն սիոնի՝ սիւն և նեցուկ նորին ամրոցի հաստատ պնդութեան դու խարսխեցար ։ Սամն այսօրինակ խոստովանութի յօդակապս բարբառնութեան՝ փոքր և նուազ է քումդ հիացման. որ գերազանցդ ես բանից գովութեան ։ Զի թէ ստեղծիչն էութեան 'ի քեզ ծանուցաւ, ապա զո՞րպիսի շնորհս ընդունել խոստովանեսցի երկրածինս մարդ 'ի քոյդ վստահացեալ անեղծ զօրութիւն ։ Ապա[51] այսուհետև գերազանց սմին նուազաց, իմացական մաքուր նուիրօք, և մտաւորն պատարագօք օրհնեալ խնկեալ և գովեալ ես 'ի սահման անաւարտ և անստուեր յաւիտենին ։ Նշան պայծառափայլ. խաչ տէրունական. գործի փրկչին յաղթութեան. նեցուկ մեր հաստատութեան. ցուպ բարի հովուութեան. կնիք ամուր պահպանութեան. դրաւական միշտ խաղաղութեան. պաշտելի հրեշտակաց և մարդկան. ահարկու դիւաց դիմեցման. դատապարտիչ նոցին յաւիտեան ։

ԽԶ. Օրհնեալ[52], ես փայտ կենաց. որ դու միայ-

նակ, լուսոյ ընդունակ, 'ի փառաց անքակ, շնորհացն գտակ, երկրի երեւակ, ծագմանն դիտակ, արարչին խօսնակ, միջնորդ համարձակ, ամուր աշտարակ ։ Սան որոյ 'ի յաւարտումն լրման շրջանակի եւթնեակ դարուց վախճանի, յորժամ բնութ՟ի նիւթոց լուծանի, միայն դո՛ւ 'ի նոցանէ հիւթ աննիւթից վեհագոյն, ձկտեալ ձգիս 'ի բարձունս երկնից փայլակնանման 'ի տես հայեցման ամենայն էութե՟ յաւուր գալստեան անմահ արքային ։ Դու զյաղթանակ փառացն Յ՟ի յայնժամ 'ի քեզ լրմամբ առբերեալ, պարծեցուցանես 'ի պայծառութ՟ի քումդ տեսակի զքեւ պանծացեալսն ։ Դու փայլումն նշուլից անօրինակ քո գեղոյ յաշխարհ տարածեալ, տեսակ լրութե՟ մեծ լուսաւորացդ տարբերականաց՝ 'ի քոյդ ապաստանեալ տիրական ծագումն, աղօտանուազ եւ անծագելի ստուերիւ ծածկեալ մթանան ։ Դու մաքուր [53] ընտրութ՟նբ պատմուճանին, անդատապարտ համարձակութ՟բ, 'ի դէմս անպատկառ գեղոյ երեսաց, 'ի հոգի շնորհաց, 'ի յոյսն կենաց, անբերող պարտեաց՝ չարին յանցանաց, 'ի հանդերձ փառաց շնորհին հրեշտակաց միշտ երգեցողաց, զգուշական եւ աննիրհելի փառաբանողաց, զերկրպագուս քումդ նշանի զուգապարակցեմ ։ Ովերեւս՝ որպէս յերեկս աւարտման աւուր այսմ յաւիտենի, արժանի լիցուք եւ 'ի սկիզբն վաղորդայնի մշտատիւն ժամու՝ փառաւորել զքեզ կենսատու 'ի կանուխն ժամանութ՟ի եւ յանագանն յարաձգութ՟ի, 'ի գիծն լայնական եւ 'ի մակերեւութին հարստական ։ Որ ես միշտ բարետրական երգաբանութ՟բ երկրպագեալ, յՅ՟ի արեամբն մխեալ, եւ զէն նորին զօրացեալ, որ է 'ի քեզ, ընդ քեզ, եւ առ քեզ [54] 'ի միջոց տարածման երկնաթուիչ եւ փայլակնընթաց խաչիդ ձեւակի ։ Որով վարժէ եւ
55 յարմարէ զմերս կրօն անանջրպետ դաստիարակութ՟բ ըստ քումդ խորհրդի, անանջրպետ միականութ՟բ ընակեալ բազմեալ միացեալ՝ եւ ոչ հեռացեալ ։ Որով ըմբռնէ զարտուցեալքս 'ի լուծդ ածեալ ըղձալի ․ եւ ինքն ըմբռնի բովանդակապէս քեւ 'ի մէնջ աստ եւ 'ի հանդերձեալն ապառնի ։ Յաղագս որոյ 'ի գովեստ ներբողական ճառիս վախճանի՝ նմա փառք Յ՟ի Ք՟ի

բեւորէն հրաշալերան բղխող նշուլից ։ Ուստի երագ ընթացիւք հետոց հեռացեալ՝ 'ի վայրն անմատոյց յարփին վերին ընծայեցար Տր̃ ա̃ծամայր ։

Թ. Խրախճացիր յաւէտ հրճուանօք բերկրեալդ 'ի կանայս . որ [22] զժուարընդել դաստիարակեան խաչի վարժեալ կրթեցար . որդւոյ քոյ կցորդակցութե̃ միատեւակն ժուժկալութե̃ կրելով զերաշխէպ վշտաց ծնիցելոյդ 'ի քէն ա̃ծն՝ մշտաչարչարն մեռելութե̃ անձնատուչոր տօթով խարուկեալ . իբրև զորոշ անարատ քահանայական նուիրմամբ 'ի վերայ սիրոյ սեղանոյդ մատեար , առորերոյս և ատևագիտակ գեղմնաբարձ մաքուր պատարագ . 'ի ճգնաւորական վարս ողջակիզեալ , քան թէ 'ի սրոյ հանդէս խողխողեալ ։ Վասն այսորիկ 'ի նուէր քոյ զենմանն հրեշտակացն պարք պաշտպանեալ , ընդ առաքելոցն գումար դասակցեալ , զմիայն արժանիդ պատուեալ գովէին Տր̃ ա̃ծածին ։

Ժ. Խրախճացիր համայն տարփանօք բերկրեալդ 'ի կանայս . որ 'ի կոյս և յանարօր արգանդէ [23] բան բեղմնաւորեցեր՝ ցաւոց անխծից արմատ օրհնութե̃ . հօրն ադամայ որդի բերկրութե̃ ։ Վասն որոյ շնորհ ունելով քեզ օրհնեալքս 'ի յորդւոյդ քո փրկիչ աշխարհի , երանեմք քեզ Տր̃ ա̃ծածին ։

ԺԱ. Խրախճացիր անքաւ բերկրանօք հարսն լուսոյ առկեզարդ զգեստուք պաճուճեալ . որ [24] յօրէնս երկրայինս աղջաւոր կրից՝ զերկնայինն ածեալ մատուցեր , և զանմահն նմանեաց մնազանդուած ազգի մարդկութեան 'ի չար հատակի գետոյ գեղեցիկ զատեղն վայելուչ 'ի լիբանանէ մեզ պարգևեցեր ։ Ուստի զպատկեր նախահօրն 'ի քէն ստացեալ՝ նորոգ հաստատեալ , գոհաբանեմք զՏր̃ տիրամայրդ ։

ԺԲ. Խրախճացիր յողջոյն նախընծայ երկնայինն աւետաւորին , տաճար սրբափայլ . որ [25] լուսով ա̃ծականաւ ուռճացեալ լցար , և երկրաւոր մարմնով երկնայնոյն աթոռ կազմեցար . և արեգակնապէս հալովմամբ առ արուսեակն երագ ընթացար ։ Վասն որոյ բացեալ զբերան պառաւոյն ամլածին որդւոյն , օրհնէր զօրհնեալդ 'ի կանայս Տր̃ ա̃ծածին ։ Նաև դու լցեր զտունն զաքարիայ բարբառոյն գոհութե̃ ,

յօրինակ հանրական եկեղեցւոյ, որ է քո միշտ օրհ-
նաբան. զի երանեն ահա յայնմհետէ զքեզ ամենայն
ազգք ըստ բանի ա̃ծազգացիկ քում դաւանութեան.
սկզբնաւորմբ կուսից անարատութեան, 'ի բերկրեալ լե-
զուս շրթանց զուարթնոց միշտ բարեբանեալ նը
ա̃ծածին:

ԺԳ. Քանզի արդ եկեղեցի դասուց անդրանկաց [26]
զ'ի քէն մարմինն 'ի բանէն անանջատ համապատիւ
հօր փառաւորէ յերկս սրբասացս. առ որ հպաւոր
քո գոլով ահաւոր խորհրդոյդ տեսող՝ զանձառն ու-
րախութիւն յաւէտ վայելէս: Զի զոր նոքա թեւա-
ւքողելով դիմաց ծածկութիւ [27] 'ի բացուստ ակնար-
կեն, դու յաւէտ համարձակ նմին կաթնածիր մայր
ցուցեալ ծանուցար. և 'ի մէջ դաստակաց ձեռաց
որպէս զմանուկ զծերն հինաւուրց գգուանօք ընկա-
լար. եղեալ կառք անձնաւոր կայից բազմելոյն յա-
թոռ քրովբէից: Վասն զի [28] ոչ ընդ քեզ միայն,
այլ և 'ի քեզ. ոչ միայն փարեցաւ բազմեալ, այլ և
բնակեցաւ տաղաւարեալ. ոչ միայն միացաւ 'ի զան-
գուած մարմնոյ, այլ և մարդացաւ՝ առեալ զկեր-
պարան 'ի քէն սկսելոյ. ոչ միայն մի զօդեցաւ քո
յերկուց գոյութեանց, այլ և ընկղմեցաւ յանապական
անօսր էութիւն մարմնոյն վերբերութեամբ. ոչ միայն միջ-
նորդաւ անձինն ընդ հողոյ միաւորեցաւ դիմակ տե-
սակօք, այլ եռամամն խառնեալ էութեամբք միաւորե-
ցաւ անշփոթելի: Մի որդի մերովս բնութեամբ յա-
թոռ. հօրն իւր աջոյ յերկնաւորացն միշտ պաշտպա-
նեցաւ:

ԺԴ. Յաղագս որոյ և մեք երկրաւորքս զմատակա-
րարդ և զսպասաւոր մեծի խորհրդոյ երանեմք ըղ-
ձական երգօք՝ [29] զանժամանակն էութեան երջանիկդ
ծնող. որ զամենայնի և ամենեցուն պատկերայն հա-
գեցուցիչ երգօք՝ 'ի քեզ ընկալար, ոչ 'ի մանկէ, այլ
'ի լրութենէ. ոչ հատմամբ, այլ հաստատութեամբ. ոչ
բաժանաբար, այլ ամբողջապէս. ոչ փոփոխմամբ,
այլ փոխատրութեամբ. ոչ 'ի ծիրս սահմանի տեղւոյ,
այլ 'ի սեննեակ լայնատարր ոգւոյ: Քանզի զբերողն
'ի կշիռ ձեռին զերկիր և զերկինս տարար յարգան-
դի. և ոչ միայն 'ի տես նկատման աչաց նայեցար 'ի

նա, այլ և շօշափմամբ ձեռացդ ծանեար. ոչ միայն ողջունեալ զանհունայն շրթանց, [30] այլ և ըմբռնեալ. ոչ միայն զննեալ զհասարակաշէն խորան մարդացեալ բանին, այլ և անուանեալ կոչմամբ Տէ՛ր զՏ՛ն ա՛ծ. ոչ միայն տեսամբք ծնուցեր զանժամանակն ըստ աւուրց, այլ և աճման հասակի զնոյն ընծայեցեր։ [31] Ո՛ որ խոստովանի հանրական եկեղեցի զծնեալդ 'ի քէն ա՛ծ ճշմարիտ՝ ընդ նախեղակ գոյակն միացեալ 'ի տեսութենէ իմաստից քննութեն մեր փակեալ։ Յորոյ տիպն ապացուցի խաբօղն յակոբ ըմբռնեաց զմարտուցեալն ընդ իւր պնդապէս. և զանխուլ խորհրդով զա՛ծատեսն անուն ընկալաւ։ Նոյնպէս և որ 'ի քէն ծնեալդ մարմին 'ի յարգանդ սրբոյդ սենեկի ընդ ա՛ծ խառնեցաւ. և խաբեալ զեղումն՝ մարդկան թշնամին՝ մարմնով գերազանց նմին բարձրացաւ. վասն որոյ ոչ տեսօղ այ՝ այլ ճշմարիտ ա՛ծ անուանեալ, զամենեսեան յիսրայէլ անուն փոխադրեաց։ Սակս որոյ լի բերանով զպաշտպանդ փրկութեն այսմ մեծի խորհրդոյ՝ երանեմք զտիրուհիդ նը ա՛ծածին։

ԺԵ. Որոյ՝ [32] տեսչութեն այ նախագիծ՝ 'ի ծովէ քարն պատուական հրափայլ և սպիտակ մարգարտին մաքուր կերպարան գոյացեալ ցուցաւ։ Քանզի արդարև դու ես ակն պատուական 'ի յաշխարհիս ծովէ ընտրութեն. որ զա՛ծային հրոյն տարր կերպարան։ Ո՛վ որքան մեծ է 'ի քեզդ աւարտեալ խորհուրդ սրբուհի. զի թէ [33] առանձք մարգարէիցն հագեկիր յղացմամբ իսրայէլի ծնօղք ասացան, ապա դու որ զբանն ա՛ծ անձնաւոր՝ հայրենի բնութեն հպաւոր՝ 'ի սենեկի քում մաքրական մարմնապէս բացածանուցեր, զորպիսի արժանապատիւ գովութիւս ոչ ընդունիցիս։ Ո՛վ շնորհաշուք գեղով արփաւոր ծածկութիւ յանմատոյց գեղեցկութէն պաճոյճ փառփաղեալ. ո՛վ համեստ հեզութբ, խոնարհ ամբծութբ, կերպարանք լուսոյ 'ի հոգւոյն պարապօղեցեալ. ո՛վ զարդուք երկնայնովք ոսկեզօծ սրբութբ, արծաթափայլ մաքրութբ, ականակապ պսակ քեզ փառաց զբարձրելոյն հովանի 'ի գլուխ ընկալեալ. [34] ո՛վ քառեակ մանեկաւ նշուլափայլ մաքուր ուլանցն

յեռամամբ, ա՜յ հոգւոյ և մարմնոյ խառնմամբ, 'ի մինուԹն երից հիւսմամբ 'ի յորդւոյն լանջս Տ՜ն քո շնորհօք բաւլցեալ:

ԺԶ. Օրհնեալդ միայն 'ի կանայս շրթամբք [35] քահանայութեան մօր մարգարէին յովհաննու. փառաւոր և 'ի դասուց համազարմ նմանացեղիցս ցանկալի երգօք ներբողականս տաւղօք: Ոի թէ բանականս մարդոյ գոյութի՜ պատկեր ա՜յ 'ի սկզբանն ստեղծաւ, և այսր աղագաւ ստեղծողին զշնորհս կալաւ, ապա ես առաւել քեզ [36] պարտական եմք երկրպագութի՜ ունել շնորհ տիրամայր, որ ա՜յ 'ի ծառայի կերպարան ստեղծման եղեր պատճառ. առ որ 'ի լրումն աւարտման մարգարէական կտակն հասանիւր, այն զոր ասէ, եղիցի 'ի վերայ առն ձեռն քո, և աջ քո 'ի վերայ որդւոյ մարդոյ 'ի քեզ խրախուսելոյ: Աջ և կարողութի՜ն և քաջութիւն հօր միածինն 'ի քեզ հանգուցեալ, և զամենայն որդիս մարդկան վկայս և երկրպագուս իւր զօրացուցեալ: Այսն նկարագիր և կերպարանն հօր գոյութե՜ 'ի քեզ բնակելովն, սրբութի՜ և արդարութի՜ լրման աշխարհի ընձեռեաց: Ապա յիրաւի և արժանապէս հոգեշարժ քնարիւք զքեզ բարեհամբաւեմք ո՜վ ա՜ծածին:

ԺԷ. 'Ի մարդկային զարմէ [37] հրեշտակ երկնային. յեղծականաց սեռիցս անմահ սերովբէ. 'ի հողային նիւթոյ ոսկի սոփերայ. 'ի ծովային բերմանց շնորհալոյս մարգարիտ. 'ի յեսսեանն բուսոյ քաղցրապտուղ ծաղիկ. 'ի յաւուրց նախնեացն ձիռ օրհնութե՜. ցօղոյն հանդարտի ամպ անձրևաձիր. արևուն ծագման ակն արփիափայլ. մերկացելոյ այգոյն աստղ առաւօտի. [38] գիշերային մթոյն խօսնակ բերկրանաց. օրինի ստուերին տառ ճշմարտաճառ: Սակս որոյ իբր զնիւթ գործօնեայ այսքանեաց բարեաց օրհնեալ ես դու 'ի կանայս. նախաստեղծին մերկացելոյ՝ փառք անկապտելի. վշտացելոյ անիծապարտ մօրն՝ սփոփիչ քաւութե՜. որդւոց նոցին խռովութե՜՝ խաղաղութե՜ ձայնատու: Այլ արդ՝ ո՞ր բան բաղդատելով զանհամեմատ քո մեծութի՜դ լիցի կարող գերահռչակել. արարչին մայր. անհասին ծնօղ. անբաւին գրկարան. ամենակալին յանձանձիչ. փառազարդո-

ղին զգեցուցիչ. վերօրհնելոյն գրգիչ: Մ՛հա յաղագս
այսորիկ ըստ անսուտ քոյ բանի յիրաւի տացուք քեզ
երանի մայրդ լոյս:

ԺԸ. Մ՛նխրհելի դիտմամբ [39] տեսակ լուսալիր ա-
չօք նկատեալ. [40] կտակ մակագիծ անեղծ պայմանաւ
որձան հաստատեալ. [41] սահման յարակայ մեծու-
թեանն կցորդութե. երկուց միութեն անայլայ-
լականի կապ պատկանակիր. վեհին պատկեր կեր-
պիւ կշռորդեալ. [42] թեթև պարզուն հիւթիւ բաղ-
կացեալ. տառ տարբերական տողիւ ձևացեալ.
տումար տենչալի անսխալ դրոշմեալ. մատեան մե-
ծութե շնորհիւ նկարեալ. նամակ ընտրութե բանիւք
բարդեցեալ. արձան անձնական իմաստիւք զօդեալ.
կնիք մատանւոյ տէրամբ կերպագրեալ: Զգեստ
լուսանիւթ երկնից արքային. օթոց սրբութե անմահ
բնակողին. յարկ վայելչութե անեղ շինողին. [43] ա-
ւիթ մարդկութե բանի անեղին. գործի մարմնութե
վեհին բնութե. պատճառ պատշաճից անպատկառ-
ձգնութեց. օրինակ ուղղութե անայլայլակ վրիպու-
թե. անպակաս անձելութի լրման թերութե. խնկու-
հի երկնային կենդանեաց գաւառին. մասնակից շնոր-
հընկալ հայրական գթութեն. [44] անպարտակիրն ազ-
գակցութե երկնից վերստին. անամմանակն արգան-
ոի ծանուցող ծննդեան:

ԺԹ. Դու զհօրն լուսոյ զորդի հարազատ՝ 'ի սուր-
բինս կոյս աշխարհի մայրենի կաթամբ ջամբեալ դիե-
ցուցեր. և որպէս թևովք խնայական պահպանութե
զպարունակօղն պարփակեցեր: Դու [45] զկենցաղոյս
ընթացք ընդ լուսազարդ կենացն շաւիղ ձգեցեր. և
ըստ նմանութե արագման օդային թռչնոյ 'ի յան-
ցաւորաց աստի փոխեցար. և 'ի մէջ դասուց հրեշ-
տակաց ունօղ տյ յայտնեալ ծանուցար: Դու լու-
սարփի ամպով առ 'ի նոյանէ պատուեալ համբար-
ձար. և հողեղէն հաստատուած 'ի քրովբէից աղի հան-
դուցար. և 'ի կանանց ազանցն կերպից արուսեկին
տեսակաւ տեսար. և զննելի բնութե մարդկայնոյ
յանձառաշնորհ խորհուրդ ծածկեցար. և [46] 'ի ստեղ-
ծողէն քո և համայնից հպատակօրէն ձևով պաշտե-
ցար. և հաստողին ծագաց աշխարհի մայրօրինակ ա-

նուամբ ձայնեցար. և մեղուցելոյ կնոջն առաջնոյ տուանց յանցանաց զաւակ գովեցար. և ամենայն անբծաց ընտրութեան պսակ սրբութեան դու դաւանեցար. և [47] իբրև զհանդարտ երինջ անարատ արարչաւանդ լծոյն մատուցար. և իբր յաւանակ կամաց անբաւին ածութեան հետևեցար. և 'ի խորոց ծովէ աշխարհի չուշանական շաւղօք ամբարձար. և իբր 'ի դժնեայ փշոց խստութեանց յաշխարհիս զբաղմանց ծաղկեցար. և իբր 'ի դառն արմատոց երկրի քաղցրաճաշակ պտուղ յայտնեցար. [48] և երրորդութեան անտես թաքնութեան խորհրդակից սիրոյ կոչեցար. և ծածուկ հաւաքման բանին իբր լուսատու ձորձով պատեցար. և [49] անքակ էին տէրութեան սահման սկսման վերակարգեցար. [50] և 'ի սրբանեալ միջոց քո ստեանց զանկէան 'ի տաշխին ծրար թագուցեր. և 'ի կուսական քում բարունակէ զանմահարարն ողկոյզ հասուցեր. և [51] միջնորդ կենաց երկոցունց սքանչելապէս համարձակեցար. և հաշտողիչ 'ի խաղաղութի մրրկածուփ շարժմանց կացուցար. և խրախակից վերնոյն բարձրութեան անկապտելի անուամբ պատուեցար:

Ժ. Արդ յայսքանս և 'ի սոյնպիսիս, և յեւս ընտրելական երգս բանահիւսից գերահռչակեալ ես վսեմական վարուց նախընթաց և յառաջաշաւիղ նըածածին: Վասն զի որպէս երևեալն 'ի քէն [52] միածին անդրանիկ բնութեան հօր՝ սկիզբն ասի հետևման խաչունակ մահակիր ճգանց, այսպէս երանեալդ և բարեբանեալդ գերօրինակ ցուցման տեսակի ածակրօն կարգաց ծագեցար: ԺԱ. և զանմատոյց հուրն կիզանող [53] անապական ծաղկմամբ ծախեցաք. քև զարագեալն 'ի թևս օդայինս 'ի քաւընթաց կենդանիս տեսաք. քև զանկցորդն տեսականաց 'ի մարդկայինս կերպ նկատեցաք. [54] քև զզօրեալ բարձօղն մեղաց իբր զգառն ճաշակ ընկալաք. քև զատելոյն 'ի չարագործաց որպէս այ ճշմարտի երկրպագեցաք. քև զանծանօթն հօր տէրութիւն ազգակցապէս օրհնաբանեցաք. քև զմուրհակ պարտուց անիծիցն 'ի յաւազանին ջուր ընկղմեցաք. քև զանտեսն աչաց հրեշտակաց տղայական տիօք գգուեցաք. քև զան-

անհման բանին բնութիւն 'ի հասարակածին տեղ համբուրեցաք. քեւ զադամն նոր հոգեղէն 'ի չափ հասակի առաջնոյն տեսաք. քեւ զարեգակն արդարութեան կենցաղակից մեր կցորդ ստացաք. քեւ զանժամանակ բանին էութիւն սկսեալ 'ի դաւթայ պատմեցաք. քեւ զանհամեմատն մարդոյ պատկերի մեզ նմանատիպ գործով գրեցաք։ Արդ՝ այսքանեաց սքանչական մասանցս ճառեցելոց դու միայնակ պատճառ, անարատ կուսից նորատակ կրօնից՝ տիրամայր Ոբ. ծնածին։

ԺԱ. Քանզի[55] թէ չէր 'ի քէն աճեալ ուղէշն երկնային, ոչ էր պտղաբերեալ զանճաշակելին 'ի շըրթանցն մեր հաղորդութ. և թէ[56] չէր երեւեալ հօրն արդարութեան 'ի յերկնից, չև էր սկսեալ ճշմարտութիւն 'ի յերկրէ. և[57] թէ չէր յղացեալ յանփորձականդ քում արգանդի, ոչ էր մարմնացեալ. և թէ չէր յայտնեալ մերով բնութեամբ, ոչ էր շօշափեալ և ըմբռնեալ անհասն իմաստից. և թէ չէր կրեալ 'ի գիրկ բարձողաց հողեղէն բազկաց, ոչ էր ծանուցեալ. և թէ չէր համբուրեալ երկրաւոր շրթամբք, ոչ էր ճառեցեալ. և թէ չէր հետեւեալ 'ի մարդկան ընթացս, ոչ էր քարոզեալ էակն 'ի յէից. և թէ չէր թափեալ իւղն անապական 'ի վեհագունէն, ոչ էր զմեզ օծեալ. և թէ չէր խառնեալ զմերս ընդ իւրումն, ոչ էր մկրտեալ. և թէ չէր խրախուսեալ մարդն 'ի յերկնայնումն, ոչ եւս էր սրբեալ. և թէ չէր խոնարհեալ բարձրն 'ի յընտանի փառացն, ոչ էր վերացեալ 'ի ստորնայնոցս առեցեալն։

ԺԲ. Բայց[58] մարմնացաւ, որքան մարդացաւ. նոյն և յայտնեցաւ, ըստ որում ծանուցաւ. աւետարանեցաւ, ուստի փառաւորեցաւ. իսկ մաքրեցաւ, որպէս երգեցաւ. իսկ մկրտեցաւ, որ և վկայեցաւ. նոյն իսկ պատմեցաւ, որպէս ճառեցաւ[59]. իսկ տնանկացաւ; որով ճոխացաւ. իսկ հնազանդեցաւ, որով պաշտեցաւ. իսկ երկրպագեցաւ, որով խոցեցաւ. կենդանացաւ, որով թաղեցաւ. իսկ պատուեցաւ, որով պատժեցաւ. իսկ ամաչեցոյց, որով պատկառեաց. իսկ բերկրեցոյց, որով տրտմեցաւ. իսկ զգեցոյց, որով մերկացաւ. իսկ ողջացոյց, որով բեւեռ-

ցաւ • իսկ կանգնեցաւ, որով վտանգեցաւ • և [60] սլա-
ցաւ որպէս վերնային • Թռեաւ որպէս հոգեղէն •
ծածկեցաւ որպէս զանքնին • փախեաւ որպէս զան-
հաս • 'ի յամպս երկնից եդ զգնացս • գովեցաւ որպէս
միածին • բոսորաբուղխ կայլակօք ներկեաւ • անկից
վիրացն խոցով հարցաքննեցաւ • 'ի վեհից անմահ
հրեշտակացն հաւատացաւ • յաղթող մրցմանն և մար-
տի փառաւորեցաւ • դատաւոր արդարակշիռ յամենայն
ազգաց վերապատմեցաւ ։ [61] Վասնզի 'ի քէն հիմնա-
դրեաց զսկիզբն մարդեղութեան անեղն իսկութիւն • և
յընտրեալ անպատում շնորհէ զայս ամենայն ան-
փոխանորդելի պարգևական ձիրս ընկալաք ։ Դու քև
ամենայն այս պատրաստութիւն բարեբաստութեան
բազմերանեան յուսոյ հրճուանաց մեզ հանդերձե-
ցաւ ։ Դու զամենայն փառս երանական լուսոյ նշուլից վեր-
նոց և ներքնոց ծածուկ խորհրդոց բազմագովեսս
պայծառ յօրինման նոր արարածոց անճառ շինուա-
ծոյ նորա եկեղեցւոյ, 'ի քէն ծնիցելոյ կերպիս մերոյ և
բարձրացելոյ անուանն յոր ծնկովք կրկնելովք մա-
տուցանեմք ։ Աստի և քեզ բերկրեցելոյդ զսովորա-
կանն օրհնաբանութիւն բանիս երկրորդեմք ։

ԻԳ. Օրհնեալ ես դու 'ի կանայս, [62] գլուխ նոցին
պանծանաց, և պայծառ պսակ ։ Պսակ կուսութեան
մաքուր հարսնութեան • պսակ ընտրութեան անփորձ գո-
վութեան • պսակ անեղծութեան լուսոյ նմանութեան • պսակ
շնորհանորոգ էին ծնելութեան • պսակ երանական բա-
նին հօր մայրութեան • [63] պսակ նորա պանծանաց կենացն
բարձրութեան • պսակ պայծառափառ վարուց իմաս-
տութեան • պսակ տիրապատուաստ երկնահանճարն գի-
տութեան • պսակ պիտանական եկեղեցւոյ գեղեցկութեան •
պսակ պաշտելութեան սիոնի նորոյ զարդարման • պսակ
յոգնանկար յարփից եօթանց փայլատակման • պսակ
առաջնորդական վերնոցն ազգակցութեան • պսակ ան-
բծութեան շաւղացն արդարութեան ։

ԻԴ. Արդ՝ ամենեցուն [64] վերակարգելոց Թուոցս
այսոցիկ բնակարան բաղձալի, և երանելի, և ընդու-
նարան ընտրական կամաց անբաւին զքեզ խոստո-
վանիմք երկրաւոր ծնունդքս ստորաստեղծականն ա-
դամայ • որոց անհամար և անթիւ ազանց ամրական

պահպանական պարիսպ կառուցար ։ Քանզի յարժանահայց և յամենազօր քո բարեխօսութ̃իդ միշտ ապաւինեալ մ̃նամք 'ի հաստատութ̃ե, խնամեալք և հանգուցեալք ընդ հովանեաւ պաշտպանութեան ամուր պատուարի ն̃ր ծ̃ածնիդ ։ Պատուար պճնայարէն 'ի զանազան մաքրազարդ ականց յարմարեալ. պատուար հրապարփակ անմատոյց ընդդիմողացն հինից. պատուար բոցանշոյլ անհուպ և անհաս մատուցման դժնեայ դժրողաց. պատուար ամենահրաշ ըստ եզեկիելի, որ աղխեալ զմուտ քո՝ ճշգրտապատումն գրեաց. պատուար շրջապարիսպ ըստ դաւթայ, որոյ հիմն անշարժութ̃ե 'ի բարձրելոյն հաստատեցաւ. պատուար ամրակառոյց քաղաքին վերնոյ ըստ պօղոսի, որում զհանուրս բնակիչս արարեր ։ Քանզի զա̃ծ ծնար 'ի մարմնի, և զծնունդս մարմնաւոր սիովնի որդիս արարեր վերնումն հոգեւորի ։ Որոյ աղագաւ օրհնեցաւ արդարդ քո կուսութիւն 'ի շրթունս նոցին, և խոստովանեցար յամենեցունց մարմնարան և տաճար հօր իսկակցին ։

ԻԵ. Որով արդարապէս 'ի քեզ ընծայեալ զբան պատմողին, [65] եղեր մեր օգնական և տուն ապաւինի յուղխից հեղեղաց յաւուր անձկութ̃ե. մաքրութ̃ի կուսից և սկզբնաշաւիղ դասուց երջանկաց. մայր հիմնադրութ̃ե հաստատութ̃ե եկեղեցւոյ, և ծնօղ անարատ բանին ա̃յ ։ Օ քեզ յաւէտ օրհնութ̃ի միշտ պսակեմք 'ի նուիրեալ տեղիս սրբութ̃ե քում տաճարի, և 'ի թեւս պահպանութ̃ե լայնատարած քումդ մաղթանաց ապաւինելով, զձեռս մեր 'ի սմա տարածեմք. և աներկբայ յուսով հաւատամք ապրիլ ։ Արդ աղաչեմք [66] ընկալ զերգաբան օրհնութ̃ի մերումն լեզուի. և հաճեալ տացես սմա զձիրս շնորհաց սիովնի և բեթղեհէմի ։ Ուստի արժանացուք ընդունել մասն փրկութ̃ե յաւուր գալստեան մեծի յայտնութ̃ե փառաց անեղծի, փրկչին անմահի, քումդ միածնի, միոյն ա̃յ, ո̃ն Յ̃ոի ։ Եւ իբր զպատճառ սկզբնաշաւիղ այսքանեաց բարեաց՝ 'ի սոյն կամարի գեղապճնելոյ զքեզ պատուեսցուք անժամանակ էին բարձրացեալ ծնօղ ։

Նորէն միւսոյն 'ի միւսոյ գրոյ անուանն խաղոյ :

Գերազանց [67] չափոյ կշռման երկրային բնութե̃ն, և քրովբէականն նախադասութե̃ն եղեալ վեհագոյն . սրբութե̃ն պայծառ առագաստ փրկչին Բանի , և նորաւն խակ տեսաւորիչ վասն մեր . ծնունդ կրկնեցի արժանապատիւ քումդ պատկերի . հայցեա վասն մեր առ ծնեալդ 'ի քէն ա̃ծ 'ի մարմնի :

Բոլէից [68] յոգնաթիւ մասանց բերկրութե̃ն . ազգաց և ազանց արմատդ օրհնութեան . 'ի ծագմանէ փառացն երկնայնոյ անստուեր նշոյլ տարփալի շողեալ 'ի ստորինս տեղի . անորիշ հպմամբ մերձաւոր անմատոյց լուսոյ , անձառ խոստմամբ ապառնեացն յուսոյ՝ 'ի մահու պարտեացն զերծիչ զառ քեզ ապաւտան ծառայքս քումդ որդւոյ :

'Ի յերկրաւոր նիւթոյ մարմնաւոր վարուցն՝ [69] երկնայնոցն կրօնից եղեր հպաւոր . մարիամ առիթ տեսութեան նոցին զանզննին որդւոյն կերպարան : Աստի տեսին զանկէտն սկսեալ , և երանեցին զարմատդ և զպատճառ . յորմէ և մեք հայցեմք զնորոգութիւն կենաց , և պաշտպան զտիրամօրդ ձեռնտուութիւն :

Գլխաւորեալ [70] այսօր 'ի քեզ զիմանալին փարթամ մեծութի . որ սլացեալ հասեր 'ի բարձունս երկնից . իբր անընդունակ ապականութե̃ն և մահու լուծման՝ մարմին . յորմէ պատկառեաց ամօթով պարտիքն մահու . և ցուցար բնակիչ արժանապատիւ կենդանեաց երկրին՝ ա̃նդ կենակից Ք̃դ տիրամայր . արգահատեա միշտ զողորմութի որոց պանդխտիմք 'ի վիհս ներքին :

Սնող հրձուանաց [71] անթիւ խրախութեանց ա̃ծային անկէտն խոստմանց 'ի բուրաստանս անդատանաց տիրական տնկոյն . որոյ ստեղունք շառաւիղացն երկնային հնարից գերազանց . անդր մուծցես զքո դաւանողքս Ք̃դ տիրուհի մայրդ յ̃ոյ :

Բոտեմք 'ի քէն [72] աղերսիւ բանի , որ ես քաղցրալուր գրաւ աշխարհի . միայն երանեալ և բարեբանեալ , հօրն հաճութեամբ հովանաւորեալ . որդւոյն

ծնող. հոգւոյն վերընդունող. երրորդութեան փառացն տարօղ. վերանկարեալ զառ յաւազանէն անախտ արգանդէ զկարդացեալս անուն 'ի գիր մատենի վերնում դպրոցիդ : Դու[73] զերգագրութի սակաւամամնեայ այսր գովեստի արժան հաստատեալ միշտ անկործան սրբոյդ տաճարի. ընծայեալ մարմնոյս զմրաշարս գիծ, և զգայական շնչոյս զպատկեր բանիս : Ո ի խոր 'ի գոյից երկուց զուգելոց 'ի մի խառնութի միոյ կենդանւոյ, միշտ փառաւորեսցիս դու տովին օրհնութք, որպէս անեղծ պաշտօնէիցդ օրհնաբանութեամբ : Եւ երևս 'ի ձեռն զօրեղ քոյին հայցուածոց լիցի մեզ անդատապարտ համարձակութի յատենի մեծ և ահաւոր 'նք դատաւորին : Դու գտցուք արժանի անքիծ վարուք, և ուղիղ դաւանութեամբ՝ հաւատոցն հաստատութք հանդիպիլ և անդանօր ընծայիւք բանից քումդ երանութեան. փառաւորել ընդ քեզ և ընդ քոյին յանդիման դիմաց պաշտելի և պսակելի քում ա՟ծափայլ և լուսանշոյլ մեծ պայծառութեդ զէութի անքակ և անքննելի 'նք երրորդութէն 'ի միում ա՟րութե և արարչութեան : Որում վայելչական պատիւ, և գովեստ անդադար երգոց այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն :

Յիշատակագիր պատասխանւոյ Սորին ընծայական գրոյ Երջանիկ և շնորհընկալ Տեառն Ստեփանոսի, Յերեւոյ նորին Հոգեխնամողին վարդապետի :

ՇՆՈՐՀԱԶԻՐ 'էին[74] և հոգւոյ նորա ընդունակ, ընտրեալք և ներանձնացեալք այցելու : Ըստ հայցման հաճութե բարեսէր կամաց երջանկիդ, և գրութե նամակի ձերում պատճենի, յօրինեալ շարագրեցի[75] զպատմութեն գովեստ, և զճառքս ներբողենի : Նկարեալ հաստատեալ 'ի դեղ պատկերի դիմաց սոփեստի սպիտակափայլ լուսափառ դաշտի քարտենիդ : Մտրակեալ յընթացս սորա ասպարիսի զշրթունս գրչիս, անշուշտ խօսողիս, անքայլ ընթացողիս, անձայն հնչողիս, անդուլ պատմողիս, և

անսայթաքելի քարոզչիս։ Այլ[76] արժանացուցի զմին անջինջ յիշատակ զանուն անընչալի ձեռամբ կոչմանն տ̃ր Ստեփաննոս՝ ընթերցող մոկաց հզօր դիտապետ։ Որպէս զի մնասցես յարակայ 'ի սոյն համառօտագիծ մատենի յաւուրս անթիւս և յամս հազարաւորս իմով սակաւամամնեայ իմաստիւ։ Այս գրիգոր՝ յետին վարժապետաց և կրսեր բանասիրաց, որդի դստեր եղբօր հօր Անանիայի հոգեզարդ և մտավարժ փիլիսոփայի, և ըստ վարուց մաքրութեան կրօնից գովելոյ և հռչակելոյ։ Այլ ընծայեցի քումդ եկեղեցեաց զայս նուէր բարեաց բանից ցանկալեաց։ Զորոյ պտուղ վայելեսցես ախորժ բերկրանաց ճաշակմամբ յամեալ և յարակայեալ 'ի հոգևոր հրճուանս աղօթից։ Այլ ընկալեալ խառնեսցես 'ի յոգնահամբար զարդս ամենագեղս[77] երկնային գանձուցդ՝ զտարազ տեսակի տառիդ։ Այլ և յիշատակեսցես զանուն իմ տրուպ 'ի գաւիթ սիրոյ անձկութեան սրտիդ սենեկի, մինչ նորոգ մատծեալ զմեզ 'ի ձեռումդ 'մբ խորանի ա̃ծաբնակի հանդէպ սեղանոյդ արարչընկալի, զիս և զեղբայրն իմ զանդրանիկ զՅովհաննէս ցանկալի անուն 'ի միում կարգի, որ գիտականն է և հանճարեղ իմաստասէր քան զիս առաւել 'ի յամենայնի։ Այլ յամենայնի կեցցեն մեր անձինք ընդ քեզ. որպէս և քոյդ ոգի միացեալ ընդ մեզ[78] միջնորդաւ էութեան 'ի մի քրայ ընտրութեան հալոցի, անբաժին տեսմամբ և անորիշ սրտից շնչով, և անայլայլակ խորհրդով, և անանջրպետ կամօք խառնեալ, հաստատեալ և հիմնաւորեալ խորհրդով 'ի Ք̃ս Յ̃ս 'ի տ̃ր մեր։ Որում փառք յաւիտեանս. Ամէն։

Արդ քանզի[79] անընդել գոլով տեսուչ բաղձալի վայրիցդ և սրբոց խորանացդ, զթերին լրութեան և զպակասն աճելութե̃ յարմարման գրութեանդ աղերսեմ շնորհել։ Այլ ինձ տառապելոյս օգնեա աղօթիւք, որ յարաժամ դեգերիմ յընթեռնուլն.[80] իսկ գործոյ և ոչ փոքր ինչ ժամանակ սահմանեալ որոշեմ։

րեն ստուգապէս ճանաչել և գովաբանել զէութիւն նորայն, այնպէս նովին ճանաչմամբ չեն կարող ճանաչել ստուգապէս և օրհնաբանել զԱստուածածինն. որովհետև յերկաքանչիւրսն գլխաւոր նպատակ ճանաչմանն՝ է Աստուածութիւն, և առ իմանալոյ թէ զինչ է Աստուածածին, հարկ է իմանալ թէ զինչ է Աստուած :

Այսկօրինակ ուղիղ ընթանայ ձեռնարկութիւս նաև ըստ բաղդատութեան : Վասն զի եթէ հրեշտակք երևելեան ճանաչմամբն անհաս են յէութեանն Այ, և առաւել անհաս մնան առ Աստուածամայրական խորութիւն, յորում բաց 'ի ճանաչմանէ էութեան նոյ և Երրորդութեան նորայն անձանց՝ փառքն և անհասանելի խորհուրդ Մարդեղութ. զի Աստուածածին՝ իմանի Մայր բանին Այ անքակտելի միաւորեցելոյ իսկապէս ընդ մարդկայնում բնութեան. որ յանհունս առաւել է յէութենէն : Եւ զի ծայրագոյն իրք են այդ, ծայրագոյն և զճանաչումն պահանջէ. և զի գործ է պարզաբար անբաւական սիրոյ և հաճոյից Այ, նմին իրի և ոչ յեական ճանաչմանն Այ փառքն ըստ ինքեան, այլ յառանձին յայտնութենէ իմանի ըստ նոյ կամելոյն : Այսու ուրեմն առաւել ինչ գոյ իմանալ յԱստուածածինն իբր այսպիսի, քան յԱծ իբրև արարիչ ծանուցեալ և ըստ էութեան երևեալ. և այնպէս եթէ հրեշտակք արարչական ճանաչմամբն և եթ անկարանան զխորն Այ զննել և գովել, առաւել ևս զխորութիւն Աստուածամօրն ճանաչել և գովել ստուգապէս բաւական ոչ են : Եւ եթէ հրեշտակք անկարօղք յայդ են, այնուհետև մարդ հողեղէն իմ իմիք կամ զինչ կարող իցէ :

Այսպիսի է համառօտ տեսութի նախաշաւիղ բանիցս. մինչև յայն՝ տուր խրախոյս առնու ասել. Բոյց ոսկոյն եբթեոցէ բանս ուրտոն զօրեօցէ և այլն :

'Ի պարզաբանել մեր զմթին տեղիս՝ առաւել ևս ծանիցէս առաջեալքս : Համօրէն ժողովք սաէ՝ երանելեացն, որովք իմանոյ զհրեշտակս, որք բացայայտէ զնիս, պատուաբանեն Եկեղեցին, բազմազան գովասանական բանիւք եկեղեցւոյն, զաւազին ծագօղն կենաց ամենայն արարածոց, ևս և անզգայից և անշնչոց՝ որոց կեալ համարի պարհպանութիւն 'ի գոլ իւրեանց : Զայն գովասանութի առնեն հրեշտակք՝ ոչ յօգաւոր բանիւք բարբառոյ, որպէս մարդիկ, այլ 'ի նէշս բանից ըղձականութեց, հիւսմամբ զանազան իմանալի ըղձանաց հոգւոյ կամ մտացն. և զոր օրինակ ըզգայական սիրտ և կիրք շարժին 'ի հնչմանէ փողոց, տաւղաց և քնարաց, նոյնպէս հրեշտակք յէծայլին ճանաչմանէն շարժին յղձումն օրհնելոյ, և ցնծութք կերպարանափոխեն, գերագոյն օրինակաւ կամ 'ի վեր քան զնուագարանս կար փափաքեն գովել զԱծ. և պատճառ կամ նիւթ օրհնաբանելոյ զամենապատւեղծ տեսութիւն՝ առնուն զգոյութի կամ զեղանութի արարածոց, տեսանելով 'ի չափաւոր կատարելութիւս նոցա զանչափ կատարելութի արարչին, զիմաստութիւն, զկարողութիւն, զբարութիւն, զնախախնամութիւն նն : Զոր ցուցանէ և բանն ասացեալ առ Յոբ. (ԼԸ. 7.) * Յորժամ եղեն աստեղք ծերք, ամենայն հրեշտակք աստեղաց օրհնեցին զիս մեծաձայն || : ընդ եղանութե աստեղաց իմանի և բոլորից արարածոցն, զի ամենեքին հետք են կատարելութեցն Այ. և առիթք օրհնելոյ զնա :

3. Յոյծ ամփոփաբար : Թէպէտ և հոգի աննիւթ են հրեշտակք, զօրէն հրոյ անօսր, ջերմք 'ի սէրն Այ, երագունք միոք և 'ի կատարել զբանն նոյ, բնակութբ, որպէս և բնութբ վերագոյնք. անեղծականք, ըստ որում անմարմինք են, ոչ 'ի հակառակաց բաղադրեալք. և նշոյլ Եկեղեցւոյ, 'ի կարգի իմացականաց՝ երկրորդք զկնի Այ, 'ի նմանէ անընդմիջաբար լուսաւորեալք : Սակայն 'ի վերայ այսր ամենայնի՝ յոյժ աղօտ տեսութբ

ընկերին առ աստուածային բնութիւն բանին ԱՅ յօրհնաբանելն զնա. Ածու-
թիւն օրհնաբանեալ 'ի նոցանէ՝ կարծ հեռաւորութեան ծածկի 'ի նոցանէ ըստ պայծառ ճանաչմանն ։ Ահաւասիկ ըստ նախ ասացելոցն 'ի Լծ. 2. խօսի անէղծ զճանաչմանէ հրեշտակաց՝ որ վերացականն առի և 'ի գործոցն ԱՅ, և ոչ ըստ երանականին՝ որով դէմ յանդիման և պայծառ ճանաչէին զէութիւն Ածային ։ Իսկ արդ՝ եթէ հրեշտակք այնչափ զերազանցեալք քան զմարդ՝ անհաս են առ բնութիւն Այ վերացական ճանաչմամբ իւրեանց, որով և անբաւականք յարժանի գովութեան նորա, ապա ո՞վ ոք զնա Ածածինն՝ պատշաճաւորօքն յարգանաց իւրում զանհասանելին զայն՝ կարիցէ պատուել յաղթանակաւ երգով 'ի ճահ գովեստից, վայելչական գովեստից էն ։ Զնա՝ ասեմ, որ առաւելագոյն գտեցոյց զՔերովբէից հրեշտակաց, զմայրն Ածի՝ որ յաղթեցուցիչ գեղեցկութեամբ ընդ զինուս հրեշտակաց ։

Դ. Զուարճացեալ Քերէին ։ Արդ զուարճանաց երկնից աղբերին. զի առբանեալ արդարև կուսին ոչ միայն մարմնաւորն եղև որդւոյն Այ, այլև անեղին հաճութեամբ ։ Զխաղաղարարն ։ Անօթ խաղաղութեան կամ կարողութեան անճառահասական աստուածոյ մարմնոյ և արեան փրկչին ։ Զնշանաւորն կուսութէ ։ Նախաստարեալ Աստուածաձայն և անլուծանելի կուսութեան է նա Տիրամայրն ։ Զօրինակն Էդեմականէ ։ 'Ի նա կոյսն առաւել ապացոյց յաւիտենից երանութեան՝ որ կատարի միանալովն ընդ ԱՅ. զի յարդանդի նորա միաւորեալ Ածութեան ընդ մարդկային բնութեանն, ցուցաւ թէ հնար է և մարդոյ միանալ ընդ ԱՅ յերանութեան ։ Կամ, եղև նա օրինակ թէ ևս յաջողէ երանութեանն առաջուածն, այսինքն է՝ խոնարհութեամբ և մաքրութեամբ ։ Զհարսնարանն ։ Մա Տիրամայրն եղև առաջի հարսնանալոյ կամ միաւորելոյ Որդւոյն Այ էր փեսայ՝ ընդ մարդկութեանն իւր ընդ հարսին, և կամ ընդ համօրէն եկեղեցւոյ ։ անծանօթական, առանց ժամանակի, առանց լուծանելոյ բնաւ միաւորութեանն՝ և ոչ մահուամբ, ընդ հակառակն մարմնական փեսայութեան՝ որ 'ի մեռանելն դադարէ ։ Եւ ահա զայգեան գերափառ շնորհաց ընդունականն, այս է՝ զարարչին անքննելի անօրէնութեան ծնօղն, որ անհասութեան ծածկեալ կայ յամենեցունց, և ոչ նորին օրհնաբանքն Ածութեան հրեշտակք՝ իշխեն առնէ պատուաւորաբանել որպէս արժանն է, թո՛ղ թէ մարդ երկրաւոր 'ի կշխա բանից բերանոյ՝ եթէ ձայնիւ, եթէ գրով ։

5. Մարդն անքննաչեալ ։ Ըստ առաքելոյ (Ա. Կորն. Բ. 15.) * Հոգևորըն քննէ զամենայն, և ինքն յումեքէ ոչ քննի ‖ ։ Մարդն հոգևոր՝ կամ հոգևորեալ լուսով շնորհաց նա Հոգւոյն՝ ոչ է ճանաչելի կամ պատմելի 'ի շնչաւոր մարդոյ, ոչ ոք կարէ լինել ըմբռնել և ծանուցանել մարդկօրէն լուսով կամ զգայութեամբ զվերնանկ առն հոգեկրի ։ Ապա ո՞վ ոք 'ի մարդկանէ կարիցէ մտօք զննել և շրթամբք ճառել զնա՝ որ ո՛չ լոկ շնորհօք յինքն ընկալաւ զԱծ, այլ իրօրէն զլրութիւն բանին, խմա 'ի Թանձրացեալն, զկատարեալ բանն Ած յղացաւ մարմնովն յանդամոցի ։ Այս է մի և ևս հզօր ձեռնարկութեան, բաղդատութեամբ որպէս առ՝ 'ի փոքուէն առ մեծն ։

6. Յայս խորհուրդ ։ Հրեշտակք զխանէին առաքէն 'ի յայտնութենէն ԱՅ զմարդեղութեան խորհուրդ, այլ ո՛չ ըստ ամենայն հանգամանաց, զորս իմացեալ հետ զհետէ յորժամ կատարէին 'ի վերայ եկեղեցւոյ, հիմնայրին ընդ անճառ մեծութեան խորհրդոյն ։ Արդ՝ եթէ նոքա հիացմամբ տեսանէին զայս գործ ահեղ՝ թէ 'ի յայտնեալն ԱՅ, և թէ 'ի կատարման իրացն, ապա ևս անհասանելի է այն 'ի մարդկանս պատմել ։ Այս է երրորդ ձեռնարկութեան, առեալ 'ի փոքրագոյն իրացն. եթէ առ՝ հրեշտակք կարօտացան ուսանել հետ զհետէ զայս խորհուրդ, և միշտ

հիմնեալն, ևս առաւել անխախտ և անձեռնելի է մարդկային բանից:

7. Սանդուղք երկնային: Սանդուղն խորհրդոյ առնում երթալ զգուշութեամբ, ոչ հայելով ոչ յանբաւականութիւն իմ, և ոչ յանարժանութիւն. ոչ եթէ զվայելչականն չափել զօրէնս, այլ զբազմաձայն սրտի միաւորութեան նաև նմա՝ որչափ կարեմս, ընծայ օրհնութեան. յորում ոչ ազնուութիւն նիւթոյն խնդրի, քան թէ յօժարութիւն կամացն: Ծառայ փեսային, ընծայ 'ի յայտնութիւն կամ 'ի ցոյց փառաց Աստուծոյ: Եւ յայդ համարձակիմ, զինելով զի և ըստ սաղմոսին՝ երկինք թէ և անկենդանք՝ առանց լեզուաց պատմեն զփառս Այ ընդարձակութեամբ իւրեանց և բարձրութեամբ և պայծառութեամբ: Զինչ մեծ՝ եթէ և բանաւորս ես երգեցից նուաստ ձայնիւ զփառս Տիրամօրն:

8. Ցանտրէն դուռն: Այս ոչ այնչափ զբարձն յերկնապատ անկանէ՝ քան որ 'ի գերութիւն բարեկաց. զի զայս ցուցանեն բառքն՝ անտրէն, ցի մերձաւորն, և փորոգրէսն, այսինքն զերեալ 'ի հայրենեաց, և անուն յադ դայի. յորոյ անուն կոչէին զարձեալքն 'ի բարեկամէ, և ոչ զարձեալքն յեղյեղապատ: Ցայնմ զարձի ժողովուրդքն անուանին զփառան Այ 'ի նոբանկերտ տաճարին, և օրհնեցին զԱծ: Այսպէս ևս այժմ յերկնել որդւոյն Այ մարդկութեամբ 'ի կուսէն, որով եղև զարձ գերութեան հոգւոց, հարկ իսկ է զձայն ցնծութեան հնչեցուցանել մեզ զզուարթականաց՝ կից ընդ անմարմնոցն: Քանզի և երկիր՝ երկնից հաւասար եղև՝ զՏէրն յղեղեան կրելով. վասն որոյ խորհրդոյ առնումք պարապեալ լինել մեք մարմնաւորքս ընդ անմարմնոցն, և կատարել հոգևոր ցնծութեամբ տօնս տարեկանս՝ ըստ փառացն կամ երևման փրկչին, ցերեկին՝ փեսաներ, առ մեզ երևելիքս կամ առ մարմնաւորքս, կամ երևելապէս կատարելով զտօնս երևելի անօրէնութեանց փրկչին, որք յաշխարհի գործեցան: Ի յիմնաւ՝ ծած-կեցելոյ. առ անմարմին հրեշտակս, կամ աներևութաբար տօնս և օրհնութեան ասելով ծածուկ խորհրդոց մարգարէութեան: Կամ այսպէս. մարմնով կատարելով տօնս զգալի համեմատ և օրհնութեանց, և հոգւով զծածկեալ խորհուրդսն քննելով: Այսպէս ահա երկրաւորս եկեղեցի՝ հոգևոր տարփմամբ ձայնակցեալ ընդ երկնաւորացն, քեզ ով Աստուածածին՝ երգեսցուք այժմ ձայն ուրախութեան, այսինքն օրհնութեան, որպէս և մաքուր հոգւով ընծայեալ, հակառակ աշխարհական երգոց:

9. Զ'ի քէն մարմնացեալն: Զմարմնացեալն 'ի քէն զՈրդին Այ խոստովանեսցուք և գոյացապէս տարար յանձնի անդամնդիւքն ով, և ոչ ըստ շնորհաց՝ ըստ նմանութեան: Զայն՝ զոր երկին և երկիր և ծովք և անդունդք տանել ոչ կարէին. զորս և յովք առակաւ ծանոյց՝ առ 'ի զանբաւութիւն իմաստութեանն Այ, որ է ինքն Որդին, հաւասարել առնել ասելով 'ի բերանոյ անդնդոց, թէ չունիմ զնա. և դայլք, թէ 'ի բերանոյ այլոց կամ ծովու, թէ չէ ընդ ինև: (Յոբ. իը. 14:) Որում ձայնակից է և Յովհաննէս 'ի յայտն. (ի. 11.) թէ երկին և երկիր սատանայական փախեան յերեսաց նորա:

10. Աստղ առաւօտեան: Դու ես լուսոյ ունօղ քաղց՝ յորմէ հասարակացն փորձեալ, և ելից զերկիր տէրութեամբ յօրինակ ծնեցելոյ 'ի քէն Քնի Տն, որպէս ցուցաւ 'ի տեսլեանն եղելոյ առ Նաբուգոդոնոսոր, զոր մեկնեաց դանիէլ մարգարէ: (Դ. 35. 44.)

11. Այգ առաւօտեան: Այգ առ առաւօտն ժամու՝ յորում երեւք երկնից լուսանան, և սկսանի ծագումն արևու. որպէս և նա կոյսն՝ սկիզբն ծագմանն Քնի յերկիր:

12. Հարսն անապակ: Սա կոյսն միօրինակ կոչի հարսն՝ եթէ Հօր Այ, եթէ Հոգւոյն Սբյ. նմանապէս զուստր առ երկոցուն ես. զի երկաքանչիւր կոչումն՝ առ Աստուած նոյն է, 'ի շնորհաց ունելով զպատուական կոչ-

մանն. վասն զի հոգի հաւատացեալ ըստ որում արդարար շնորհօքն ընկալ հաղորդակից բնութեան Այ, առի զուստր կամ որդի. և ըստ որում սիրոյն և խոստմանն միաւորեալ ընդ Այ, կոչի հարսն: Այսպէս ամենայն հաւատացեալք կին եկեղեցի անուանեալ են առ Այ՝ և՛ դուստր կամ զուստր, և՛ հարսն, ըստ առակելոյ. (Բ. Կորն. Զ. 17. 18: Ժա. 2: Եփես. Ե. 25: Յայտն. ԺԹ. 7. 8. 9. ԻԱ. 2. 9:) Եւ ըստ անդրադարձութե՝ Այ կամ Տր երրորդութեն բոլոր առի առ արդարան և՛ Հայր, և՛ փեսայ. զի պատճառաւք կոչմանն՝ շնորհք և սէր՝ նոյն է յերեսս անձինս եւս: Եւ զի՞նչ այլ, նա ինքն Տր Կոյսն՝ որ ըստ մարմնոյ ծննդեանն է Ճշմարիտ մայր Որդւոյն միածնի, ըստ շնորհացն՝ է՛ և առի Դուստր և Հարսն Որդւոյն:

13. Բնակարան արժանաւոր: Խոնարհութե կամ Նուաստամտութեան բանին Այ արժանի բնակարան է Տր Կոյսն, ոչ եթէ ըստ հաւատարուե՝ ուր անդստ արժանիք պահանջին առ աստիճան Աստուածայնու. այլ չափով ըստ հնարաւորութե, և բաղդատելով առ այլս, զի ոչ ոք 'ի կանանց իբրև զնա կոյսն գտաւ արժանաւոր: Եւ դարձեալ, արժանաւոր առէ՝ առ խոնարհութեն բանին. իբրև զի այն ծայրագոյն խոնարհութեն կատարեցաւ 'ի յայժ խոնարհ կոյսն, ըստ բանին, եւ յո՞ հանգեայց՝ եթէ ոչ 'ի հեզս և 'ի խոնարհս:

14. Տնկաստաղարի մարմնոյ: Մարմնոյն՝ որ աճեցական է իբրև տունկ, յորում անդամք և հերք՝ են որպէս ոստք և սաղարթ կամ տերև: Այն մարմին առի ծծուբէն, այսինքն Այ վասն միաւորութեան յանձն բանին: Կամ, մարթ է առնուլ ուրոյն՝ 'ի միջին զն իմանալով. զի մարմնոյն և ածութեան խառնարան, միաւորիչ, յօդարան երկոցունցն: Նշղարան. տեղի՝ յորում կատարեցաւ օծումն մարդկութեան՝ միաւորմամբ ածութեան՝ յորմէ և Քս անուն եդաւ:

15. Անբերրի լրականութբ: Զայս մարթ է յարել կամ առ ծնանիլն. այսինքն նախ քան զծնանել բանին կատարեալ լրութք ածութեան. և կամ առ պահելն. այսինքն պահեալ էիր լի ամենայն կատարելութք սրբութե, կամ անբծութք՝ հոգւոյ և մարմնոյ: 'Ի հրեշտակական թևոցն առէ՝ պահպանեալ էիր, իբրև զնապանակ ուխտին՝ վերածածկեալ 'ի քերովբէից. և այս՝ յառաջ քան զմարմնանալ 'ի քէն Այ բանին: Ո՛չ առ տանայ կարէր արատել զհոգիդ, ոչ մարդ՝ զմարմինդ. մինչ զի դու միայն յամենայն մարդկանէ 'ի քեզ յանկուցեր զհաճութե երրեակ Աձուէն՝ հրաշագործել 'ի քեզ զանքննելի զխորհուրդն ևն:

16. Յօրդաւոր մարմնով: Նա ինքն Որդի՝ որ էրն անժամանակ, մարմնովն կազմեցելով 'ի մասանց ծնաւ 'ի քէն ժամանակաւ: Բայց ոմն ի՞նչ ասէ, ըստ գոլոյ էութեն կամ ըստ անձինն սկիզբն ունի զԱծ հայր յառաջ քան զարուսեակ, այս է՝ 'ի յաւիտենից, նախ քան զամենայն ժամանակ: Կամ, ըստ խորհրդոյ մարդեղութեն առցի սկիզբն ունել. այսինքն թէպէտ 'ի ժամանակի կատարեցաւ այն, բայց նախ քան զարուսեակ սահմանեալ էր: Ուստի նա ինքն Որդին՝ իւրով զխտութք և սահմանելով և ներգործելով զյօդաւոր մարմինն մեր, այսինքն անհատ, եզական՝ խառնեաց կամ միաւորեաց անբաժանելի ընդ իւրում ածութեն: Զմիակ կամ զանհատ մարմինն առէ՝ միաւորեալ, ընդդէմ ոմանց թիւրելոց՝ որք համարէին զընդհանուր մարդկութեն առեալ որդւոյն Այ, առ 'ի զբոլորն փրկելոյ:

17. Սեղհաւկաննեաց ղաբոռն: Իբրև ծնեալ 'ի Մարիամայ յազգէ դաւթի, սեպհականեաց՝ յինքն ստացաւ զաթոռ դաւթի՝ ոչ ըստ մարմնաւոր աշխարհական տիրողութեն, զի ոչ այնպէս տիրեաց Դաւիթ բոլոր աշխարհի, այլ ըստ երկնաւոր իշխանութեն՝ որում օրինակ էր թա-

զաւուրութՒն Դաւթի. և այս է Թագաւորեալն Քրիստոս 'ի վերայ ամենայն հաւատացելոց. որոց առաջնորդեաց 'ի տաճարն երկնից, ուր էաւ կամ կոչեցեալ նոցա ուղղ ճանապարհի, այսինքն ուղի կամ շաւիղ իւր կամաւորքն զնա խաչն. որ և նովին Քրիստոս եղև մուտք 'ի փառս թագաւորութեն իւրոյ: 'Ի տապանագիրս ինչ գրի վերնականս ուղիղ ճանապարհի: Այսու օրինակ կաս զկորուսն ազգաւնան մարդկոյն՝ զերծանելով 'ի մահ և յապականութեն, նորոգեաց և կենդանեաց յանձն իւր, ըստ ուխտին խոստացելոյ 'ի Քն. * Յետ այսորիկ դարձայց և շինեցից || ևն: ( Գործ. ԺԵ. 16:)

18. Էլին խնկարան: Դու իբրև բուրաստան ես՝ փոխանակ խնկոց անուշհոտ զանհամեմատ սրբութեն բուրեցեր 'ի հաճոյս նորա: Վարդ 'ի մանկութեն մաքրութեան: Եարեալ շնորհաց և պարգևաց լցեալ. հեղեալ առջանոցն ողորմեալ, ամփոփեալ անշարժելի յամենայն յաղմանց կեղց. աստուծոյ, ապաւէն սրտի կատարեալ անմեղելի. փաղցրեալ 'ի գթալ և յողորմել յորդ և զեղուն:

19. Յորդանոյն փո խնամոց: Քանզի հրաշափառ վերացման յերկինս՝ ոչ ալեօք էին հրեշտակաց. անկ էր այն խնամոց միայն Որդւոյդ Քրիստոսի. նա հողացաւ, ամբառնալ զքեզ 'ի վերին զաղաւթն երկնից լուսաղէս, պայծառ և արտագրնթաց իբրև զսիւն. և դու թևօք ԲԷԲՆոուԲԷ հոգւոյն, թևթև ընթացիւք որ 'ի հոգւոյն սէր, կամ ձրիւք թևթևութեն որ 'ի քումս փառաւորեալ հոգւոյ դեղեալ 'ի մարմինդ. կամ, իբրև թևթևութբ հոգևորաւ սլացեալ ելեր 'ի հանգիստ իմանալի օթևանացն: Անդ զվայելմուչս աներևոյթ բարեացն՝ յորս ոչ միտք հասանեն, ոչ դդայութիւք կարեն նկատել, ըստ բանին * Զոր ակն ոչ ետես || ևն. ( Ա. Կոր. Բ. 9: ) դու զնոյնս անչափելի հոգեւորչեալ. անընդմիջաբար, զէմ յանդիմանն 'ի քեզ ընկալեալ. կի անձն փոխանակ մարմնոյ առեալ, իմանի նաև մարմնովդ, որպէս և հոգւովդ ընկալար. և այնպէս ընկալար, մինչև զբաղմզակ լնութեն փառացն ԱՅ քեզ իբրև սեպհական ժառանգեցեր. զի որպէս ԱԾամայր փառաւորեցար, որում յատուկ են փառք ԱԾորդւոյն:

20. Մաքուրք ճոյլուսին: Աննուազ և միշտ անաղօտ նշոյլ ես ամբողջն լուսոյն. որով և նրօղ արարչին աստուածութեն, որպէս նշոյլ արևու ամե զամենայն արեգակնայինսն՝ զջերմութեն, զերագութեն, զթափանցութեն ևն. նոյնպէս և դու զնշմայինսն՝ զսրբութեն, զգթութեն, և առանձինն զանխառն կուսութեն ընդ անհամեմատ ծնողութեան, որ սեպհական է ԱՅ Հօր: Կամ, աստուածութեն արարչին՝ մաքուր է իմանալ աստ զանպալասելի սրբութիւն՝ որ յատուկ ԱՅ է. այսպէս և 'ի նմ Կոյսն եղև անպալասելի սրբութեն շնորհաց, միշտ մաքուր, յար պայծառափայլ՝ 'ի յղութենէն մինչև յերանութիւն երկնից. 'ի նմա շնորհքն միացան ընդ փառաց: Սակս այսու մաքրութեն՝ աքանչելի արուեստիւ իմաստութեն ԱՅ զմեծ արգասիս կամ զգործ փառաւոր ընդ [illegible] յեղանակեցեր ասէ, այսինքն փոխանակեցեր. փոխանակ նուազ երկրաւոր մայրութեն՝ զԱԾամայրութին ընկալար. փոխանակ մարդ որդւոյ՝ զԱԾորդին առացար: Կամ, փոխանակ փոքր կուսութեն մարմնոյդ՝ զերագոյն ծնողութեն ընկալար. որով եղեալ մայր Ճշմարտին՝ որդի զգուեցեր քեզ զմանուկ առանց հօր մարդկայնոյ, 'ի գիրկս բարձեալ, և 'ի համբոյր շրթանց ողջագուրեալ զանպարագրելին ԱԾ զ'ի քէն մարդացեալն: Եւ քոյով միջնորդութբ եղբայր մեզ զՈրդին ԱՅ և ժառանգակից, [illegible], 'ի վեր քան զակնկալութեն ունել, և զԱԾ աբբա հայր առաջարկել կարդալ համարձակ: Աբբա հայր, ոչ իմանի իբրև երկու այլ և այլ բան, այլ մի է, հայր՝ Թարգմանութեն զոլով եբրայականին աբբա: Ուստի զգուշալի է իմանալ՝ մեծ հայր կամ պապ. որպէս թէ ԱԾ հայր զոլով Հայր Քրիստոսի, առ մեզ լինիցի մեծ

անսասանեալ, մայրական իշխանութբ զԲանն Այ անուանեցեր Յիսուս. Որդւոյն քո նոր անուն եդեր զփրկիչն, որ տիրական իշխանութեան է նշանակ, և հրամայողի. և ուր Այ է սեպհական՝ անուն կոչել ծառայից իւրոց, դու 'ի նոյն ինքն յԱծորդին արարեր զայն: Զանձամանակն ըստ աւուրց: Ըստ ածութեն իմանի սովորաբար անժամանակն. բայց աստանօր մարթ է առնուլ և ըստ մարմնոյն. իբրև թէ՝ զայն որ ժամանակի ոչ կարօտէր՝ թուով աւուրց ծնանել և աճել, այլ կարող էր 'ի վեր քան զժամանակ առնուլ զկատարելութն հասակի, որպէս յԱդամ առաջ և յԵւայ, զայն սակս սահմանք գիտեցուցեր ծնուցեր, և առ սակաւ սակաւ յաճումն ընծայեցեր:

31. Զոր խոսփոխանի: Կրկնակի մարթ է ընթեռնուլ զբանս: Մի. զբառսն ած ճշմարիտ իմանալով ուղղական խնդիր այսպէս: Համբական եկեղեցի զծնեալդ 'ի քէն՝ խոստովանի ած ճշմարիտ, վասն միաւորութեն ընդ նախնեղան գոյանն, այսինքն ընդ յաւիտենական գոյակին ընդ Այ. և ըստ այսմ նախնեղան ոչ իմանի՝ նախ եղեալ, այլ՝ նախ քան զեղելութն, այն որ նախ է քան զեղեալքս, որ է անժամանակ: Երկրորդ. զնոյն բառսն առնուլ հայցական խնդիր այսպէս: Համբական եկեղեցի զծնեալդ 'ի քէն զածն ճշմարիտ՝ խոստովանի ընդ նախնեղան գոյանն միացեալ, այսինքն խոստովանի միաւորեալ ընդ նախաստեղծ ադամային բնութեն. կամ, ընդ հողեղէն գոյացութեն որ նախածին ևս ասի: (Գով. Աստ. համար ժբ:) Ըստ երկաքանչիւր ընթերցուածոյ ևս յարմարին բանքս. և ամենայնն ծածկեալ և անհաս 'ի մերմէ քննութէ. այլ հաւատով միայն դաւանեալ յընդհանրական եկեղեցւոյ: Որում փոքր ապացոյց առաւ 'ի Յակոբ նահապետ, յորժամ ընդ հրեշտակին մարտուցեալ, ալինդ կալաւ զնա, և դադանի խորհրդով կոչեցաւ Իսրայէլ, այսինքն ածատես, և յաղթօղ զաւրաւ եսաւայ: Նոյնպէս և 'ի քէն ծնեալդ մարմն, կամ մարդն՝ ընդ Այ խառնեցաւ սերտ ներքին միաւորութբ, և ոչ լոկ արտաքին ըմբռնմամբ. և նովին մարմնով յաղթօղ եղեալ սատանայի, ոչ պխտակաբար տեսօղ այ, այլ խրկապէս Այ անուանեցաւ ինքն, և զամենեսեան զհաւատացեալս իւր ածատես արար և կոչեաց, նոր իսրայէլ 'ի Քս:

32. Որոյ՝ փեսալուսն այ: Շարագրութեն պարզելի է: Որոյ նախագիծ՝ ցուցաւ տեսչութբն այ: Արդոյ կուսիդ նախանկար օրինակ կամ պատկեր ցուցաւ նախախնամութեամբն այ՝ նաև 'ի բնական նիւթս, այն է՝ 'ի ծովէ մարգարիտն, ուխփան ըստ գունոյ՝ յարացոյց սրբութէ, և հրաշալի, կարմրանիշ փայլեալ 'ի շող արեւու: Այսպէս և դու 'ի յաշխարհիս ծովէ ընտրեալդ, 'ի բովանդակ սրբածութենէ աշխարհի կն ազգի մարդկան ընտրեալ երևեցար ամենա ակն՝ ընդունակ ածային հրոյն:

33. Ասածք մարգարէից. Փոխանունուն է ասածք ասել փոխանակ խօսողաց զառածսն: Եթէ մարգարէքն առածիւք կամ պատգամօքն իւրեանց իբր հոգւոր յղացմամբ կոչեցան ծնօղք կամ հարք իսրայէլի, քեզ զո՞ր անուն վայելչական շնորհիւք ընծայել, որ զբուն զանձնաւոր բանն Այ՝ զհամագոյակիցն հօր Այ, մարգարէս, մարմնով ծնեալ յարգանդի քում ցուցեր, յայտնեցեր: Մարգարէքն զբան հրամանացն այ, կամ զխորհրդոց յայտնութն միայն ընկալեալք յոգւոջ իւրեանց խօսէին. որով լսողացն ևեթ ծնօղք ասացան, և ոչ բանին, իսկ դու զբանն էակից Այ յարգանդի քում մարմնով զգեցուցեալ՝ եբեր աշխարհի. որով ոչ միայն հաւատացելոց լսողաց եղեր ծնօղ, այլև նմին իսկ խօսեցելոյ բանին: Ո՞վ շնորհաշուք քոյոյ գեղոյդ, որ յանճառոյ, յածային գեղեցկութեն 'ի քեզ ծաւալեալ: Ո՞վ հեզութեդ, և անմեծու-

Թեգ, և համայն երկնայինն պարգևացն, որովք 'ի գլուխ քո պսակ փա-ռաց ընկալար զհովանի՝ զմեծութիւն բարձրելոյն :

34. ՈՂՋԱԿԷԶ ԾԱՆԷԽԱ : Քառամանեակ է զարդ պարանոցի և լան-ջաց՝ (կերպանդըք.) կազմեալ յականց և յոսկւոյ, երբեմն 'ի մանրիկ փայլուն գնդաց. զոր ուլունս ասեմք, (այսինքն հիլուն կամ պօն-ճուխ.) լանջաքս քո՝ ով Տիրամայր, բովանդակ շնորհազարդեցան 'ի յոգւոյն, որ 'ի լանջս քո և 'ի պարանոցդ անդեալ զարդարեաց զքեզ իբրև քառամանեակ կազմեալ յեւմամբ ուլանց. (հիլունից.) և այս եղև Տդ, հոգւոյ, ն ծարծող խառնեմ, ակրա միաւորութե ածութեն, և բանական հոգւոյն, և մարդկայնն մարմնոյն : 'Ի մի էութիւն երկուց ... մանդ. որով երեքեան ողջացան 'ի մի գոյացութիւ անհատուցեալ կամ անշփոթ : Էութեան ասա եղեալ է փոխանակ գոյացութե լրացելոյ անձնաւորական գոլոյն : Իսկ մերազոյն (համար ժդ.) առեալ է փոխանակ իրի կամ գոյի նաև ոչ լրացելոյ, բազմաւորական ասելով, էութեան խառնեալ էութիւ : Անմարթ է ըստ ճշմարիտ վարդապետութե ասել 'ի Քն երիս կատարեալ էութիս կամ բնութիս. զի հոգին բանա-կան և մարմինն՝ անլրացեալ մասունք են մարդկութեանն : Ուստի ոչ յայս միտս խօսի նա վարդապետս աստ և մերազոյն, որպէս և 'ի մեկն. երգոց. Ը. 11. այլ նկատէ միայն զորոշ զանազանութի իրացն՝ որ յան-ձին Քի. ըստ որում որպէս Աստուածութիւն զանազանեալ է 'ի բանական հոգւոյն, նոյնպէս հոգին՝ 'ի մարմնոյն : Քանզի այսու մտօք 'ի կիր ա-ռեն և այլք 'ի վարդապետաց : Գրիգոր Աստուածաբան 'ի Ա. Թղթին առ կղեդոնիոս՝ երկու ասէ 'ի Քն զհոգի և զմարմին : Ժողովն Տոլետոյ 'ի սպանիա արարեալ յամին 688. հաստատէ՝ ուղղութբ ասել 'ի Քն երիս գոյացութիս : Երանելին Բեռնարդոս նոյնպէս խօսի 'ի բանն Գ. 'ի հականան ծննդեան. * Յայսմ անօրինակ զուգախառնութե՝ երրորդու-թի է 'ի գոյացութիս, և միութի յանձին : || Ջայս առնու և մեծն Աւ-գոստինոս, յԱստուածաբանութեն. գիրք Ա. գլ. ժա. * Դարձեալ, է՛ երրոր-դութի որով նորոգիմք 'ի շնորհս, այսինքն եռակի գոյացութի որ 'ի Քն, որ է Աստուածութիւն, հոգին և մարմինն : || Սակայն այս եղանակ խօսելոյ 'ի խորհուրդ մարդեղութե՝ որ սակաւուց միայն է ասացեալ ըստ բերելոյ բանից նոցա, ոչ է ըստ ճշգրիտ բացատրութե, և ոչ ընտրելի քան զառ-ձորական եղանակն՝ որով բնութիւն կամ էութիւն իմանի կատարեալն յիւրում կարգի, և երկու ասի 'ի Քն :

35. Քահանայութեանց ծօր : 'Ի տպագիրս ևնչ ոչ գոյ ծօր, բայց գոյ յայլում, և բանն պահանջէ : Դու միայն դաւանեցար ճշմարտապէս օրհնեալ 'ի կանայս, ուր այլք ևս ասացան երբեմն այնպիսի, որպէս յայէլ և յուդիթ, բայց պիտակարար և առ մարդիկ՝ ըստ մասնաւոր ինչ իրաց : Եւ յայդպիսի օրհնաբանութի վայելուչ էին շրթունք քա-հանայութեանց միոյ որ լցեալ հոգւով սրբով, մայր էր մարգարէին զոր դեռ յարգանդին ունէր Յովհաննու : Փառաւոր ն 'ի դասոց : Տպագիրք ինչ ընդ անցելոյն ընթեռնուն զփառաւորն. այլ ոչ 'ի դէպ : Փառաւո-րեալ ես նաև 'ի դասուց համազգի մեր նմանեացս, այսինքն 'ի կարգէ արանց. որպէս թէ՝ ոչ միայն 'ի կանայս օրհնեալ ես, այլև յարս. կմ, ոչ միայն դասք կանանց օրհնեն զքեզ, այլև արանց. ոչ է կարծելի՝ թէ յօրհնել Եղիսաբեթի զնա կոյսն՝ Զաքարիաս չեղև ձայնակից 'ի սրտէ, լեզուին կապեալ գոլով յայնժամ. որպէս յարձակել անդ՝ իսկոյն բար-բառեցաւ, Օրհնեալ Տր Այ իսրայէլի, ընդ որում և Տիրամայրն ի-մանի :

36. Պարթենոս էնդ էնքիրագուռէ : Ոչ լոկ օրհնութիս կամ ներբողս, այլ գերազոյն մեծարանօք հոգւոյ և մարմնոյ պատուական եմք շնորհ

ունել քեզ. զի եթէ մարդոյ 'ի պատկեր իւր աստուածային շնորհակալու-պարտիմք լինել, որչափ ևս ուր զու ինքն եղեր պատճառ, զի Ած 'ի պատկեր մարդոյ ծառայի աստուածանիցի, որով լցաւ ասողնան մարգա-րէական. (Սաղ. ՀԹ. 18.) * Եղիցի ձեռն քո 'ի վերայ առն || եՆ: Վասն զի աջ և բազուկն հօր միածին Որդին եղև 'ի մարդն հանգու-ցեալ յարգանդի քում. որով եղև որդի մարդոյ, և զամենայն մարդիկ զօրացոյց իւր վկայս և երկրպագուս:

37. Հրեշտակ Երկնային: Բնութեամբ 'ի մարդկան ազգէ, այլ ըստ ան-մարմնական վարուց՝ երկնային հրեշտակ: Որպէս և յեղծանելի բնութեն գոլով, անմահ սերովբէ ես՝ ըստ սիրոյն վառման որ շիջանիլ ոչ գիտէր: Նոքա բնութեամբ են երկնայինք և անմահ, այլ զու գերագոյն ես՝ կամօք, և յերկրի գոլով: 'Ի յաւուրց Նախնեաց: Տպագիրք աւելորաբար ընթեռ-նուն 'ի յաւուրց. մին ևեթ 'ի հաւուց: Յաւուրցն ժամանակաց Նախա-հարցն՝ զու միայն անկնկալեալ և միացեալ ճիռ օրհնութեան (ըստ Եսայ. կե. 8:) Անէծքն տարածեալ յամենայն երկրագործութեան արարածոց՝ 'ի քեզ միայն ոչ ազդեցին: Մերձեցելոյ Այգւոյն: 'Ի տպագիրս ինչ դնելն՝ այգւոյն սխալ է, և շփոթէ ընդ այգի բառին: Մերձեցելոյ այգոյն կմ առաւօտին փրկութեան, զու ես աստղ կամ արուսեակ յառաջընթաց: Դիտեմ յայտնիկ բանս, զի զդաղուն յանուանցն ընծայելոց Քսի՝ ըն-ծայէ և մօրն. և այս՝ զի անուանք փոխաբերեալք կարեն պատշաճիլ զանազանից ըստ իւրաքանչիւր յարմարութեան. ևս առաւել՝ զի գերա-զանցութիւնք Քսի Տն՝ ոչ օտար են 'ի Մօրէ նորա:

38: Գիտէրային Մերոյն: Մինչդեռ ազգ մարդկան կայր 'ի մութն ան-հաւատութեան, և մեղաց, և թանձր անգիտութեան և ախտութեան, զու իբրև խօսնակ կամ աքաղաղ զուարթարար եղեր, ազդ առնելով զծա-գումն արեգական արդարութեան: Նոյնպէս ստուերական հին օրինացն՝ եղեր փառ ճշմարտութեան, մատեան յայտնիչ ճշմարիտ մտաց կամ խորհր-դոյ նոցա. օրինակաց և ձևոց հնոյն խորհուրդքն 'ի քեզ և 'ի քէն ճըշ-մարտեալ ծանուցան. կամ որ ինչ առ այլս հրէից՝ նաև առ մարգարէս անգամ աղօտ էր՝ ստուերաբար գիտացեալ, քեզ բացերև էր յայտնեալ և 'ի ձեռն այլոց: Վն այսորիկ դու միայն օրհնեալ ես իբր ռնիւն գործո-նէայ, իբրև ընդունակ և կրող կմ գործի այսքան մեծամեծ պարգևաց. որով մերկացելոյ նախահօրն եղեր իբր փառք ծածկիչ և անկողոպտելի. վշտացելոյ մօրն՝ սփոփիչ և քաւիչ բարձող անիծիցն. և խաւարեալ որդ-ւոց նոցա՝ աւետաւոր խաղաղութեան:

39. Տեսոյ լուսաւորի: Անզուգ կամ մշտատեւս հայեցմամբ ամենայն լուսաւոր աչացն՝ զու նկարեալ պէտոյ, պատկեր կամ գեղեցկութեան: Յաւիտենական անին ամենահայեաց՝ միշտ առաջի նկարեալ պատկեր քո՝ լի զեղմամբ շնորհաց, առանց իրիք արատոյ, որով գեղոյ քում ցան-կացաւ՝ առնուլ զքեզ 'ի մայրութիւն Որդւոյն իւր: Եւս, անտակ կամ պատկեր նկարեալ իբրև սկզբնատիպ որդւոյն ծննդոյ. զի որպէս ըստ հօրն շնորհաց՝ մայր 'ի պատկեր որդւոյդ գեղեցկացար, նոյնպէս ըստ մարմնոյ և ըստ բարուց՝ 'ի քո պատկեր կերպացաւ որդին. և յերկրային անին ծածկին եղև նկարիչ ամենապատկեր: Զբան լուսաւորի՝ մեկնեցաք ածային աչացն, այսինքն ամենալուսաւոր աչօք. բայց մարթ է ևս յա-րել 'ի պէտոյն, այսինքն պատկեր լի լուսով, միշտ պայծառ:

40. Կտակ մակագիր: Իբրև զիր կտակի մակագրեալ, այսինքն հաս-տատութեամբ գրեալ, կամ յայտնապէս և արտաքոյ գրեալ, հակառակ մարդկային կտակի՝ որ ծածկապէս զրի և կնքով փակի: Ած հայր ե-թող զժառանգութիւն որդւոցն իւրոց՝ քոյով մատակարարութեամբ. զքեզ կարգեաց խնամակալ և բաշխիչ ամենայն նպաստից, շնորհաց և փա-

տաց առ փրկեալսն. զայն ինչ զոր որդիդ քո առնէ 'ի փրկութեան մարդկան իշխանաբար, դու զնոյն առնես բարեխօսութ︦բ: Եւս, փրկիչն որդի քո 'ի խաչին եւ աւանդեաց զքեզ կտակ յայտարարող վերջին կամաց իւրոց. յանձն յանձնանու քեզ որդիացոյց զամենայն հաւատացեալս: Եւ այս՝ անեղծ պայմանաւ, անդարձ որոշմամբ կամ դաշամբ, որպէս օրէն է կտակի՝ պահել անջնջելի: արդ, դիր կամ մուրհակ փաւերական, որ իբրեւ արձան կանգնեալ անշարժ կայ:

41. Սահման յարակայ: Անփոփոխելի կամ մշտակայ սահման՝ որով մեծութիւն աստուածային կցորդեցաւ ընդ մարդոյն Քրիստոսի. այս միացեալ մշտամնայ անփոփոխ, նոյնպէս և սահմանն միութեան: Կամ, վերջին սահման և ծայր՝ որով ընդ մեծութեանն այլ կարէ կցորդիլ սոսկ ստեղծուածն. զի Աստուածամայրութիւնն է ծայր մերձաւորութեան առ Աստուած: Երկուց միութեն: Երկուց բնութեանցն աստուածայնոյն և մարդկայնոյն անայլայլելի միաւորութեան կապ կամ յօդ յարմարական, վայելչական: Իմա՛, կապ ոչ տեսական 'ի ներքուստ միաւորիչ, կամ արարչական ներգործութ︦բ, այլ ըստ մատակարարելոյն զմարդկութիւն որ անդէն առեալ եղև յածութիւնն: Վէհին զոփէր: Աստուածութեան պատկեր՝ ոչ լոկ ըստ բնական բնութեան և ըստ շնորհաց, այլ յատուկ՝ ըստ Աստուածամայրութեան, որով եղև պատկերակից Հօր Աստուծոյ, որդի ունելով զԱստուած, Որդւոյն պատկեր՝ արիւնակից լինելովն, Հոգւոյն պատկեր՝ գործակից նմին եղեալ 'ի կազմութիւն քրիստոսական մարմնոյն: Համեմատ աստուածամայրական պատկերակցութեան՝ իմանի և այն որ շնորհացն է, և փառաց երանութեան. որովք ոչ միայն ինքն հանգունաւոր բարձրացաւ 'ի պատկեր Աստուծոյ, այլ և այլոցն 'ի նոյն պատկեր հաստատելոյ եղև պատճառ, կարգեալ գանձապետ շնորհաց, տիրուհի արքայութեան երկնից, օրհնաբանելի յամենայն արարածոց. գերագոյն ես քան զոր վասն Եսթերայ ասէր Արտաշէս արքայ. * 'Ի միասին է իմ և քո հրամանս: Զհաւասար թագաւորութեան իմոյ զխնդիր: || ( Եսթ. ժԵ. 13. ժԶ. 13: ) Բայց յայսմ պատկերակցութեան Կերպին-կշռորդէին ըստ առնելոյ արարած բնութեանն կշռեալ, չափաւորեալ: Աստուածամայրութիւն՝ իբրև աստիճան ինչ գոլով անկշռելի է և անհուն. և որպէս վարդապետք ասեն՝ հնար է ստեղծանել Աստուծոյ զաշխարհ մեծագոյն և լաւագոյն, բայց ոչ զԱստուածամայր ևս բարձրագոյն: Սակայն ըստ արդեանց գործոցն չափով է հաղորդական սակս չափաւորութեան ընդունողին:

42. Թէեբն զարզունէ: Պարզ և անօսր իբր հոգեղէն և անմարմին, թեպէտև բնութ︦բ թանձր նիւթով բաղկացեալ: Տառ փորբէրական: Գրուած շրջաբերական, ընդհանուր առ ամենեսին տեսանելի, վերծանելի: Տողք, ուղիղ շարիւ ձևացեալ, ճարտար գծագրեալ, ունօղ կարգաւոր բանից և ուսմանց: Ասել կամի. ըստ ամենայն հասակի ուղղութ︦բ եղեր իբրև գրուած ճարտարագիծ, վերծանելի յամենեցունց՝ յօրինակ իւրաքանչիւր հասակի և կարգի. յորում մանկունք ուսանին զհանդարտութիւն, աղջկունք զհամեստութիւն, կանայք զժուժկալութիւն, արք զարիութիւն ևն: Տումար փէնչօլի: Իբրև զժամանակագրական կարգաւոր գրուած՝ 'ի ցոյցս եղանակաց, ամսոց, աւուրց, տօնից և պահոց. որպէս և 'ի նմա կոյսն ցուցան սահմանեալ ժամանակք Քրիստոսի գալստեանն, վախճան հին օրինաց և սկիզբն նորոյն, տնօրէնութիւնք Քրիստոսի, ևն: Եւս, իբր տումար հաւատոյ, յորում անսխալ դրոշմեցան ամենայն ճշմարտութիւնք: Մափէան Ռծունէ. գիրք յիշատակաց, կամ դիւան աստուածային Թագաւորութեան, յորում ոչ մտով, այլ շնորհիւ նկարեալ կան մեծամեծ գործք իմաստութեան Աստուծոյ, կարողութեան, բարութեան և այլն: Նաւակ ընփրուշէ: Թուղթ ընտիր Թագաւորական՝ իբր հրովարտակ կա

կոնդակ, յորում կարգեալ կան բանք հրամանաց և վճռոց Այ՟. և մանաւանդ յորում անձնաւոր բանն Ած՟ բարբառեցաւ ընդ մարդկային բանիւն, և եղև բան կրկին, բան ներքին. բան արտաքին : Արձան անձնանան : Արձան հոգևոր՝ ած՟ային իմաստից ճարտարութեամբ քանդակեալ : Կամ, յորում իմաստք ած՟ային խորհրդոց նշանակեալ կան իբրև 'ի յիշատակի : Կնիք մատանւոյ : Դու ես իբրև կնիք մատանւոյն՝ որ 'ի ձեռին Այ՟ : Տէրամբ, Քս՟իւ որդւով քով տպաւորեալ. զի որդի՝ կնիք և նմանութիւն է հօրն : Զքեզ 'ի կիր առնու Ած՟ իբրև կնիք 'ի վճիռս իւր վասն հաստատելոյ :

43. Արմատ ծաղկուհի : Բուն պատճառ արարողական մարդկային բնութեան՝ զոր ընկալաւ բանն անեղական : Այս ծաղկուհի տիրապէս զբնութիւն նշանակէ, և ոչ զերանելին մայր. որ զկնի ասի. Գործի ծաղկուհի, այսինքն մարմնանալոյ, ընդհանուր փրկութեան, ած՟ային բնութեան, գործի կին՝ նպաստիչ ած՟ային բնութեան միաւորելոյ ընդ մարմնոյն կամ ընդ մարդկութեան : Եւ ասի գործի միաւորութեան՝ իբրև պատրաստիչ բնական մարմնոյն. իսկ թէ իցէ մարթ ասել զնա՝ գործի առ 'ի միաւորել զայն ընդ ած՟ութեան, հաւանին սակաւք յած՟աբանից. և այլք առաւելապար համարին՝ ոչ իրական ազդմամբ նպաստ եղեալ յայն, այլ բարոյապէս միայն՝ փափաքելով և հայցելով : Պատճառ պտղածնոյ : Պատճառ կամ ներգործօղ արժանաւոր գործոց ած՟պաշտութեան : Անպարտ, անպատկառելի կամ պանծալի ձգնութեանց վասն Այ՟ : Օրէնաց ուղղուհի, ուղիղ վարդապետութեան և վարուց՝ առանց իւիք վրիպելոյ : Անպակաս, միշտ յաճումն շնորհաց յառաջեալ առանց պակասելոյ, որով 'ի քեզ լիացեալ, զմեր թերութիւն լցուցանես : Մասնակից շնորհընկալ : Որպէս այլոց ած՟ային կատարելութեանց մասնակից ես շնորհօք, նոյնպէս և հայրական գթութեան, լինելով և դու գթութեանց մայր. որպէս Ած՟ գթայ 'ի մեզ իբրև հայր, նոյնպէս դու իբրև մայր :

44. Անպարփակելւոյն ազգակցուհի : Ած՟ային անախտ ազգակցութեան Հօր և Որդւոյ՝ դու վերստին երկնիչ, ծնօղ եղեր՝ երկրորդ անգամ ծնանելով զորդի ըստ մարդկային բնութեան : Կամ, ազգակցութեան Այ՟ ընդ մարդոյ՝ որ անպարտականն է և շնորհօք, և մեղօք խափանեալ, դու վերստին ծնօղ եղեր՝ ծնանելով զքաւիչն մեղաց և զորդեգրօղն, այլև քով բարեխօսութեամբ յորդիութիւն զմարդիկ կոչելով Այ՟ : Կամ, այնմ անպարտ և անցաւ ազգակցութեան՝ որով նախ որդի ստացար զՔս՟ առանց երկանց, վերստին բազում երկամբք ստացօղ եղեր 'ի ժամ չարչարանացն. յառաջնումն եղեալ մայր սիրոյ, յերկրորդումն՝ մայր ցաւոց : Անժամանակին որդւոյ . անժամանակ ծոցոյն Հօր, այսինքն ծնողական միոյն՝ յորմէ ծնաւ բանն ած՟ յաւիտենական, դու ծանուցօղ ծննդեանն եղեր. քոյով ծնանելովդ մարմնով զՈրդին Այ՟ ժամանակաւ, յայտնեցաւ անժամանակ ծնունդ նորա 'ի Հօրէ, որ ծածկեալն էր. զի որ 'ի քէնդ ծնաւ, ոչ եթէ նորոգ ինչ եղև Որդի Այ՟, այլ էր իսկ յառաջնմէ. և զի ոչ 'ի մարդոյ ումեքէ, ապա ուրեմն առ 'ի յԱյ՟ անժամանակաբար : Եւ դարձեալ, կուսութեամբ ծնանելովդ զնա՝ երևեցուցեր զանախտաբար ծնունդն հօր. որով քոյդ ծնողութիւն եղև պատկեր ած՟ային հայրական ծննդեանն :

45. Զերկնայաղոյս ընթացք : Զմարմնաւոր զաշխարհի ընթացան ձգեցեր, ուղղեցեր 'ի ճանապարհ երկնաւոր կենացն. մարմնոյ թանձրութեամբ ոչ խափանեցաւ զգնացս քո ընդ երկինս, այլ իբր արագաթև թռչնոյ՝ փոխեցար յերկրաւորաց աստի, դասեալ 'ի հրեշտակական դասուցն՝ ունօղ Այ՟ : Հողեղէն հաստուած կամ արարած գոլով քո, 'Ի վերոյ բերից ողի հանգուցար՝ իբրև հոգեղէն և անմարմին : Բնածն ողի, իբր

բաւորքս գերագոյն փառք համարեալ են սեղանակից կարգել Թագաւորի, զոր գաւիթ շնորհեաց Մեմփիբոսթեայ, և որդւոցն Բերզելեայ, և ընդ որ եղկելին համան ուսուցեալ պարծէր՝ յամենայն իշխանաց իւր միայն գ'նալ 'ի ճաշ եսթերայ. (Բ. Թագ. Թ. 7: Գ. Թագ. Բ. 7: Եսթեր. Ե. 12:) Այս զիարդ անճառելի փառք լիցին՝ սեղանակից եղենալոյ Արքային սահմանիլ մայրական անկորուստ խրատմքս: Յայս բան 'ի ներքս կայ խնդիրն մեծ՝ հաւանեալ առ ծծաբան վարդապետս, թէ որ Կոյսն նովին իսկ Անձամբ մայրութեան սահմանեալ էր՝ յերանութիւն փառաց, և այնր խրատմքք՝ կարէր ժառանգել զփառսն, թէ և չկայցէ 'ի միջի արժանիք հաճոյարար շնորհաց:

52. Միածին անդրանիկ Բնութեն հօր: Այս բառք՝ կամ բոլոր յարին առ Երևեալն 'Ն ԹԷՆ, որ մարմնացեալն 'ի քէն՝ միածինդ, անդրանիկդ, որ և է բնութեանն հօր, բնութենակից. և կամ զատաբար Միածին առ Երևեալն. այսինքն ծնեալն 'ի քէն միածին. իսկ անդրանիկ առ յաջորդն, այսինքն որ 'ի քէն միածին է, նոյն անդրանիկ ծնեալ բնութեն հօր իմ: Արդ՝ որպէս նա խոստովանեալ է սկիզբն և առաջնորդ ամէն գործոց, եթէ բանիւք՝ բովանդակ խաչակրօն վարուց, նոյնպէս և դու նախընթացդ վսեմական վարուց, ծագեցար, պայծառացար առ՝ Գերօրինակ ցուցման են: Բառն Գերօրինակ, առաւել իբր գոյական իմանի. այսինքն գերազանց օրինակ առ 'ի ցուցանել զհանգամանս ծծակրօն կարգաց: Կամ, իբր ածական, գերագոյն և առաւել քան զցուցումն կամ քան զպարագոյց ծծակրօն կարգաց ծանուցար դու. օրինակք այլոց որք վստահելի են մեզ առ նմանողութիւն, իսկ քոյդ գերազանցեալ միայ քան զկար նմանելոյ:

53. Անապական ծաղկափթիթ: Ծաղկափթական սաստակութիւն զընդդէմս մանանոց 'ի մի կապէ. զի որպէս անմատոյց հուրն կիզանօղ՝ ծախի, զխոտ ծաղկի, և որպէս ծախեալն և ծաղկեալն անապական միայ: Փոխաբերեալ հակառակաձայն բառիւքդ՝ զանհասանելի մեծութիւն իրացն յայտ առնէ. այսինքն զբանն ծծ զանմատչելին իբրև հուր ծախիչ մեզ առնէ, քոյով ծնանելով զնա 'ի մարմնի՝ ծախեցաք ծաղկելով 'ի խորհուրդ սրբոյ Հաղորդութեան: Ծաղկումն, այսինքն ծաղկելն առ յաղագս պատուհասանաց հացին, բայց ընծայի Քնի՝ որ խորհրդաբար կայ ընդ պատահմամբքն: Զարգացեալ 'Ն Բնս: Քոյով միջնորդութբ զԱծ՝ որ անձնահաս զօրութբն և հրամանաւ առակաւ առ թուչել զնալ 'ի թևս հողմոց, ակսաք 'Ն փառաբանութեանց կենդանիս, նստեալ 'ի յէջ և յաւանակ: Օտար է՝ փառաբանութեանց կենդանիս իմանալ զքառակերպեան քերովբէս: Զի նստել Այ 'ի քերովբէս՝ յար և նման է արտաքսելոյն 'ի թևս հողմոց, և 'ի միում բանի առ. սաղմ. * Ել 'ի քերովբէս, և թռեաւ ալուցաս || են. և զի նստելոյն Քնի 'ի քառակերպեան քերովբէս՝ որ լսա ծծութեն իմանի, ոչ եթէ որ Կոյսն եղև միջնորդ, թող, զի և բառն փառաբանութեանց ոչ նշանակէ քառակերպեան:

54. Քն ըմպելի: Զնա որ քաւիչ և բարձող մեղաց մեր էր՝ իբրև քահանայ, մեք իբրև պատարագեալ զառն՝ ճաշակեցաք: Յովհաննէս կարապետս քարոզեաց զնա զառն զոհեալ, և մեք հաւատացեալ ընկալաք: Իսկ չարագործք զատեցին զնա մահու պարտ. մեք նոյա ընդդէմ, որպէս Այ ճշմարիտ երկրպագեցաք: Զանծանօթն հօր. որ յառաջն անծանօթ էր 'ի մարդկանէ իբրև Աճ, նա առաւել իբրև Հայր, մեք որդեգրեալքս, այնչափ յայտնի ծանեաք՝ մինչև ընտանեբար իբրև որդիք օրհնեցաք զնա: Զանփեան ալւոց: Զանմերձենալին կամ զանհասանելի մեծաց հրեշտակաց՝ մեք զգուեցաք իբրև մանուկ եղեալ վասն մեր: Զանսահման բանին Բնութե, 'ի թանձրացեալն իմա, այսինքն զբանն զիսկական

բանն Այ համբուրեցաք 'ի հասարակածին տեղւոջ, 'ի հասարակաց մերում մարմնի, զոր վերագոյն, համար ժը. ասաց հասարակածն: Այսքն յառաջին դէմն՝ գգուեցաք, համբուրեցաք, ևն, նշանակէ՝ եղև մեզ գգուելի, համբուրելի. որպէս և իրօք գգուեցաւ, համբուրեցաւ յայնցանէ որք կենակիցք գտան: Զադամն նոր հոգեղէն, այսինքն զկազմեալն հոգւոյն սբյ զօրութբ, բառ առաք. (ա. կորն. ժե. 45:) * Երկրորդ ադամ հոգի կենդանարար || : Զնա տեսաք ասէ՝ 'ի լոյս հասանել առաջնոյն՝ երեսնամեայ, երիտասարդացեալ: Բանն էութն, իմն 'ի Թանձրացեալն, զանժամանակ էակ բանն՝ պարփակեալ ք ազգաբանեցաք սկսեալ, սկզբնաւորեալ մարդկային ծննդեամբ 'ի դաւթայ, ք յազգէ դաւթի, և ոչ եթէ՝ 'ի ժամանակէ անտի դաւթի սկսեալ, և 'ի նա կոյսն վերջացեալ: Յայտնիկ 'ի վեցեակ հասակն՝ 'ի շար արկանէ զաստիճանս մարդկային կենցաղոյն Քնի: Իբրև տղայ գգուեալ, իբրև մանուկ ողջագուրեալ, իբրև երիտասարդ յարգանս հասեալ. և այսպ ընդ մարդիկ կենցաղակից եղեալ, և յամենեցունց որդի դաւթի ծանուցեալ. և բովանդակ կենացն արարուածք՝ իբրև մարդոյ ասրուք 'ի պատմութն առեալք բանիւք և գրովք: Ընդ այսոսիկ մարդկավայելուչ գնացս ճանապարհորդել անհաս և անժամանակ բանին Այ՝ 'ի վեր է քան զամենայն միտս և ընհրաշս, և քան զհղձս փափաքանաց: Եւ ո՞ այսմ ամենայնի՝ բաց դաւթայնով պարծանս ես ասէ, ծնանելովդ մարմնապէս զՈրդին Այ. զի մարդկութենն լինելով պատճառ, ասի նոյնպէս պատճառ հետևանացն մարդկայնոց: Անարատ կուսից: Զայս իբրև ուրոյն հասարակած առեալ, իմանի. ով անարատդ կուսից: Կամ ընդ յաջորդն յարել, այսինքն մաքուր կուսանաց՝ զու նախապատիւ կրօնից:

55. Թէ մեր 'ի քէն առեալ: Եթէ ոչ 'ի քէն վերաբերեալ էր առնելն՝ որ երկնային է բառ մեծութեն, ո՞չ արդեօք բերէր զայն պտուղն՝ որ անճաշակելին էր 'ի հաղորդութն շրթանց մերոց. այսինքն ո՞չ երբէք ճաշակելի լինէր մեզ՝ անճաշակելի բանն Այ: Գիտելի է առ հասարակ յաղագս շարակարգեալ պայմանաւ ասացելոց բանիցդ, որովք ասի՝ եթէ չէր 'ի քէն առնեցեալ, ոչ էր պտղաբերեալ. կամ, թէ ոչ 'ի քէն յղացեալ էր, ո՞չ էր մարմնացեալ. կամ, եթէ ոչ էր խառնեալ զմեօք, ոչ էր մկրտեալ ևն: Այսպիսիք և նոյնպիսիք ո՞չ իմանին արձակաբար, որպէս թէ բառ ինքեան և պարզապէս չէր մարթ կատարել նորա առանց խորհրդոյ մարդեղութեն, և թէ այնմ խորհրդոյ հարկ էր կատարել 'ի նա Կոյսն: Այլ իմանին բառ վճռելոյ յաւիտենական սահմանին Այ, որ ինքնիշխան բարութբն կէտ եդեալ էր՝ մարդեղութեն խորհրդով կատարել զայն ամենայն պարգևս, և թէ Մարդեղութեն ծննդեամբ 'ի սբյ Կուսէն ունիցի զկատարումն: Եւ առհա բառ այսու անշրջելի սահմանին Այ, եթէ արդարև ոչ 'ի սբյ Կուսէն յղացեալ էր Որդին Այ, ո՞չ մարմնանայր, ոչ շօշափիւր, ոչ ճաշակիւր, ոչ քարոզիւր, ոչ սըրբէր զմեզ, ոչ մկրտէր, ոչ օծանէր, ևն:

56. Թէ մեր Երկնէալ: 'Ի սաղմոսէն առեալ բանս, (ձզ. 14.) անդնախ ասի՝ ճշմարտութն յերկրէ բուսեալ, և ապա յերկնից արդարութն երևեալ. իսկ աստանօր փոխել զկարգդ՝ թուի թէ չյարմարի նաև գիտաւորութն բանիցն. զի ցուցանել կամի՝ թէ բարիքն ամենայն սահմանեալ էին միջնորդութբ սբյ Կուսին. ուստի բառ կարգի առել 'ի դէպ էր. եթէ չէր սկսեալ ճշմարտութիւն 'ի յերկրէ, ոչ երևեալ էր հօրն արդարութիւն 'ի յերկնից: Վասն որոյ առ 'ի յարմարութն իմաստիցն, միայն թէ 'ի վերոյասացս դրշաց չիցէ՝ այլայլեալ, զբառն արդարութեն ունիմք իմանալ՝ արդար կամ հաւատ կամք, որոշումն, այսպիսի մտօք. եթէ արդար կամք Հօրն չէր կատարեալ 'ի վերայ քո, ճշմարտութիւնն

ցան, և յերուսաղէմ օրհնել և գովել զԱծ 'ի տաճարին. ուստի և մեք դարձցուք յօրհնութիւն քո:

62. Գլուխ նոյին պանծանաց: Ա՛յնպէս դու միայն օրհնեալ ես 'ի կանայս, զի բովանդակ ազգի նոցա պանծալի գլուխ ես, և պսակ. որպէս և Որդին քո՝ գլուխ արանց ազգի. եթէ արք 'ի Քս պարծին, և կանայք նոյնպէս 'ի քեզ: Պսակ կուսութէ. լրումն կամ կատարելութի կուսութէ, իբրև նախկին կոյս ծծանուէր, նախատիպ ամենայն կուսից: Մաքուր հարսնութէ. որ այն կուսութի է անապակ հարսնութի առ Աճ, միրով ընդ նմա ողջախառնեալ. կամ, զի լաւ ևս քան զամուսնացեալն կարող է որդիս ծնանել երկնից: Անկոզդ ևս, մարթ է ուրոյն առնուլ զայս 'ի վերայ օրինաւոր հարսնութէ. այսինքն դու պսակ մաքուր հարսանց երկրաւորաց, նախատիպ նոցա քոյով անշաղախ կենակցութբ ընդ Յովսեփայ: Պսակ ընտրութէ, պսակ ոսկի ընտրեալ, որոյ գովութի անփորձ է, այսինքն ընտրականութեին կամ ազնուութեին ոչ է 'ի փորձոյ հրոյ՝ իբրև զոսկի խառնեալ. զի և այլ արդարք ոսկի պսակ եղեն, բայց անցեալք ընդ փորձ հրոյ և ջրոյ: Պսակ անեղծութէ, անեղծանելի անթառամելի ըստ նմանութէ լուսոյ: Պսակ շնորհօք նորակերտեալ, Նէին ծնելութէ, որ միայն ծնողին Աճ վայելչական է, կամ, որ կնիք է ծնելութեան նոյ: Պսակ երանական, երանեալ յամենայն մարդկանէ, կամ որ զերանութի յինքն բերէ, բանին հօր մայրութէ, մօր բանին վայելչական:

63. Պսակ սուրբ պանծանաց: Պսակ սիրաշաղան պանծալի, կէնաց բարձրութէ, գերազանց վարուց առաքինութէ, կամ առաքինեացն որոց քաջազնականութի յերկինս է: Պսակ պայծառափայլ վարուց խնամութէ. յորում փայլէ հոգևոր կենացն խնամութի: Պսակ փերազարդութ, յօրինեալ յերկնաւոր ճարտարապետէն, երկնահանճարն գիտութէ. յորում տեսանի ծծայրին հանճար և գիտութի. կամ, որ ատանգէ զծծայրին գիտութի: Պսակ պատուոյ կամ կարևոր առ 'ի գեղեցկացուցանել զեկեղեցի. դու միայն յամենայն սրբ̃ց բաւական ես 'ի վայելչութի ընդհանուր եկեղեցւոյ. ուր այլք սրբ̃ցն՝ են պարծանք այսմ և այնմ առանձին եկեղեցւոյ: Պսակ պաշտելութէ, պաշտելի, յարգելի, առ 'ի զարդարել զնորա Սիոն՝ զարքայարան Քնի: Զերկրաւորն սեռն զարդարէր՝ ոչ պսակն բերաբերեայ, այլ Դաւթի կրողի 'ի գլուխ զԹագն Մեղքոմայ. (Բ. Թագ. ԺԲ. 30.) իսկ դու Թագուհի նորոյս սեռնի 'ի միասին ընդ Որդւոյ քում պսակ վայելչութե ես: Պսակ յոքնանկար, բազմագոյն կերտեալ ոչ մթին երանգօք, այլ յարփիոց եօթանց, յեօթն լուսաւորաց գեղեցկատեսա փայլատակեալ, յեօթնալոյս պարգևաց Հոգւոյն սրբ̃յ շողշողեալ: Պսակ առաջնորդիչ վերնոյն աղփակցութէ, թէ և երկրաւոր գոլով դու, բայց երկնից կարգեալ իսկուհի, զորս իրաւամբք աղջակիցս միմեանց անձնել զվերինս և զներքինս: Պսակ անբծութէ, գլխովին անարատ, անբիծ. շաւղացն արդարութէ, յորում անսխալ նշմարին ճանապարհք արդարութե և ծծակրոն կարգաց. ոչ պսակ միայն ես առ 'ի զարդ, այլև կանոն առ ամենայն ուղղութիւ:

64. Վերականգնելոյ ճոխոյս: Ահաւասիկ այսմ ամենայնի նախակարգեալ զանազան պարգևաց, գերազանցութեց, բարերարութեց՝ զոր թուով բանից չարեցի, և ոչ եթէ բովանդակապէս շարեցի, խոստովանիմք զքեզ արժանաւոր բնակարան, և ամենայնիւ 'ի քեզ ընդունող կամաց Անբաւին. և պարտապան իսկ եմք, վասն զի անհամար ազգաց ադամածնեացս՝ դու եղար պարիսպ ամրական. և 'ի քո ամենազօր բարեխօսութեանդ ապաւինեալք, խնամս մեզ և հանգիստ գտանեմք ընդ հովանեաւ անուր պատուարիդ: Պատուար դժնայօրէն, գեղեցկապէս յօրինեալ յականց հոգևորաց, ըստ տեսլեան յայսմ. (խա.) հրապա-

ջահ, հրով ածութեն չքնաղապատեալ, որով և անմատոյց աստուածայնական հիւսից, մեղաց և ախտից։ Բոցանշոյլ, միշտ լուսաւորեալ, որով զաղտ-նածածուկ նենգօղս չկարեն հուպ երևել։ ամենահրաշ հրաշալի կեր-տուածով յօրինեալ, և ամենեցուն հիանալի, յիշատակեալ յԵզեկիէ-լէ, որ փակեալ ասաց զմուտ քո առ մարդ, միայն Տն Այ մտանելի։ (Եզեկ. խ. 5. 6. խդ. 1. 2։) Պատուար ուղղափառաց, շուրջ յամենայն կողմանց 'ի հոգի և 'ի մարմին պարսպեալ, ընդ ամենայն ժամանակս՝ 'ի յղութէ անտի մինչև 'ի վախճանն երջանիկ ամրափակեալ, անառիկելի համայն արատոյ և ապականութե. որոյ հիմն անշարժութե 'ի բարձրե-լոյն՝ ըստ դաւթայ. * Եւ ինքն հիմունս արկ նմա բարձրեալն ||։ (Սաղմ. ձզ. 6։) Եւ քաղաքին վերնոյ, արքայութեան ըստ պօղոսի. (Եբրայ. ժբ. 22.) այնպիսի պատուար ես ամուր, զի քով պաշտպանութբ արարեր զամենեսեան այնմ արժանաւոր բնակիչս. վասն զի զճշմարիտն Ած ծնա-նելով 'ի մարմնի, եթէ խրատեալք եմք զծննդոցս երկրաւոր սերմնի՝ կամ զլինուորեալ եկեղեցւոյ ծնեալ յորդիս արքայութե։ Իրաւ և պատշաճ իսկ է՝ զի եթէ Արքային երկնից Քն պաշտօն անդ եղև քո որդի, նոյն և Թագաւորեալքն ընդ նմա՝ որդիք քո եղեն և ճանաչիցեն։ Եւ այսորիկ աղագաւ արդարև քոյ կոչեսցին, մաքուր և անախտական կուսութեան օրհնեցաւ և օրհնի 'ի շրթանց ամենեցուն, զի թէ և անպարակ առ ախ-տաւոր ծնունդ, բայց բեղնաւոր եղև անհամար որդւոց մաքրականաց. և այսպիսի դաւանեալ ես, վասն զի մարմնաւորան և ծնօղ խոստովանեալ ես խնկակից Որդւոյն Հօր Այ։

65. Ջեան տափմանին։ Ճշմարտապէս ուրեմն 'ի տեղ ընծայեալ, առ-քեզ պատշաճեցուցեալ զքան զբողն, խոստովանիմք թէ դու եղեր մեզ օժանդակ և յարկ ապաւինի ընդդէմ փորձութեց յաւուրս նեղու-թե, ըստ սաղմ. (Ը 3. 4. լթ. 7. 8։ խե. 2։) Ո՞վ մաքրափայլ կոյսդ, մաքրեալդ կուսից յօրինական արատոյ՝ որով անորդի կանայքն պիղծ հա-մարեալ էր, այլև 'ի քաղաքական բամբասանաց՝ որ եթէ փոյթ չէր և ան-պիտան աշխարհի անդ ոսնէ զնոյն. քանզի ցուցաւ 'ի քում կուսութեանդ՝ թէ գերազանց ես որդեծնութե ընդունակ է։ Ակնածաւոր, առաջին յետ Քնի՝ համօրէն երանելեաց. և Տէր հիանալի, մայր՝ որպէս գըլ-խոյն եկեղեցւոյ, նոյնպէս և կցանելոյ նորոյ եկեղեցւոյս, յորում դու-ինքն եղեր նախկին հաւատացեալ յաւետարանել հրեշտակին, և քոյով անշարժելի հաւատովք հաստատեցեր զգլխաւոր հիմունս եկեղեցւոյ՝ զառաքելականն առ չարչարանօք փրկչին։

66. Ընկա՛լ պէրգաբան։ Ապաւինեալք 'ի Թևս պահպանութե քո, միշտ կանխեսցէք 'ի նուիրեալ տեղի տաճարի քո օրհնել և մեծացուցա-նել, և այժմ ընկալ աղաչեմք զներբողական զայս օրհնութիւն՝ որչափ մեր լեզուս ասել կարօղ էր. հայցելով միանգամայն՝ զի տացես մեզ, զի նուիրեալ այսմ տաճարի զձիրս կամ զզօրութի տաճարացն որ յերու-սաղէմ և 'ի բեթղեհէմ. որպէս զի ազգեալք և առաջարացեալք, արժանի գտանիցիմք մասն փրկութե ընդունել 'ի փառաւոր յայտնութե միած-նի քո։ Իսկ այժմ զքեզ եղև զօրաւոր և մեծ պատճառ ապաքինեաց բարեաց՝ յայսմ զեկեղեցական տաճարի փառաւորեսցուք, ով գերամ-բարձեալդ ծնօղ անժամանակ Էին, որդւոյն Այ։

## 'Ի գանձ սբյ Էջածնին։

Յաղագս այսր Գանձի՝ թէև չունիմք հաւաստեալ թէ զոյգ ընդ նոր-բողենին եղէ յօրինեալ, եթէ զի չիք նշանակ 'ի յիշատակագիր նախնեաց

կացեալ զօրէն մարմնոյ և հոգւոյ. և աստիմք միշտ փառաւորեսցիս, որպէս և անեղծ պաշտօնէիցդ հրեշտակաց օրհնաբանութք: Ոչ ինչ յերկուանամք, թէ անհերքելի քոյով հայցուածովք պարզերես կացեալք յանդիման երկնային դատաւորին, արժանի լինիցիմք և յայնժամ ընծայս բանից մատուցանել. և ընդ քո ամենափայլ մեծութեանդ հրաշացեալք, փառաբանակից քեզ լինիցիմք՝ օրհնել զանքննելի նը Երրորդութեան յաւիտեանս:

74. Շնորհաշէր էին: Զյիշատակագիրս ունիմք 'ի միում ընտիր օրինակի՝ գրեալ 'ի թուղթն պաժ: Անդ, որպէս և յայլ ձեռ. գրի. շնորհաշէր, առանց էին:

75. Զպարմուքն . . . պծառփ: Այսպէս ձեռ. ապ. զպարմուքնս . . . պծառա. և ընթեռնլի է բազմաւորական զնել վասն երկուց զովեստից 'ի նը Խաչն, և 'ի նը Աճածինն: Նկարէտւ: Զթուղթն կամ զքարտէզն՝ յոր գրեալ էին ճառքն, նմանեցուցանէ սփռոակալեանին դաշտի, յորում գրչաւ նկարին բանքն, իսկ գրիչն եղբ. ձի ընդ ձեռամբ հեծելոյն՝ ընթանայ յանդարձակութե անդ՝ առանց ձայնի, առանց ոտից. պատճէ, քարոզէ անձայն՝ բայց միշտ և անխօսոր: Ոչ ձեռ. օրին. առանց ոէր գրէ, հնչողի, պարմողի, փարողէի:

76. Արշանացուցի անն: Այսպէս և ձեռ. իսկ այլ ապ. 'ի անն: Եթէ 'ի նախագիրն չիցէ զանց արարեալ սակս յառաջելոյ բային՝ արշանացուցի, իմանի արական հոլով, այսինքն այսմ գրուածոյ եղի զանուն քո անջինջ յիշատակ. և տեսանեմք արդեամբք 'ի գլուխ ելեալ փափաքանաց նորա և գիտաւորութեն. զի ահա աւելի քան ութ հարիւր ամք են՝ զի կայ մնայ անուն Մոկացւոյ Դիտապետին Ստեփանոսի. և առանց այսր գուցէ խապառ մնայր անյիշատակ: Լաւ է 'ի գիրս դրոշմել զանուն զովելի՝ քան 'ի մահարձանս քաղաքաց, կամ յերեսս ապարանից:

77. Երկնային գանձնոցք: Յանձն առնէ յաւանդ պահել զգրուածքս 'ի գանձարանի որբազան սպասուցն և զարդուց եկեղեցւոյ, զի հոգեւորական աւանդացութիւնք Տօնից առաւել պատուականն են քան զպատուականս և զաշտանակս. և զի 'ի գանձատան եկեղեցւոյ անկասկած են պահին, և ոչ անյայտնական յանծանօթ վայրս, և յանճանաչօղ ձեռս. և զարձեալ, զի այնու պատճառանօք վաստակաւորքն ճառից գրութե ընդունին մասն յիշատակի յօրհնութեաց եկեղեցւոյ:

78. Միջնորդաւ նոյն բանի: Թէպէտ և մարմնով 'ի բացեայ կամք, այլ հոգւով զմիանալն փափաքեմք նպաստիւք բանաւոր կցորդութե. բան իմաստութե և միախորհ պարապմունս 'ի գիրս՝ լիցի մեզ ոգի շաղկապիչ. յայսմ կրթութե եղբ. 'ի քրայի ընտրեալ զօղեսցիմք, իբր անբաժին փեսմանք, որպէս թէ միշտ տեսանիցեմք զմիմեանս, միով շնչով, միով կամօք հաստատեալք 'ի Քս:

79. Աներևէլ գողովփեսութք: ձեռ. օրին. փեսութեան: Բանիւս 'ի վերև եղանեն կարծիքն՝ որ համարէր թէ սա Գրիգոր առաջիկայ գրուաւ հանդերձ փոխադրութե սբյ Խաչին Ապարանից. քանզի և կողմանցն իսկ և խորանացն անուս ասէ զանձն: Այլև 'ի տեղւոյ ասաց ցուցաք 'ի Նախադրութե Պատմութե Խաչին Ապարանից, թէ այլոյ ուրուք վարդապետի յաւելուածս արարեալ իցէ 'ի պատմականս անդ. որպէս և ինքն երջանիկ Նարեկացին տայ համարձակութե՝ ընուլ զպակասն գրուե: յարմարման գրոււթէ: այսպէս 2 ձեռ. օրին. իսկ ապ. յարմարական: Բայց սակայն գործ էր՝ ըստ բանի և ըստ կամաց Նարեկացւոյն՝ զյարմարականն առնել յաւելուած, և ոչ զաւելորդ և զկարկատան:

80. Իմ գործոյ և ոչ ձոփր: ձեռ. օրին. իմ գործ. և մարթ է պար-

զել. գործ ոչ որոշեալ ինձ և ոչ զփոքր ժամանակ ։ Այլ ես հարցանել ցանկայի զերանելի անձին, զո՞ր գործ իմանայցէ արդեօք. ո՞չ ահա առն վարդապետի սեպհական և իւր միակ գործ է՝ յարաժամ զեղերումն յընթեռնուլ. որ մարմնախորհացն ևեթ յանգործութիւն համարեալ է, և 'ի բամբասանս ևս ձգեալ իբր իշամեղուս՝ յայլոց վաստակոց կերակրեալս ։ Ապա եթէ յաղագս այլոց ճգնողական գործոց ասիցէ՝ ոչ սահմանեալ ժամանակ ինչ, յիրաւի է ասել. վասն զի չունէր չափ սահմանեալ, այլ միշտ զոր կարէրն առնէր. և խոնարհ հոգւոյն ոչ գործ թուէր զոր առնէրն՝ առ այնու զոր առնելն յօժարէր. վասն որոյ ժամանակ պակասէր նմա՝ և ոչ եթէ գործ ։ Այլ 'ի կնիք բանիցս՝ զնա ինքն զերջանիկ զՀայրս մեր աղաչեսցուք՝ զարթուցանել 'ի մեզ իւրովքն աղօթիւք զայսպիսի միտս յորդորականս. քանզի թուի խրատ իմն ազդել առաւել անձինն յայլ վարդապետս, զի ժրաջանք լինիցին գտնել 'ի մի այսոցիկ պարապմանց՝ կամ յընթերցումն, կամ 'ի գործնական վարս. զի մի՛ առանց այսոցիկ՝ զրաշխան դատապարտանաւորք երևեսցին ։

'Ի կատարած ծանօթութեցն՝ որ 'ի ներբողս էր Ածածնին, պատշաճ թուեցաւ յաւել զառանձին բացախօսութիւնն զաշխատասիրեալն մեր յառաջնմէ, և զապագրեալն յաւուր աղօթամատոյց Մատենին. ուրանօր և զպատճառն նախազեկուցաք՝ էր վասն յաճախութե̃ բանից, և ոչ համառօտաբար ըստ լուծմանցն օրինակի ընթացաք յայնմ. զոր և ոչ աւելորդ վարկանիմ երկրորդել յայսմ վայրի ։ Առաջին պատճառ, զի էր մեր նախայօժար դիտաւորութե̃ յաղագս մտաց մերոց՝ մատանաւորօք բանիւք ընծայաբեր լինել 'ի յիշատակ ամենապատիւ վշտաց և ցաւոց մեծի Տիրուհւոյն ։ Երկրորդ պատճառ ծանիցի խորաւ̃ իմաստից առաջիկայ նարեկեան բանահիւսութե̃ն. յորում երջանիկ վարդապետն ըստ իւրումն սովորութե̃, մանաւանդ 'ի վեր ևս քան զսովորականն, զծածուկ գիտութե̃ անձնական ցաւոց Ածամօրն՝ թաքուն խորհրդով 'ի կարճառօտ բանս բովանդակէ. մինչ զի 'ի ներքս 'ի խուռն իմաստիցն յառեալ քննութեամբ, թուիմ յիս ինքն զբաղդատարայ արքայի ապշութիւն մտացն կրել գոլութե̃, երբ համառօտագիծ նշանագիրս նկատեալ յորմ ապարանիցն՝ առանց կարօղ լինելոյ մտաւորաբար ընթեռնուլ ։ (Դանիէլի. Ե. 5. 25.) Որով 'ի թարգմանութիւն իմաստիցն պէտս ունել գոգցես դանիէլեան հոգւոյն, թէ ոչ զառ 'ի յառաջնոյ ածազգեստից արանցն երկասիրութիւնս ունէաք օժանդակ. որք զգաղտնի խորս մարտիրոսական ցաւոց Ածամօրն՝ ըստ կարի մեզ լուսաբանեցին ։ Ապաքէն զնոցա ամենեցուն զընդարձակ ճառս վարդապետականս՝ 'ի մի յայս բան սքանչելարուեստ համառօտէ երջանիկ մեր վարդապետ. հաւաստաբանեալ մեզ զխսկութե̃ ցաւոց Ածամօրն, զպատճառս նոցա և զօրինակն, զսաստկութիւն, զերկարութիւն, զժուժկալութիւն, զարդիւնս փառացն՝ որ 'ի նոցանէն ներգործեալ, և միանգամայն ասել՝ զամենայն զվշտագին և զուրախարար հանգամանս ցաւոցն. մինչ զի յիրաւի է կնքել, սակաւ ասաց, այլ բովանդակ ասաց ։

Օ՜ն եկ այսուհետև 'ի ներքս 'ի քննութե̃ բանիցն մխեսցուք երկիւղիւ. վստահացեալք 'ի նոյն ինքն յԱծամայրն՝ բանալ մեզ զծածուկս իւրոցն ցաւոց. զի որ կրեացն՝ նոյն քաջ և զթարգմանելն գիտէ ։ Եւ մեզ աստանօր ընդարձակեսցին խղձք, քան բանք. ինձ՝ որ ասեմս, և ձեզ՝ որք ընթեռնուքդ. զի 'ի ճառս ցաւոց՝ առաւել սրատես են սիրտք՝ քան միտք ։

# ԲԱՑԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## 'Ի բան Ներսէսի որ Ծ̃ածնէն ։

Արախացիր յաւէտ հրձուանօք բերկրեալդ 'ի կանայս ։ Որ դժուարընդել դաստիարակաւն խաչի վարժեալ կրթեցար, որդւոյ քո կցորդակցութեամբ, միատեւակն ժուժկալութբ, կրելով զերաշխեալ վըշտաց ծնիցելոյդ 'ի քէն ոմն, մշտաչարչարն մեռելութեամբ, անձնատուչոր տօթով խարուկեալ ։ Իբրև զորոջ անարատ՝ քահանայական նուիրմամբ 'ի վերայ սիրոյ սեղանոյդ մատեար՝ ասրաքոյս և՝ստևադիսակ՝ գեղմնաքարձ մաքուր պատարագ ։ 'Ի ձգնաւորական վարս աղջակիզեալ, քան թէ 'ի սրոյ հանդէս խողխողեալ ։ Վասն այսորիկ 'ի նուէր քո զենման՝ հրեշտակացն պարք պաշտպանեալ, ընդ առաքելոցն դամար դասակցեալ, զմիայն արժանիդ պատուեալ դավէրին՝ որ Ծ̃ածին ։

Ա. **Ը**ստ բազմադէմ շնորհաց հոգւոյն՝ խաղացելոյ յանձին զուարթանունն մերո Հռետորի, յիրաւի և կողմանցն զանազանութեն անուանակիր գոլ՝ ամենայն ոք զնա խոստովանեսցի ։ Վասն զի եթէ զվարդապետականն ասես, թէ զհովուականն, եթէ զյաջողութեցն, կամ զթարգմանութենն, և որ այլն ևս թուեցեալքն յառաքելոյ, (ա. կորնթ. ժբ. 8. 9. 10. 28. 29.) յոլովագունիցն յայնցանէ արժանացեալ և անուամբ՝ և իրօք, պսակ գեղայօրէն անցեալ հանդչի 'ի գլուխ հայաստանեայց եկեղեցւոյ ։

Այլ ինձ 'ի յայժմու առաջադրեալ բանիս տեսութիւն ոչինչ տարադէպ թուի՝ երաժիշտ հոգենուագ զնա անուանել, և կամ նկարիչ հոգենկար. մանաւանդ թէ երկոքումբք ևս պատուեալ տիրապէս. վասն զի երգէ նկարելով, և նկարէ երգելով ։ Ուր ոչ զգողթնացի երգիչս է տեսանել՝ 'ի հռչակ արտաշխսի քաջախառութեցն. և ոչ զթրակացին որփէոս՝ քնարահար երգովքն զառասպելեալ ոծս ստեղծանելով, և ոչ զապեղէսն կովացի՝ 'ի խառնութիւն երանգոց անահտականն պատկերի 'ի սնոտիս տաժանեալ ։ Այլ զի՞նչ, հրեշտակ 'ի մարմնի՝ քնար զսրտին առեալ տասնաղի, երգել՝ քաղց հնչեցուցանել 'ի լսելիս ազգաց՝ զերկնից խկուհւոյն զանհամեմատ փառացն գովեստս ձայնից, և զառ 'ի սրովբէից պատկառելին տեսակ պատկերի անզուգականն մեծութեն տիրածին կուսին՝ ըստ տանելոյ բանեղէն դեղոց՝ 'ի տես նկատման նուազահայեաց մերոցս աչաց՝ չքնաղ կերպագրել ։ Եւ ահա 'ի հրաշատիպ նորայն հիւսուածոց՝ մի և այս նուագ ճանաչի ։

## Խրախուսեցէք յաւէտ հրճուանօք բերկրեալք 'ի նմանայս ։

Բ. **Ա**յսօր առաւելեալն 'ի կիրս հոգւոյն զարթուցանել հնարի՝ խրախուսելին ասելով. ոչ սոսկ ուրախ լինել, այլ գլխովին պատրաստուն ունել զսիրտն խնդութենն շարժմամբ, անխառն ամենևին 'ի մասնէ տրտմականացն. զի այս է խրախանալ ։ Եւ զայն ոչ վայրապար՝ 'ի սրտին ևեթ կրելով, այլ յաւէտ հրճուանօք. 'ի դէմս երեսացն՝ 'ի ձգումն ձեռին՝ 'ի շարժուած անձինն արտաբերել զներգոյացեալն 'ի սրտի զուրախութիւն. զի ըստ եռանդեանն՝ և ցայտմունք իւր. և հրատին բորբոքելոյ՝ բնաւորեալ է կայծականցն թօթափումն ։ Իսկ այսպիսում ամենապատիկ ուրախութեն ո՞վ այլ ոք տիրապէս արժանի՝ բայց դու միայն ասէ՝ բերկրեալք 'ի նմանայս ։ Զի այլոց կանանց տրտմութիւն եղաւ 'ի վերայ, և ցաւք, և հեծութիւնք, և ընդ արամբ նուաճութիւն. դու միայն անպարտական այսմ ամենայնի, 'ի քեզ բերկրեալ, և այլոցն ամենեցուն բերկրեցուցիչ յիրաւի ճանաչիս ։

Իսկ արդ՝ զո՞ր խորախամութեն պատճառս տալ ունիցիս ով երանելի՝ ասէ սաս. արդեօք զառ ՚ի ծննդենէն ըղձալմաղեղ շնորհացն լիութի, արդեօք զգաբրիէլեան աւետեացն մեծարանս, զանձամայրութի՞ն արդեօք, մի՞թէ զծննդեանն կուսական, կամ որ այլ ևս գերազանցութեց են մասունք՝ նորուն անձածնողու-թեն վայելչականք ։

## Որ դժուարընդէլ դաստիարակական խաչի վարժեալ նրբեցար ։

Գ. Րամբէ, նոր զարմանս. նորանշանս իմն հնչեցուցանես ո՞ անձայինդ գրիգորէ. զի՞նչ այլափոխութի իցէ կերպարանաց բանիդ, յառաջագոյն զուրախականն սկզբնաւորեալ նուագ, անդէն առ նմին զկարի տրտմականսն յաճախել, խաչ, միած-նի սուգ. վիշտս անփարատելիս, մեռելութի անմահ. անձին տօչորումն, ողջակիզումն՝ միանգամայն և զենումն ։ Խաչի զի՞նչ միաբանութի ընդ ուրախութե կայցէ. ո՞րպիսի ինչ իցեն հըր-ճուանք մօր սգաւորի՝ ընդ որդւոյ մահակից եղելոյ ։ Ո՛չ զոք ՚ի ճարտար երգեցողացն՝ լուաք ընդ խնդականսն ՚ի ներքս ածել խառնել զտրտմականսն. և ո՛չ զայն ոք ՚ի պատկերագործաց, որ ՚ի գծագրութի շքեղաշուքն հանդիսի թագընկալութե մեծի արքայի՝ զվաղամեռիկ եղելոյ միածին արքայորդւոյն զաշխա-րումն առ նմին նկարիցէ ։

Մարմնական ճարտարացն՝ ասէ, արդարև այդ զզուշալի. այլ հոգեպէս երգողացս՝ ո՛չ նոր ինչ, կամ պարսաւելի. զի ուր ցաւք՝ փառաց լինին պատճառք, և մահ՝ յաղթանակ կանգնէ ՚ի վերայ մահու, անդանօր յիշատակ ցաւոցն և մահուն՝ մեծի խնդութե է արարող ։ Ո՞չ նա ինքն անձամօրն որդի՝ իւր փառս զխաչն առձայնէր ։ ( Յովհան. ժբ. 23 ։ Կոչ. ընծայ. երես. 236 ։ ) Ո՞չ առ յիշատակէ խաչին պարծանաց՝ զխոցուածոցն վէրս անկից պահէր ՚ի փառաւորեալն մարմնի՝ մինչև յիւրա-կանն աթոռ յերկինս ։ Զի՞արդ և պօղոսի չգտեալ յամենայն հրաշակերտս երկրի այլ ինչ նիւթ պանծանաց, զխաչիւն թևածէր ։ ( գաղատ. զ. 14 ։ ) Ապա արդարապէս և կարէ առաւելութե նմին իսկ անձամօրն՝ պսակ փառաց և խնդութե առիթ զխաչն է համարելի. որպէս յաջորդօքն յայտնեսցի ։ Վա որոյ երգեմ գոչեմ, կրկին երկրորդեալ զնախընծայ ըղձաձայ-նութի. խրախուսէր յաւէտ հրճուանօք բերկրեալ ՚ի նմանէ ։ Վասն զի

## Դժուարընդէլ դաստիարակական խաչի վարժեալ նրբեցար ։

Դ. Դաստիարակ՝ խնամածու է մանկանց ՚ի մարմնական կենցաղս՝ միանգամայն և ՚ի հոգեկանս ։ Ապաքէն հոգեվարժ դաստիարակութե ինչ առ ՚ի մարդկանէ չունէր պէտս կոյսն սրբասուն, որ էրն անդստին ՚ի տղայութէ՝ վարեալ մաքրեալ, բա-րութեամբ լցեալ, աստուածութեամբ նորոգեալ ։ Զի՞նչ ապա. վիճակեցաւ նմա ընդ այնպիսեաւ լինել դաստիարակաւ, յորմէ այլք խոր-

չին՝ մերժին, զերեսս դարձուցեալ. վասն զի դժուարընդել է, 'ի դժուարինս և 'ի ցաւելիս ընդելացուցիչ և վարժիչ. վասն որոյ և դժուարաւ առ 'ի մարդկանէ ընդելական: Խաչն՝ որ յամենեցունց թիկանց ընկեցիկն էր իբրև դժուարակրելի, միայն զթիկունս մատաղ կուսին եգիտ իւր ասպնջական. 'ի նմա հանգեաւ, մանաւանդ թէ հրաւիրեցաւ սիրողապէս ընդ ածամայրութեն: Վասն զի ոչ միայն 'ի մարգարէիցն տեղեկացեալ գիտէր զմեսիային ապագայ վշտամբեր կեանսն, այլ և յաւետել հրեշտակին զնորա կոչումն 'ի մայրութի մեսիայի, ոչի՞նչ է յերկուանալի՝ թէ ընդ այլ յայտնութեցն ծանեաւ որոշաբար և զխաչակիր կենացն խորհուրդ. որպէս և մայրական պաշտամանն վայել իսկ էր գիտել. այն զի՝ կոյսն ածիմաստ լուեալ 'ի հրեշտակէն զթագաւորելն 'ի վերայ տանն յակոբայ՝ և զփրկել ժողովրդեանն, յայտ է թէ զփրկագործութեանն յեղանակ ոչ մարմնապէս իմանայր՝ սրով և աղեղամբ, այլ իրաւամբք և արդարութբ: Դժպատեհ իմն թուի կարծել, թէ 'ի հինսն յաւետարանել հրեշտակին զծնունդ սամփսոնի՝ յայտնեալ իցէ և զօրինակ վարուց նորա կրկին երևմամբ մօրն և հօրն. ( Դատաւ. ժգ. 5. 14: ) իսկ 'ի նոր աւետարանութեն առ ած կոյսն՝ լռեալ իցէ զհանգամանս ծննդոյն: Ապա գիտէր, և դարձեալ գիտաց զխաչին պատրաստութի աւետարանեալ որդւոյն. յա՛նձն առ՝ ընկալաւ զմայրութին. ընդ նմին և զխաչակցութին. անդէն բղխեաց սէրն մայրենի, զոյգ նմին և ցաւն. և մինչև էր որդւոյն զփորձ առեալ վշտացն, մայրն զծնողական աղէտսն ճաշակեաց. նմանաբար կրեալ մօրն սամփսոնի, որում յառա՛ջ քան զորդին հրամայեցաւ զուխտաւորութեն պարտսն վճարել՝ ժուժկալութբ 'ի գինւոյ և 'ի ցքւոյ: ( Դատաւ. ժգ. 4: )

Կամիցիս գիտել դարձեալ զխաչին դաստիարակութիւն առ մատաղամայրն մարիամ. փութա՛ մօտ 'ի տաճարն առ ալևորն հոգեկիր սիմէոնն. տես զիա՞րդ զնորա օրհնաբան լեզուն՝ սուսեր ածամուխ պատրաստեաց հոգին. * Ընդ քո իսկ անձն (ասէ) անցցէ սուր: || ( Ղուկ. բ. 35: ) Դիմեա՛ց ձայնն ընդ լսելիս կուսին, և եղև 'ի սրտին սուր հատու 'ի վէրս հոգւոյն: Գիտեն վիշտք յառաջատեսք՝ և նախ քան զփորձ իրացն տագնապել զսիրտ, և առնել՝ որպէս սենեքա ասէր, յառաջ քան զթշուառութիւն՝ թշուառ: Աբրահամու հարիւրաւոր ամօք յառա՛ջ ծանուցեալ 'ի թմրութեն զգալոց տառապանս իւրոյ զաւակին, 'ի տագնապ ըմբռնէր ծերունին, և ընդ գիշերոյն՝ խաւար զաչսն պաշարէր, և ահ զսիրտն հայրախնամ: ( Ծննդ. ժե. 12. 13: ) Իսկ արդ՝ զո՞ր վէրս կարծիցեմք ներգործեալ զկուսական սրտիւն 'ի սիմէոնեան սրոյ անտի. ապաքէն սաստիկս և անհնարինս, և օր ըստ օրէ զայրացեալս՝ ըստ իւրաքանչիւր վշտաց որդւոյն 'ի գլուխ ելանելոյ. որովք երեսնամեայ ժամանակաւ վարժեալ հրահանգէր յուսումն արիւնագիծ մատենի քառակողմեան խաչին: Վասն զի որդւոյ նուիրելոյ 'ի

ցաւս՝ այնպիսի իսկ վայել էր մայր վշտամբեր. և որ հանդիսակից լինելոց էր ընդ ծնորդւոյն 'ի նորոգումն աշխարհի, արիականի ունէր պէտս կրթականութե:

## Որդւոյ քո կցորդակցութեանն:

Ե. Օ հաղորդութիւն 'ի վիշտս՝ սփոփանս իմն վշտակցացն տայցէն իմաստունք՝ յորժամ ընդ օտարս իցէ. բայց ընդ որդւոյ՝ կրկին տանջանք են. և է միակ որդւոյ՝ սաստիկ ևս. իսկ է միամօր որդւոյ անմեղի՝ անսփոփելի են ցաւքն: Ահա քեզ նպատակ՝ և պատճառ ցաւոց ծնածնորն՝ սաստկութենն, և անբժշկութենն: Որդի՝ որ միակ մխիթարութիւն է ծնողաց 'ի վիշտս, նոյն դարձաւ սրոյ կուսին 'ի տանջանս: Ո՜վ աղէտից. մայր՝ որոյ գորով սրտին ոչ ժուժայր 'ի տեսանել անգամ զանասուն ոք ցաւած, յիւր իսկ որդին միածին և անպարտ՝ նախ առաջին տեսանէր զայն դժնդակութիւն, զոր յայլ ոք օտար բնաւ չէր տեսեալ: Գալարէին աղիքն առ կսկիծ սրտին, այլ ոչ նեղէր հաւատարմութիւն թողուլ լքանել զորդին միայնակ 'ի տանջանս: Վասն որոյ կցորդիւր նմա մարմնով, և սրտիւն, և աչօքն. կցորդէր 'ի կիրսն, կցորդէր և 'ի դիտաւորութիւն կրիցն. այնչափ համակարիք գտեալ իւրում միածնի, մինչև հայելի կազմեցաւ նորա բազմաչարչար անձինն, 'ի սիրտ իւր կերպարանեալ զամենայն զնորա տաժանական կիրս. որով լինել նոցա մի պատկեր՝ և մի նմանութիւն, որպէս 'ի բնութեն՝ նոյնպէս 'ի չարչարանս. տիրապոյն ևս յանձն սահմանելով զառաքելականն. * Զչարչարանսն քո 'ի մարմնի իմում կրեմ: ‖ (Գաղատ. Զ. 17:) Վասն այսորիկ ճշմարտութբ կոչեաց զնա երանելին Հերոնիմոս՝ նահատակակից քո. և նմա միայնոյ իսկութբ պատկանաւորի ասացեալն, ըմպել զբաժակ չարչարանաց փրկչին. որ յայլ մարտիրոսս նմանութբ իմանի, երբ հաղորդեալք քո 'ի դիտաւորութիւն կրիցն՝ այլ ոչ 'ի նոյնութիւն. ըստ քո և վասն քո տանջեալք, այլ ոչ ընդ քո տիրապէս: Իսկ ծնօղին չարչարանք՝ ամենայնիւ միաբուն է քո չարչարանացն. և սիրտ նորա՝ արիւնաներկեալ նովին իսկ քոական արեամբն. որով աստուածականն ճշգրտեցաւ օրինադրութի, այն՝ որ 'ի սրբութի բորոտին՝ յօրինակ ախտացելոյ բնութեան մեղօք, հրամանատրէր առնուլ երկուս հաւս սրբս՝ անարատս, զմին սպանանել, և զմիւսն զկենդանին՝ թաթաւել յարիւն սպանելոյն: (Ղևտ. ժդ. 4. 5. 6:) Ապաքէն ոչ զենաւ մարիամ յիւրում մարմնի, բայց ծիրանազգեստեալ ներկաւ արեամբն քո զենելոյ 'ի սրբութիւն մեղաց: Այլ յառաջակայսն ձենպեցէ բանս:

## Սքանչելին ժուժկալութեան ։

Զ. Մ'չ ըստ մարմնոյ միայն կրէց որդւոյն զուգակցորդ հանդիսանայր մայրն գթովական, այլ նովին հոգւով որով որդին՝ հաւասարեալ ժուժկալէր ։ Կամաւորաբար յանձն առ որդին զչարչարանսն, նոյն յանձնառութի և 'ի մայրն ։ Կայր որդին 'ի չարչարանսն և 'ի խաչին՝ անմռունչ, անտըր-տունջ. ոչ ժուժային օտարքն 'ի նմանէ. բազմութի կանանց իբրև զեղերամօրս զհետ ընթանային կոծովք աղիողորմ. (Ղուկ. իգ. 27 ։) ժողովուրդք 'ի տեսիլն միայն աղետացեալք, ընդ անձինս ագորէին կրծոցն բաղխմամբ. (անդ. 48 ։) Իսկ մայրն զի՞նչ. կայր առ խաչին ։ Մինթէ արձան իցէ անզգայ. կայր մարմնովն անդողդող. կայր աչօքն անքթիթ. կայր լե-զուաւն անբարբառ. կայր լանջօք ամենալուր. հոգւով ան-խռով, մտօք անտրտունջ, արիութեամբ՝ անմեղկելի. կայր առ խաչին, զի և որդին 'ի խաչին ։

Զի՞ կաս, զի՞ գործես 'ի ցաւագին տեսարանիս մայրդ վշտա-լից. երթ խոյս տուր 'ի տուն քո աղքատին, և գործեա՛ քեզ աւազան արտասուաց առ դիւրանալ սրտիդ ։ Եւ զիա՞րդ ասէ. ահա տ̃րն իմ ծնընկալ տապանակաւ մարմնոյն 'ի բացե կայ 'ի գլուխ լերինս մածեալ 'ի խաչի, և ես առ տնին զան-ձինս դիւրութիւն խնդրիցեմ. քաւ լիցի. բազմահամբերս որդ-ւոյ ոչ լինիմ մայր անժուժկալ. այլ զուգակցապէս ժուժկա-լեալ, լնում զպակասութի նեղութեանց իմոյն Յսի յիմում սրտի ։ Տեսանեմ զնորա զամենակիր համբերութիւնն յդյ հօ-րէ՝ իբրև յանաչառ դատաւորէ. յաշակերտացն՝ իբրև յան-հաւատարիմ երկչոտաց. 'ի յուդայէ՝ իբր 'ի գող մատնչէ. 'ի պետրոսէ՝ իբրև յանծանօթ ուրացողէ. 'ի հրէից՝ իբրև 'ի նա-խանձալից արիւնարբուաց. 'ի հեթանոսաց՝ իբրև 'ի գիտու-թե̃ դատողաց. 'ի քրիստոնէից՝ իբրև 'ի գիտութե̃ անարգո-ղաց ։ Ապա համբերեսցէ և 'ի մօրէս՝ իբրև 'ի ծայրագոյն վըշ-տացելոյ, և ես 'ի նմանէ՝ իբրև 'ի ծայրագոյնս կրողէ ։ Կա՛ց մնա՛ ուրեմն՝ արձանացիր 'ի լեառնդ զմռսոյ՝ մա՛յր մր ։

## Սրբոյն գերաշխարհ վշտաց ծնողին 'ի խէն Քն ։

Է. Որք միանգամ 'ի զննին կայցեն հանդիսի չարչարա-նաց, թէպէտ և ցաւել ցաւեցին ընդ չարչարեալն, այլ ոչ ա-մենեքին իբրև զչարչարեալն. թէև վշտակիցք, այլ ոչ նոյնա-վիշտք հանդիպին ։ Միայն ծնողական գթոց է այս բուռն ճարտարութիւն, և կամ սիրոյ՝ որ կապիկն է ծնողականին, զկիրս ցաւոցն՝ յորդւոց անտի յինքեանս վերաբերել, և իբր իւրացուցանել նոյնութե̃, քանթէ կցորդութեամբ ։ Եւ ահա այս մի 'ի ներքին պատճառաց անտի՝ գութն ծնողական, որով ածամայրն առ չարչարանօք փրկչին ոչ այնչափ վշտակից ճա-

նաչիւր, քան թէ կրօղական բուն իսկ ցաւոց տէրունեան կրիցն։ Վասն զի որ չարչարիւքն, 'ի նմանէ ծնեալ էր. 'ի նմանէ միայն՝ առանց հօր. 'ի նմանէ՝ անցաւ և անախտ. 'ի նմանէ՝ անպղծանելի և միածին. 'ի նմանէ յառաջ քան զմարմնով յղութիւնն՝ ծանուցեալ, հաւանեալ և յղացեալ 'ի միտսն կամաւոր հաճութբն, գիտելով թէ ով էր իւր է։ Եւ ոչ միայն այսպիսի ծնեալ 'ի նմանէ հոգեպէս և մարմնապէս, այլև անհամեմատ գթովք և խնամօք սնուցեալ և աճեցուցեալ յարքունս հասակի, իբրև միակ գանձ սրտի, կամ լաւ ևս ասել, իբրև սիրտ իւրոյ սրտին, և կեանք հոգւոյն, և խորհուրդ մտացն, և լոյս աչացն, ոչ ինքեան միայն անյագ ըղձալի, այլ և ամենեցուն բարեսիրաց՝ տեսլեամբ ցանկալի, վարուքն օրինակ, վարդապետութբք առաջնորդ, սքանչելեօքն բարերար համօրէն ազգին։ Եւ ահա զորդի մի այսպիսի տեսանէ, ո՜վ անըմբռնելի տեսիլ, տեսանէ անպարտ մատնեալ 'ի ձեռս անօրինաց՝ բայց իբրև իրաւամբք. մատնեալ 'ի հարուածս, 'ի ծաղանս, 'ի նախատինս, 'ի վէրս համաձարակս, 'ի թուք երեսաց, 'ի խայթուածս գլխոյ, 'ի պատառուածս ձեռաց և ոտից, 'ի խաչ անարգութեան ընկերութբ աւազակաց։

Այսմ ամենայնի ականատես կացեալ և ականջալուր, ոչ մարմնապէս միայն՝ 'ի զգայութիւնսն ևեթ բերելով, այլ մտաւորապէս 'ի խորհուրդս սրտին կշռեալ զամենայն, զիւրաքանչիւր մասանց կրիցն զհանգամանս առնոյր 'ի միտ, մանր որոճայր՝ իմանայր զդառնութիւն ևթէ արտաքին տանջանացն, և ևթէ ներքին ցաւոց որդւոյն. ոչ միայն մարմնականացն, այլև հոգևորացն՝ որով փրկիչն դժնդակ ևս քան զմարմնոյ ցաւսն՝ հոգւովն տագնապէր, թախծեալ անհնարին ընդ մեղս ածասպանութեանն, ընդ կորուստ սպանողացն, ընդ թողանալ իւր 'ի հօրէ, ընդ կորուստ անբաւից 'ի մարդկանէ՝ և հաւատացելոց իսկ, որք անմասն 'ի նորայն կրից՝ և անարգուք հանդերձեալ էին երևել։ Այս կրկին տեսութիւն աչաց և մտաց տիրամօրն՝ միաբանեալ ընդ մայրենի գթոցն՝ զինչ այլ ներգործէր 'ի սիրտն գորովական, բայց իբր երկաթի գրչաց նմանութբ՝ զամենայն զկիրս ցաւոց որդւոյն 'ի մայրն քանդակել։ Զի երկոքին այս՝ սէր, և ճանաչումն՝ ինքնին բնութեամբ են նմանեցուցիչ և միաւորական. և ևթէ պիտակաբար արդարանայ արիստոտելի առասացութիւնն, Միտքն իմանալով՝ լինի ամենայն, բայց աստանօր իրօրէն տեսանի ճշմարտութիւնն, որով մայրն 'ի գործարան մտացն՝ հալոցաւ սիրոյն փոխակերպեալ, լինի ամենայնիւ որ ինչ որդին՝ համակ ցաւ։

Ո՜վ աղէտք անըմբռնելի. դժնդակ էր նմա և դոյզն ցաւ որդւոյն. հարուած ասղան ևեթ 'ի մարմնի որդւոյն՝ իբրև զխոցումն տիգի այնպէս սաստկանայր 'ի սիրտ մօրն. որպէս ասէր ոմն յերանաշնորհ վարդապետաց. և զինչ ապա ազդեցին 'ի նմա տանջանքն դժնդակք և բազմապատիկք։ Միոյ միոյ 'ի վիրաց որդւոյն՝ անդրէն հնչէր արձագանք կսկծանաց յանձն

մօրն. ցաւք՝ որք յորդին մարմնաւորք էին, 'ի մայրն 'ի հոգևորս փոխարկէին. և որք յիւրաքանչիւր անդամս և 'ի զգայութիւնս որդւոյն բաժանաբար կային ցաւքն, համախոսն 'ի միակ սիրտ մօրն իբր 'ի քրայս ժողովէին, այնչափ սաստկագոյնս՝ որչափ ուժգինն ևս գիտէ ներգործել զօրութիւնն միացեալ քան զցրուեալն։

Ը. Արդարև տիրեաց բովանդակ սրտի նորա ցաւոցն բռնութիւն. և ըստ գրեցելումն՝ եղև նմա եղբօրորդին իւր ծերոց ստուղինն. (Տոբ. Ժ. 12.) ոչ ևս յանուշել զհոտոտելիսն, այլ 'ի դառնացուցանել զքիմս հոգւոյն. և հանգչել նա 'ի ՔՆ ափէանցն, 'ի սրտին գործարանի խաչին հանդերձ. մինչև եթէ էր տեսանել զնորա զսիրտն, բայց ոչ այլ ժուժային, ոչ էր մարթ 'ի վերայ կալ հաւաստեաւ. արդեօք խանչ իցէ մեռելն, կամ սպանող արիւնաւոր, կամ գերեզման որդւոյն։ Ապաքէն մատեան կազմեցաւ նմա որդին, գրեալ ներքոյ և արտաքոյ ողբս և վայս. (Եզեկիէլ. Բ. 9։) որ թէպէտ և զառաջինն քաղցրացաւ 'ի բերանսին, անցաւ և անտրտում ծնանելով զնա, բայց ահա 'ի կատարածիս դառնացաւ որովայնն կուսական, (Եզեկ. Գ. 3։ Յայտն. Ժ. 10։) բազմապատիկ տոկոսեօք հատուցեալ զերկունսն. մանաւանդ թէ որպէս բանիս կարգ է ասել, կրկնակի եղեալ մայր ցաւոց՝ որդւոյն վշտաց, ըստ քաջիմաց կշռութեան իմաստնոյ ուրումն, որ գոչէ հիացմամբ. * Ո՞ գաղտնի կրկին մայրութի ածային, որով ցաւոցն դառնութեբ կոյսն ածամայրն կրկին ծնաւ զՔն ած. այնչափ ցաւոցն խստութի զմայրն ած գտանէ, և առնէ։ ‖ Այսպէս ահա 'ի նսեմանալ արեգականն արդարութե, և լուսինն մաբեամ լինի բոլորովին արիւն. (Յայտն. Զ. 12։) և սուր արդարութեն ած հօր՝ զարթուցեալ 'ի վերայ հովուին քոյ, (Զաքար. ԺԳ. 7.) հարկանէ միանգամայն զմայր առ մանկան. (Ծննդ. ԼԲ. 11.) որ քան զամենայն հարուածս դժնդակն է և դառնամահ։ Վասն այսորիկ իրաւացի քննութեբ բարձրահայեցեալ գոչէ փողն լամբրոնեան. (Ճառ համբարձ. երես. 68. 69.) Խոցեցաւ ասէ՝ 'ի նախատանացն սայրասուր սլաքօք. բերան նորա կափուցեալ տատանէր յանճառ խոնարհութէն որդւոյն. և դէմքն սուգ զգեցեալ մթին ստուերօք։ Նա զայս ոչ վայրապար բանիւ լոկով ասէր երանելիս, այլ 'ի փորձոյ անձինն՝ ըստ փոքու իւր կրից զնորա զմեծամեծսն չափեալ գուշակէր. վասն զի եթէ յանձն իւր այնչափ ազդէին կիրքն տէրունականք, մինչև աղաղակել. (Մեկն. սաղմ. ՃԻԲ. Գ.) * Թալկացայ յորժամ առ քեզ ակնարկեմ՝ ով վասն իմ ապտակեալ, ‖ ապա աստի 'ի միտ առնոյր՝ թէ որ անչափութիւն ցաւոց յորդեաց զեղաւ 'ի սիրտն մայրենի։

Թ. Իսկ արդ՝ եթէ այսչափ անհնարինս իմացաք զաղէտս տիրամօրն առ որդին, զի՞նչ ապա զորդւոյն առ մայրն իմանա-

լի իցէ. առ որս աքանչելի հարազատութիւն զամենայն ինչ փոխադարձ և հաղորդական արար՝ եթէ զուրախականսն, և եթէ զտրտմականսն։ Ապաքէն խիստ ևս քան զտանջանս խաչին ծանրացան յորդին աղէտք մօրն, որչափ զի առաւելապատիկ սիրէր զմայրն քան զիւրն մարմին ըստ բնականացն։ Զայն կարեկցութիւն որդւոյն քաջ տեսանէր մայրն. տեսանէր՝ և կրկին ևս աղէկիզիւր իբրև ընդ նոր ինչ ցաւս՝ յիւրմէ ներգործեալ յորդին. և որդին դարձեալ ցաւս ընդ այնր ցաւոցն մօրն փոխանակեալ աղետանայր. երկոցունց առ միմեանս կարեկցութի, և ոչ միումն մխիթարութի, այլ յաւելուած ցաւոց. օրինակ իմն իբրև երկուց ժայռից 'ի ծովու սեպացելոց, ընդ որս բաղխելով մրրկածին ալեացն, անդրէն խռովեալք՝ մեծ ևս ծփանս 'ի տեղւոջն կացուցանեն։ Այլ 'ի վերայ այսր ամենայնի՝ մայրն ազալից իբրև արբեալ ցաւոցն բաժակաւ, ոչ իւրումն՝ և ոչ որդւոյն աղետիցն տեղի տայ հրաժարեալ. տանջէ՝ և տանջի, և առ խաչին ժուժկալէ, զի առաւել տանջեսցի, զի բոլորապտուղ ողջակիզի որդւոյն՝ զամենածախ հուր ցաւոցն մատուսցէ՝ 'ի կատարեալ նուիրագործութիւն անձին և որդւոյն։

Ժ. Ապաքէն այս խորք ցաւոց տիրամօրն՝ անհնարինք առ իմանալ, և անճառք 'ի յասել, ոչ մարդկեղէն լեզուի ևեթ, այլև հրեշտակայնոյն, որպէս ոմն յածազգեստից ճգնաւորանեաց. միայն Յսի գիտելի և ճառելի։ Բայց անհաւատալի ևս կարծեցեալ լինէր արդեօք, թէ ոչ յառաջատեսութիւնն այս հոգացեալ էր օրինակս կանխագեկոյցս՝ որպէս սակս կուսական մայրութեան նորա, նոյնպէս և վասն մայրական նահատակութեանն։ 'Ի բազմաց անտի յառաջ անցցէ այրասիրտն շամունէ, եօթնամեա որովքն բարգաւաճեալ աշխարհի, և երկնից. (Բ. մակաբ. Է։) որ 'ի նուիրումն իւրոցն զաւակաց՝ առաւել ճշգրիտ օրինակեաց զա͞ծամօրն նուիրագործութի. և շարժեաց զիմաստնոցն զմիտս 'ի հիացումն, և ըղձգրիչս 'ի զարմանագրել զգովեալս։ Նազելիս իմն խօսի զնմանէ ա͞ծաբանն Գրիգոր. ('ի ճառն իբ.) յորմէ սակաւս ինչ 'ի յաջորդում թողումք յիշատակել։ Այլ երանելի հայրապետն յովհան՝ ըստ իւրումն ոսկիաբուղխ գրչի տողէ բանս ականակապս երրեակ ճառիւք զմակաբայեցւոց. յորոց զյոլովագունիւքն սատանօր զանց արարեալ, յօդեսցուք զասացեալն 'ի ճառ. Ա։* Մի հայիր՝ թէ նոքա (այսինքն որդիքն) խոշտանգեալ լինէին, այլ հայեաց յայն, ('ի մայրն.) որ յիւրաքանչիւրում խստագոյնս կրէր ցաւս, և յիւրաքանչիւրս վիրաւորիւր . . . Բազում անգամ տեսեալ մօր զորդի 'ի ջերմն տապացեալ, զամենայն տառապանս յանձն առնու՝ զի 'ի մարմնոյ նորա յինքն զհուր խօթութեան փոխադրեսցէ. այսպէս դժոխըմբերագոյն համարին մարք զվիշտս որդւոց քան զիւրեանց չարիս . . . 'Ի տանջանս որդւոցն ծանրագոյն ևս չարչարիւր

մայրն քան զորդիս, և մեծ ևս էր մարտիրոսութիւն 'ի մայրն՝ քան յորդիս ... մոռացաւ զերկունս ծննդեանն. արհամարհեաց զբնութիւնն. անտես արար զհասակն ... Զեօթն մարտիրոսս կրեալս 'ի միջի արգանդէ ոչ բնաւ գիտացի, որոց խնքնին մայրն ընկեր լեալ իցէ մարտիրոսութեանն. և ոչ իբր մի մարտիրոս յաւելոււ 'ի նոսա, այլ փոխանակ բազմաց: Վ̃ն զի որդիքն՝ եօթն ևեթ մարտիրոսք էին. իսկ մարմին մօրն 'ի նոսա յօդեալ, մի միայն մարմին էր. այլ կրկին եօթն մարտիրոսաց լնոյր զտեղի. զի յիւրաքանչիւրումն զնոսա մարտիրոսուե̃ն կրեաց. և զի զնոսա այնպիսիս արար, ծնաւ մեզ զկատարեալ ժողով մարտիրոսաց: Եօթն ծնաւ որդիս, բայց և ոչ զմին երկրի, զամենեսին՝ երկնից ծնաւ, մանաւանդ թէ արքային երկնից: || Եւ դարձեալ 'ի ճառն բ̃: * Եւ զորօրինակ քարաժայռ ծովու զդիմեցումն ալեացն յինքն ընկալեալ, մնայ անշարժ, և զնոսա 'ի փրփուր լուծեալ, 'ի բաց դարձուցանէ, նմանապէս և սիրտ մօրս իբր վէմ ծովու՝ յինքն զյարձակումն ալեաց ցաւոցն ընկալեալ, եկաց անշարժ. և զյարձակմունսն համատառուն և իմաստալից խորհրդով 'ի բաց ցրուեաց: || Միաձայնս այսոցիկ՝ բայց կանխագոյն ևս ճառագրեաց երանելին կիպրիանոս կարքեդոնացի. ('ի գիրս յղ. յորդորանաց մարտիրոսութեան. դլ. ժա̃:) ասէ. * Մայրն սքանչելի, որ ոչ կանացի տկարութբ̃ն մեղկեալ, և ոչ բազմապատիկ անզաւակութբ̃ն դրդուեալ, զմահ որդւոցն՝ յօժարակամ տեսանէր. ոչ տանջանս՝ այլ փառս վարկուցեալ. այսպիսի մեծ նահատակութի̃ ընծայեալ այ̃ զօրութբ̃ աչացն, որպիսի որդիքն ընծայեցին խոստանգանօք և կրիւք անդամոցն ... Աղաչէր (զկրսեր որդին.) բայց որպէս վայել էր մօր մարտիրոսաց, որպէս վայել էր յիշատակողի օրինացն՝ և այ̃, որպէս վայել էր զորդիսն սիրողի՝ ոչ մեղկաղէտ, այլ արիաբար ... Այնու համարէր զանձն՝ մայր եօթանց լինել մարտիրոսաց, եթէ վիճակէր նմա զեօթանեսին որդիսն առաւել այ̃ ծնանել, քան աշխարհի: Վասն որոյ սպառազինեալ զնա և զօրացուցեալ, և երանագոյն ևս ծննդեամբ ծնեալ զորդին, ասէր. Ողորմեաց ինձ որդեակ իմ ... Գովութիւն մեծ էր մօրն 'ի յորդորմունս քաջութեանն. բայց մեծագոյն ևս՝ յերկիւղին այ̃, և 'ի ճշմարտութեան հաւատոցն. զի ոչ յանձն՝ և ոչ յորդին ձգէր զմեծարանս վեցեցունց նահատակելոցն ||:

Զուգաբան նմին գրեաց և ած̃իմաստն օգոստինոս. ('ի բանն. ճ̃.) ասէ. * Ուսցին կանայք յայնչափ համբերութէ̃ և յանպատմելի քաջութէ̃ մօրն, որ գիտացեալն էր դարմանել զորդիս իւր. գիտաց ստանալ՝ զորս ոչն երկնչէր կորուսանել: Նոքա յիւրաքանչիւր անձինս զգալով, նա տեսանելով զամենեսին՝ չարչարիւր. մայր լեալ եօթն մարտիրոսաց, եօթնպատիկ մարտիրոս, չմեկնեալ յորդւոցն՝ 'ի զնին կալով, և յաւելեալ յորդիսն՝ մեռանելով: Տեսանէր զամենեսին, սիրէր զամենեսին, կրէր յաչսն՝ զոր ամենեքին նոքա 'ի մարմնի. և ոչ միայն

չչարհուրէր, այլ յորդոր եւ մատուցանէր ‖ ։ Եւ զկնի դարձեալ. ('ի բանն. յա։) *Լուայք, ականջք տեսայք արտիւ զմայրն՝ որ փափաքէր նախամախճան լինել որդւոցն 'ի կենաց աստի, կարի հակառակաբար ցանկացեալ սովորութեն մարդկան. զի ամենայն մարդ փաղագոյն քան զորդիսն կամի կարճիլ 'ի կենաց աստի, և ոչ զկնի գնալ. խակ սա ըղձանայր յետոյ մեռանել. զի ոչ եթէ կորուսանէր զորդիսն, այլ յառաջ առաքէր. և ոչ հայէր 'ի կեանսն՝ զոր փախճանէին, այլ զոր սկսանէին ... Փոքր էր լինելն նորա ականատես. այլ յաւէտ սքանչացաք ընդ լինելն յորդորիչ. առաւել բարգաւաճ առաքինութեք, քան զաւակքն. տեսեալ զպատերազմողսն՝ յորս ամենեսին ինքն պատերազմէր. և 'ի յաղթել ամենեցուն՝ ինքն լինէր յաղթական ։ Մի միայն կին, մի միայն մայր՝ զխորդ մեզ յանդիման երևեցուցանէ զմի մայր ոք եկեղեցի, որ ամենայն ուրեք յորդորէ զորդիս իւր մեռանել վասն անուան նորա, յորմէ յղացաւ և ծնաւ զնոսա ‖ ։ Յայս յաւելուլ և մեզ արժան է. մի միայն այս մայր զխորդ գեղեցիկ նկարագրէ զածածմորն զնահատակութհ, միանգամայն և զարխութհ, ըստ յարմարութեն՝ և ոչ հաւասարութք. զի եթէ նա աչօքն նահատակեալ, սա ածամայրն՝ և աչօքն և մտօք. նա եօթնպատիկ մարտիրոս, սա բիւրապատիկ վկայուհի՝ որդւոցն որ նախամեծար է քան զբիւր որդիս. նա յորդորիչ միայն նահատակելոցն, սա նախայօժար և ինքնանուէր. նա յատարաց տեսանէր զորդիսն խոշտանգեալ, սա յազգայնոցն և յերախտաւորելոց. նմա ազգն ողջոյն գովաբան և սգակից, սմա՝ ազգն թշնամանադիր, և սգակից առաւել անողգայ արարածքն՝ քան բանաւորք ։ Զի՞ ևս երկայնեմ. նա մխիթարեալ, մահակից որդւոցն լինելով. խակ սա անճաշակ և յայսմ մխիթարութէ ։ Վասն զի կայր և կրէր

## Աշխարհաշարժն Լիզբոնէ ։

ԺԱ. Ո՜րինչ են սքանչելիքս՝ լալոյ յաւէտ արժանի. զխորդ որ միշտն չարչարի, մեռեալ ասիցի. զի որ չարչարին՝ կենդանի է, և որ մեռեալն, ոչ զգայ չարչարանաց ։ Իսկ սա միշտ չարչարի, և միանգամայն մեռանի. ապա ուրեմն 'ի մահուն՝ կեանք, որ հրաշափառագոյնն է 'ի սքանչելիս ։ Ո՛չ այլաբանական ինչ կամ ըստ աւելորդութե է ասացեալս, այլ կարի հաւատութք. վասն զի առհասարակ վարդապետաց միաբանութք հաստատեալ է բանս, վկայեալ և 'ի մեր իսկ մտաց, թէ ցաւք տիրամօրն առաւել մահառիթք էին քան զհրոյ և զսրոյ բռնութի ։ Այպա կենդանի 'ի նոյնս տոկալ՝ ոչինչ էր ընդհատ՝ քան թէ զմահ ընդ կեանս լծորդել ։ Մանաւանդ զի՝ որպէս ասէ յերանաշնորհացն Ճշմարտէ, եթէ էր հնար զցաւս ածամօրն մասանաւորել յամենայն մարդիկ, ամենեցուն առ հասարակ անդէն տագնապ մահու 'ի վերայ հասանէր. ապա ուրեմն 'ի միում կենդանութեն՝ կրէր մահունս անհամարս. իբր յանձն

իւր ճշգրտեալ զասացածն Թաղէսի իմաստասիրի. Ընդ մահ և ընդ կեանս չէք խտիր. մանաւանդ և զառաքելականն տպաւորագոյն ևս կատարելով, յամենայն ժամ զմահն յիւր կրեալ։ (բ̃. կորնթ. դ̃. 10. 11։)

Արդարև տեսարան սքանչելեացն ա̃յ կարգեցաւ տիրամայրն, յորում զամենևին զհակառակսն միաբանեաց հզօրն. զկուսութի ընդ մայրութե. զաղխտաւորութի ընդ քաջասրտութեան, զանհամեմատ բարձրութի ընդ ցածուն նուաստութե. սոյնպէս զմահ դառն՝ ը̃ անհրաժեշտ կենդանութե. առաւելահրաշ ևս այսու երևեալ քան զմորենւոյ վառելոյն անկիզելի մնալ։ *Ծրարիցէ՞ ոք (ասէր սողոմոն. առակ. զ̃. 27.) հուր 'ի գոգ, և ըզհանդերձն ոչ այրիցէ ||։ Այո՛ բնական օրինօք ոչ բնաւ այդ մարթելի. բայց ահա աստանօր հուր անձնատուր ծրարեալ 'ի սիրտ տիրամօրն, և զմարմնոյն հանդերձ ոչ այրեաց. զի երկոքումբք միանգամայն հաւաստեսցի ասացեալն. *Ես սպանանեմ, և ես կեցուցանեմ ||։ (բ̃. օրին. լբ̃. 39։) Վասն որոյ և յայսմ 'ի սոյն կարօղ էր տիրամայրն երգել լալագին, Արար ընդ իս մեծամեծս հզօրն։ Արար արար արդարև ընդ նա հզօրն՝ զազգակցութի ինչ կենաց ընդ մահու՝ 'ի հանդէս իւրոյ ամենահնար զօրութեն. զի եղիցի նահատակութի տիրամօրն անապակ ամենևին՝ պարառութբ̃ ամենայն ցաւոց. վասն զի ճաշակեաց 'ի մահուանէ զայն՝ որ դառնութեն էր, և ոչ որ դիւրութեն։ Ամենայն փչտատեսաց և տառապելոց՝ միակ յետին մխիթարութի՝ մահն է. որ թէև ցաւեցուցանէ, բայց և զայլ ցաւս յանզգայութիւն դարձուցանէ. վախճան ածէ կենացն՝ բայց և վշտացն. ահաւորագոյն է 'ի չարիս բնութե, այլ ունի և զայս բարի բնութե. և չարչարեալքն յանողորմութէ բռնաւորաց՝ միայն 'ի մահուանէ ողորմութի գտանեն։ Իսկ առ մեզ կուսիւն ոչ այսպէս. կրէր զտագնապ մահուն, ցաւէր առ 'ի մահ, մնեալ կայր յանձին գեղարդն մահու, այլ ոչ բառնայր՝ ոչ զկեանսն, և ոչ զվիշտսն. և ուր յայլ մարտիրոսս բազում անգամ սքանչելագործէր ա̃ծ՝ առ 'ի չզգալոյ նոցա զցաւսն, 'ի մեզ տիրամայրն արար՝ զի զգայցէ բովանդակ։ Այլ զայս իմանայր ոք արդեօք 'ի մերձակայ եղելոցն օտարաց. ապաքէն և ոչ ոք։ Վասն զի կայր նա

## Սնջնապողոր փօղնով խարանեալ։

ԺԲ. Որ օրինակ ամենայն ածապարգև հրաշակերտութք տիրամօրն 'ի ներքոյ կային ծածկեալք 'ի յոգւոջն, ըստ ասացելումն (սաղմ. խդ̃. 14.) նոյն օրինակ և մայրական ցաւոցն սաստկութի յանձն ժողովեալ տոչորէր կիզումն անհնարին, բայց առանց ծուխ թանձրութե արտաքս երևեցուցանելոյ։ Խնամոտ բնութիս՝ իբր համայնից բժշկապետ՝ ճարտարեաց ամենայն ցաւագնելոց դարմանս բնաւորականս՝ 'ի բառնալ կամ 'ի նուազեցուցանել զցաւսն. տուեալ աչաց զարտասուս,

բերանոյ՝ զհառաչումն, լեզուի՝ զողբս, ձեռաց՝ զկոծումն, ականջաց՝ զմխիթարութեան բանս։ Իսկ արդ՝ առ ցաւս տիրամօրն դարմանատրեա՞ց ինչ արդեօք ճարտարութիւն բնութեան. բնաւ և ոչ ամենևին։ Ամենայն զգայարանք նորա եղեն ժիրաժիր պաշտօնեայք զցաւսն 'ի ներքս ժողովելոյ, այլ ոչ արտաքս ցրելոյ. կամակարք 'ի յառնուլ, և ճիշդք 'ի տալ։ Ո՞ւր 'ի նմա արտասուաց հեղեղք առ խաչին չարչարանօք. անամպ էր երկին և անանձրև. զայլոց կանանցն զողբումն յիշատակէ գիր. (Ղուկ. իգ. 27։) Իսկ զսմա կուսէն պարզաբար ցուցեալ, թէ Կայր առ խաչին։ Ընթեռնում թէ կայր, և ոչ ընթեռնում թէ լայր, աղաղակեմ և ես ընդ երանելւոյն Ամբրոսիոսի, (դիրք յղ. մահուան Վաղենտինիանոսի, համար. 39։) Իսկ եթէ ցողէր արտօսր ցաւագին՝ երգեաց հոգենուագ մերս Հոմերոս, բայց զինչ իցէ այն ցօղ առ հնոց ցաւոց նորա. ցողէր արդեօք պարկեշտ արտասուս, զի ցուցցէ՝ թէ ցաւէր, և ոչ թէ որչափ ցաւէր. զի կամէր երևել մայր խաչեցելոյն, այլ ոչ անարի։ Վասն որոյ ոչ հառաչանս էր լսել 'ի նմանէ, ոչ կականումն, ոչ կոծ անձինն, ոչ ողբարկութեանց բարբառս, և ոչ յումեքէ առ նա մխիթարութեան ինչ դիւրութիւն։ * Ո՞վ մխիթարեսցէ զքեզ դուստր սիոնի. զի ծանրացաւ բաժակ բեկման քո. իսկ ո՞վ իցէ՝ որ բժշկեսցէ զքեզ‖։ (Ողբոց. բ. 14։) Արտասուք, հառաչումն, և որ այլն ևս, միջակային ցաւոց են դարմանք. իսկ անընտել վշտաց՝ պատշաճին զարմանք. չափաւոր են վիշտքն՝ որք տան խօսել լեզուաւ և աչօք. իսկ անչափն փակեալ կնքէ զերկոսին, անխօսութիւն 'ի լեզուի, երաշտութիւն յաչս։ Ի՞ւ կարպեցան ճարտար լեզուք բարեկամացն Յոբայ՝ եօթնօրեայ անխօսութեամբ, ապաքէն վիրօքն Յոբայ. զի տեսանէին զանհնարին հարուածսն և զմեծամեծս յոյժ։ (Յոբ. բ. 13.) Ապա վիշտք անհնարինք լռութեամբ յաւէտ պատուին. զի և ոչ քաջարուեստն Տիմանթէս զհայրական աղէտս Ագամեմնոնի 'ի սուգ Իփիգենեայ դստերն՝ այլազգ մարթացաւ բերել 'ի նկար, քան թէ քող սևաթոյր զերեսօքն արկեալ։ Նմանապէս և ոչ սիրոյն նկարիչ Յովհաննէս զմայրենի աղէտս տիրամօրն կարողացաւ մեզ նկարագրել, բայց ասացեալ լոկ, թէ կայր առ խաչին։

Նա՝ թէև վշտաց սաստկագունից օրէն էր և ընտանի՝ զհառաչանօք գալ, և զողբովք և զկոծովք, բայց սմա տիրամօրն ոչ օրէն, ոչ պատշաճ։ Համեստութիւն կուսական, սրտին արիութիւն, համբերութիւն լայնատարր, կամաւորական նուիրումն պատարագի որդւոյն՝ այս ամենայն կանգնեալ կային առ սրտին իբրև ամբարտակք և պարիսպք ամրակառոյցք, և իբր փականս և դրունս եդեալ առ յայս. ընդ որս զարկուցեալ ալեաց ծովացեալ ցաւոցն, անդրէն յինքեանս 'ի սիրտն խորտակէին՝ ըստ ասացելումն առ յոբ. (Լը. 10. 11։) Յաշխարհաժողով բազմութեան միջի կայր ցաւագին, զի մայր էր. այլ ոչ կոծ, զի կոյս էր. արտասուք յաչսն, զի մարմին էր. այլ ոչ ողբումն, զի արի էր. կրէր զամենայն, զի զգայուն էր. բայց անմռունչ, զի

համբերող էր․ որդւոյն արեամբն ներկեալ, զի համարիւն էր․ այլ անտրտունջ, զի կամաւոր էր։ Կամաւո՛ր էր նուէրն, կամաւո՛ր ցաւն, կամաւո՛ր և սաստկուն ցաւոցն․ զի իւր ինքեան էին ցաւքն, և ո՛չ ինքն՝ ցաւոցն, իշխան նոցա, և ո՛չ իշխեցեալ․ վասն որոյ և ո՛չ թեթևութենն լինէր 'ի խնդիր բնաւորական դեղօքն, թէ և հնարաւոր էր նոքօք դիւրանալ, թէ և կուսական անձինն ո՛չ անպատշաճ ինչ էին․ այլ ինքնակամ հաճութբն 'ի հոգւոյն ամփոփեալ արգելոյր զեռանդն ցաւոցն, զի առաւել ցաւեսցի․ զզգայութիւն զամ արձակէր 'ի գիւտ նոր ցաւոց՝ և ո՛չ մխիթարութեան․ և արիագոյն ևս յինքն ընոյր զգրեալսն գրիգորի ածաբանի 'ի դէմս շամունեայ․ (ճառ․ իբ։) *Ո՛չ գէսս արձակեցից, ո՛չ հանդերձս պատառեցից, ո՛չ զմարմինս ցետեցից, ո՛չ կոծ եդից, ո՛չ ողբակիցս շարժեցից, ո՛չ ընդ խաւար մտից՝ առ 'ի զօդն ունելոյ ինձ սգակից, ո՛չ մխիթարչաց ակնկալայց, ո՛չ հաց տրտմութե եդից առաջի․ զի այսոքիկ՝ անարի և փոքրոգի մարց են պատշաճօղ... Զարտասուս խափանելով, զմայրենի սիրոյս զհաւատին ցուցանեմ ‖։ Եւ զիա՞րդ ո՛վ մայր ցաւալից, արդարև մայր ցաւոց, միթէ առ քե՞զ համարիցիս աւանդեալ զեզեկիէլեան պատգամն․ (իդ․ 16։) *Ահաւասիկ ես բառնամ 'ի քէն զցանկալիս աչաց քոց, և ո՛չ կոծեսցիս, և ո՛չ լայցես, և ո՛չ եկեսցէ արտօսր 'ի քէն։ *Զայն՝ որ յածուստ անտի ապառնալիք էին պատուհասի, կամաւորաց յանձն ընդունէր տիրամայրն․ որով յիրաւի արդեօք 'ի զարմացումն զտեսօղսն զարթուցանէր․ ո՞չ և առ տիկնոջ ումեմն դիպեալ պատմէ հերոդոտոս․ առ որ ժողովեալ կարևոր մեծուհեացն 'ի կոծ առն նորա օտարամահ եղելոյ 'ի կրկէս ասպարիզին, և ո՛չ տեսեալ 'ի նմա արտասուաց իջմունս, հարցանէին․ Ո՞ւր են արտասուք։ Եւ նա տայր պատասխանի․ 'ի ներքս պահեմ, զի բովանդակ զցաւսն 'ի սրտի ունիցիմ։ Իսկ մեզ մի՛ ընդ չարտասուել տիրամօրն իցէ զարմանալ, այլ ընդ սաստկութե անըմբերելի ցաւոցն, որով սիրտն գորովական յեռանդն հաբեալ տոչորիւր իբրև 'ի խարուկի․ և այն՝ փոխով, որ զառ 'ի յարեգակնէ զաստիկ տապն նշանակէ․ յայտ արարեալ, թէ բովանդակ ծնողական աղէտիցն այրեցումն՝ յարեգակնէ արդարութե 'ի քնէ ներգործեալ լինէր 'ի հոգի տիրամօրն․ որով այնչափ առաւելեալ գտաւ քան զամենայն մարտիրոսս, որչափ զի նոցայն տանջանք առ մարմնովքն միայն քերէին, հոգւով մխիթարեալք յոյժ․ իսկ առ տիրամայրն՝ համօրէն 'ի հոգին ժողովէին վիշտքն․ որ առաւել են քան զմարմնաւորսն՝ որչափ հոգի քան զմարմին։ Վասն որոյ կարօղ էր զերեմիայինն առնուլ ողբս․ *Սիրտ իմ գելաւ յիս, և ես գտայ դառնացեալ ‖։ (Ողբոց․ ա․ 20։) Արդարև դառնացար, վասն զի կամեցար։ Վասն զի

## Իբրեւ զորոջ անարատ՝ քահանայական նուիրմամբ 'ի վերայ սիրոյ սեղանոյ մատուցար ։

ԺԳ. Անարատ՝ ոչ բացբարձմամբ միայն, անկցորդ գոլով 'ի մեղաց, այլ և դրութեամբ, յինքն գլխաւորելով զամենայն սրբութիւն ։ Որոջ այսպիսւոյ ոչ ակամայ յայլմէ ձգեալ 'ի զենումն, այլ անձնակամ ինքնանուէր մատուցեալ ։ Ապա միանգամայն մատուցեալ և մատուցող, պատարագ և քահանայ. զի այնպիսում պատարագի՝ այդպիսի իսկ վայել էր քահանայ, նո՛յն անմեղ և անարատ ։ Իսկ ուրանօր մատեաւ և մատոյց. 'ի վերայ սիրոյ սեղանոյ ։ Սեղան զո՞ր արդեօք իմասցուք, զսէ՞րն՝ եթէ ըզխաչն ։ Ես զխաչն իմանալ ախորժեմ. իսկ զսէրն՝ սուր կոչեմ, եթէ զպատարագն զենմամբ համարիցիս. և հուր, եթէ այրմամբ ։ Բայց զորո՞յ արդեօք ասիցէ զսէր և զխաչ, զմօ՞րն՝ եթէ զորդւոյն ։ Այլ մի՛ զանբաժանելիսն բաժանեսցուք. անորոշաբար եդ երանելիս, զի հարազատութեան կապով երկոցունց մի էր սիրտ, մի սէր, մի պատարագ ։

Եւ արդ՝ ահա տեսանեմ բացեալ առաջի մեր զաղբիւր անդընդոց ցաւոց տիրամօրն. որ ոք յօժարեսցի միջամուխ 'ի ներքս արշաւել, ահա՛ կանգուն և չափ խորութեան և լայնութեան նորա Սէրն. եթէ զսէրն չափել կարողացար, հասեալ ես յակն ծովուս, և ընդ հետս անդնդոցս շրջեցար ։ ( յոբ. ԼԸ. 16 ։ ) Բայց ո՞վ այդմ բաւական իցէ. սերովբէք 'ի սիրոյ անուանակոչեալք՝ անհաս են մարեմեան սիրոյն. և զի՞ գործիցեն հրեշտակք ստորինք. մանաւանդ թէ ակն ունիցի մարդ իբրև զիս անճաշակ 'ի սիրոյ, որ միայն ճաշակողացն է գիտելի և խօսելի ։ Այլ արդ՝ թէև անմերձք իցեմք 'ի յատակ անդր, առ եզերօքն բերիլ ոչ ինչ է յանդգնութիւն, 'ի ճաշակողաց սիրոյն ձեռնկալեալք ։

Զսէրն մայր ցաւոց ասել՝ յամենեցունց է խոստովանեալ. վասն զի հրոյ օրինակաւ 'ի մի ձուլեալ զսիրողն և զսիրեցեալն, մի միտս և մի կամս բացակատարէ առ նոսա, որպէս 'ի բարիսն՝ նոյնպէս 'ի չարիսն. որպէս յօգտակարսն, նմանապէս 'ի վնասակարս, յուրախալիսն՝ համայն և 'ի տրտմականս ։ Նոյն իրի զնմանութիւն՝ գործ և պատճառ սիրոյ ասացին իմաստասէրք. զի սէր կամ նմանս գտանէ, և կամ նմանս գործէ ։ Զրո՛յց տար սիրողին՝ թէ 'ի հուր արկաւ սիրեցեալդ. անդէն և ինքն տոչորի՝ թէև 'ի զովի կամ 'ի սառնամանիս կայցէ. կամ թէ աղքատութեան պատահեալ սիրելւոյն, անդէն և սիրողն աղքատանայ, թէպէտ և բազմազանձ ունիցի զարկեղսն. կամ թէ քաղցու մաշեալ, անդէն և ինքն սովի, թէպէտ առ մեծահաց սեղանով բազմեալ ճաշիցէ ։ Հիւանդացեալ սիրելւոյն, առ նմին յոգւոց ելանէ սիրողն. լո՛ւր նմին իսկ սիրոյ քարոզողին. *Ո՞ հիւանդանայ, և ոչ ես հիւանդանամ. ո՞ գայթակղի, և ոչ ես տապանամ ॥ ։ ( բ. կորն. ԺԱ. 29 ։ ) Ճշմարտութեամբ արդեօք

իմաստունքն առաջինք՝ զսէրն ծոյր բռնաւոր անուանագրեցին. ընդ բռնաւորն ասել՝ հաւանիմ. բայց մի՛թէ փոքրիկ. մանաւանդ թէ նա է մեծն և առաջին բռնաւոր։ Ո՞ որ 'ի բռնաւորաց աշխարհի առանց գործեաց զոք տանջել զօրացաւ. ո՞ անգիտաբար զոք յամենայն ընչից կողոպտեաց. ո՞վ որ ըստ պիւթագորեան հոգեփոխացութեն՝ զհոգի 'ի մարմնոյ 'ի մարմին փոխադրեաց. ո՞վ որ 'ի վերայ իւր իսկ անձինն բռնացաւ։ Եւ ահա զայս ամենայն գործէ գեղեցկանունն բռնաւորս այս՝ սէր. աներկեալ տանջէ. անբռնադատ մերկացուցանէ. զհոգի սիրողին տարագնաց տանի 'ի սիրեցեալն. մինչև ասել պղատոնի. Հոգի անդ է առաւել՝ ուր սիրէ, քան ուր հոգևորէ. որպէս և այլով բանիւ ասէր, Սէրն է եռանդն հոգւոյ՝ որ յիւրում մարմնի մեռեալ, և յօտարինն կենդանի։ Եւ բռնանայ սա նախ 'ի վերայ անձինն, և ապա առ օտարս. կամի՞ս պատուհասել զսիրողն, հա՛ն 'ի նմանէ զսիրելին, և դահիճք այլ ո՛չ ևս պիտոյ են. սէրն լինի նմա և սուր, և դահիճ, և կախաղան։ Այս եղև լուծումն պղատոնական խնդրոյն, թէ սիրողի ո՞ր պատիժ իցէ դժնդակ. և ասացաւ, բառնալ զսիրելին։ Եւ եթէ զաստիկն կամիցիմք ասել, սա ինքն է բռնաւորաց բռնաւոր, այլոյ ամենայնի բռնաւորութե գոլով սկզբնառիթ։ Ապաքէն բռնանայ կայէն 'ի հաբէլ, այլ 'ի սիրոյ վրէժխնդրութե. բռնանայ փարաւոն առ իսրայէլ, այլ 'ի սիրոյ իշխանութե. բռնանան մեծատունք յաղքատս, այլ 'ի սիրոյ արծաթոյն։ Համաշխարհական ատեանն պարսից և բաբելացւոց ո՛չ անխորհրդաբար հայէր այր ընդ ընկեր, հաւանական ցուցեալ միտս ընդ ատենախօսութիւն զօրաբաբելի, թէ սէր կանանց բռնագոյն է քան զթագաւորս և քան զա՛մ զօրաւորս։ (ա. եզրաս. դ։) Յայս ամենայն ակնարկեալ մեծիմաստն սաղվիանոս, վարանեալ շրջէր գտանել անուն՝ սիրոյն պատշաճօղ, և ասէր. * Ո՛ սէր՝ զի՞նչ կոչեցից զքեզ՝ անգիտանամ, բարի՞ արդեօք, եթէ չար, քա՞ղցր՝ եթէ դառն, անուշա՞կ՝ թէ անախորժ. վասն զի այնպէս լի ես երկոքումբք, մինչև թուիս լինել երկոքին իսկ ‖։

ժգ. Իսկ արդ՝ եթէ ըստ ասացելոցս՝ պարզաբար սէրն է պատճառ պարզաբար ցաւոյ, ապա սէրն սաստիկ՝ սաստկագունին, և բազմապատիկն՝ բազմագունից ցաւոց է պատճառ։ Բե՛ր դարձուսցո՛ւք այսուհետև զբանս 'ի սէր տիրամօրն առ ծնօրդին. զոր մի՛ յորժամ սէր լսես, միաւորական կարծիցես, այլ երեքկին, և իւրաքանչիւր յիւրում կարգի ծայրացեալ. այս է՝ սէր բնաւորական, բանական, և գերբնական։ Բնաւորականաւն շարժիւր իբրև մայր առ որդի. բանականաւն՝ իբրև հարսն անախտ առ փեսայ. գերբնականաւն՝ իբրև արարած առ արարիչ։ Երրեակ այս սիրով շարժէր անձնն կուսական 'ի խորոց անտի հոգւոյն։ (Առակաց. Լ. 21.) և ընկլուզանէր յերրեակ անդունդս ցաւոց. առ որս թէպէտ և զպարտութի անհասութեաս մեր խոստովանիմք ըստ միւսում բանին. (անդ.

18.) * Երեք են՝ զորս անհնարին է ինձ իմանալ ||, բայց զչափաւոր քննութիւն հատուցանել՝ յանձն առեալ եմք։

Զտագնապ բնաւորական սիրոյ ածամօրն՝ 'ի նախագրեալդ ըստ բերելոյ բանին կշռադատեցաք սակաւուք. բայց և առտանօր բնախօսել ոչինչ է աւելորդ. վասն զի ընդարձակութիւն իրացս տայ մեզ միշտ խօսել, և ոչ երբէք ըստ բաւականին։ Զբնաւորական զայս սէր՝ զկարևորն և զբռնաւոր՝ ամենայն ծնող ընթեռնու գրեալ անջնջելի յիւրում սրտի, թէև անգիր՝ կամ անբան ևս իցէ։ Վասն զի անվրէպ օրինօք բնութեան տեսանեմք յամենայն կենդանիս զոյգ ընդ ծնողուն զաւակին՝ և զծնունդ իւր զմիոյ և սիրոյ. մինչև արդարութեամբ ասել կարծեմ, թէ ամենայն ծնող միշտ երկուորեակս ծնանի, մի՝ զաւակն, և միւս՝ գութն և սէր. և երկրորդս այս այնպէս համակից և անանջրպետ է 'ի ծնողէն, մինչ զի թէ և առաջինն այն յոլովակի օտարանայ 'ի ծնողէն, կորնչի, և մեռանի, սակայն սէրն առ ծոցին է միշտ, ոչ օտարանայ, ոչ կորնչի, և ոչ մեռանի՝ բայց եթէ ընդ ծնողին։ Այս գութ է՝ որ զիւր ծնօղն զօրացուցանէ, և ընդ նմա զհամածինն իւր՝ զզաւակն դարմանօք սնուցանէ։ Սակայն սոյն սա է և դահիճ իւրոյ ծնողին, յորժամ զաւակն չարի ինչ պատահեալ փնասիցի. և սոյն այս է բռնաւորն, որում և ոչ գազանաց դժնդակութիւն ժուժէ տոկալ։ Ընդ որ հայեցեալ երանելի ոսկեբերանն, շարժէ զոսկենկարն զիւր գրիչ հիացմամբ ընդ արիութիւն շամունեայ. (Ճառ ա. 'ի վերայ մակաբ։) * Արհամարհեաց զբնութիւնն, զբռնաւորն զայն, զբնութիւնն՝ որ և գազանաց անգամ սովոր է յաղթել. զի բազումք 'ի գազանաց դժուարորսալիք՝ սիրովն և աղէկիզութեամբ առ զաւակն այնպէս ըմբռնին, անփոյթ զիւրեանցն արարեալ փրկութիւն, մինչև անզգուշաբար յորսողաց ձեռս անկանին։ Զիք 'ի կենդանեաց այնպէս տկար, որ ձագուն չպաշտպանիցէ. չիք այնպիսի հանդարտ, որ անզաւակեալ յորդւոյն՝ չզրգռեսցի։ Սակայն նա (շամունէ) ելոյծ զբռնաւորութիւն՝ որ զօրացեալն է 'ի բանաւոր մարդիկ և յանբան անասունս ||։ Զսոյն առաւել ևս զսէյ տիրամօրէն ասացեալ իմասջիր. և մեք 'ի գրելոց՝ զանգրեալ ցաւս նորա իմաստասիրեսցուք։

Ո՞վ ոք խստասիրտ և անդամանդեայ իբրև զփարաւոն, որ իննեակ հարուածովքն կոփեալ, կայր անընդոստ իբրև սալ դարբնաց. այլ տասներորդիւն՝ մահուամբ անդրանկին լուծաւ հեղաւ իբրև զմոմ։ Իբրև զարդարն յոբ՝ անընկճելի 'ի փշտաց՝ զայլ ոք 'ի մարդկանէ ոչ ետես աշխարհ. որ առ գոյժ կորըստեան ամենայն ստացուածոցն՝ հանդարտեալ նստէր 'ի բազմականին. այլ իբրև հարուած զաւակացն առ նա գուժեցաւ, 'ի վեր վազէր արի նահատակն, զպատմուճանն պատառէր՝ զովացուցանել զտապ ծնողական աղէտիցն. (ա. 20։) Եւ որ ուրախութիւն էր իւրոց հնազանդելոց. (իթ. 22.) ընդ համբարուս և ընդ ջայլամունս եղբայրացեալ, (Լ. 29. ողորմագին հառաչէր. * Աչք իմ 'ի վերայ որդւոց հալեցան ||։ (ժէ. 5։)

Զի՞նչ և զյակոբայ ասիցեմք զքաջամորդի նահապետէն, որ ընդ հրեշտակին բռնամարտիկ լեալ ժուժկալէր. այլ ընդ պակասութիւն յովսեփայ միայնոյ՝ զկարիս ազոյն 'ի գերեզման անդր ընդ իւր ձգել խոստանայր. (Ծննդ. լէ. 35:) Եւ 'ի խնդրել դարձեալ եղբարցն զբենիամին, բաբէ՝ թնդայր ալեւորն, զխօսսն խառնակէր, զնուազութիւն երկուց կամ երից որդւոցն՝ իբրև անզաւակութիւն յերկոտասանեցունցն իսկ համարեալ, աղաղակէր. *Զիս անորդի արարիք ... բայց ես որպէս անզաւակեցայ ||: (խբ. 36: խգ. 14:) Եւ չէ՞ր ինչ զարմանք. վասն զի *նորա ոգին կախեալ կայ զդորա ոգւոյ: (խդ. 30:) Ապա եթէ զդաւիթ հարցանիցես՝ զայր պատերազմող 'ի մանկութէ, առիւծուց պատառօղ, բռնաւորաց խորտակիչ, ոչ ևս 'ի ճակատամարտի տեսանի նա, և ոչ 'ի յաղթանակ հանդիսի, այլ առանկեան ուրեք վերնայարկի իւրոյ՝ իբրև զվանեալ ոք ողբեալ նստի յողբս լալեաց. հալածեալ՝ և ոչ 'ի թշնամւոյ, այլ 'ի հայրական գթոցն. կրկնէ և երեքկնէ. Որդեա՛կ իմ աբեսաղոմ, աբեսաղոմ որդեակ իմ. ողբայ զհայրանենգն, զապըստամբն, և զապստամբեցուցիչ: Ո՛չ այնչափ կսկծեցոյց զնա ապստամբութիւն որդւոյն, որչափ գութն հայրենի: Բռնաւոր էր նաբուգոդոնոսոր, և առաւել բռնաւոր. բայց քաջ գիտէր զծնողական սիրոյն բռնաւորութիւն դժնդակ քան զիւրն լինել. վասն որոյ զայն առնոյր իւր դահիճ 'ի պատուհասել զերդմնազանցութիւն սեդեկիայ, զնորա զորդիսն յանդիման աչացն ըսպանեալ: (Դ. Թագաւ. իե. 7:)

Զի՞նչ և առ սուգ միածնի զսիրոյն բռնաւորութիւն ասել ոք կարիցէ: Վայեաց յեփթայէ քաջազօրն՝ անխորտակելի անձն, տեսեալ զմիամօր զիւր դուստր իբրև որոջ պատարագելի. և մինչև ղհանդերձսն պատառեալ՝ սիրտն պատառեցաւ. ընկճեցեր զիս աստ, այն՝ որ ընկճեալն էր զամմոնացւոցն բռնութիւն: (Դատաւ. ժա. 35:) Դեմոսթենէս ճարտարաբան՝ որ իմաստասիրութեան օրինօք խրատեալ էր յաղթական լինել բնաւորական կրից, ոչ կարաց 'ի չափու ունել զիւր թախծութիւն ընդ մահ միածնին. դարձեալ խրատեցաւ ազդեալ 'ի բարեկամացն. այլ պատասխանեաց իբրև որդէսէր՝ և ոչ իմաստասէր. Ընդ մահ միածնի անհնար է ցաւոց 'ի միջոցին կալ: Թողում յիշատակել զբարեպաշտուհին աքիւղա, որ ընդ թաքուստ իւրոյ ալեքսիանոսին՝ ողբովք լնոյր զիշխանական ապարանսն, և ազովք՝ զքաղաքամայրն հռովմ: (Վարք հարց. երես. 306:) Այս բռնաւորութիւն է՝ որ ահաբեկեալ զիմաստասէրն թաղէս, հրաժարեցոյց յամուսնութենէ. լաւ համարեալ անորդի մեռանել՝ քան որդեկոտոր կեալ. ոչ կամեցաւ զանուշակ սէրն՝ որ այնչափ դառնութեանց է շտեմարան: Վասն որոյ և մարգարէքն սէք 'ի ցոյցս յետին թշուառութեանց ոչ զայլ ինչ յեղյեղէին. բայց զկոծ սիրելւոյ միածնի, և զաշխար անդրանկան. յայտ իմն արարեալ, թէ 'ի մարդկային աղէտս՝ այն է յետին: (Երեմ. զ. 26: Ամովս. ը. 10: Զաքար. ժբ. 10):

ԺԵ. Այլ իմ աստանօր բղխանան միտք, կարծի լեզու և գրիչ, զմտաւ ածեալ 'ի գրելոցս' զինչ արդեօք 'ի սիրտ տիրամօրն ներգործեաց սէրն մայրենի, զո՜ր տագնապ, զո՜ր դժնդակութի, զո՜ր կսկիծ աղէկտուր. այն սէր' առ որով հասարակածին ծնողացն գութ համեմատեալ, իբր ծրագ է աղօտ' առ արեգակնային բոց, ջուր գաղջ առ յորդեռանդն, կայծիկ' առ հեղեղ, մանաւանդ թէ նկարեալ հուր' առ տարրականն: Որպէս նոք բնութե այս համեմատութի պահի, զի ծնողական աղէտիցն չափ' է գութն, և գթոյն չափ' ծնողութիւն. ապա ծնողութի որ յանչափս առաւելու քան զհասարակական մարդկութեա, ըստ նմին համեմատութե ունի լծորդ զսէրն, ըստ նմին և զաղէտն: Ինձ ո՛չ են կամք երկայնաբանել աստանօր յաղագս առաւելութեց Ածամայրութե. որք կամիցին' ունին այլուր գտանել համառօտեալ: (Հիւսեակ բարեբանութեց. գլ. Դ. եր. 46:) Այլ այսչափ ինչ զօդեմ յասացեալսդ, թէ ծնողութի սբյ կուսին գոլով ածամայրական, ապա և սէրն նմին հետեւակ էր ածսիրական. որով ածամայրն նաև ընդաբոյս գթովքն ձգիւր առ քս ած իբրև առ իւր որդի. ապա և ցաւն' սիրոյն հետեւակ էր ածակիր. զոր ածածին ոք միայն տանել կարօղ էր, և ո՛չ այլ ոք մարդածին: Վասն որոյ եթէ հարիւրապետն առ խաչին' 'ի քաջութե անտի խաչեցելոյն ուղիղ իմաստասիրեաց, թէ արդարև այ որդի էր սա, (Մարկ. ԺԵ. 39.) նոյնպէս 'ի կրելոց անտի ցաւոց կուսին ուղիղ իմաստասիրել կարօղ էր, թէ արդարև այ մայր է սա: Բայց չգիտեմ, զիա՞րդ յուշկամաց 'ի խորս մխեցաք. անդրէն առ եզերսն ամփոփեսցուք:

Ապաքէն բնական մայրութի տիրամօրն էր գործ 'ի բնականացս կարգէ, բայց ներգործեալ յարարչապետէ բնութե 'ի հոգւոյն սբյ. և գործ' զոր ած ինքնին արդիւնացուցանէ, կատարելագոյն է' քան զոր բնութիւն գոյացուցանէ. ապա ածագործ մայրութի կուսին' և 'ի պատճառէն կողմանէ գերազանց էր յոյժ քան զբնաւպէս մայրութիւնս: Եւ զինչ ասեմ. ապա և համաբնականն այն գութ և սէր մայրենի' առաւելապատիկ էր 'ի սբ կոյսն' քան յամ ծնօղս. զի որ զգօղն տայ, ասեն իմաստասէրք, համեմատ նմին տայ և զհետեւակս գոլոյ: Եւ զիա՞րդ մայրենի միայն կոչեմ զսէր տիրամօրն, զոր հայրենի ևս ասել արժան էր. վասն զի յանհայր ծնողութե իւրում գրաւեաց միացոյց զսէրն, որ յայլ ծնօղս բաժանեալ է ընդ հայր և ընդ մայր. ո՛չ թէպէտ ծնաւ իբրև մայր, բայց սիրէր իբրև մայր և հայր: Յայլ ծնօղս' որք բաժինք են սիրոյ, նոյնպէս և ծնողական ցաւոց. 'ի սբ կոյսն միացաւ սէրն ծնողական, և նմին և ցաւն. և ուր զադամայ ասացաւ, ո՛չ բարւոք լինել միայնութեն, այլ օգնականի ունել պէտս 'ի ծնունդ և 'ի հոգս զաւակաց, (Ծնն. Բ. 18.) բամբէ, սբյ կուսին պահեցաւ միայնութի 'ի ծնանել, 'ի սիրել, և 'ի ցաւել:

Կամիս և զայլ պատճառս առաւելութե այսր սիրոյ, ահա

ամենակատար նմանութիւն 'ի բնութեան, և 'ի սէրն։ Ամենայն ծնող արտադրէ զիւր նման ըստ տեսակին, այլ բազում անգամ խառն յաննմանութենէ անհատին. յոլովակի գեղեցիկն զտգեղ զաւակագործէ, քաջառողջն՝ զցաւագար, անձնեայն՝ զանաւագ, ուժաւորն՝ զանոյժ, հեզաբարոյն՝ զցասմնոտ, մտացին զանհանճար. և միով բանիւ, աքիլլէս՝ զթերսիտէս. որով զաւակն՝ յաւէտ որդիացեալ կարծի, քան որդի. և յայսմ աննմանութենէ բազում իւիք մռայլ առնու սէրն ծնողական, որ միշտ նմանութիւն է խնդրող։ Վրիպակ այդպիսի՝ օտար էր բնաւ 'ի կուսական ծննդենէն. վասն զի ոչ ոք 'ի ճարտարաց աշխարհի այնպէս ճշդեալ ծրագրեաց զկենդանագրութիւն մարդոյ կերպարանաց, որպէս հոգին սուրբ ճարտարապետ այնր ծնընդեան՝ տպացոյց 'ի կուսածին որդին զնմանութիւն կուսի մօրն ամենայնիւ ըստ կերպարանաց՝ ըստ դրից կազմութեան, և ըստ բարուցն. որոց լոկ տեսութիւն բաւական էր և առ անծանօթս՝ գիտել թէ սա մայր է, և նա՝ որդի։

Զուգակցորդ այսմիկ և նմանութիւն սիրոյն իմանի։ Է՛ տեսանել յոլովս 'ի ծնողաց, որոց արգանդ ծննդական, բայց սէրն՝ անծնունդ պատահէ. ծնանին որդի, այլ ոչ ծնանին սիրող, հարազատս 'ի բնութեան, այլ խորթս 'ի սէր՝ իբրև զօտարածինս. որով սէրն ծնողական ոչ գտանէ իւր ճարակ յարծարծումն։ Այլ առ մեր տիրամայրն ոչ այդպէս. որպէս որդի ծնաւ ամենայնիւ համաբնութեամբ, նոյնպէս ամենայնիւ սիրակից. սիրտք նոցա իբրև երկու լարք 'ի մի քնար. 'ի հնչել միոյն՝ ձայնատու էր և միւսն. ոչինչ ազդումն սիրոյ լինէր 'ի մայրն, որում ոչ անդրէն հնչէին արձագանք սիրոյ որդւոյն. և յայն դարձադարձ սիրոյ՝ զոր բորբոք ծնողական գթոց կարծիցես լեալ 'ի տիրամայրն ընդ երեսնամեայ ժամանակս։ Նա զարձեալ, ամենայօրդոր խնամակալութիւն մօրն առ որդին, և փարելի հպատակութիւն որդւոյն առ մայրն՝ զինչ այլ ինչ էին, բայց կրկին փուքք կայծակնաբորբոք՝ մշտավառք, 'ի բարձրացուցանել զբոց ծնողական գթոցն. որովք ըստ յառաջել աւուրց՝ մանաւանդ թէ և ժամուց՝ զօրանայր սաստկանայր բռնութիւն սիրոյն 'ի սիրտն կուսական, և լինէր մայր արդարև սիրոյ, որդի ունելով միածին յարգանդէ, և բազմածին 'ի սիրոյ։

ԺԶ. Ո՛ւր արդ, կրկնեալ յուշիդ զնախաճառեալսն յաղագս բռնաւորութեան սիրոյն, և ծնողական սիրոյն. և կշռեա՛ եթէ հասու իցեն քո միտք, որո՞ց բռնաւորութեանց տարաւ մայր այսպիսի սիրապատար, տեսեալ զորդին սիրասնունդ 'ի ձեռս ամբարտաւանց մարդոց՝ իբր գառն 'ի ձեռս գայլոց, անպարտ մատնեալ, աւազակաբար կապեալ, ընդ քարշ ածեալ, զուր չարախօսեալ, յարիւն ձաղկեալ։ Փոխան բժշկութեանցն վէրք, ընդ լուսատու թքոյն՝ թուք նախատանաց, ընդ վարդապետութեանցն՝ գաւազան եղեգան, փոխան թագաւորութեանն՝

պատկ փչանութ, փոխանակ ովսաննային՝ խաչեսցի, փոխան յաւանակին՝ խաչ, փոխան կերակրողութեանցն յանապատին՝ քացախ ընդ լեղւոյ, ընդ մեռելոցն յարութեան՝ մահ անարգական: Աղաղակէ ոսկեբերան վասն շամունեայ. (Ճառ ճ:) * Զիարդ ոչ յապշուն հարկանէր՝ 'ի տեսանել զիւրաքանչիւրսն զանազան և կարծրագոյն տանջանօք մանր սպանեալ. զիարդ ոչ փչէր զոգին ... զի թէպէտ և խօսէր, սակայն մայր էր. թէպէտ և բարեպաշտ էր, այլ մարմին ունէր. թէպէտ զուարթամիտ էր, բայց կին էր ... Այնչափ հոսանս արեան տեսեալ նորա ոչ յօտար մարմնոյ՝ այլ յորդւոցն բղխեալ, զինչ ոչ կրեաց, զոր սրտի ամբոխումն ոչ ընկալաւ: * Եւ դարձեալ. (Ճառ բ:) * Ո՛չ զայնպիսի հնոց բորբոքեաց բաբելոնեան բռնաւորն, զորպիսի հնոց՝ մօրն վառեաց այս բռնաւոր. զի անդ լուցկիք էին հրոյն՝ նաւթ, ձիւթ, բուրդ, վուշ. իսկ աստ՝ բնութիւն, երկունք ծննդեան, զաւակացն սէր, մանկանցն միաշնչութիւն: Ո՛չ այնչափ նոքա 'ի հուրն ընկեցեալք այրէին, որչափ սա կիզանէր առ սէր զաւակացն ‖:

Իսկ արդ՝ եթէ զշամունեայ այսչափ, զինչ զտիրամօրէն ունիցիմք խորհել և ասել. ես հիանամ բնաւ, և ոչ իմանամ. վասն որոյ կնիք դնեմ բանիցս զոսկեբերանին դարձեալ խրատաբանութի: (Ճառ ճ.) * Զայսոսիկ մի վայրապար լուիցուք, այլ իւրաքանչիւր 'ի լսողացդ զամենայն զցաւալի անցքս առակեսցէն յորդիս իւրեանց. կերպարանեսցեն անձանց զփարելի դէմս, և զփրելին յորդւոց առաջի նկարեալ, համարեսցին ընդ նոսա անցանել այնց չարչարանաց. և յայնժամ քաջ ծանիցեն զասացելոցս զօրութ. նա՝ և ոչ այնպէս ծանիցեն. զի բնական աղէտք ո՛չ զբանիւք գան. ուսուցանէ միայն փորձն ‖: Արդ՝ ժամ է այսուհետև զբանական սիրոյն անդնդովքն դեգերել.

ԺԷ. Բանաւոր մարդ ոչ արժանապէս զսիրոյն ժառանգէր զանունն, եթէ բնաւորականաւն եւեթ վարէր սիրով, որ և անբանից է հասարակ. և ոչ մարդկապէս ընկերակցութիւն յիւրում ակատանի մնայր տիրապէս, եթէ չէր 'ի մէջի յօդ շաղկապիչ անհարազատացն մարմնով: Զայն յօդ հոգացաւ մարդկութիւս, արտայայտեալ երկրորդ ծնունդ սիրոյ՝ զսէրն բանական, այնչափ չքնաղ քան զբնաւորականն՝ որչափ զի այն բնութեան է, և սա՝ կամաց. այն 'ի բնական և 'ի ստորին բարիս յածեալ, և սա՝ յիմանալիսն և 'ի գերազանցս՝ յարժանին և 'ի գովելին. մնյ առաջինն՝ ծնողին է, և երկրորդս՝ մարդոյ: Այս է սէրն բարեկամական, կմ բարեկամութի անուանեալ, որով մարդ զմարդ սիրէ ոչ իբրև զիւր ինչ, այլ իբրև զինքն, կմ ոպ իմն նորա: Ամենագովելին մարիամ ոչ միայարկ ունէր զսիրտն՝ շատանալ միայն ծնողական սիրովն առ միածին իւր յս, այլ էր 'ի նմա միջնատուն՝ լցեալ բարեկամականն սիրով առ նոյն ինքն յս իւր յիւր իսկ անձն, կամ իբր այն՝ թէ ինքն իցէ յս: Եթէ

զայս զնորա սէր 'ի բաղդատութիւն ձգեմ ընդ այլ մարդկան բարեկամութիւնս, խղճեմ յանպատուութիւն դատաստանէ. վասն զի այլոց բարեկամութիւնք կամ կեղծիք են, կամ ցուրտք, կամ առժամայնք, կամ կիսակատարք, 'ի յաջողուածս՝ և ոչ 'ի վիշտս. կամ միակողմանիք՝ զի սիրէ, և ոչ սիրի. որովք բարեկամութեանն անուն բազում անգամ յումպէտս բռնաբարի։ Նա թէև յայսոցիկ արատոց մեկնեալ իցէ, առ չափաւոր մարդիկ ևեթ փայլատակէ՝ և 'ի չափաւոր բարիս. առ որս յոլովակի առաւել է բարեկամութիւն՝ քան զնիւթ բարեկամութեան։

Իսկ առ ամենօրհնեալն մարիամ որպէս. ամենայն հանգամանօք բարեկամական սիրոյ գումարեալ կային. անհամեմատ արժանաւորութիւն յորդւոյն ըստ բնական և ըստ գերբնական կատարելութեանցն. և 'ի մայրն՝ պայծառափայլ ծանօթութիւն այնր արժանաւորութեան. յորմէ և համեմատ խղձ կամելոյ նմա զամենայն գովելի բարիս, և ըստ ըղձին՝ կատարումն արդեամբք գործոց ըստ պիտոյին և ըստ ժամանակին։ Նոյնպէս ըստ անդրադարձութեան, որդին քաջածանօթ գոլով արժանեաց մօրն՝ և նորա սիրոյն, սէր ընդ սիրոյ նմին փոխադարձէր, և գործ ընդ գործոյ. համախորհուրդք միմեանց, համակամք, համագործք. աչք աչաց դիպէին, և սիրտ՝ սրտի. խորհուրդք մօրն՝ միշտ զորդւոյն յածէին, և 'ի նոյն տեսանէր՝ զի և որդւոյն խորհուրդք զմօրն յածին. ոչ այնպէս զուգատես են աչք միոյ մարմնոյ, որպէս երկոցուն նոցա միտք 'ի մի խորհուրդ։ Զոր կամէր որդին, կամէր մայրն. յոր նա չհաճէր, չհաճէր և մայրն. խնդակիցք միմեանց, ցաւակիցք իրերաց, հաղորդակիցք ամենայն բարեաց։ Վասն այսորիկ որ մայրաբարն սիրէր, դարձեալ հարսնապէս զախորժելի ձայնն քաղցրացուցանէր։ * Խանդակաթ եմ սիրով ||։ Ո՛չ ևս սիրելի զնա անուանէր, այլ բուն իսկ սէր, ասէ. * Եթէ յառնիցէք, զարթուսջիք զսէրն ||։ (Երգոց. Ը. 5. 7։) Եւ զինչ առ նա փեսայացեալն իւր որդի. իբր կշտամբանօք իմն անդրադարձէ. * Ես ննջեմ, և սիրտ իմ արթուն կայ ||։ (Ե. 2։) Թէև ննջիցեմ ասէ մարմնով, այլ սէր հսկող է. վասն որոյ * դիր զիս իբրև զկնիք 'ի վերայ սրտի քո ... վասն զի հզօր է իբրև զմահ սէր ... Ջուրք բազումք ոչ կարեն շիջուցանել զսէր ||։ (Ը. 6. 7։)

Իսկ արդ՝ եթէ աղեքսանդրի կարծեցեալ բարեկամութիւնն համարձակեցոյց զնա՝ իւր գանձս համարել զբարեկամսն, հարցեալ թէ ո՞ւր են քո գանձք. և նա ասէր. առ բարեկամսն։ Զի՞նչ ապա ունէր ասել սիրապատարն մարիամ վասն իւրոյ անչափ սիրելւոյն. և այն զի ոչ գիտէր աղեքսանդր ճշգրտել վասն բարեկամացն՝ թէ նոքին ևս համարիցին իւրեանց գանձ զաղեքսանդր. բայց ընդ Տր կոյսն և ընդ յս ամենայնն փոխանակաւ էր՝ և սէրն, և ճանաչումն սիրոյն, որով սա զնա, և նա զսա միմեանց գանձս ունէին և ասէին։

Իբրև պսակաւոր նահատակս բարեկամութեն, կամ թէ ա-

ռել. իբրեւ սքանչելիս բարեկամական սիրոյ համարեցաւ աշխարհ զյովնաթան ոմն ընդ դաւթի, զդամոն զոմն ընդ պիւթիայ, զոմն աղեքսանդր ընդ հեփեստիոնի, զայլ ոմն ովրեստէս ընդ պիլադեայ. առ որս հասարակաց էր ամենայն՝ անձն և ինչք, փառք և անփառութիւն, կեանք և մահ: Այլ զի՞նչ է մարախ առ սկայիւ, և սոցայս սէր առ սիրովն մարիամու. եթէ չափաւոր լաւութիւն արանցն այնչափ զօրացաւ գերել զբարեկամութիւն նոցա, զիա՞րդ ապա անհամեմատ լաւութիւն Յսի և Մարիամու: Սիրոյն բարբառ առ նոսա զնոյնութիւն քարոզէր. աղեքսանդր վասն հեփեստիոնեայ՝ թէ և դա աղեքսանդր է. ովրեստէս երդուեալ, թէ ես եմ պիլադէս և պիլադէս դարձեալ, ես եմ ովրեստէս: Ապա ճշմարտագոյնս և տիրամայրն յըմբռնման գիշերին՝ 'ի հարցուած խնդրողացն զյս՞ կարող էր ասել, ես եմ Յս. զի ուր սէրն խօսի, արդար խօսի:

ԺԸ. Իսկ այն լինէր նմա արդարև սփոփանս մեծ, եթէ ինքն փոխանակիւր ընդ յսի յըմբռնումն, 'ի ձաղանս, 'ի հարուածս և յայլն ամենայն. այլ սակայն անձապարեաց նա՝ ըմբռնեցաւ ընդ ձեռամբ թշնամեացն, և մարիամ ընդ ձեռամբ սիրոյն. երկոքին տանջեալք անողորմ յանողոքելի բռնաւորաց. նա 'ի սպառազէն հրէիցն, և սա յանվէն սիրոյն: Եւ ահա ո՞ բաւական իցէ 'ի բան ձգել զսորայն բռնաւորութիւ. զի առ չափ սիրոյն սասացաք զչափ ցաւոցն, զսէրն քննեցաք, այլ ոչ չափեցաք. ապա և ցաւն մնայ անչափելի 'ի մէնջ, և չափելի այնմ որում եղեն տանելի. բայց 'ի յօրինակաց ծանօթից մնայ մեզ տակաւուք իմաստասիրել:

Ո՛չ ժուժայր վեհանձնն դաւիթ ընդ մահ իւրումն յովնաթանու. գոչէր լալագին: * Ցաւ է ինձ 'ի վերայ քո եղբայր իմ յովնաթան. դեղեցկացար ինձ յոյժ. զարմանալի եղև սէր քո ինձ քան զսէր կանանց ‖: (Բ. Թագ. Ա. 26:) Մոռացաւ դարձեալ զարքայական զիւր վսեմութիւն ընդ անպարտ անկումն ուխտակցի իւրոյ աբեններայ. զկնի հետևէր մթազգեաց դագաղացն. զնուագ տաւղացն 'ի լալիս փոխեալ՝ ողբս յօրինէր առ գերեզմանին (Բ. Թագ. Գ. 32. 33. 34.) Ապա զո՞ր փեռեկումն սրտի, զո՞ր ողբս անմռունչս 'ի տիրամայրն կարծիցես: Կրեաց և բոլորիցն տէր 'ի բռնութէ անտի բարեկամական սիրոյն, առ գերեզմանին զսիրեցեալն արտասուելով զղազար. որով զկենսակայլակ ցօղսն՝ տեսողացն տայր նշանակ, իմանալ՝ թէ որչափ սիրէր զնա: (Յովհան. ԺԱ. 35. 56:) Եթէ նոքա յարտասուացն զսէրն կշռէին, ապա մեր 'ի հակառակէն իմաստասիրեալ, 'ի սիրոյն կշռեսցուք՝ թէ քանի ցաւէր տիրամայրն, որչափ մորմոքէր, որչափ արտօսր զարտիւն ցօղէր:

Քաջիկ ևս արդեօք քան զմեզ տեղեկացաւ օգոստինոս այսմ բռնութեն, (մինչ 'ի խաւար մոլորութենն դանդաչէր.) ունելով ուսումնակից ոմն զիւր համահասակ, ընդ որում անորիշ բարեկամութեն միացեալ, միայն մահուամբ նորա որոշեցաւ.

առ որ զանձին իւրոյ կիրս խոստովանեալ առաջի այ, ասէ. (Դ. գիրք խոստովան. գլ. Դ։) * Ցաւովք մթագնեցաւ սիրտ իմ. և ամենայն յոր և հայէի՝ մահ էր. և էր ինձ հայրենիքն՝ տանջանք, և տուն հօր իմոյ՝ թշուառութի անհնարին. և որով իւիք ընդ նմա կցորդեալն էի, առանց նորա 'ի դժնդակ վիշտս դարձաւ։ Աչք իմ ամենայն ուրեք զնա խնդրէին, և ոչ ոք տայր ինձ. և ատէի զամենայն, զի զնա չունէին ... Ինձ քաղցր էր միայն լալիւնն, և լինէր փոխանակ բարեկամին իմոյ՝ 'ի սփո-փանս հոգւոյս ‖։ Եւ դարձեալ. (գլ. Ը։) * Այսպէս էի յայնմ ժամանակի. լայի դառնապէս, և հանգչէի 'ի դառնութե. եղուկ էի, և սիրելի ունէի ինձ զայն եղկելի կեանս քան զբարեկամն իմ... էր յիս անհնարին տաղտկութի կենաց, և երկիւղ մե-ռանելոյ ... զարմանք էր ինձ ընդ կեալ այլոց մահկանացուաց. զի նա՝ զոր իբր անմեռ սիրէի, մեռեալ էր. և առաւել ընդ կեալ անձինս զարմանայի՝ 'ի մեռանել այնմ, որում էի միւս ինքն։ Բարւոք ասաց ոմն զիւրմէ բարեկամէ, հատոր հոգւոյ իմոյ։ Վասն զի իմացայ զհոգի իմ և զնորա լինել իբրև մի հո-գի յերկուս մարմինս. վն որոյ 'ի զարհուրանս էր ինձ կեանքն. զի ոչ կիսակտուր կամէի կեալ ‖։ Այսպիսաբար ախտակիրս օգոստինոս առ մարդ, առ որ առաւել էր բարեկամութին քան զնորա արժանիս. և ախտակրութին՝ առաւել քան զբարեկա-մութին. և զի ոչ բռնականաւ մահուամբ տանջեալ էր նա, և ոչ յանդիման աչացն անշնչացեալ։ Զինչ ապա զնքյ կուսէն ունիմք իմանալ զդառնութի ցաւոցն, որում ամենայնիւ հա-կառակքն պատահեցան։ Եւ 'ի վերայ այսոցիկ՝ յաջողեաց օ-գոստինոսի մխիթարութին՝ որ յարտասուաց անտի էր. իսկ ցաւագին տիրամօրն և այդ պակասեաց։ Նա անյոյս էր դիւ-րել իւիք բարեկամին մեռելոյ. իսկ սա կարօղ գոլով բազում իւիք դիւրութի տալ իւրում միածնի, ոչ ոք ներէր, ոչ ոք հա-մարձակեցուցանէր։ Աղեքսանդրի մխիթարութի մեծ համա-րեցաւ՝ զիւր զվիրաւոր բարեկամ արքունի փակեղամբն պա-տել։ Այլ տիրամօրն ոչ թողաւ՝ գոնէ արիւնազանգ քրտանցն թաշկինակ մատուցանել։ Եւ կարի արդարապէս. վասն զի զոհ էր եղեալ 'ի սեղան մն, որում չէր օրէն զանգանել մե-ղու մխիթարութեան։ (ղևտ. Բ. 11. 12։) Ցայսվայր յեղերս բանական սիրոյն հետազօտեալ, յայլ կողմն դարձցուք։

ԺԹ. Ապաքէն զօրաւոր էր 'ի տիրամայրն՝ սէրն ծնողա-կան. զօրագոյն սէրն բանական. այլ քան զերկոսին բռնա-գոյն՝ սէրն գերբնական և մծային։ Յառաջնումն՝ 'ի բնութէ վարեալ, յերկրորդումն՝ 'ի բանէն, յերրորդումն՝ 'ի շնորհաց. և զի ամենիմաստ կոյսն առաւել բանաւորութբն շարժիւր՝ քան 'ի բնութէ, և յաւէտ 'ի շնորհաց՝ քան 'ի բանաւորու-թէ, նմին իրի սէրն՝ որ 'ի շնորհաց, այնչափ բռնագոյն էր, որչափ ազդողական են շնորհք քան զբան և զբնութիւն։ Սա այն սէր է՝ որ 'ի սիրտ արդարոցն բռնացեալ, յաղթական լի-

նէր ամենայն սիրոյ՝ ծնողականին, և մարդկայնոյն. բաժանելով զհայր յորդւոյ, և զորդի 'ի հօրէ, զմայր 'ի դստերէ, և զդդուստր 'ի մօրէ: (ղուկ. ժբ. 53:) Այն հուր է երկնառաք, որ զամենայն հնոց դժնդակ՝ բորբոքեալ 'ի բնութէ կամ 'ի մարդկանէ. մաշէր՝ լուծանէր, յածխեն դարձուցանէր, որպէս 'ի բոլոր իսկ յա՟ծասէր նահատակացն հոյլս է տեսանել: Այլ դու հայեաց 'ի շամունէ, մանաւանդ լուր զոր զնմանէ հրաշաբանէ բերանն ոսկի. (ճառ. ը:) * Անդ էր տեսանել (ասէ) երկեակ հուր, այն՝ զոր բռնաւորն բորբոքէր. այն՝ զոր բնութիւն լուցանէր. և այն՝ զոր հոգին սբ վառէր ... բայց ա՟ծպաշտութե՟ն յաղթական լինէր. բնութի՟ ընդ շնորհաց մարտնչէր, և զմրցանակն շնորհն տանէր. բարեպաշտութիւն գեր 'ի վերոյ լինէր մայրական գթոյն. և հուր զհուր յաղթէր՝ հոգևորն զբնականն, զոր դժնդակութի բռնաւորին վառեաց: ||

Սովին հրաժարեալ նախամարտիկն այն ք՟եան նահատակ, զամենայն որ ինչ յերկինս և յերկրի դժնդակք՝ և կամ հաճելիք, յասպարէզ կարդայր, յարձակ խաղայր, առ ամենայն խրախուսէր առիւծաբար, հապա, թէ նեղութիւնք իցեն՝ ասէ, թէ հալածանք, սով՝ թէ մերկութի, վիշտք՝ թէ սուր՝ անցցեն 'ի հանդէս. և եթէ սոքա փոքունք, առցեն նիզակակիցս զմահ և զկեանս, զհրեշտակս և զիշխանութիւնս, զորկանս և զհանդերձեալսն. և եթէ այլ ինչ նոր արարած խիստ քան զդժոխս արուեստակել կարասցեն. ոչ երկիւղ ցուցանեմ, ոչ թիկանց շըրջումն, ոչ երեսաց ողոքումն, ոչ ձեռին դադարումն. մեկնեսցեն զիս 'ի մարմնոյ, այլ ոչ 'ի սիրոյն ք՟ի. թէ և մեռանիմ, այլ զամենայնն մեռուցանեմ, զի սիրովն անմահ եմ: (հռովմ. ը. 35:)

Լուար զխրախուսանս քաջազօր նահատակին: Իսկ եթէ առչափաւոր արդարս այնչափ զօրանայր ա՟ծսիրութիւն, մինչև զամենայն իսկ զաշխարհի դժուարակիրս յաչս դնել, մանաւանդ թէ հեշտընկալս և ուրախարարս գործել. զտառապանս՝ ծաղիկս համարել, զտանջանսն՝ փափկութիւս, զորդւոց մահ՝ նոր ծնունդս ասել, և զառ 'ի ծնողաց բաժանումն՝ իբր հարսանիս: Ապա զիարդ զքեզ սիրամօրէն միայ իմանալ, յորում ոչ լոկ ա՟ծսիրութի, այլ զխոյլին սէրն ա՟ծ անորոշելի բնակեցաւ. այնուիկ ա՟ծասէր, որով ա՟ծամայր. որով և եղև կրօղ արարչին [illegible]. ա՟ծգիտութե՟ն քերովբէ, այլ ա՟ծսիրութե՟ն զսրովբէ բէիւք գերազանցեալ, որպէս և շնորհացն լնութե՟: Ապաքէն այն խորք ա՟ծայնոյ սիրոյն իբր յաւէտ խորայատակ՝ ունէր յինքն ընկլուզանել զխորս երկեակ սիրոյն՝ ծնողականին, և բանականին, զամենայն որ 'ի նոցանէն վիշտս և տագնապս՝ յուրախութի յեղաշրջելով. և արդարև այդպէս իսկ վճարէին իրքն, եթէ սիրեցեալն՝ որ չարչարիւրն և ցաւեցուցանէր, լինէր մարդ սոսկ:

Ի. Բայց ահա աստանօր է տագնապ, մաստ աղէտ, յայսմ կիզումն անհնարին. զի որ չարչարիւրն, ա̃ծ էր 'ի մարմնի. նա ինքն՝ զոր ա̃ծային սիրոյն սիրէր իբր բարի ծայրագոյն, իբրև արարիչ իւր, իբր ամենապարգևօղ իւր, իբր տ̃ր և պահապան իւր, իբր առաջին և վերջին իւր, նոյն նա աւասիկ անարգի, տանջի, դառնամահ մեռանի: Եւ զի՞նչ ապա. ա̃ծն ամենայն մխիթարութեան՝ լինի նմա 'ի ցաւս ոգետանջս, աստ ճշմարտագոյն ևս քան զնոյեմի. * Դառնացոյց զիս բաւականն յոյժ: ‖ (Հռութ. ա. 20:) Եւ ո՞ր ակնկալութիւն այնուհետև այլոց ցաւոց սփոփանս մատուցանելոյ. եթէ կարօղ ինչ էր զդաւթին առնուլ քաջալերս. * Ո՛չ կամէր մխիթարել անձն իմ. յիշեցի զա̃ծ, և ուրախ եղէ: * (սաղմ. հզ. 3:) Իսկ սա թէ յիշէր զա̃ծ իւր, զմիւսն զառ 'ի դաւթայ ասացեալն կրէր. * Եղեն ինձ արտասուք իմ կերակուր 'ի տուէ և 'ի գիշերի. և այն զի ասէին ցիս (խորհուրդք իմ) զօրհանապազ, թէ ուր է ա̃ծ քո: ‖ Ահա 'ի ձեռս անօրինաց, 'ի ձեռնակապս, յատենի, ը̃ խաչիւ, 'ի խաչի: * Զայս որպէս յիշէի՝ տառապէր յիս անձն իմ: ‖ (սաղ. խա̃. 4. 5.)

Եւ ահա ոչ ևս 'ի նը̃ տիրամայրն հուր զհուր շիջուցանէր, այլ յաւէտ ևս սաստկացուցանէր. խորք ծնողական աղէտից խրախոյս արկանէին առ խորս բանական ցաւոցն՝ 'ի ձայն սահանաց ա̃ծային սիրոյն. և անձնն կուսական նաւաօրինակաւ 'ի պտոյտս անդնդայինս երրադարձս ալէկոծեալ, աղաղակէր. * Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին 'ի վերայ իմ: ‖ (սաղմ. խա̃. 8:) Ո՛չ ևս 'ի նմա շնորհն ընդ բնութե̃ն մարտնչէր. այլ երեքին՝ բնութի̃, բան, և շնորհ դաշնաւորք միմեանց՝ համահաւանք՝ մարտակիցք՝ իբրև առաջս երիս համագունդ յարձակէին յանձն կուսական. միաբան գոչէին. Սուր ա̃ն, որ զարթեաւ 'ի վերայ հովուին քո̃. (դատաւ. է. 20:) հարկանէին, վէրս դնէին, և ոչ զմի մասն հոգւոյն թողեալ անվիրաւոր. մասն զգայական 'ի ծնողական սիրոյն հարեալ, բանն՝ 'ի բանական սիրոյն, վերին մասնն 'ի շնորհաց:

ԻԱ. Իսկարդ՝ յերեցունց անպարտելեացս ճակատու ո՞ւր է յաղթեալն և անկեալն, ո՞ւր նաւաբեկութիւն յանդնդախոր պտոյտս ցաւոցն. Կայր առ խաչին: Ո՛վ ամենայաղթ վիրաւոր, ո՛վ անխորտակելի շինուած: Երեցունցն ձեռք 'ի նա, և ձեռք նորա յերեսին. յերեցունցն հարեալ, և երեցունցն յաղթէր. բն̃., շնորհօքն, ա̃ծսիրութբ̃ն: Այն շնորհ որ դաշնաւոր էր բնութե̃ն և բանին 'ի չարչարել, նոյն դաշնաւոր էր և կուսին 'ի զօրացուցանել և 'ի յաղթել. զի 'ի նմանէ իսկ էր՝ որ ասացն. * Ես հարկանեմ, և բժշկեմ: ‖ բ̃. օրին. լբ̃. 39: և նա բանայր նմա * ճանապարհ անխափան, և դաշտ ծաղկաբեր 'ի պտուտից բռնութե̃ն: (իմաստ. ժթ. 7:) Ապա ուրեմն շնորհն ինքն ընդ ինքն մարտնչէր, և մնայր յաղթօղ և յաղթեալ, մա-

նաւանդ թէ յերկաքանչիւրն յաղթող ։ Այո՛ կարի ճշմարիտ, եթէ զգիտողն տեղեկութե քննեսցուք ըստ փառաքի մերս հատողութեան ։

Այսպէս մի յանհատանելեաց անտի ցաւոց տիրամօրն՝ այս խորհուրդ է, զի 'ի մասնն վերին՝ որով առ ած հայէր, պատերազմ յուզէր անհնարին ։ Սէր ածութեան եռանդնեալ 'ի տիրական անձնն՝ բռնադատէր զնա 'ի ցաւս և 'ի կիզումն ընդ չարչարանս որդւոյն, զի ած էր անարգեալ 'ի մարմնի. բայց նոյն սէր դարձեալ ստիպէր զնա 'ի հաճութի չարչարանացն, 'ի կամիլ՝ յօժարիլ՝ 'ի խնդալ ։ Ահա պատերազմ յերկինս ։ Լուեալ յանիրաւի զդատիլն, մաշէր 'ի սիրոյն. բայց ակնարկեալ 'ի վճիռ իրաւանցն հօր, ձեռնադրէր սիրովն ։ Տեսեալ զծնրն փառաց յանարգութի անչափ, զաչսն մթագնէր սէրն. այլ զընծէլ անարգանացն ամյ այնու գիտելով, սիրովն աչանայր ։ Ածապաշտութե էին յանցանքն, անգիւտ կորստեան գործն, աւաղէր առ սիրոյն. բայց զի փրկանակ էր կենաց աշխարհի, սիրոյն ձեռամբ՝ 'ի սեղան անդր հանէր ։ Ո՛վ անհրաժեշտ դիմամարտութես, յորում կարի հակառակքն՝ անհակառակաբար զոյգ ընթանային. ցաւ անչափ, և յօժարութի սրտառուչ. տրտմութի խոր, և ուրախութի բարձր. կսկիծ անդարմանելի, և սփոփումն հեշտական. երկոքեան ևս պատճառուն, ապա թէ ոչ՝ հզօրն զտկարն վանէր. երկոքեան ևս անհրաժարելիք, զի ածսիրութե էին հրամանք ։ Ահա ոչ զկնի երեւմայի տեսլեանն՝ յերկուս կողմս, այլ 'ի մի կողմն՝ 'ի մի թուղ տեսանեմ զժանտն և զքաղցր. անդատին 'ի միոյ ականէ անտի ածսիրութեան՝ բղխէր քաղցրութիւն մխիթարութեան, և դառնութիւն ցաւոց, անխառն միմեանց, անխափան իրերաց ։

Անօրինակ են իրքս, ոչ ուրուք յածանէր նախահատակելոցն յայսպիսի երեւեալ հանդէս. զի թէ զաբրահամ ասես, եթէ զյամունէ, կամ զայլս 'ի նմանակիր սէրց, ոչ նման ինչ ասես, թող թէ հաւասար. զի առ նոսա ընդ մէջ այլոյ և այլոյ էր պատերազմն, շնորհաց ընդ բնուե, ածսիրուե ընդ որդէսիրութե. վասն որոյ երկնաւորն 'ի վերայ երկրաւորին զյաղթանակն կանգնէր ։ Բայց 'ի հանդէս ածամօրն՝ երկոքեան 'ի շնորհի անդ տատուկացան՝ և պատերազմն, և յաղթութիւն ։ Ապա յերկնից անտի էր յեղանակ պատերազմիս, 'ի բուն իսկ հայրական սիրոյն բերեալ զօրինակն. քան զի իբր ած հայր սիրէր զորդի, ոչ կամէր զնորա անարգանսն. այլ զի նա փոխանակ էր պարտեաց մարդկութես՝ և աշխարհի փրկանք, նովին սիրով կամէր, հրամայէր, մատնէր, թէպէտ անվրէպ և անյեղլի գոլով բնութիւն. ոչ յինքն էր դիմամարտութիւն, այլ 'ի կամեցեալսն ։ Ցայնմ սիրոյ գաղափարեաց որդին, անտի գաղափարէր և մայրն. այլ երկոցունցն ցաւելի ունելով բնութիւն, վշտանային անչափ, յօժարէին կամակար ։

ԺԲ. Արդարև ճահողապէս առ նա երգեաց մերս Գրիգոր Նարեկացի. Եթէ ընծայարար երբեմն անարատ՝ արարչագործ լոյսն ծագմացաւ. և եթէ լուսանալ կամաց անճառին՝ ծածուկէն հեղեղեցաւ: Զի 'ի տապի անդ ամենայնութեն՝ ջեռաւ նախանձու արդարութեանն իւր, տեսեալ ըզհօր կամսն 'ի պահանջելոյն մեղացն վրիժու: Հրէտեք յատենի անիրաւութեն, այլ նա յատեան իրաւանցն իւր հաւանողապէս աղաղակէր, խաչեալ: Աշխարհի փրկանս հայր զորդի առաքէր. յանձն առնու մայրն՝ միաձայնեալ ընդ հօրն ասել. * Ետու զմտեալն անձին իմոյ 'ի ձեռս թշնամեաց իւրոց: ‖ (Երեմ. ԺԲ. 7:) Եւ եթէ դէպք ինչ իրացն բերէին, ոչինչ յետնեալ քան զհրեշտակն գտանէր 'ի զօրացուցանել զորդին 'ի տագնապս պարտիզին: Քաջախորհուրդ ևս քան զկին ումն լակեդեմոնացի ունէր ասել, որ վասն որդւոյն անկելոյ 'ի պատերազմի՝ առնաբար բարբառեցաւ: Յայդ իսկ ծնայ զնա, զի սակս հայրենեացն մեռանել մի զանգիտեսցէ: Իսկ տիրամայրն զինչ. յայդ իսկ ծնայ զմիածինդ իմ, զի սակս աշխարհի փրկութեն անխորժեսցէ մեռանել, և ես ը̃ նմա: Վայելուչս իմն տողէ երանելի ոսկեբերանն յաղագս շամունեայ. (Ճառ. Դ:) * Քա՛մ է առ մայր քաջ պատերազմողացս անցանել, որ 'ի միում մարմնի բազում անգամ մեռաւ, մանաւանդ թէ բազում անգամ կենաւ, բայց և ոչ միանգամ ցաւեաց. առ մայրն ասեմ, որ անվէր՝ միանգամայն և բազմավէր...: Մնայր ապա վերջին 'ի պատերազմին եօթներորդն, որ զանձայն քնար մարտիրոսացն կատարելոյն էր: Զի՞նչ արդ, ընկճեցաւ արդեօք 'ի մատաղութէ հասակին. միթէ ցաւեա՞ց ինչ, տեսանելով զնշխարս բնութեանն բարձեալ: Ապաքէն նա ինքն զմանուկն 'ի մահ անդր ստիպէր, թէ ոչ ձեռօք՝ բայց խրատուքն. մի՛ զթիւ պսակացն նուազեցուցանէր որդեակ իմ. լե՛ր եղբարցդ որպէս ծննդեանն՝ նոյնպէս և ուղղութեանցն ընկեր. գործոցն կցորդութ̃ նմանեա՛ց կցորդութեն բնութեանն, ցո՛յց զքեզ զենելոցդ՝ և 'ի մարտի եղբայր: Եօթներորդ ինձ 'ի բնութէ ծնար որդի. եօթներորդ ինձ կամօք ծնանիջիր մարտիրոս. մի՛ լիցի՝ թէ եօթն որդւոց՝ իսկ վեց մարտիրոսաց կոչեցիմ մայր: ‖ Զայսպիսի նուիրական ունէր կամս այն երանուհի, վասն զի որպէս նա ինքն ոսկեբերան ասէ դարձեալ. (Ճառ. Ը.) * Ցուցանել կամէր բռնաւորին՝ թէ ճշմարիտ մայր է որդւոցն, և նոքա ճշմարիտ որդիք հարազատք, ոչ սակս ընտանութեան բնութեանն, այլ վասն կցորդութեան առաքինութեանն: ‖ Ապա քանճպատիկ ևս տիրամայրն, որ ոչ միում կամ ումանց, այլ բոլորեցն իսկ երկնաւորաց և երկրաւորաց ցուցանել կամէր, թէ մա՛յր է՝ ոչ լոկ անցաւ ծննդեանն 'ի բեթղեհէմ, այլ և ցաւագին ծննդեանն 'ի գողգոթա. ցուցանել՝ թէ դուստր է կամակատար հօրն երկնաւորի, ոչ միայն ընդունելով զառ 'ի նմանէ ծնեալն միածորդի, այլ և անդրէն վերընծայելովն. ոչ կամէր նուազեցուցանել զգումարտակ քաջութեան որդւոյն, ոչ

կամէր՝ թէ հրաշագործողին լցէ մայր՝ և ոչ խաչեցելոյն · բնութբ̃ն մայր՝ և ածութբ̃ն ճշմարիտ մայր կամէր երևել ։ Զաղեքսանդրի զքաջութիւն՝ մայր նորա ոլիմպիադա յանձին երևեցուցանէր, քաջալանջ ընդ առաջ սուսերաւորացն դիմելով ։ Գիտաց երկիւղ մարդկային քաղցրացուցանել զմարմին որդւոց 'ի քիմս ծնողաց ։ Արբակայ՝ զկոտորակս մարմնոյ որդւոյն ընթրիս ընկալեալ յաժդահակայ բռնաւորէ, խորովեցան աղիքն · այլ երկիւղն ետ պատասխանի · Առ արքայի՝ ամենայն ընթրիք վայելուչ են ։ Զինչ ապա սէրն ա̃ծային 'ի տիրամայրն տայր բարբառել · շատ էր նմա գիտել, թէ բազումն՝ որ կապէր զնորն խաչակ, սուրն՝ որ 'ի վերայ խաղայր, հուր ցաւոցն՝ որ բարձրանայր ծառանայր, առ 'ի յերկնից արքայէն պատրաստեալ գային · այնուհետև համբուրելի էին նմա կապանքն, սուրն՝ ընդգրկելի, հուրն՝ պայծառ ջահ · և ճշգրտագոյն ևս 'ի նա յանգ եղանէին ասացեալքն ոսկեբերանին զշամունեայ · (ճառ · ̃ը ·)* Ո՛չ զհուր տանջանաց համարէր տեսանել, այլ զջահ հարսանեաց ։ Ո՛չ այնպէս խնդայ մայր՝ յորժամ զորդիսն վասն հարսանեաց պաճուճիցէ, որպէս ցնծայր նա 'ի տեսանելն զնոսա չարչարեալս · և որպէս թէ միում պատմուճան փեսայութեան զգեցուցանէր, և միւսում պսակ յօրինէր, այլում զառագաստ հարսանեաց կազմէր, այնպէս խնդայր նա, տեսեալ զմին 'ի կաթսայ անդր դիմել, զմիւս 'ի տապակսն, զայլ ոք գլխատեալ ։ Ամենայն ինչ ծխով և հոտովք լցեալ կայր, այլ նա ամենայն զգայարանօքն համարձակ ճանաչէր զորդիսն, աչօք զնոսա նկատեալ · ականջօք զբանսն լուեալ, ռնգամբք զծուխ մարմնոցն ընկալեալ, զձանոյշն՝ և զդաժանն, դաժան առ անհաւատսն · իսկ ա̃յ՝ և նմա անուշահոտ քան զամենայն, զայն ծուխ՝ որ զօդ նսեմացոյց, այլ զմիտս կնոջն ոչ ևս · վասն զի կայր հաստատուն և անշարժ, համբերութբ̃ տարեալ զամենայն զգործեցեալսն ։ ‖

ԻԳ · Ահաւոր տեսիլն՝ որ 'ի գողգոթա, բաւականացաւ զիշխանս լուսաւորացն աննշոյլ մթագնել, այլ զմիտս և զըղգայարանս տիրամօրն ոչ ևս · հայէր յամենակիրն իւր որդի իբր 'ի փեսայ համապայծառ զարդարեալ · փուշքն՝ իբր պսակ ականակապ · արեանն կայլակք՝ յակինթք բոցափայլ · մարմնոյն մերկութի̃ պատմուճան բեհեզեայ · վէրքն արևնաբուխ՝ կիտուածք ծիրանւոյ · խաչն՝ գահոյք · քացախն՝ օշարակ նռնենեաց · նախատինքն՝ պարերգութի̃ · խաչահանուքն՝ հանդիսադիրք, և ինքն յայն նորատեսիլ փեսայութե̃ն հանդիսի՝ օրհնութիւս առ վերին պսակադիրն առաքէր · և զնոյն ինքն զփեսայացեալն ամենայն զարդիւքն հանդերձ նմին ընծայէր · 'ի սրտին ճշգրտելով զգրեալսն գրիգորի ա̃ծաբանին 'ի դէմս շամունեայ, (ճառ իը̃ ·)* Ո՛չինչ թողի աշխարհի, զամենայն ետու ա̃յ, զգանձն իմ, զլոյս իմ դարմանիչ ծերութե̃ս .... Ապաքէն այնպէս հայիմ յերեսս դահճացն, որպէս թէ բարիս 'ի նոցա-

նէ ընկալեալ իցեմ. և չէր այնպէս իրաւացի՝ քան վասն այսր շնորհս մատուցանել բռնաւորին, զի յետին զիս պահեաց 'ի տանջանս.

Ո՛վ, որպէս զի անճառ է զօրութիւն շնորհաց և սիրոյն այ, որ զնոյն զմի ամենավեհ անգս Ածորդւոյն՝ յերկուս դէմս կերպարանէր 'ի միտս Ածամօրն, իբր երկուս ըմպանակս պատրաստեալ 'ի միում ձեռին, մինն արեամբ՝ և միւսն կաթամբ. երկուս բուրանոցս ծխեալս, մին ձենձերով, և միւսն խնկով. երկուս արեգակունս 'ի ծայրս մտացն. մին խաւարի, և միւսն լուսոյ. որով միակ մասն նորա վերին հաւասարէր բովանդակ երկրական գնտոյս, կիսով չափ խաւարեալ ցաւովք, և կիսով՝ լուսաւորեալ մխիթարութբն: Տեսե՛ր արդ զմիտս աստուածե երանելւոյս գրիգորի, թէ զիա՛րդ տիրամայրն 'ի վերայ սիրոյ սեղանոյն մատեաւ պատարագ. առե՛ր 'ի միտ զքանիոնութի սիրոյն, զաստուածուն նոցա, զբռնաւորութիւն, և զպատերազմն՝ որ 'ի նոցանէ. տեսե՛ր իբր եղև պատարագ փրկութեան, և պատարագ օրհնութեան, պատարագ յինքեան, և պատարագ յորդին. միանգամայն քահանայութի իւր՝ և որդւոյն. զի վասն այսորիկ իսկ յերկարեալ յամեցաք 'ի բանիս, զհետ մտեալ քննութբ՝ ոչ զի հասանիցեմք իրացն խորութեան, այլ զի զնոցա զանհասութիւն ծանուցեալ, մակացուք միայն ասացելոցն սբյ վարդապետին լինիցիմք, 'ի միտ առնուլ վկայութբ մնոց, թէ 'ի փորձ այսպիսի նահատակութեն քանի կարևոր էր խաչին դատախարակութիւն առ սբ տիրամայրն. զոր 'ի գլուխ բանիս նախագրեաց սբ վարդապետս: Բե՛ր այսուհետև որ 'ի բանէս մնացեալն է՝ զայն տեսցուք:

Աւրաբերոյ և սրբագինեան՝ գեղձնաբարբ ծածուր պատարագ:

ԻԴ. Զազգ ազգ պատանդիցն՝ որ 'ի հինն էին պատարագ, միով բանիւս պարագրէ: Աւրաբերոյ, որ 'ի գառանցն լինէին՝ ապխտակազգեստ ասերբն մատաղամորթք: սրբագինեան, որ յարջառոց և յայծեաց, զկարծր ստեւն իբրև գէսս արձակեալք: և գեղձնաբարբ, որ յոչխարաց, թանձր բրդովքն ծանրաբեռնեալք: Արդ՝ զայն ասէ բանիւս, թէ մի միայն անարատ որոջս բանական՝ զամենայն որոշմունս պատարագացն զենմանց յինքն բովանդակեաց. զի կցորդութբն ընդ որդւոյն մատուցաւ իբր զոհ վասն մեղաց, իբր զոհ խաղաղական, իբր գոհութե, իբր սրբութե: Եւ զի 'ի նոցանէ զանարատսն մատուցանել օրէնքն հրամայէին, և ոչ սակս իւրեանց ինչ յանցանաց գայլին նոքա 'ի զենումն, այլ վասն մարդկան յանցանացն սրբութե, նոյն օրինակ և բանական որոջս տիրամայրն՝ մաքուր գոլով ամենայն անարատութբ, ոչ վասն իւր ինչ մեղացն գործելոց 'ի նուիրումն մատչէր, այլ վասն աշխարհի մեղացն քաւութե: Առ այսոքիւք և զայն միտս ընծայեցուցանէ, թէ բանական պատարագս այնպէս մատուցաւ այ, զի առ իւր ամբողջ.

և անկէզ պահեաց զասրն՝ զստեն և զգեղմն, հակառակ անբանիցն մատուցմանց. յայտ արարեալ այսու, թէ ներքնայնովքն հոգւոյն մասամբք ևեթ նուիրեցաւ 'ի զենումն և յայրումն, ոչ՚ինչ յարտաքին պատշաճից մարմնոյն նուաղեցուցեալ. զոր և վերադոյն անշնչաւոր փոխ անուանեաց. 'ի նոյն միտս և զպաջորդն առեալ բերէ:

## 'Ի ճգնաւորական վարս ողջախոհութեան:

ԻԵ. Յերկուս դէմս իմանի ճգնաւորականն, կամ զմարտիրոսականն ասէ, զոր կրեաց տիրամայրն ամենայն զգայարանօքն, յինքն վերաբերեալ առաստանաւ սիրոյն զամենայն արիւնաւոր կիրս ծնորդւոյն. և կամ զանապատական և զհրաժարական վարուց ակնարկէ. զի նա գերօրինակ չափով յանձն քանակեաց զճգնողական հանդիսիցն կարգ, զաղօթս մշտամռունչս, զլռութիւն, զտքնութիւնն, զպահս, զսուգ, զաղքատութիւն, զհրաժարումն յամենայն կենցաղականաց որովք ոչ միայն անձինն առաքինացաւ, այլ և ամենեցուն առաքինասիրաց՝ եղև Պատճառ պատշաճից անապական ճգնութեանց:

Արկեն այս ճգնութիւնք ողջոյն կրզեալ 'ի հոգին, քան Եէ 'ի սոյն հանդէս խողխողեալ: Եւ զի՞ պիտոյ էր այնմ՝ որ հոգւովն կարէւէր խոցոտեալ, սուր զգալի՝ մարմնոյն կորատող. կամ զինչ ծանր էր նմա սուր երկաթի, որ 'ի տեսիլ աչաց միայն ունի զահարկութիւն, և այն ինչ սկսեալ ցաւեցուցանել, անդէն ամենայն ցաւոցն արձակուրդ կոչէ մահուանն փողով: Իսկ իմանալին սուր անցեալ մինչև ցորոշումն շնչոյ և ոգւոյ, տանջէ անմահապէս. որ և անց մխեցաւ ընդ անձն տիրամօրն 'ի գուշակութէ անտի սիմէոնի. և յաքակայեաց անարտաբերելի՝ ոչ միայն մինչ յաւարտումն խաչունակ տնտեսութեն որդւոյն, այլ և յետ ծնապէս յարութեն՝ և երկնաչու ճանապարհորդութեն յաթոռն հայրենի: Խոքամուխ էր սուրն, խորամուտ վիրացն ճարակ՝ անողջանալի մխիթարութիւն որ 'ի փառաց որդւոյն. յանուշակ վտակաց անտի մեղմանայր արդեօք անչափ դառնութի ցաւոցն, այլ ոչ քաղցրանայր: Եւ եթէ 'ի փառունակ մարմինն տէրունեան պահեցան վէրք առանց ցաւոց, 'ի սիրտն կուսական ողջիկ կային և վէրքն՝ և ցաւքն: Այն զի առձեռն իսկ էին բազմապատիկ պատճառք՝ ցաւոցն յիշեցուցիչք. տէրունական չարչարանացն վայրք անբարբառ զնոյնս քարոզէին. անարիւն պատարագին օր ըստ օրէ նուիրագործութի՝ զարիւնաւոր զենումն 'ի միտսն կերպարանէր. հրէական ծնամարտութեն գրգիռ՝ գոգցես զխաչչաչեն 'ի նորա լսելիսն վերադոչէր. և ինքն ընդ այրութեն մնացեալ և յորդւոյն, բազմորդի մնայր ցաւովքն և հեծութեամբք. արտադրեալ արեամբ սրտին զեղխական քերթածս՝ երկայնս և զղջականս քան զհոմերոսին: Թէ յանցեալս հայէր, ցաւք. թէ 'ի ներկայսն, խառն յուրախալւոյն և 'ի տրտմականէն. թէ յապառնիս,

անըմբռնելի կարօտանք որդւոյն։ Երկրաւորքս ամենայն 'ի տաղտկանս էին. երկնաւորացն ծարաւ անհանդուրժելի ըղ-սիրտն տոչորէր.

Այսպէս աղաւնին մաքուր թեւացեալ յաշխարհականս առ-պարիզի, 'ի ձայն ձեպոյ մնջիւն 'ի սրտի քաղցր հեղաբանէր. Երբ հասանիցէ կենացս երեկոյ. երբ երեւեցայց ցանկալի դի-մաց իմ ամօրդւոյս. երբ բուռն հարեալ ոգեխառնեցայց ան-ընդմիջելի։ Եւ ահա հնչեաց առ նա հրաւէր սիրելւոյն։ * Արի եկ մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ. վասն զի ահա ձմեռն էանց, անձրեւք անցին, և գնացեալ մեկնեցան։ * (Եր-գոց. Բ. 10. 11։) Փութացաւ 'ի ձայնն. թռեաւ սրացաւ, եմուտ 'ի բոյնն' 'ի սիրտ ամօրդւոյն։

## Սուտն այսօրէն 'ի նոսէր քո զընման' հրեշտակացն պարտ պաշտպանեալ։

ԺԶ. Սէր ինքնին որն դիմեալ հասանէր, զհամբր և ոչ նա-բուն պաշտօնեայք անդր ձեպէին. գային խռնէին 'ի հան-դէս պարու, և ազանչացումն պամենաքումբք պատեալ պաշա-րէր։ Զի ահա նոսէր, և հուր չէք. զենումն և ոչ սուր. զե-նեալ և ոչ արիւն. այլ ամենուստեք լոյս, զլխովին փայլումն, ամենասփիւռ ճառագայթ։ Զառ 'ի յեսայեայ աւանդեալն հարցուած տարակուսանաց դարձեալ երկրորդէին, անդ վասն ելից որդւոյն. * Իսկ այս ո՞վ է' որ դիմեալ գայ յեդովմայ։ ‖ (ԿԳ. 1։) իսկ աստանօր. * Ո՞վ է սա' որ երեւեալս է իբրեւ զա-ռաւօտ, գեղեցիկ որպէս զլուսին, ընտիր իբրեւ զարեգակն, իբրեւ զհիացումն կարգեալ։ ‖ (Երգոց. Զ. 9։) Առ երկոսին հիացումն նոյն, հարցումն նոյն, վասն զի և զենումն նոյն' մօր Ե որդւոյ։ Եւ կրկին հիացումն, զի երեւէր լուսնոյ օրինակ' յարեւէ լուսաւորեալ, և միանգամայն արեգակնապէս, որ ինքնալոյս է։ Առ որս ձայն արձակեալ հարսնն շքեղաշուք, բովանդակ հիացմանն' միակ բանիւ լուծումն շնորհէր. * Ես եղբօրորդւոյ իմոյ, և եղբօրորդին իմ ինձ։ ‖ (Զ. 2։) Չիք 'ի միջի այլ որո-շումն, բայց միայն չեան և 'ն նա. յայլն ամենայն նոյն է իմն, և նորայն։ Ես նորա եմ իբր արարած, իբր սիրելի, իբր մայր. և նա իմ' իբր արարիչ, իբր սիրօղ, իբր որդի, իբր պսակ։ Այս իմ է նորայն զենումն, իմ է և փառքն. սիրոյ նուէր եմ, ցա-ւոց զենումն. իբր արարած' լուսին եմ 'ի նմանէ պայծառա-ցեալ. իբր մայր' արեգակն եմ, զանձամբ արկեալ զնոյն ինքն արեգակն' յորմէ դուքդ լուսաւորիք։ Սխրացան բովանդակ երկնաքաղաքացեացն նահապետութիք ընդ ամակերպ երեւումն, տեսեալ զխաչապսակ զիւրեանց թագաւոր' հպատակօրէն ձեւով 'ի մեծարանս անցեալ խաչապսակ մօրն դշխոյի, և զբեւեռա-պինդ զըազուկսն 'ի սպաս նմին մատուցեալ. զի որովք խոցե-ցաւն' պսակեսցի. զահեակն զգլխովն արկեալ, և զաջն զկու-

տական անձամբն. (Երգոց. ը. 6:) Հայր 'ի բարձանց բովանդակ փառօքն հովանի կացեալ. հոգին սրբութեան աղաւնակերպ զնովաւ թեւապարեալ. և ինքն համակ Երրորդութեան փառացն փառօք երևեալ:

Այնուհետև ապա զլեզուսն հրանիւթս յօրհնաբանութի նմին շարժէին, ընդ առաքելոցն գումար պատկերեալ, որք մեծի նահատակութեանն տեղեակք էին, և զենմանն յուղարկաւորք. զնոյն արժանիս պատուել գովէին զԱծածին: Հանգիտափառ եղելոց որդւոյն՝ և մօրն՝ զուգաձայն և խոստովանութիւն. զի որք առ որդին մեծաձայն բարբառէին. ‖ Արժան է գառնդ զենեալ առնուլ զմեծութի, և զիմաստութի, և զզօրութի, և զպատիւ և զփառս, և զօրհնութի. ‖ (յայտն. ե. 12:) նովին ձայնիւ և զծնօղն՝ միայն արժանի այնպիսեաց փառաւորութեանց զոյգ խոստովանէին. զի ոչ միայն ծնօղ՝ այլ և զենմանն համակցորդ 'ի յերկրի. որով և յերկինս 'ի պատկեր գառինն զենելոյ՝ համանունապէս իմանի որոջն զենեալ: Վասն զի որք իւր առնչակիցք՝ համանգամայն էին բնութբ և ճանաչմամբ, եղեն համանգամայն և ցաւովք, ապա և փառօքն:

Եւ արդարև ում ումեք յերկուանալ ընդ այս զմտաւ գայցէ. ուր տառք ածայինք ամենայն ուրեք ըստ վշտացն կրելոց վասն ած՝ խոստանան և զուրախութիւն չափել. զոր յանձին կրեալ հոգերգակն դաւիթ՝ գոչէր ցնծալից. ‖ Ըստ բազում ցաւոց սրտի իմոյ՝ մխիթարութի քո ուրախ առնէր զանձն իմ: ‖ (սաղմ. ղգ. 19:) Որով քաջալերս անձինն բերեալ մեծն պօղոս երանելի, սրտիւ ընդարձակելով դիմագրաւ 'ի նեղութիւնս լինէր, ասելով. * Զի առժամայն յաճախութի թեթև նեղութեան մերում՝ 'ի յաւիտենականն առաւելութի զմեծութիւն փառացն գործէ 'ի մեզ: ‖ (բ. կոր. դ. 17:) Իսկ արդ՝ եթէ չափաւոր ցաւոց և նեղութեանց ըստ բազմին և ըստ յաճախելոյն հանգիտակշիռ է և մխիթարութին և փառքն, զինչ առ անչափ ցաւս տիրամօրն զհամեմատութիւն արժան է իմանալ, առ որովք այլոցն ամենեցուն կիրք ծածկեալ անյայտին՝ իբր աստեղք յարեգակնէ, կորուսեալ բնաւ զանուն ցաւոյ և նեղութեան: Մի անյիշատակեսցի և փրկչականն խոստումն առ աշակերտսն. դուք ասէ՝ ցանդ ընդ իս 'ի փորձութիւս կցորդեցայք. վասն այսորիկ ուխտիւք խոստանամ ձեզ զարքայութին, որպէս և հայրն ինձ ուխտեաց. (ղուկ. իբ. 28. 29:) Իսկ 'ի տիրամայրն զառաւելութիւն տեսաք վերագրեցելովքդ. յարում ոչ այնչափ կցորդութի քան թէ նոյնութիւն էր ցաւոցն 'ի սկզբանէ մինչև ցկատարումն. ապա զո՞ր ուխտադրութեան խոստումն առ նա եղեալ կարծիցեմք: Ինձ թուի, ոչ այլ՝ բայց նոյն իսկ հայրական խոստումն, որով որդւոյն ուխտեաց, և զոր արդեամբք կատարեաց, բարձրացուցանել զնա գեր 'ի վերոյ ամենայն իշխանութեանց. և շնորհեալ նմա անուն երկրպագելի յերկնաւորաց և յերկրաւորաց: Եւ ոչ արտաքոյ գրոց է ասացեալս. քանզի ինքնին տրն 'ի յայտնութիւն ասէր, (գ. 21.)

*Որ յաղթէ, տաց նմա նստել ընդ իս յաթոռ իմ. որպէս և ես յաղթեցի, և նստայ յաթոռ Հօր իմոյ: *Եւ զի տիրամօրն յաղթութիւն ոչ միայն չնաշխարհիկ գոյր քան զամենայն նահատակաց, այլ նոյն ընդ քնի յաղթութեանն, յայտ է թէ հրաշափառագոյն օրինակաւ 'ի զուգապատուութիւն որդւոյն բարձրացաւ, աթոռակից նմին լեալ, իշխանակից, և փառաբանակից:

ԻԵ. Ապաքէն անպատում և քան զամենայն միտս գերազանց են զանազան աթոռոցն երևելութիւնք, յորս բարձրացոյց աջ Հզօրին զպարեբանեալ տիրամայրն: Զի իբր արարչին մայր, թագուհի երկնի և երկրի պատուեցաւ. իբր սկզբնաշաւիղ կուսութեան, ամենայն կուսից մայր և պսակ յարգեցաւ. իբր մահառիթ ցաւոց վերբերող, մարտիրոսացն խմբի գահերէց բազմեցաւ. իբր փրկութիւնագործ կրիցն հաւասարորդ, մայր փրկողին իսկ և իսկ դաւանեցաւ. բայց իբր կամաւ նուիրող որդւոյն 'ի փրկութեանն կատարումն, մայր փրկութեան՝ և մայր փրկելոց խոստովանեցաւ: Ահա ըստ արժանեացն՝ և փառքն. ըստ վաստակոց՝ պտուղն. գիշերային սգոյն՝ առաւօտ ուրախութեան, անդնդային ցաւոց՝ բարձրութիւն երկնից, ընդ միածնին նուիրման՝ անբաւութիւն որդւոց, ընդ խոնարհ աղախնութեանն՝ բարձր տնտեսակութիւն. որով զանեղծին Բանին ծնունդն ինքեան սեպհականեալ երգէ երանելին գրիգոր. որով բարձրացաւ՝ որքան մարթացաւ. և որպէս 'ի ցաւսն՝ նոյնպէս 'ի վայելսն բարձրացոյց զզօրութիւն ամենակալին, հրաւիրեալ ինքեան երգակիցս զերկնից դասագլուխսն՝ քաղցր եղանակել զիւր Մեծացուսցէ: Այլ նոքա զինչ, կցորդիւք Տ̄րն և զտիրամայրն մեծացուցանեն. միաձայնեալ անդուլ բարբառով համօրէն դասուց անդրանկացն եկեղեցւոյ:

Ընդ որս ձայնակից կարգեալ երկրաւորս եկեղեցւոյ դասապետաց և դասականաց, յազգս դարուց 'ի տոհմս ազանց՝ և յոլորտս տիեզերաց, անթիւ պաշտամամբք սրտից ըղձանաց գերապատուեն զնախապատուեալն յամենեցունց արարչէն՝ 'ի նուէրս ընծայից, 'ի կառուցմունս խորանաց, 'ի շինուած տաճարաց, 'ի հանդէս տօնից, 'ի ճառս գովեստից անբաւից. խոստովանեալք առ որքանութիւն փառացն զիւրեանցն անհաւասարութիւն, միայն պարտ վարկուցեալք ընծայել նմին զոր կարենն, թէև ստորև քան զնորա արժանիսն: Քննեն զփառսն, խնդան ընդ վայելսն, թէև առ երկոսին անկարութ̄ պաշարին մտօք և սրտիւք.

Ընդ փառացն խնդութիւն՝ և զցաւոցն խառնեն յիշատակ, զկսկիծն պատմեն. զվէրսն նկարեն 'ի լեզու և 'ի գրիչ. գիտելով թէ տրտմականացն յիշատակաւ զնորա զյաղթանակն գերահռչակեն յառաւելութ̄ի խնդութ̄ են: Եւ թէպէտ երկոքին այս յիշատակք՝ փառաւորութ̄եցն՝ միանգամայն և վշտակրութ̄եց՝ մեծապէս նմին հաճելիք, և փառացն աճեցուցիչք, և մեզ ոչինչ դանդաղելիք, սակայն առ մեզ ընտրութ̄ի երկրորդաւն

ծառայելապէս զմեր պարտս նմին հատուցանեմք՝ զարդարութեան և զերախտագիտութե. վասն զի 'ի մերոց անօրէնութեց յայն վիշտս ըմբռնեցաւ. և զամենայն յանձն առեալ ախորժաբար, այ ընծայեաց ընդ որդւոյն նուէր հաշտութե առ 'ի մեր բարերարութի: Զիարդ և զորդիականն բնականկեր կարիս անտեսեսցէ բանս, որով կապեաց բնութին՝ լինել ծնողական վշտացն յիշատակօղս և կարեկիցս. իսկ աստանօր շնորհօք մայր. ապա և 'ի շնորհաց պարտք: Թող և զօր առ յիշատակէ նորին վշտաց՝ զհոգևորական արգասեացն բազմապատկութի 'ի մեզ ներգործեալ 'ի մտաւորապէս յիշատակելն. վասն զի նոքօք՝ զըրկեալն զանոխակալութի վարդապետէ. վշտատեսն՝ զհամբերութի. անարգեալն՝ զյանձնառութի. ազատն՝ զմխիթարութի. ամբարտաւանն՝ զխոնարհութի. անհաւատարիմն՝ զսէր. կոծաղիրն՝ զհամեստութիւն. և մեղուցեալք առ հասարակ՝ զմեղացն ծանրութիւն, զգին հոգւոց, զշնորհաց առատացումն: Վասն որոյ յիրաւի է զնորուն վշտացն գումարութիւն՝ մատեան ասել ածպաշտութեան, և զկրօղն վարդապետուհի, ըստ գեղեցիկ ճառագրութե երանելւոյս գրիգորի. Որպէս երկնային 'ի ջեն ծոծին անպղծելի բնութեն հօր՝ անճառն առ հեփանման խառնմամբ մարմնոյ ճգանց, այսպէս երանեալդ և բարեբանեալդ՝ գերօրհնեալ ցուցման փեսային մեծամեծ նորոգոյ ծագելոյ,

ԻԸ. Հապա, կացցեն այսուհետև բանք, 'ի մէջ անցցեն իղձք. խնդամտեալքս սակաւուք անարիւն նահատակութեան ածամօրն՝ ցաւոցն լիցուք մի պատմօղք միայն, մի լսօղք միայն, այլ կրօղք, այլ շնորհակալուք, այլ նախանձաւորք. ընդ մեր ամենեցուն անպարտ վշտացաւ. պարտաւորքս վշտացն հաղորդեսցուք. նա յանտրտունմն վերառեալ 'ի կեանս՝ 'ի հովտիս վշտաց եթող զիւր աղէտս. պանդխտեալքս մանն ընկալցուք: Անկէտ յաւիտեանքն նուիրեալ կան 'ի հանդէս նորին խնդութեցն. զառժամանակեայս՝ ցաւոցն նուիրեսցուք: Մի՛ է միտս դայցէ ումեք, թէ մերժեցան նորայն վիշտք, բարձեալ են հեծութիւք, արդ 'ի հրճուանս է: Վասն զի անչափութի վշտացն զամենայն դարս գրաւէ, զամենայն սիրտս հրաւիրէ յիւր կարեկցութիւն. եթէ ցարդ 'ի մարմնի պանդխտացեալ էր կոյսն ցաւագին, ժամանակացն երկարութի ոչ արդեօք աղօտացուցանէր զկսկծանացն տագնապ: Յիշողականիս զօրութբ զանցեալսն մեզ ներկայ գործեսցուք. մանաւանդ թէ զյետինքս հուպ 'ի ժամանակ անդր փոխադրեսցուք. ճեպեսցուք 'ի գողգոթա. առ խաչէն կացցուք անմեկնելի. լիցի 'ի մէնջ ոմն յովհաննէս, ոմն մագդաղենացի՝ ողբակիցք և տրտմահաղորդք ցաւագնելոյ մօրն: 'Ի ցաւս մարմնականս, բազում անգամ և յանարժանս, թափեցաք վատնեցաք զմեր աղէտս. և զիարդ անկարեկիրք լինիցիմք առ արժանին ամենայն ցաւակցութե. ոչ մի այդպէս. այլ զամենայն զհոգւոյս մասունս 'ի նա ժողովեսցուք, զյիշողականն 'ի յիշատակել, զմիտս 'ի խորհել, ըղ-

կամս 'ի ցաւիլ, զսիրտ 'ի կսկիծ, զաչս յարտասուս, զլեզու յաղօթս ։ Նա՛ մի՛ մերայնովքս ևեթ շատասցուք, առցուք յանօթ և զընկերացն զսիրտ՝ զաչս և զլեզու, յորդորամիտս զնոսա արարեալ 'ի փոյթ ցաւակցութեան ։ Ցուցցուք զանձինս՝ արժանիս որդւութեն Ածամօրն, հաւատարիմ գտեալք 'ի ժառանգութե ցաւոց նորա . առ խաչին որդիացաք, 'ի խաչէ անտի ակնունի ընդունել զարժանաւորսն 'ի կցորդութի երկնային ժառանգութեն . զի անշուշտ է ասացեալն . * Եթէ չարչարանացն կցորդ լինիցիմք, և փառացն հաղորդ լինելոց եմք ‖ ։ (Հռովմ. ը. 17 ։) Որում արժանի գտցուք հանդիպել չարչարակցութեն և փառակցութեն՝ նորին բարեբանեալ Ածամօրն բարեխօսութբ, 'ի Քն Յն, որ խաչեցաւն 'ի մեր փրկութի, և 'ի Հայրն՝ որ առ մեր սէր մատնեաց զնա, և 'ի Հոգին Սբ, որ հաւատարմացոյց զսէր Ածութեն, Ամէն ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Ի ճառս Գործոց Սբց Առաքելոց ։

Զներբողական ճառս մեր Առաքելոց, ընդ որս և Եւթանասնիցն, նախ քան զԱղօթսն յօրինեալ 'ի մէջ Նարեկացւոյն՝ գիտեմք ապաքէն 'ի բանէ անտի. ձէ. 2. յասելն ։ * Զորոց զգովեստն արժանաւորութե՝ ըստ իմում կարի յայլում բանի պաշտեցի ‖ ։ Ասել ճգրիտ ոչ ունիմք՝ որչափ յառաջ ժամանակաւ քան զաղօթսն յօրինեալ իցէ. և ոչ հաւանելի է ժամանակակից կարծել ընդ ճառից մեր Խաչին և Ածածնին. վասն զի երկուց ևեթ ճառից խոստումն և կատարումն յիշատակի անտանօր, և մակագրութիւն այսր ճառի չունի ինչ յարակցութիւն, որպէս ունի երկուցն յիշատակելոց ։ Մանաւանդ թէ կրսեր քան զնոյնս ժամանակաւ ցուցանէ ասելն 'ի սկսուածի աստ. * Քանզի առ ձեզ և յաղագս ձեր 'ի դադարմանէ լռութե շարժեալ կարգ բանիս եա ‖ ։

Իսկ թէ յորմէ պատճառէ լուծաւ լռութիւնդ ասացեալ, և զայդ ահա լռեաց առ մեզ. այլ թերևս սակս նշխարացն Առաքելոց՝ որ կային յեկեղեցւոջ Ապարանից, կմ զի 'ի Նարեկայ վանս և 'ի շրջակայս նորա կայր եկեղեցի և նշխարք առաքելոյն Թովմայի, կամեցաւ յատուկ գովեստիւ պատուասիրել զգլխաւոր պետս եկեղեցւոյն Քսի ։ Զայն թերևս ակնարկիցէ ասելն մերձ 'ի կատարած. համար իթ ։ Ոսկերօն ցանաչելով զօրէն կենդանեաց լինել երկանց ։

'Ի տպագրութեանս յայսմ, թող զյառաջինմէ տպեալսն 'ի կոստանդնուպօլիս, կալաք առաջնորդ զերիս գրչագիր օրինակս, որք յերևան ածեն զվրիպանս կամ զայլայլութիւնս նախկի տպագրելոցն ։ Օրինակ մի գտեալ 'ի կոստանդնուպօլիս, բաւական ըստ հնութեն, այլ ուրեք ուրեք պակասորդ ։ Երկրորդ օրինակ յարքունի գրատանէն փարիզու՝ երկաթագիր հնութե ակնածելի ։ Երրորդ օրինակ 'ի հնագիր մեծադիր ճառընտրի մերում, յորում մի թուղթ ևեթ պակասի 'ի սկսմանէն մինչև 'ի համար. Ն. 'ի բանն. Եւ այսպիսեօք համարձակութե ։

Ուր միանգամ համաձայն ընթեռնուն երեքին օրինակքն, զայն ընտրեալ դնեմք 'ի բնաբանին. իսկ ուր այլաձայն գտանին, զյարմարագոյնն կալեալ 'ի բնաբանի անդ, թողումք զտարբերութիւնսն ծանուցանել 'ի կարգի լուծմանցն, համառօտ նշանիւքս՝ պլ, փր, ճռ, այսինքն պօլսոյ օրինակն, կամ փարիզու, կամ ճառընտրին ։

'Ի բացայայտութի խրթնածածուկ բանից այսր ճառի՝ իբրաւամբք իմն զոգցես թախանձել ունիմք զերջանիկ մատենագիրս մեր՝ մատուցանել մեզ զիւրն՝ և զմէջ Առաքելոցն ձեռնտուութի. քանզի բազում ուրեք ընդ քօղով ձևացուցանէ զիմաստն՝ իբր առեղծուածս իմն արկանել 'ի խոյզս բանաքննաց ։

Գրիգորի Նարեկացւոյ ներբողեան գովեստ ասացեալ 'ի հա-
մօրէն գունդս Առաքելոցն Աշխարհատարածիցն՝ նախապատուեալ Պե-
տութեանցն գլխաւորաց, և Աւետարանչացն և երկուցն օրէնաղան
Աշակերտացն ՀԲ :

Ա. ՏԻԵԶԵՐԱՑ ծաղիկք և տունկք տենչալիք
² տանն եդեմայ : Ադամայ նախաստեղծին ծնունդք,
և ³ զարմք սիոնի : Ոստք ամբարձուղէշք բուրաս-
տեանք, ծիրանածայր ընծիւղք երփնազեղք, քաղց-
րապտուղք և ախորժելիք : ⁴ Երկնընթացք դիտակք
ընտրութեան, լուսամնունդք և տիրահաստատք, շա-
հաւէտք և արդիւնականք, առոգեալք և արմատա-
ցեալք, պարարեալք և պանծացեալք 'ի ցօղոյ
պարգևողին. ⁵ ընտրական սերմանք աճման բարեբոյս
անդաստանին : Ողխմունք հանապազահոսք, մշտա-
կայլակք, ⁶ յարակայընթացք : Գետք հանդարտա-
հետք, ⁷ գերածաւալք և գեղածիծաղք, գարնագու-
շակք, սառնական օդոցն սուզիչք, և ⁸ դժնդակասիք
շնչոյն նհանջիչք և ապաքինիչք : Մեք և երջանկա-
գունդ գումար ⁹ դասու Առաքելոց : Քանզի առ ձեզ
և յաղագս ձեր 'ի դադարմանէ լռութեան շարժեալ
կարգ բանիս՝ 'ի գովեստ փառաց մեծութեան վեհին
հաճութեան, անսասանելի դրութեամբ հիմնացեալ միշտ
կառուցանի : Ասան զի յաւէտ բնակօղ բարեշունչ
բանից՝ քան եթէ շինուածոց՝ էականն ած դաւանի :
Բ. Այլ արդ՝ ձօնեսջիք երգոյս բանի ¹⁰ շնորհ 'ի
մաղթանաց ձերում հայցուածոց, զարժանապա-
տիւս ձեր տէրութիւն գերահռչակել : Քանզի ¹¹ 'ի
վեր քան զճառ շրթանց և զիմաստական բանի զօրու-
թիւ՝ շուք և զարդ գեղոյ ճոխութեան ձերում բարձ-
րութեան չքնաղապէս գերահռչակի : Այլ եթէ ոչ հրա-
շալի գրեսցի լռողաց, մերկասցի բաց 'ի բաց երևեսցի
¹² ծածուկ ծոցոյ բանիս, անեղծականս ճառել զըս-
տեղծեալսդ ժամանակաւ, և գրեալս շնորհօք որ-
դիք էուէն. և թէպէտ և ոչ անժամանակք ըստ ան-
սահմանին, այլ սկիզբն գոյից յաւիտեանց, իբր հին
ժամանակաց սկսեալք, ընտրեալք նախ քան զեղա-

նիւ եւս աշխարհի, ըստ բարբառոյ ձայնիւն պօղոսի ։ Քանզի որպէս սիովն վերին երկնային՝ սկզբնամեծար և կանխակառոյց մայրն ազատ մաքրածին, նոյնպէս և որդիք նորին անդրանիկք և հոգեպայծառք 13 'ի սկիզբն ծայրից անջրպետ եզերաց ընդարձակ ամաց միջոցի աստուստ նկատեալք ․ 14 'ի գրութե մատենի բանին նկարեալք ․ փառօք բարձրութե շնորհին պատկերեալք ․ անստուերական փայլմամբ բարերարն հօր կերպացեալք ․ անհաւասար համարձակութ 15 ստորիցս ստեղծագործեալք ․ մասնակից կրօնից 16 օծութ փրկչին ձեռնադրեալք ։ Հանգունակիցք խմբից անմահիցն դասուց պարակցեալք ։

Գ ․ Վասն զի 17 գերազանց քան զասպարէս չափոյ սահմանի՝ հին ամանակի՝ համբաւ հրաշափառ խորին խորհրդոյ մարգարէաքարոզ և տեսանողագուշակ երևման տնօրինեցելոյն մարմնով Յ~ի՝ հօրն արարչակցի՝ ձեւք քարոզեցաւ ծագաց աշխարհի ։ Երանելիք եւս և բաղձալիք, սպասաւորք նախապատիւք մարմնացելոյ և միացելոյ 18 ըստ կերպի մերոյ ա~յ ։ Բազմապատկաբար ընտրութ փորձեալք ոսկիապէս 19 'ի հողոյ նիւթոյ ։ Ընդունակք յանցման մեղաց չարութե ախտից մերոյս զանգուածոյ ։ Պայծառազգեստք և սպիտակափայլք ըստ պատահման արծաթոյ ։ Մաքուրք վարուք և բարիք բարուք, ըստ պարզութե տարածման տեսութե օդոյ ։ 20 Քաջապինդք 'ի համատութե, ըստ կարծրութե ձուլման երկաթոյ ։ Բղձականք և ախորժելիք գունակութ տենչալի լուսոյ ։ Քանզի արդարև լոյսք մշտապայծառք 21 'ի ընութեամբ անստուեր լուսոյն վերակարգեցայք անաղօտապէս ծագել 'ի ստորինս ․ ուստի նորոգ 22 գոյութե երկնի և երկրի 'ի Յ~ռէ ձեւք սահմանեցաւ ։

Դ․ Եւ զի և 23 ընդմիջեալն 'ի յամաց՝ խորհուրդ քառանիւթ աւուրն պահպանութե, յորում արասեակն հնկայընթաց և վայելչագեղ լուսապատարն պայծառութ 24 լծակցութ ընկերին լուսնոյ անըդդայաբար իբր ընչապէս՝ երասանակաւ կամաց անբաւին անմոլար շաւղօք հետևմամբ աստեղացն պարագրութ, յանվրիպական խորհուրդ ձեռումն դիտման՝ կարարածս բարեզարդեն ։ 25 Քանզի ցերապա-

Հակք և պահպանակք և կանոնք ուղղութեան երկրի,
կրօնաւոր մաքրականի գծագրութեան ձեռում տեսու-
թեան կանխադրոշմեցաւ ։ Վասն զի ոչ պաճառք խո-
տաճարակք, և կամ ղօղակք կերակրելիք, և կամ
թռչունք[26] սերմնամատոյցք, և պտղածին ծառք վարսա-
ւորք, մարմնաճաշակ կերակրոց խոտաբիկք, որ յեր-
կրէ ցուցեալ՝ 'ի սոյն կորնչին ։ Այլ[27] երկնային
զարդք և վերնային կամարին կանթեղք, լուսաբոր-
բոքք և անշէջ ղամբարք . այսր աւուր բարերարու-
թեան արարչին ստեղծուածք և պարգևք ։

Ե. Արդ նմանաբար և ազգակցապէս՝ 'ի ձեզ յառա-
մարի[28] վայելչական խորհրդոցն տեսակ ։ Որեզա-
կունք բազմահոլովք՝ գիջութեան[29] չարեաց ցամաքե-
ցուցիչք . բանական բուսոց դարմանիչք . անձնաւոր
տնկոց վերընձիւղիչք . ստանացելոց մտօք հրացու-
ցիչք . թերի և խակ խորհրդոց հասուցիչք և հնձա-
ցուցիչք ։[30] Մթացելոց մտօք խաւարի՝ լուսնապէս
խրախուսացուցիչք և բարեգործիչք ։ Մրրկեցելոց 'ի
ծովային ծփանաց աշխարհի՝ ստեղապէս ուղղիչք
և առաջնորդիչք ։[31] Պայծառափայլ լուսաւորք .
ճրագունք ելթնաշողեանք .[32] շանթք կիզանողք .
ցոլմունք ահագինք . հոսանք հրեղէնք . մարդիչք
մարդկան . բոլք ընտրութեան . հալոցք հոգւոց ։
Քանզի յայտոսիկ կոչեցայք՝ 'ի կամս կոչողին զօ-
րել այսոցիկ ։ Նաև այլքանեօք համարձակութեամբ
բազմամամանեայ շնորհիւ ամբարեալ և յաւէտ լցեալ
և ընտանին մաքրեալ, զանակութե̄ վեհին բարձրութե̄
[33] զփականս վերընկալայք և ձոխացայք և փարթա-
մացայք փառօք տիրապէս . ծ̄ծացեալք շնորհօք
բանին . թագաւորեալք օծութե̄ հոգւոյն . իշխանք
պանծացեալք . պետք գլխաւորք . նահապետք վսե-
մականք . նախարարք նախահոգակք . առաջնորդք
բարեշաւիղք . որսորդք հմտավարժք . դիտապետք
երկնաքննակք . վերատեսուչք անմոլարք . այցելուք
ուղղադատք . քահանայք քաւութեան . երիցունք
երեւելիք ։ Վասն զի այսպիսիք և այսոքիկ ստրիճա-
նի փառաց ձեռում տիրաձիր գլխաւորութիւք ։ Նա
զի և[34] մասունք անդամոց ստորհասեալք, մաքուր
սրբութե̄, մերձաւորին ընտանութե̄, յափն կառուց

ման գլխոյ գովելոյն [35] արժանապէս միազարդեցայք ։ Աւստի անխտրոց և անանջրպետ, միակենցաղ և զուգակցորդ ընդ քմի գոյք փառաւորեալք ։ Վասն զի և զսոյն հայցեաց միածինն առ պատուակիցն վերկնծայեալ զբանիցն մաղթանս, կամիմ և սոցա ընդ իս պերճանալ հա՛յր 'ի քում պարգևս ։

Զ. Վասն ակի երիւք [36] գովութե՟ բարեաց բաղդատեալք ։ Չորեքծագեան մասանց էակաց [37] անպատկառ խօսնակք ։ [38] Միաբան բնութե՟ եղակաց սիրոյ ջատագովք ։ Շնորհազարդ բանին տուողին հոգեշունչ աւետարանիչք ։ Ամոլք ուղղաձիգք և հանդարտաքայլք ։ Զուարակք եզանց բանականք և նուիրեալք ։ Լծակիցք կրօնիւք համահետք և խոհեմընթացք ։ 'Ի գործի ձևակի խաչի խորհրդոյ՝ [39] զմարդկային սրտից անդաստանս հերկագործօղք ։ Աւազանին փրկագործութեան ունողք, [40] և 'ի սարանոց ազգերի ձերում ամբարձողք ։ Վասնզի 'ի կոյս և յառաջին քառից սորադրեալ գունդս երիս երիս թուով երկոտասանս 'ի ձուլելի ձևս պատկերաց ցըլուց կերպագրեալս, անդրիագործս՝ [41] արհեստակիտուածս, 'ի դիտումն կայից հիւսիսոյ և դիմաց ծովու ընդ ելս և ընդ մուտս ծագման արևու, զկերպարան ձերոյ օրինակի, լծակ ջրակիր խաչանիշ և պղնձանիւթ ուսով հաւատոյ 'ի գաւիթ ծոցոյ սողովմոնեան խորանին յարկի, իբր եկեղեցական խորհրդածութեամբ վերադիտօղք տիեզերաց ․ 'ի նպաստ պատճառի նոր նորոգութե՟ զմկրտութե՟ն ջուր սրբելով ։ Որով [42] զաներևոյթ մտացն ծածուկս սրբագործեալ, իբր ստուերին առակաւ՝ 'ի նորս տեսակ կարկառեալ զհինն՝ զապաւառ թաղանդի աղէացն որովայնից, որ մերումն հոգւոյ է ազգակցութի՟, զմատուցելոց պաճարեղինացն ։ Վասնզի անվրէպ և անտարակոյս նշանակ դիմաց խորհրդոյս կերպի 'ի ձեզ յարմարի ո՛վ ամծարեալք, խրոխտք՝ միանգամայն և հանդարտք ։

Է. Ըստ [43] օձակոխն զարմի որդւոց եղջերուաց, 'ի ձեռն խնամոց զօրութե՟ մարդասէր և ամենաստեղծ հոգւոյն ժողովեալք, և մասնաւորեալք վիճակաւ բանին ընտրութե՟ ըստ նախագուշակ ձայնին եսայեայ ։

Մահացու և սատակիչ թունիցն սատանայի[44] խայթա-
սատակիչք ։ Դժնդակ խստութեան չնչային վիշապին՝ ա-
ռաջնոյ պատրողին պատրիչք ։ [45] Հրեշտակք զօրութեան ․
զուարթունք աննիրհելիք ․ լուսեղէն պատգամաւորք ․
անաչառութեան բանին դատողին ընծայատուք ․ շնոր-
հապարգևք կամաց անեղին ։ [46] Սոփերք հոգեմա-
տեանք ծածկութեան խորհրդոց էին ։ Տառ ամենակաց՝
ծննդոց մարդկութեան նուագք ։ [47] Տախտակք տիրա-
գիծք և ածադրոշմք ։ Տօն նաւակատեաց հանդար-
տաձայն սաղմոսաց, ամենայնիւ [48] գերազանցեալ գո-
վութեամբ ։ Օգեցողք փառաց քան հանդերձից ։
Բնակողք երկնից [49] քան թէ տաճարաց ։ Կենցաղա-
կիցք լուսակերպից՝ քան թէ երկրայնոց ։ Հոգիք
թեթևք՝ի թանձր մարմնի ։ [50] Ընձինք ամբծութեամբ
հիւթիւ շաղկապեալք ։ Երագունք՝ի թռիչս իմա-
տից բանի ։ Ի մուտս անմատոյցս մտօք սլացեալք ։
Հրաշիցն երկնայնոց երկրաւոր գոյութեամբ պատ-
միչք ։ Նմանհին փառաց՝ մահացու զանգուածովք բա-
րոզք ։

Ը ․ Ներոզք [51] զգլխաւորն դիւաց՝ կարթիւ հան-
ճարոյ ․ խաղացեալք բռնաւորին սատակութեամբ՝
իբր ձագու փոքու դիւըմբռնելոյ ։ Մերկամարմին
մատանցն ձեռօքն՝ քան թէ ագուցեալ ոտիցն կօշկօք
զխածանողին խորտակեալ զգլուխ ։ Որոյ [52] օրինակ
նմանաչար 'ի ձեռն տիրամեծար մաքրական և ընտրե-
լական պարգևաձիր և շնորհաբաշխ աջոյն պօղոսի՝
երևի հերքեալ 'ի բորբոքեալ խարոյկն բոցոյ՝ 'ի բար-
բարոսական վիճակն առաջին ․ յորում հրաշապէս
ծանուցաւ Նս յաշակերտին համարձակութիւն ։
[53] Քանզի իբր ծածկեալն ընդ վարագուրաւ խորու-
թեան կերպաւորութի պատկերի բանին յօբայ 'ի յա-
ւարտումն լրութեան կատարման լայնաձիգ և դժոխա-
մարտ հին ասպարիսին հանդիսի՝ զմրցանակ յաղ-
թութեան գլխաւորեալ երջանկին, ապա ճառեցաւ
աննոստ սատակութի անգծելի, սխրալի և անքերելի
կարծրութեան չարին կակղացեալ ․ և յաւէտ վանեալ
անդր քան զկայ կենաց կենցաղոյս կարծեաց պատ-
ժապարտապէս ըմբերանեցաւ ։ Սոյնպէս և սորին
[54] իւրով համակրօն դաւանահամբոյր գործակցօք իբր

'ի գաւիթ դրկաց մի նաւի՝ զերկրածուփ ալիս կո-
խողի՝ [55] սակաւաւթիւ զնդաւ երջանկացն հանգունակ-
ցեալ այնր յաղթութեան, զմիլեգնաձաւ բանսարկուին
զգլուխ՝ բոլորովին իւր զգայութեամբ և խորհրդանո-
ցաւ կոր կամացն մեքենայից 'ի յուսոյն արմատոց
հատեալ վերակորեցին ։

Բ. Վասն զի ընտրեալն և [56] զարմանալին կիւլի-
կեցին, որ յարաբիայ հեթանոսաց կոչմանն առա-
քեալ, երանեալն Լեւ. և հրաշանունն ախոյեանն և
քաջամարտիկ, մշտանուէր հայցմամբ աղօթից ըղ-
դիւաբախ խորոցն կոհակս [57] կարկեալ նհանջեալ
յինքեան խափանեաց ։ Նաև թէ և 'ի [58] մկանացն
կայից պատուատալման փայտից՝ 'ի տորին պր-
տոյտս խորոցն սասանեցաւ, այլ անմարմնաբար՝ քան
թէ թանձրապէս յաղթեաց անդնդոց և անդնդայ-
նոց ։ և ծաղքականաւ այպանմամբ հեգնեաց ըստ
մեծին դաւթի զմայրն աւհագին զարմից ղուղակաց ։
Նաև [59] անսայթաքելի ոտիցն հետովք՝ ընդ անկոխն ըն-
թացաւ սահման յատակի, զանհունն ծովուն միացեալ
ծոցն բարժանեաց ըստ մեծին մովսէսի, 'ի խորհուրդ
[60] հմուտ որսողաց առաւկաւ նաւին բազմահոլով հո-
դիս նաւողացն՝ 'ի հեղձմանէ խորոցն փրկեաց ։ Նաև
[61] շրթնաշղթայ կարծր առասանաւ դանդանաւան-
դակաւ պաշարմամբ զկործանողին մալեալ զկզակս
ըստ առակաւոր բանին նախնոյն եղովմայ, զկորու-
սիչ և զմահացու թոյնս իժին ժանեաց՝ զօրութեամբ
կեցուցիչ խաչին պակասեաց և ցամաքեցոյց ։ Նաև
այսպէս գուշակեալ գիր ստուերական ճշմարտաբար
արդիւնագրեցին ։ և կոխեցին մանրեցին զատամունս
օձից խիստ հերձուածողաց և թունից կարճաց նոցին
գործակցաց, ընդ զօրացելովն 'ի չարին մահու և
բելիարայ ։

Գ. Իսկ լծակից և [62] կցորդակից նորին առաջին,
սկզբնաթիւն և նախամեծար, վէմն հաստատեալ և
արձանն հիմնացեալ, քարն անուանի՝ եւթնաթիւ դա-
ւանութեամբ յարմարագրեցեալ, ըստ չափոյ [63] խոր-
հրդականն ամանակի այսր յաւիտենի սկսման և
լրութեան, ընտրեալն և փառազարդեալն Պետրոս ։
Պետրարին շրթամբք երանեալ, և բարերարութեամբ

բարձրացեալն հօր ուշադրեալ և իմաստնացեալ. և ուղղահամբոյր դաւանմամբ [64] հոգւոյն իմաստից տեսեալ զանժամանակ պատճառ անքննին ծննդեանն, արժանապէս բարգաւաճեցաւ բանիւ անեղին, երանի է քեզ սիմոնի ժառանգ յովնանու: Ուստի և նովաւ ըստ սմին 'ի նոյն ուխտակցութիւն պաշտօնակցաց սորին՝ սոյն երանութիւն անճառապարգև ձայնիւ առաջին [65] աւետարանագրեցաւ: Զի թէ խոստովանութեան նոցին համաձայնք՝ և փառացն զուգապատիւք. և մաղթանօք մարդացեալ էին 'ի զօրութենէ բանիցն նոցա մեք պատսպարեալք, և յաւէրժական յուսով պաշտպանեալք, յաղաչել փրկչին մարմնոյն ադամայ զծննդոցս որդւոց փրկութիւն, հայցեմ ասելով, որպէս վասն նոցա՝ և յաղագս հաւատացելոց բանիւ նոցա յիս, իմ բարձրեալդ հայր:

ԺԱ. Ահա պատճառք և սկզբնաշաւիղք ընաւէին բավանդակ բազմաբիւր բարեաց այսր երանութեան: Մարմնացելոյն կենցաղակցորդք. արարողին բանից խօսակիցք. մատակարարք կամակատարք. [66] կենարարին կերպին նկատօղք. ծածկութեան փառաց փրկողին մերկապէս տեսօղք. յընտրելոցն թիւ անուանիք, 'ի դասակցութիւն հարանցն հրաշալիք. վկայք նորոգման վախճանելոցն:

Սկզբնաւորեալք 'ի նախապատիւ և կանխամեծար սերմանէն սեմայ անդրանկին նոյի. զուգաշաւիղք մաքրութեան վարուց մելքիսեդեկի. զաւակք խոստմութեան գոգոյն աբրահամու. ժառանգք գովութեան գրկացն իսահակայ. որդիք երանութեան ուխտին իսրայէլի. զարմք և շառաւիղք աւետեացն յուդայի. [67] աշակերտք գերազանցք օրինացն մովսէսի. ըղձականացն և գուշակելոցն մերձաւորք և առաջակայք: Անպարտելի կորիւնք առիւծուց. պատարագելի ամոլք գառանց. [68] տիրահաւաք զումարք հօտից. աստուածազարդ ազինք գնդից. անդրանկին հօր ժառանգակիցք. [69] եղբարք փառաց միածնին: Մարմինն Յոհ 'ի ձէնջ ըստ վկայութեան որ մարգարէին. մարդկապէս տր Ոն 'ի ձեզ, և դուք հոգեպէս [70] ուղերձեալ 'ի նա: Ահա այսպիսեօք, և ևս բազմօք անկշիռ և անհամեմատ գովեստիւ պատուեալք և փառաւորեալք.

Ի անկոյն կենաց ընձիւղեալք. պտղաւէտք, հրաշա-
նշանք. քաղցրաճաշակ որթոյն բարունակք. աճու-
նածիգ ուռք վարսաւորք:

ԺԲ. Արդ այսու [71] բարգաւաճական բարեբաս-
տութեամբ 'ի բխելուց բերկրալիր բանից հրաշա-
նշան և հաճոյական խորհին հանդիսիւ անտխուր հըր-
ճուանօք տօնեալք: Զի թէպէտ ննջեցիք կափուց-
մամբ երկրատեղծք աչաց, ընծայեալ ամենունակ
և յաջնընմբռնօղ նախածին ծոցոյ մօրն որովայնի հո-
ղածին զարմի, այլ կենսատու բարբառոյ սերմանն ձե-
րոյ բոյս ցարդ ևս ցուցանի յանհատս և յանհամե-
մատ թիւս ամբարոյ արդիւնաւորութիս: Կենդա-
նիք 'ի մահու. անմահք 'ի մարմնի. անեղծք 'ի ստեղծ-
ման. մշտնջենաւորք 'ի սկսման: Օնի [72] Անի և
հոգւոյ նորա առաքեալք. կաճառակիցք կրօնից
փրկչին. զուգաշաւիղք պարագրողին. [73] համգունա-
տիպք երևելոյն: Հօրն ընդ միածնին փառք և ա-
շակերտք: Անսկիզբն և անժամանակն էութե [74] ազգք
և ընտանիք. որպէս ոմն յումեմնէ առեալ՝ ումանց ի-
մաստասիրեաց: Արժանապատիւ փառօք առաքեալք
'ի ծածուկ [75] ծոցոյ ստորինջեցելոյն. և 'ի ձեռն ձեռ-
նադրութե ձերոյ՝ մարգարէք ագաբոս և տիմոթէոս.
[76] Ի ձէնջ աւետարանիչք անուանեալն պատուէր՝
բարձու վիմին աշակերտ սրբասնունդ պատանին մար-
կոս. անուանակիրն յարութե, պատմօղն համբարձ-
մանն՝ անտիոքացի համբակն Ղուկաս, բժշկապետն
անձանց, քան եթէ մարմնոց: Ձեւք և 'ի ձէնջ հո-
վիւք և վարդապետք:

ԺԳ. Արթնածածուկ [77] բարբառոց լեզուք: Օտա-
րացեղ ձայնից յայտնութիւնք: Աներևութից բաց-
երևմունք: Անդարձակեալք և առատացեալք, 'ի
զօրութիս, յայցելութիս, 'ի հանճարս, 'ի պատասխա-
նիս, 'ի համարձակութիս, [78] 'ի պատշաճաւոր դար-
ձուածս բանից, յաջողուածս երկաքանչիւրոց՝ եղծ-
ման որպէս սափիրայն, և նորոգութե՝ իբր տաբի-
թայն: Անուշութեան բուրմունք հոտոց: Ձայնա-
տուք վեհք ահեղ որոտման, [79] բաներեգէս 'ի տեառ-
նէ անուն ձեր. ըստ այսմ զօրացեալք և քաջա-
ցեալք. անվնաս ոտից գարշապարօք խրախուսեալք

անդայթակղելիք ։ 80 Շողիւք փայլմամբ առաջնորդեալք 'ի ճրագէն կենաց՝ ընթացից ձերոց գործաքան ։ Նորհաշաւիղք և լուսատեսիլք ․ յերկրային տոհմէ աննման ։ Աջողակն 81 աջով տեառնագրեալք 'ի նորոգութեանն նշանակ ։ Ախտից և մահու վշտաց տխրութե 'ի հրամանէ էին յաղթական ․ անպարտելիք 82 և արտուորագոյնք ։ Ըստ երկնային զօրուն՝ զուգական ։ Մուտք հետոց ձեր 'ի փառս 'ի յերջանիկ վայրից սահման ։ 83 Հարսանեկան պարուցն կրցորդք 'ի կենդանեացն կայիցն խորան ։ Ամենակալ ձեռինն օրհնեցեալք 'ի գովեցելոյն աւուր համբարձման ։ Խորհրդական խումբք համարու պատկանաւորք Թիւք երկոտասան ։ Ատենապետք դատաստանի 'ի սոսկալի աւուր նորոգման ։

ԺԳ․ Արդ՝ այսքանեօք խնկելի և նուիրելի այլ և սիրալի և զարմանալի մասամբք երանեալք և բարեբանեալք ։ Լուսանշոյլք և ոչ հողանիւթք ․ հոգեգուամարք 84 և ոչ մարմնագունդք ․ յաղթողականք և ոչ պարտելիք ․ երկնակենցաղք և ոչ երկրասնունդք ․ անապականք և ոչ մահացուք ․ սրովբէամաքուրք և ոչ երկրամեղք ։ Զի թէ և ստուգապէս մարդք 85 'ի ստորնայնոց համագումնից, այլ հրեշտակք հաւաստապէս՝ բացակայք կայից երկրակիր կրօնից ։ Միայնում գլխոյն Յսի երկոտասան յօդուածք անդամոց ։ Կենդանարար կամաց բարձրելոյն հաճոյական յիշատակարանք ։ Քանզի թէ որ մարմնովն են, ոչ լինել տեղի այ կարեն․ և դուք ոչ էք մարմնով, այլ հոգւով․ եթէ իցէք ունող այ հոգւոյն․ և 86 տարտրոհիլ առ 'ի միմեանց շնչաւոր մարդն և անձնաւոր․ ապա հոգեպէս՝ քան թէ մարմնաբար ընտելութեդ ձերոյ կենցաղ ։

ԺԵ․ Շանագիրք 87 կերպատարագք այլազան զարմի միաթիւ շարի երկակի հնգիցն և երկուց վարողացն և յարմարաց տարբեր երկրի, և ամաց շարժութե և հաստատութե, ըստ քերթողացն ճահագրութե ։ Քանզի նուիրական ոմն է 'ի սոցունց, որպէս ոչխար կատարեալ արու ։ Իսկ այլ՝ գործնական 88 իբր զուարակ լծաձիգ, կասող․ և արքայական՝ իբր մարդադատիչ և առիւծ հզօր ։ Իսկ այսպիսեաւ թուով

յարմարեալ մինչև 'ի կատարեալ թիւն երկոտասանն։ [89] Երկոտասան և դրութի երկրի ձևականութեան. երկոտասան և աւուրցն ժամուց տունջեան տեսակ. [90] երկոտասան և գլխաւոր թիւք անդամոց մարմնոյն։ Երկոտասան ըստ այսց վակասին որ քառամանեակ. [91] երկոտասան կայլակք աղբերաց, և որք արբին զայն զօրապետք. երկոտասան և [92] վկայական արձանք գետածինք 'ի յորդանիսայ ծոցոյն համբարձեալք. երկոտասան և [93] զոր հեղխաւ կառոյց նպատակ 'ի կործանեալ հիման սեղանոյն [94]։ Նա երկոտասան թիւ խորհրդական՝ զորբազան անուան ձերոյ յիշատակարան կոչման՝ վկայեալ վերակարգելոցդ։

ԾԶ. Իսկ ևս 'ի սոյն յարեալ համբարձից 'ի յիմանալեացն յանհասութիւն զպտղածին [95] ճուղ երդոյ տառիս՝ զպսակօղ և զնորոգօղ անուան էութեան ամենազօր որ Երրորդութեն։ Վասնզի 'ի սողոբէս երից քառադրաց յորջորջեալ կոչմամբ զծանուցեալն մեզ տէրութիւն միափառ և համապատիւ, անպարագիր և անվայրափակ, Հայր և Որդի և Հոգի, և միաշարդասեալ զթիւն պատուեալ և օրհնաբանեալ երիցն աղգակցաց՝ երկոտասան վերանկարի։ Նա և յայտնեն ցանկալիք, և վեհագունաւն վկայելիք, և անճառելեաւն վերագրելիք։ Ընտանիք այ, և սրբոց քաղաքակիցք. շինուածք իմանալեաց, անքակ տաղաւարք. արարչութեանն օթևանք, և ախորժելի բնակարանք։

ԾԷ. Իսկ [96] Նութանանիցն ճառ փոխարկեալ ըղղէմս բանիցս, յաւէտ ըղձական և ախորժելի խորհուրդ ցուցանի։ Վասնզի զայսքանեաց բազմադումար դասուց ընտրելոց՝ որ բան զօրացի 'ի նիւթ ներբողինի։ Սամն զի յամենայնն դրուէ [97] աւետարանական պատմաբանութեն՝ զկնի մաքրակենցաղ և տիրաքարոզ ճանապարհորդութեն առ առաքօղն ձեպեալ հասին, յանդիմանակաց տեառն պատկերի զուարթ բերկրանօք. և զօրութի անուան կոչողին փառաց ինքեան պատմչին, զմերժուածն ախտիցն և զայսոցն հալածումն, աւետարանեաց նոցա մեծագոյն յուսոյ տեսութի։ Խնդացէք ասէ ընդ գրելոյ անուան ձեր յերկինս։ Ո՞վ փափագելի մեծի և աներկևան երա-

նութեանն . քանզի որ գրեաց զնոսա ա՟ծ, նոյն և վկայեաց, այսու պարգևօք անուանակոչեալ ժառանգք և որդիք ՚նր արքայութեան ։ Ո՛վ ա՟ծազգեալք ամենայնիւ գոյիւ կատարեալք բազմաբեւր բարդեալ բարութե՟ք . իսկապէս շնորհիւ պատարեալք . ապէնիրազ պարգևօք լցեալք ։ [98] Եւթանասնեկի եր-կակի լեզուացն այլասեռ ձայնիցն 'ի մի տեսակ զուգաշաւրթն խօսակցութե՟ համահաւաքիչք ։ Բաժանելոց յօգնակի ազգաց՝ անսասանելի շաղկապք սիրոյ ։ Պարք և [99] դասապետք վայելչականք պարուց ։ Տիեզերաց երկրի դատաւորք ։ Պաւմարք թագաժառանգք կայսերի ։ Ինքնակալ պետութիք իշխանականք ։ Պաւնդք գեղեցկագեղք նախարարազնեայ պատուելոց ։ Եկեղեցիք ընտրելոց երկնից բնակութեն ։ Աճառակիցք և կցորդք դասակցութեանցն վեհից ։ Արմտք կայունք և անխախտելիք անմահին փառաց ։ [100] Ացորդք հանդիսի իմաստութեն հանճարոյ ։ Աամք և յարձակմունք ակնարկութեան վերնայնոյն ։ [101] Ճարք աստեղանիշք եկեղեցւոյ հարանուէ ։ Որհեստական ձեռք պսակաց զարդու սիոնին ։ [102] Եւթանասուն բոյլք արմաւենեաց 'ի նշանաւունն յեղիմ ։

ԺԸ . Եւ միանգամայն գրելով զամենայն[103] 'ի սոյն կարգ բանիս պատկանագրութե, զնկար անկուածոյ ճառիս դրուատի՝ պայծառապէս պճնազարդեցից ։ Ո՛ր բանն ա՟ծ առ 'ի յա՟յ անժամանակ իսկութեանն ծնեալ միայնակ անճառն յանքնին ծոցոյ . որ և [104] 'ի կնոջէ կուսէ մաքրելոյ և յանարատէ սրբուհոյ, անդրանիկ և անհարազատ, 'ի մօրէ յատուկ՝ անհաղորդ կամաց հօր երկրաւորի, Ա՟ծ ըստ տեսականին, և մարդ ըստ պարզութեն միաւորական խառնութեն . ոչ սուտ և ոչ վայրապար, այլ մեծի իրակարգութե նշխար՝ զձեզ սրբագունդ դասք առաքելոց վերակոչեաց ։ Ո՛չ ընտրութե՟ք միայն վկայեալ, այլ և պատշաճականաւ թուով պանծանաց պայծառացուցեալ, կարգք և կնիք տասանց եւթանց խորհրդականաց, [105] ըստ ժամանակաց յեղյեղուն շարժութե դարուց ։ Իսկ [106] զերկուսն յեւթանասնիցն թիւ յարակցեալ, զնշանակ ապառնեացն և զներ-

կայից. զերկնաւորացն և զստորնայնոցս. զմարմնոյ
և զհոգւոյ. զտապանակակիր տախտակացն, զեր-
կեակ գոյութն երկնից, զերկուս լուսատուչացդ, և
զլուսաւորացն երկնայնոց, զեդեմայ և զմերս երկրի.
զհնոյն օրինի և զնորոյ աւանդութե։

ԺԹ. Սա արդ[107] այսքանեաց խորհրդոց՝ նկարագիրք
և պատկերք։ Ոչ առաքեալք միայն, այլ և նախա-
տակք. և ոչ խոստովանօղք միայն, այլև վկայեալք.
ոչ չարչարեալք միայն, այլև կատարեալք. ոչ մա-
քուրք միայն, այլև մարտիրոսք. ոչ ընծայեալք միայն,
այլ և նուիրեալք. ոչ մատուցեալք միայն, այլև
յարգեալք. ոչ պատուեալք միայն, այլ և պատարա-
գեալք։ Ո՛չ մարմնաբար միայն ծախեցեալք, այլ
խնկապէս բուրմամբ վերնայնոցն ծխեալք. քանզի
հոտ անոյշ Քի և հօր նորին հաճութե զգովեալք
դաս՝ իմաստունն պօղոս քարոզեաց. ցանկալիք և
երևելիք. գովելիք և պատկառելիք. խնկելիք և
պաշտելիք։ Սնացուածք զարմի տանն յակոբայ։
Զաւակք անհաղորդք չարեացն սոդոմայ։ Ժա-
ռանգք հաւատոյ նախնոյն աբրահամու։[108] Զի թէ
ոչ տեառն զօրութեց թողեալէր զձեզ զաւակ ըն-
տրութե նորոյ սիոնի, լինէր համգունակից սոդո-
մականն սինայի։ Այլ համբարձաւ բարձրացաւ էին
փառօք յերկրէ ՚ի ձերմէ բանէ, որպէս թափեցաւ
անկէտն ՚ի վերուստ յիւր գթութէ։

Ի. Սա արդ՝ եթէ երրորդութեանն իսկութիւն ՚ի
լեզուէ ձերմէ ծանուցաւ, և արարիչն[109] ձեւք պատմե-
ցաւ, և այ որդին ՚ի ձէնջ քարոզեցաւ, և խորք ան-
քնին վերին պարգևացն յերկրի յայտնեցաւ, ապա
երկնայինք և հոգեճաշակք և արփիաբնակք. որդիք
՚ի շնորհաց հօրն բարձրելոյ՝ քան թէ երկրածինք
զձեզ դաւանեմք։ Զի եթէ ՚ի ստուերագիր տառն
մովսիսեան անդրանիկ որդի իսրայէլ, և դարձեալ՝
որդիք էք այ և տեառն ձերոյ։ Նաև յամբաստանա-
կանն ձայն նախադրեալ յայ անուանեալ որդիս.
որք առ դստերսն մարդկան մտին. և դարձեալ, ես
գրեցի թէ ածք իցէք, և բարձրելոյն որդիք։ Իսկ
պաշտօնէից նորոյ աւետեացս, և ճշմարտութեանն
տեսողաց, և Քի ժառանգակցաց, և անճառ մարմ

նոյն բաշխողաց , և [110] ա̃ծեղէն կերպին անկակցաց , առ որդէգրութենն պատիւ ո՞վ թերամտեցէ և երկբայեցի : Վասն զի որ 'ի նոցանէ բանն և քարոզութին՝ ելից զտիեզերս : Նաև իբր զկամացն ա̃յ զպատգամն ընդ արարածս տարածեցան . և որպէս զարարչական [111] բանին երիվարս՝ զծովածուփ ալիս կոխեցին . և զվիշապն ապստամբ՝ հզօր մենքենայիւ բանին սանձեցին . և զբռնացեալսն գանձուց մԹերս՝ արխաբար գերեալ կապտեցին . և [112] զփինիկեցի զօրուն գունամորտակ՝ 'ի կենդանի ջուրն հեղձուցին . և զկարծրացեալ մտաց անդաստան՝ արօրադրեալ գերահերկեցին . և զմարդկան ապստամբութի՝ [113] կրօնից և մահու հնազանդեցուցին . և զանողջախոհ կենցաղ երկրածնացս՝ մաքուր [114] հանդիսի կուսութեան տուին . և արարողին արագ սուրհանդակք՝ ընդ հեռաւոր վայրս արշաւեցին . և իբր զանձուկ գաւիթ մի յարկի՝ զաշխարհս ամենայն ոտամբ չափեցին . և իբրև [115] հլին արուեստին վարժիւք՝ զմտաց սրտին քսակ մաքսեցին : Նաև 'ի ձկնորսաց դասուց կոչեցեալք՝ զբանական կոյտս ուռկանեցին . և 'ի հալածչաց 'ի սոյն հրաւիրեալք՝ զխաչեցեալն ա̃ծ պատմեցին . և 'ի հեԹանոսաց ոմանց ողորմեալ , զմոլեգնապատիր կուռսն մաքրեցին . և 'ի վրիպարհեստ բժըշկաց ընտրեալ , զաչս ոգւոց լուսաւորեցին . և յազախնածին ծառայից ստրուկք՝ հրամանատուք տերանց իշխեցին . և յայսքանեաց նուաստականաց՝ 'ի ծայրագոյն շնորհ ժամանեցին . և իբր զմի հնազանդ պատանի՝ զաշխարհս ամենայն աշակերտեցին :

ԺԱ. Սկզբնաւորեալ յերուսաղէմէ , զնսեմանուն վայրսն կեդարու , զանուանակիր կոչման Թոռինն հագարու որդւոյ իսմայէլի , [116] զծովական կղզիս քետացւոց զարմին քանանու . զվիճակն բաժնի ժառանգութենն սեմայ՝ բնաւին եղերօքն . զկադիրոնն բազմահոլով , ընդ ասորեստան մեծն և երկայնանիստն . զընկորոմն դրամբքն պարսից , տոհմին եմրանայ որդւոյ քետուրայ սերմանն աբրահամու : Զվայրս արևելայինս մարաց և արեաց պարԹևականաց , մադանայ և մադիանայ , զպարսկահեղէնն խուժաց , զլիբիա ընդ ծոցն հարաւային ծովուն հզօրի , րո-

պէրս հանդերձ զկողմն ասիայ ։ Զերիսն 'ի հնդից եթեովպիայ. ոմն 'ի նոցանէ և զերկուսն ընդ երիս. այլ ոմն 'ի նոցանէ զաշխարհ փղշտացւոց և զծայրանսն՝ հանդերձ հնդկայնօք, և զծուր փիւնիկեցւովք ։ Զսատաղացիս և զսկիւթացիս, զլատինացիս՝ որ և հռովմայեցիս, ընդ դաղմատացիս և եղիմացիս, խառն ընդ հիւսիսի և ընդ արևելս. [117] յորում առաւել բնակեաց բանն նոցա և աւանդութի ։ Վասն զի ընդարձակեաց ած յաքեթի, ըստ մարգարէութեն նոյի, և բնակեցոյց 'ի տան սեմայ, այսինքն յառաքելական վիճակին բաժնի. որք 'ի հարազատութէ սերեցեալն սեմայ հովուեցին զնոսա յարկաւ վերարկութևոց պատուիրանին վերակացութե ։

ԻԲ. Եւ այսպէս արագելով հետիոտս [118] տարժանաքայլ քրտնաթոր և աշխատակիր վաստակօք ընդլայնատարր ընդարձակ տեսակ երևաց գետնոյս տարածման, ընդ յոյնս, ընդ բարբարոսս, ընդ ոչ լսօղս զկենդանարար անուն Յսի, ընդ անծանօթս մարգարէիցն և նոցին պատգամացն ։ Եւ իբր զմտաց անփակ սրուն, և զփայլ մաքուր փայլատական՝ ընդ արարածս ամենայն հետևեալ լցին ։ Եւ 'ի խաւարին կռապաշտութէն [119] վերածեալ 'ի փառս զտոհմ ազանց երկրի, փրկեալս և ազատեալս՝ աւազանին անքիծն արգանդի անխարդախս ծնունդս և անեղծ ժառանգս՝ հասարակաց փրկողին տեառն ընծայեցին ։ Եւ իբրև որդիս՝ քան թէ պաշտօնեայս ծնողին այ՝ մօրն Յսի կենցաղակից գոլով մաքրաբար, արժանապէս լուսածին մարմնոյն [120] գովեալ հանգստեանն սպասաւորեցին. որում յանդիման աչաց նկատման՝ զ'ի նմանէ յայտնեալն ած բոլորից վերապատմեցին ։ Որ և [121] նովաւ և զկնի նորուն՝ անճառելի հրաշագործութբ զախտս մահացուս 'ի մարդկանէ հալածեցին ։ Զտեսանելիս խաւարեալ աչաց՝ կրկին յաւելմամբ լուսաւորեցին ։ Զլուծեալ անդամս ախտացեալ մարմնոց՝ [122] յառողջութի կենաց կանգնեցին ։ Զմեռեալս յարուցին 'ի կեանս վերստին և յանտարակոյս փրկութի ։ Զդևս աներևոյթս չարին զօրաց հողմով բարկութեամբ կամացն այ իսպառ հալածեցին ։ Զելս ընթացից երկնային մտից բնակութե՝ հողա-

ծնաց բացին ։ [123] Օ ահեակն հեթանոսաց՝ աջ ձեռնադրեցին ։ Օ հրէական ձեռնարձակութիւն իշխանական բանիւ կապեցին ։ Օ փայլումն երեսաց գեղազարդութեան մովսիսեան կերպին՝ ստուերին տեսակացուցին ։ Օ սրտմտութիւն սոսկալի սաստից վերին բարկութեան [124] յարարածոց երկրի տրոհեցին ։ Եւ իբրև ամենայնիւ այսքանեօք լցան լիացան և երանեցան, ապա նուիրեալ պատարագեցան 'ի սպանդ վերնական բարձրեալ սեղանոյն ։ Եւ նկարագրեալ դրոշմեցան 'ի գիր մատենի վերին դպրութեան ։ Եւ ոսկերօքն ցամաքելովք՝ զօրէն կենդանեացս լինել փրկանք ։ Եւ զմրցանակ յաղթութեան փրկչին և անապական մահուն քարոզեն բարձրահնչակ աւետագրութեամբ, զմկրտութիւն, և զքաւութիւն, և զյարութիւն կրկին նորոգման ։

ԻԳ. Ողբամ մեր նախնիք. ողբա մեր ծնօղք ըստ աւազանին. ողբամ դաստիարակք մերս իմաստից. ողբամ վարդապետք աշակերտելոցս. ողբամ դաւանութեան բարեաց ուսուցիչք. ողբամ եկեղեցւոյ սրբոյ հիմնադիրք. ողբամ կցորդակիցք արդարութեան պաշտամանս. ողբամ խորախորհուրդ ընտրական կրօնիցս. ողբամ [125] ձեռնադրօղք քահանայութեան, 'ի Տնէ ընկալեալք և մեզ մատուցեալք. հաւատարիմ ուխտի դաշնաւորք. վկայք վեհագոյնք ծառայութեանս կարգի ։ 'Ի ձեռն սոցա ընդունական և հաճոյական մաղթանաց հայցման աղօթից [126] ընկալցուք և մեք մասն փրկութեան 'ի բարերար գթութենէ խնամոցն այ ։ Օ օրանալ ձեռին մեր 'ի շնորհս, 'ի բժշկութիւս, 'ի բաշխումն կենաց պարգևաց ։ Նման նոցին ընդ նոսին, իմում հաւատոյ մասին՝ քաւեալք փրկեալք և արդարացեալք, 'ի Քս Յս 'ի տէր մեր ։ Որում յամենայնի փառք և մշտնջենաւոր գովեստ անդադար երգոց, ընդ Հօր և ընդ Հոգւոյն սրբոյ, յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

## Շար. 'ի տօն. Թարգմանչաց :

1. Յաւելու օրինակն այլ. ԵՐԳԵԱԼ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ Ն-ՃԵՃ ԽՄԱՍՏԱՍԷՐԻ :

2. ՏԱՆՆ ԵԴԵՄԱՅ : Զդրախտն եդեմական կոչէ՝ տուն, երբեւ յատուկ բնակութիւն արարեալ առ 'ի յԱՅ վասն անմեղն Ադամայ : Զայն կորուսաք մեզք՝ զրկեալք որ անդն 'ի քաղցրապտղաւէտ անտի : Այլ դուք ասէ՝ շնորհեցայք ոչ միանմանօր երկրի ծաղիկք և տունկք, այլ բանական-գանկ աշխարհի :

3. ԶՈՐԾՍ ՈՒՌՃԻՆ : փր. ղորմ : Թէպէտև ազգաւ ծնունդք էք ըստ մարմնոյ, սակայն հոգևորապէս եղայք որդիք, և ցեղապետք նորոյ սիոնի եկեղեցւոյ. կամ երբև այգւ վերին սիոնի. որով ոչ միայն պատճառի զաւակք էք նախահօրն ադամայ, այլև նմին իսկ վերածնողք :

4. ԵՐԵՔՇՆՈՐՀ ԴԻՓԱՌԻ : Որմանց Թուեցաւ դիպակ նշանակել ասա՝ դիտող, հայեցող, երբեւ գիտակն նկատող ընթացից երկնից : Սակայն կարգբանիս խօսի յաղագս անկոց, և դիպակ նշանակէ զբարձրացեալ ոտս, որպէս և յայօթմ. բան դէ. 9. ասէ. * Կախեալ 'ի դիտակ ոտոցն || : Դուք էք ասէ՝ երկնաքերձ բարձրացեալ ոտք՝ ոչ անպիտանք, այլ ընտիրք, երկնային լուսով անձեցեալք. փիլիսոփայք, 'ի Քնէ տնկեալք և պնդեալք, ըստ որում և ինքն ասէր ( Յոհ. ԺԵ. 4. 5. 6. ) հաստատեալ դուք յիս. առողեալք և պարարեալք 'ի ցօղոյ պարգևողին :

5. ԸՆՏՐԵԱԼՆ ՍԷՐՄԱՆՔ : փր. սէրմանք : Ընտիր սերմանք՝ որք անվրէպ արդիւնս բարեաց աճեցուցիք յանդաստանին եկեղեցւոյ. ոչ ոք 'ի ձէնջ անպիտանացաւ :

6. ՅՈՐԱԽՈՅԶՆԵԼՈՑ : Այսպէս ձեռ. օրինակք : այլ տպ. յորձնելոց : Ըստ զանազան բանի օրինակին Առաքեալք 'ի տունկս, յաղբերս, և 'ի գետս : Աւետարանական վտակօք պատուակս բերելով ԱՅ զմարդիկ՝ անկոց նմանեցին. պարգևս շնորհաց սփռելով 'ի մարդիկ, ԲՂԽՄՈՒՆՔ, իբր աղբիւր են անսպառք. ընդ աշխարհ ամենայն ծաւալելով զքարոզութ., գետք են նմ :

7. ԳԵՂԱԾԱՒՈՐՔ : փր. գեղածաւորք : Հանդարտութ., և առանց կարկաջելոյ՝ որպէս լինին նեղթական գետք՝ հոսէին ընդ երկիր. և 'ի բարձրն կոյս էս ընթանային՝ առ իշխանութիւս և պետութիւս, և ոչ ընդ խոնարհ կողմանս ևեթ նման զգալի գետոց, այսինքն 'ի ռամիկ ժողովուրդս : ԳԱՐՆԱԳՈՂՈՒՆՔ. այսպէս ձեռ. օրինակք, և ոչ փառնանգողունք : Գեղեցիկ ծաւալմամբ զուշակէին զպարտն փրկութ. հոգւոց. որով զատանականն օձս մոլորութե և անածութե լուծին : Աստ չկայ 'ի ձեռ., արքիական ըստայն դիպակ :

8. ԴԺՆԴԱԿԱՒՈՐ ՃԵՂՔՆ ԱՊԱՏԻՆԻՑ : Այսպէս ձեռ. այլ տպ. դժնդակ այսոյն ճեղքոյ ապականիչ : Դժնդակագոյն հողմոյ հեթանոսական ուսմանց, գիտական առասպելաց, և կամօր խաւարութեանց՝ խափանիչք, և բարձօղք 'ի մարդկանէ :

9. ԴԱՍՈՒ ԱՆՅԱՂԹԵԼՈՑ : փր. դասի, Առ ձեզ ասէ՝ ահաւասիկ խօսել սկսանիմ ո՛վ երջանիկ դաս Առաքելական, և վասն ձերոց մեծութեան. սակայն առաւել 'ի զովեստ և 'ի հաճութեն մեծին ԱՅ հայր բանիս հիմնադրութիւն. քանզի գիտեմք թէ յաւէտ արժէ ԱԾ շնչել 'ի բանս գոհացողականս և օրհնութեան՝ քան թէ 'ի շինուածս տաճարաց. և ես թէ չեմ կարող տաճարս կանգնել, ահա զբանս գովեստից նուիրեմ :

10. Շնորհ 'ի մաղթանաց ։ այլ. շնորհի մաղթանաց ։ զարմանազարդիւն յէր ։ այլ. զարմանազարդիւք ։

11. 'Ի վէր քան ... գիմնաստական ... զաւք ։ փր. գիմնաստնական ... զաւնդք ։ Գերահրաշակի ։ այլ. գերագրաշակի ։ Շնորհեցէք ասէ զիմաստնական եղանակ գովասանութեան բանիս ձեռամբ հայցուածովք՝ առ 'ի կարելոյ մեծարել զձեր աւետութիւն. վասն զի բարձր մեծութեան ձերոյ յարգանք 'ի վեր վկայեալ են քան զխօսս բերանոյ, և քան զզօրութեան իմաստից ։

12. Ծածուկ ծոցոյ ։ Այսպէս այլ. փր. այլ աւր. ծածկութեան ։ ... զտիեզերաւք ։ Այսպէս այլ. փր. այլ աւր. զտիեզերականաւք ։ ... և գրեալ շնորհօք ։ այլ աւր. յաւելուածով, զդեմ յէր գրել ։ ... օճիղին գոյից ։ այլ աւր. Եէր օճիղին ։ Իմաստք առաւելութեան. Թերևս զարմանալի համարեսցի լսողաց զոր ասելոցս եմ, բայց մերկացայց ասէ՝ յայտնեսցից համառօտակ զծածուկն գաղտնութեան բանիս, զձեզ ժամանակաւ աւետարանիչ կոչել ծանուցանել անեղծականս, և որպէս շնորհօք գրեալս էութեան, նմանութեան. Թէպէտ և ոչ անժամանակս ըստ անսահմանին, որպէս անժամանակ է էական որդին՝ բանն Այ ։ Եթէ զասացեալս իմանայցեմք յաղագս ընտրութեան Առաքելոց 'ի շնորհս և 'ի փառս երանութեան, այդ համառօտակարգ պատուհասի անձնային ընտրելոց, որք շնորհօք յորդիս գրեալ են Այ, և յառաջքան զլինել աշխարհի կարգեալ են 'ի շնորհս և 'ի փառս. ուստի ոչ հրաշալի կի՞ նոր ինչ վասն առաքելոցն ասել ։ Վասն այսորիկ իմանալի է յատուկ ըստ ընտրութեան նոցա 'ի միջնակ առաքելականն, որով սահմանեցան և գրեցան յորդիս Այ ըստ նմանութեան բնական Որդւոյն՝ իբրև ակզբունք նոր աստեղծուածոյ եկեղեցւոյ. որպէս և ասէ օճիղին գոյից յաւիտենից, այսինքն նախկինք հաւատացելոցն ընտրելոց 'ի յաւիտենից. և հինն ծածկեալ, նորոյ քննական զարուն ։ Զի զոր օրինակ Քս ասացաւ իբրև գլուխ՝ *Հայր հանդերձելոյ աշխարհին||, նոյնպէս զԱռաքեալսն անուանս իւր՝ կարգեաց լինել հայր. առ որս և ասաց իսկ. *Ոչ առաքեաց զիս հայր, և ես առաքեմ զձեզ||։ (Մատթ. իը. 18։) 'Ի սոյն սահմանեալ էին նոքա 'ի յաւիտենից՝ իբրև զործակիցք Քսի 'ի նոր արարչութ. և 'ի սմին միացին անեղծականք, անմերձ որպէս սահմանեալն էր՝ 'ի գլուխ ասնելով զաղաշտն իւրեանց. որպէս և զինի ասէ Նը վարդապետս. *Նորոգ գոյութեն երկնի և երկրի ձեւք սահմանեցաւ||։ Եւ ահա այս է գերազանցութիւն՝ զոր հրաշալի լսողաց ասէ, սեպհական շնորհեալ Առաքելոցն եսեն, և ոչ այլ ումեք յընտրելոց. զոր և երանելին Պօղոս ասէ. (ա. կոր. ժբ. 28.) *Եւ զոր եդ ած յեկեղեցւոջ՝ նախ զառաքեալս||։ Եւ դարձեալ. (բ. կոր. ե. 20.) *Արդ վասն քնի պատգամաւորեմք||։ Սովին մտօք երգէ և շարականն. *Որք 'ի սկզբանէ պատուեալ եղեն 'ի սէր բարերից հօրն առաքելական կոչմամբ զախտաւորս հրաւիրեցին յաւսա։ Զորս ընտրեցեր յառաջագիտութե զարժանաւորացն անձինս, պարգեւեալ 'ի նոսա զհոգի շնորհաց քոց|| եւ։ Այս լեցի համառական բացատրութեն այլ և այլ բանեցն՝ որ զկնի գան ։

13. 'Ի օճիղին ծայրից անըլզեփ եղերաց ։ Այսպէս այլ. իսկ փր. մեծապէս 'ի օճիղին ծայրից անըլզեփ գէրաց։ ... ապոպոփ նկարեալ ։ այլ. նկարեալ ... Բանին նկարեալ ։ այլ. Բարձին ։ Իմաստք առաւելութեան. զոր օրինակ ասէ՝ վերջինն սկիզբն, նոր եկեղեցի՝ որ յերկրի և որ յերկինս, յաւիտենից 'ի սկզբանէ մեծարեալ է, և 'ի միտս Այ կատարեալ, նոյնպէս և անզրաւեն որդիք նորա Առաքեալք՝ 'ի սկզբանէ ծայրից որոշեալ ժամանակաց՝ ընդ միջոց հազարաւոր ամաց ապոպոփ նկարեալ, մինչև ցայս վախճան ժամանակաց նկատեալ էին, որոշեալք յայլ մարդկանէ՝ լինել ոչ միայն սուրբս, այլև սրբագործօղ այլոց ։

14. 'Ի Գըրաւթէ Խօփէնի: 'Ի յաւիտենական ատհեանի մառոցն ԱՅ, կամ 'ի խորհրդական մարդեղութեան բանին ԱՅ նշանակեալք երբէք պաշտօնեայք նորա և ընտանիք: Փառօք Բարյըրաւթէ: Բարձր պարգևօք Աստուածութեան եղեալք պատկեր Քնի, որ էր առաքեալ Հօր: անօփուէրաչեան, ընծայեալ անաղօտ լոյս աշխարհի, բարեխօսք Հօրն եղեալք կերպարան, որ է հայր լուսոյ, և զարեգակն ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց:

15. Սփուրէյու օփէղծագործէեայ: Այլում ձեռ. այլ ապ. 'Ի սփուրէյու: Արարչագործեալք գերազանց առաւելութք, մեծութք, որում ոչ մի ատարնեալս համեմատի. այնպիսի անձառելի շնորհութեան միջնորդեալք, մինչև առնել Քնի. Դուք չէք յաշխարհէ: Բառն համբրշոլութէ, այլուր ևս 'ի բանս Պարկեցոյն նշանակէ՝ ընդարձակութիւն, առաւելութիւն. որպէս և զեկեի համար է:

16. Օծաւթէ Տրէշէխ: վրր. օծաւէ: Կարգաւորեալք կմ' երիցակիցք Քնի, նորին օծութեամբ ձեռնադրեալք 'ի քահանայութիւն:

17. Գեէբաղանց Թան ղառապարէս չափոց սահմանի: միայն ապ. Գեէբաղանց Թան ղառացեալ չափ սահմանի: Գեէբաղանց ... հին ամանակի: վրր. Գեէրանց. հինամակի, և մարթ է համարիլ բարդեալ, գերանց, հին ամ: Ջկնի, Էրևման փնօրինեցէլոյն: այլ. Էրևմանէ, խմաստքն. համբաւ կամ հռչակ խորհրդոյ մարմնով երևման Որդւոյն ԱՅ, որ յառաջ քան զընդարձակութիւն և զատհման հնոց ժամանակաց՝ մարգարէիւք միայն աղօտաբար գուշակեալ էր առ սակաւս յննդապաշտից, ձեռամբ բերանօք ընդ աշխարհ ամենայն քարոզեցաւ. դուք եղայք լեզու և յայտնիչք մարգարէից:

18. Ըոփ Նէրպէ Ռէբոյ ԱՅ: այլ. յաւելու. ԱՅ Բանին:

19. 'Ի հողոյ Նիւթոյ: այլ. 'Ի Նիւթոյ հողոյ: Երբեմն ոսկի զտեալ և անխառն գոլայք՝ 'ի հողային բնութէ, փորձեալք այնպէս մշտօք, որով և անընդունակք յանցմանց. յետ ընդունելութեան շնորհաց Հոգւոյն՝ ոչ ևս ներքոյ անկեալք ախտից բնութեանս՝ որ 'ի յանցմանս գրգռէ. անախտելիք մեղաց չարութէ:

20. Քոշարընդ 'Ի հաւաուէ: Այսպէս վրր. Իսկ այլ. 'Ի հաւապաուէ: ... Յաղման Երէսթոյ: այսպէս ձեռ: այլ ապ. Երծաթոյ, որ չյարմարի: Ըստ պայծառ տեսութեան գործոց՝ արծաթոյ նմանեալք: Ըստ անխարդախ մաքրութեան՝ օդոյ. ըստ պնդութեան 'ի միշտ՝ երկաթոյ: Ըղձալիք և ախորժելիք տեսողաց՝ ըստ նմանութեան լուսոյ:

21. 'Ի Բնաւթէ անօփուէր: այլ. Բնաւթէ: 'Ի նմանէ՝ որ ինքն բնութք աննուազելի լոյս է, դուք ևս կարգեցայք լոյս միշտ պայծառ՝ առանց մթանալոյ ծագել ընդ աշխարհ: Նա որ զանձնէ ասաց. * Ես լոյս յաշխարհ եկի ||, (Յոհ. ժբ. 46.) Նոյն և առ ձեզ ասաց. * Դուք էք լոյս աշխարհի ||: (Մատթ. Ե. 14:)

22. Գոյութէ Էրէնի ... սահմանեցաւ: այլ. Գոյութէ ... պահպանեցաւ: Իսկ զասել՝ 'Ի Յոհ, փարիզեան օրինակն առանց պատուի և երկարագրէ, 'ի յէ. որպէս թէ նշանակել 'ի յեակ, 'ի գոյ. այսինքն նորոգութիւն երկնի և երկրի ձեօք սահմանեցաւ 'ի լինել: Որպէս ասէ՝ նախկին գոյանալ երկնի և երկրի 'ի լուսոյ սկսաւ, ասելով Արարչին, եղիցի լոյս. նոյնպէս նորս այս երկին և երկիր եկեղեցւոյ ձեւք սահմանեցաւ լինել, ասելովն Տն, Դուք էք լոյս աշխարհի:

23. Ընդմիջեալ 'ի յամաց: Տեղիս վասն ոլորուածոյ շարադրութեանն մնայր ունի. թէպէտ և զխոստութեան բանիցն չէ զանխուլ. զի ցուցանել կամի թէ լուսաւորքն արարեալք 'ի չորրորդ աւուր՝ զխորհուրդ առաքելական պաշտաման գծագրեն: Արդ՝ զչորրորդ օրն ասէ՝ ընդմի-

ընու 'ի յանձոյ, այսինքն զատեալ, ոչ համարեալ 'ի յամ կամ 'ի տարի. վասն զի ամ կամ տարի հաշուի ամփոփեալ պարագայութիւն արեգա-կան և լուսնոյ. իսկ սոքա 'ի չորրորդ աւուրն ստեղծման զատուցին, չև ևս շրջագայեալք. որով այն օր միայն առաջոյ աւուրոյ : Կմ° դարձեալ, ամ իմանալով զքաղաքականն, այն չորրորդ օր, որպէս և այլ վեցքն՝ զատուցեալ են 'ի տարւոյ. վասն զի Ադամ սկսաւ համարել զամս 'ի ստեղծմանէ իւրմէ : Իսկ փառանօքն ասէ զօրն չորրորդ, իբրև զի չորրորդ նիւթ կամ կարգ արարածոց գոյացաւ յայն օր. 'ի նախնումն՝ երկին և երկիր. յերկրորդումն՝ որոշումն ջրոց. յերրորդումն՝ ցամաքն և բուսա-կանք, և 'ի չորրորդն՝ լուսաւորք : Եւ ասէ օր պահպանութե. այսինքն զդաւանութիւն, երկիւղածութե, կամ զխտրութիւն մարդկան. զի ամք և ամիսք և ժամանակք չափին 'ի լուսաւորացն զդաւանելոյ քննողութե, որով և պաշտամունքն քաղաքական և եկեղեցական կարգաց ամենա-զօրութիւն : Եւ ահա ասէ՝ յայս 'ի չորրորդ օր ստեղծեալ հակայրնթաց և լուսաւորին արեւու, ըմբռնեցութիւն լուսնի, և աստեղացն պարոյք, թէև անդ գայք՝ բայց իբր կենդանիք լաւ չափելոյ կանոն արարչին անմոլար ընթացիւք բարեզարդեն զարարածքս նիւթականս՝ 'ի նշանակ ձեռուամբ խորհրդոյ :

24. Լծակցութիւն ընկերին լուսնոյ. անդրադարձեալ : միւ. Լծակցութիւն ընդ ընկերին լուսնոյ անդրադարձեալ : ... առփեղացն պարագրութիւն : Այսպէս ձեռ. այլ տպ. պարագայութիւն :

25. Քանզի ցերեկահակ : Այսպէս այլ : իսկ միւ. ցերեկադահնի, ան-յայտ. զոր այլ տպագիրք արարեալ են Ներսէսի : ... կանխատրոշմեցաւ, այսպէս ձեռ. իսկ այլ տպ. կանխատրոշմեցան : Ընտրեցաք դնել ցերե-դահնի, իբր ակնարկումն ունել 'ի բանն Յոբայ. (լը. 7.) * Յորժամ եղեն աստեղք ծերբ||. ուր օրինակք այդ առնեն լինել ցերե. այսինքն յղուեալք, ափսեալք ընդ երեսս երկնից : Եւ իմաստքն լինին. լուսա-ւորքն՝ ցրուեալ պահակք աշխարհի, և պահպանիչք, և կանոնք ուղ-ղութե ժամանակաց, և քաղաքական վարմանց՝ 'ի սկզբանէ տուան 'ի ցոյցս ձեռուամբ պաշտաման յուղղութե կրօնից : Քանզի ո՛չ որպէս յայլ աւուրս՝ անասունք և ձկունք, բոյսք և ծառք՝ ուտելիք և ազականե-լիք՝ գոյացան յայսմ աւուր չորրորդի, այլ երկնային զարդք անապա-կանք, անշէջ ղամպարք՝ պարգևք բարերարութե արարչին, ամենայար-մար օրինակք առաքելականդ տեսչութե են :

26. Սերմանամփոփեալ և պտղածինն : այլ. սերմնամփոփեալ, և կամ պտղա-ծինն :

27. Երկնային զարդ : այլ. զարդ : ... վերնային ... ղամբար : այսպէս ձեռ : այլ տպ. վերնական ... լապտեր :

28. Վայելչական խորհրդոցն փեսայ : Այսպէս ձեռ : այլ տպ. Երգոյս փեսայութե :

29. Զարեաց ցամաքեցուցեալ : միւ. մաքրեալ : ... փխկոց վերընկեցեալ : այլ. փոխոյն վերծանեալ : Զոր ինչ երկնային լուսաւորքդ ներգործեն ընդ ստորնայինքս, դուք առաքելութե ևս յազգս մարդկան արարէք : Ո՛չ մի արեգակն, այլ արեգակունք բազումք ծագեցայք, բազմահոլովք, հո-լովեալք՝ շրջեալք ո՛չ ընդ մի կողմն ևեթ, ո՛չ 'ի տուէ միայն, ո՛չ ընդ ցամաք միայն, այլ անդադար շուրջ առեալ յերկրէ յերկիր, զտիւ և զգիշեր, ընդ ծով և ընդ ցամաք ևս :

30. Մթացելոց մօտ : ... ծովային ծփանաց : այլ. մեղօ ... ծփմանց :

31. Պայծառափայլ լուսաւոր : ... Եւթնաշողեան : այլ. պայծառ ... եւթնաշողեան :

32. Շանթ կիզանող : Դուք զօրացայք ո՛չ միայն արեգականպէս ցա-

38. Մխիթան բնութէ ։ այլ. մխիթան ։ ... Եղանչոց. այսպէս համաձայն Ձռ. փր. այլ. և է ածանց յարմատ անուանեն՝ եղ, նման այլոցն՝ է, կով, գոյ, գոյով. ուստի և եղով նշանակէ՝ եղեալ, եղական ։ Առանց խորհելոյ զազգս և զկիճանկս մարդկան, հայեցեալ ձեր 'ի համակցորդութեն մարդկան՝ իբր 'ի պատկեր Այ, և կարօտ փրկութեն, առ ամենեսին զսէրն տարածանէիք. մինչև մի աղք առնէիք զհամայնս ։

39. Զմարդկայինն որպէս ։ Ձռ. որպէս ։ փր. ունէր ։ Դուք իբրև առնելք՝ ուրեք ընկերութեն, և ուրեք միայնակք, բայց միշտ միախորհեք լծակիցք 'ի նոյն քարոզութեն, ուղիղք և հանդարտք, խմաստութեն հերկագործեցէք զանդաստանս սրտից կամ ոգւոց մարդկան. 'Ի գործի յետոյ, ունելով գործի բերելոյ զկարծրութեն սրտից կամ զմոլախտս անտից՝ զգործի խաչի, զքարոզութեն խաչին Քնի ։

40. 'Ի զարմանոց ազգէսէ յերամ ամէաբեոց ։ Այս չէք 'ի Ձռ. գոանոր եբեր եբեր. այսպէս փր. Ձռ. իսկ այլ. գոանոր եբեր ։ ... 'Ի յոռեկն յետ. այսպէս առաւել փր. Ձռ. ։ այլ առք. յոռեկաւ 'ի յետ ։ Զծովն աղմքի՝ որպէս սրտի ողոմն 'ի տաճարին, առնու յարացոյց աւազանին մկրտութեն. և զերկնաստան եղինս՝ յորոց վերայ հանգուցեալ էր ծովն, յօրինակ երկոտասան առաքելոց ։ Այն եղինք ձուլեալք 'ի պղնձոյ, անդրիագործ, իբրև անդրի կամ արձան կենդանի գործեալք արհեստիւ, երեք երեք թուով հայէին ընդ չորս կողմն՝ ընդ հիւսիս, և ընդ ծով, այսինքն ընդ հարաւ, ընդ արևելս և ընդ արևմուտս. որով և խոյանէր, այսինքն քառաձև զրէք զետեղեալ կային. և յուս իւրեանց բարձեալ ունէին զչուր, զծովն կամ զաւազանն լցեալ ջրով առ 'ի մաքրութիւն աղտեղութեց ։ Եւ ահա այսոքիկ զձեր կերպարան նմանութեն 'ի դէմս բերեն առնէ, զի և դուք ուսով հաւատոց իբր 'ի պարանոցի կրելով զմկրտութեն աւազան, զխոնարհ նկատէիք ընդ չորս ծագս տիեզերաց, իբրև 'ի գաւթի եկեղեցւոյ կացեալք, եկեղեցական խորհրդածութեն սրբելով զջուր մկրտութեան 'ի պատճառս նորոգելոյ զոգիս մարդկան ։ Այս են մեկնիս խմաստք անզոյս, որ մթին ունի զշարածն ։

41. Արհեստակիտածս ։ փր. արհեստակիտածս ։ ... զկերպարան յերոյ ։ այլ. զկերպարանի. Ձռ. զկերպարանակի յերոյ ։ ... 'Ի գատեբ ծոցոյ ։ այլ. ծոց ։ ... զմկրտութեն ջուր որբեկով ։ այլ. բերեկով ։

42. Զանեբետյն մոացն ։ Շրջուն կարգութիւն բանիս այսպէս պարզի. Մկրտութեն արդարագործեցէք, մաքրեցէք զանեբելոյթ ծածուկս մտաց կիմ հոգւոյ. այս է՝ զապաշաւ թողութի որովայնից զաստճարեղինացն մատուցելոց կամ զոհելոց 'ի բաց մաքրելով. որ, որովայնն է նմանութեն մկրտութեն հոգւոյ. և այնու սուրբ հոգւոյ օրինակաւն 'ի նորա խորհուրդ կամ անսութեն մատուցէք զհիննս ։ Ապաշաւ զենեալ անասնոցն՝ օրինակ մեղացն. և որովայն նոցա՝ նշանակ հոգւոց մերոց. անդ ջրով մաքրեալք աղտեղութիւնքն, և սառ մկրտութեն մեղքն ։ Այսպէս ահա 'ի ձեռն պատկանագրի նշանակ խորհրդոյ հնոյն՝ ով ծածկեալք, խորհուրդ, զօրութիւնք, միանգամայն և հանդարտք՝ ըստ նմանութեն բարուց եղին ։ Աստանօր աւարտի նմանակերութի սողոմոնեան ծովուն և եզանցն, և բանն՝ խորհուրդ 'ի նոյնս յարմարի, և ոչ 'ի յաջորդ եղջերաց, որ այլ զլուխ է բանի ։

43. Օչ ... զարմ ։ Եղջերութք՝ որք բնութեամբ թշնամիք են օձից, ցրուեալք 'ի լերինս և յանապատս, զան ժողովին մերթ ընդ մերթ 'ի գետաեզերս կամ 'ի ջրհեղեղս առ 'ի բժշկել զծարաւ իւրեանց ։ Նոքա բնական ազդմամբ զան միաբան և սաստ ցրուեն. իսկ դուք աստ՝ յազդմանէ և 'ի կարգաւորելոյ Հոգւոյն սրբոյ մերթ ժողովէիք, մերթ բաժանեալ գնայիք յերկրաքանչիւր մի ձանկ քարոզութեն աւետարանին. որով կատարեցաւ գուշակութի եսայեայ. (Լէ. 15, 16. 17.) * Անդ պատահեցին միմեանց

կատարեալն Պօղոս ծանուցանէ և պատուեցաւ 'ի բարբարոսաց անտի՝ իբրև իշխեցող օձից և ախտից: Իսկ զՄելիտինէ որ է Մալթա, կոչել Բարբարոսական կղզեակ առաջին, զի ըստ գրոցն է առաջին ծայր երկրին բարբարոսաց. և զի յայնմ մասին աշխարհի առաջին մկրտեալ ցաւ լսել զքարոզութիւն Պօղոսի, և զչար առնուլ զօրութեան աւետարանին:

53. Քանողի իեր ծածիլեան: միր. փան իեր. որ զբաղդատական մտաս ածնարկէ. որպէս թէ առաւել հրաշալի ցուցաւ Քն այնու համարձակ իշխանութբ Պօղոսի 'ի սատակել զիժն, քան որ ընդ վարագուրաւ բանին յովկայ ասացեալ յաղթութբ են: ... 'ի յաստըփատմ ըրատն: միր. 'ի յատարատմ: Ճռ. 'ի յօրտն ... գլխատորեալ. միր. գլխատորել: ... կործ, րուլն. Ճռ. կործրութիւն: ... ըմէրանեցաւ. միր. ըմէրեցաւ: Յաղորդբանիցս հայլն 'ի խորհրդական առակագրութիւնն խօսեցեալ 'ի Տնէ առ Յովբ յաղագս լևիաթանի իշխանին ծովու. 'ի գլ. խ. խա. և ըստ երկուս յեղանակս ունի զյարմարութիւն իմաստիցն: Մի, զյաղթութիւն Յովբայ խորհրդաբանելով 'ի վերայ սատանայի. յորմէ մնայ իմաստասիրել թէ ևս առաւել զնոյն յաղթութիւն տարաւ Պօղոս և զործակիցք իւր: Երկրորդ, զբովանդակ առակագրութիւն յարմարելով 'ի յաղթութիւն Առաքելոցն: Ըստ առաջնոյն իմանի. զոր օրինակ խորհրդական բանն ընդ վարագուրաւ ծովային գազանին ասացեալ առ Յովբ՝ յետ կատարման կամ անցանելոյ ընդ արձակ և դժուարամարտնչելի ասպարէզ փորձութեանցն և վշտաց, ցուցանէ 'ի գլուխ տարեալ զյաղթութիւն, և թէ յայնժամ ծանուցաւ, զի մնոսփ ստոփլունն, անընկճելի խստութիւն և կարծրութիւն սատանայի. որ անգծենլի էր. որպէս և ասի անդ. (խա. 15.) Միրտ նորա սալացեալ իբրև զվէմ. իբրև զսալդարբնաց անշարժ. ոչ առնանեն զէնք և նիզակք. ոչ խոցոտէ զնա աղեղն պղնձի. են: Ահա այսպիսի կարծրութիւն, որ արդարև սնբրալի ն- անըմբերելի, այսինքն նոր և անսովոր, և անհանդուրժելի, կակղացաւ թուլացաւ 'ի համբերութենէ երջանկին. և ինքն սատանայ յաղթ վանեալ, տարամերժեալ զգլխովին 'ի բնակութենէ կամ 'ի կենակցութենէ մարդկան, իբրև պատժապարտ ըմբերանեցաւ, պախուց եդեալ պզակով նորա, և գանդաղանաւանդ ընդ կզակս նորա, (խ. 20. 21:) 'ի յանդիմանել զնա Տն. * Եւ դու տարապարտ խօսեցար կորուսանել զնա նր ||: (բ. 3:) Արդ՝ եթէ 'ի հանդէս երջանկին Յովբայ այսպէս յաղթահարեցաւ սատանայ, ոչ ... սուրբն Պօղոսի գործակցօք են:

Իսկ ըստ երկրորդ եղանակին՝ առանց հայելոյ յանցան Յովբայ, իմանի առել. առաքելականն իշխանութեն 'ի նուաճել զսատանայ ցուցեալ իսկ է յառակաւոր բանին ասացեալ յաղագս բռնութեան սատանայի ընդ վարագուրաւ ծովային գազանին. ուր յետ նկարագրելոյ զանհնարին դժնդակութիւն նորա՝ ասի եղեալ խաղալիկ հրեշտակաց Այ. այսինքն առաքելոց են:

54. Իտրոմ համակրծն գործակցօք: Զօրանալն սիրոյն Պօղոսի 'ի նաւակոծութեան առ Մելիտինէաւ, և սատակել զիժն ժանտաթոյն, տուապատկեր նմանատիպ զգալի, թէ նմանապար ինքն համամիտ գործակցօք՝ որպէս թէ 'ի միում նաւի կոխելով զաշխարհածուփ ալիս մոլորութեան յուղեալս յանդնդային վիշապէն, սակաւ գնդաւ ընտրելոցն զնման յաղթութիւն 'ի գլուխ տարաւ՝ զասացեալն յառակաւոր բանին Յովբայ. որով զգլուխ մոլորեցուցիչ բանսարկուին՝ հանդերձ համայն զգայութեամբք, և ... գործարանաւ որոգայթադիր խորհրդոց անուղղայ կամացն՝ իբրև յարմարոց ուսոյն թիկանցն հատեալ կորեցին, զի մի՛ լիցի վտանգ դարձեալ առաջնուոյն: Զայսպիսի իմաստս ընդարձակէ 'ի յաջորդսն:

Ջմահացուս Եղիցիս. Ձռ. զմահկանացուս Եղիցիս: զմահացուցիչ թիւնս սա-տանայի ընդէմ ցամաքեցոյց զօրութք կենարար խաչին: Արդարև այս անցք՝ որ 'ի Մելիտինեայ նաւահանգստեան կատարեցան, եղեն ճշգրտա-տիպ յայտնատեսիլ պատկեր՝ թէ զիարդ առաքելականն իշխանութեան խոր-տակէ 'ի դերև հանէ զամենայն զօրութեան սատանայի: Սա հնարէր ամե-նայնիւ խափանել զգնալ առաքելոյն 'ի Հռովմ, զի մի անտանօր եւս հրա-չակելի առնիցէ զաւետարանն, որպէս և առ Թեսաղոնիկեցւոցն ասէ: (Ա. Թես. Բ. 18:) Ընդդէմ խրատու առաքելոյն ստիպեաց զնաւա-պետն առնել ճանապարհ 'ի ձմեռնամիջի առ 'ի դնելոյ զնա 'ի վտանգ. մոլորեցոյց զճանապարհն, ամբոխեաց զերկին հողմովք և մթագին ամ-պովք. եռացոյց զանդունդս ծովուն զաւուրս բազումս. 'ի խորտակումն արկեալ զնաւն՝ գրգռեաց զզօրականն սպանանել զկապեալսն, զի ընդ-նոսա բարձցի և Պօղոս. գրգռեաց զարձակել և զնաւավարսն ելանել փախ-չել զի ուղևորքն անպատսպարանք կորիցեն. և յայտնի ոչինչ շա-հեալ, 'ի ցամաքի անդ զարթոյց զիժն՝ թունաւորել զառաքեալն: Իսկ զի՞նչ յայսքան վտանգս կապեալն Պօղոս: Նա արձակ անարգել հոգ-ւով և սրտիւ և բերանով, իբրև հասարակաց հայր խնամոտ՝ կայր 'ի մէջ երկերիւրոց և աւելի արանց անխռով, անսասան, ծաղր արարեալ զպարկեցաւոյ ալեօքն յուզելովք յանդնդային վիշապէն. ամենեցուն քա-ջալէր և խրատտու, և կենաց նոցա ապրեցուցիչ առաւել իւրովքն ա-ղօթիւք և աներկիւղութք, քան թէ 'ի տախտակն և 'ի լող. խարոյկ առնէ 'ի զարմանս ուղևորացն նեղելոց 'ի ցրտոյ և յանձրևէ. և զնոյն տայ յայրեցումն իժին, և որ 'ի նմա բունեալն սատանայի: Այսպէս 'ի ծովու կոխեաց զվիշապն. 'ի ցամաքի առ ոտն եհար զամենայն չարեացա-պարան սատանայ՝ բժշկութք ախտացելոց անձանց, և սերմանացանու-թեամբ աւետարանին. Ինքն ապրեցաւ, զայլս բազումս ապրեցոյց. յաղթութիւն հարաւ սատանայ՝ ունայն գտեալ 'ի խորհրդոց իւրոց. մինչ զի հենդանելով իմն զնովաւ Տէրն ինքնին, ասէր առ Պօղոս 'ի տեսլեան. * Կայսեր եւս քեզ պարտ է յանդիման լինել. || (Իէ. 24:) Իբր ասել, թէպէտև հնարի սատանայ արգելուլ զընթացս քո: Արդ՝ այսպէս առհա-սարակ զկանխասաց գիրն աւետարանին՝ որ յառակաւոր բանն Յովբայ, և 'ի սաղմոսն և 'ի մարգարէս, ճշմարտաբար արդիւնաւորեցին. Իրօք և արդեամբք կատարեցին Պօղոս և գործակիցք իւր, առ ոտն կոխելով զօձս և զկա-րիճս՝ զմոլորեցուցիչս, և զհեստօղս նոցա, ընդ զօրացելովն 'ի չարին. (Ձռ. ընդ չարին.) ընդ զօրացելոյն 'ի չարն՝ ընդ մահու և ընդ բե-լիարայ:

62. Կցորդակից նորին: Կցորդակից Պօղոսի յամենայն առաքելական մեծագործութիս, մանաւանդ թէ առաջին քան զնա՝ է Կեփաս Պե-տրոս. ոչ բնաւորն, նախկին 'ի թիւ Առաքելոցն, և նախամեծար, գերա-պատուեալ քան զամենեսին. ըստ անուանն վէմ հաստատեալ յանկեան եկեղեցւոյ ըստ Քնի անուանակոչութեան. և արժանն արկեալ 'ի հիմն ե-կեղեցւոյ: Քարն անուանի, անուանեալ, ծանուցեալ, և յարմարագրեալ եօթնաբնեան դաւանութէ. ըստ ոմանց՝ դաւանութեան Քերթողս, որ յեօթն տասնից բաղկանայ: Կամ, դաւանութեան՝ որ յեօթն դարս աշխարհի միշտ կալեալ անայլայլելի. ըստ չափոյ խորհրդականն, ըստ թուոյ ժամա-նակաց այսր անցաւոր աշխարհի. յորում 'ի սկզբանէ անտի մինչև 'ի լրումն կամ 'ի կատարած՝ նոյն դաւանութեան պահեալ լուելեայն կամ յայտնի:

63. Խորհրդականն ամանակի: մր. խորհրդական նամակի. Ձռ. խորհրդա-կան նմանակի:

64. Հոգւոյն իմաստից: մր. 'Ի հոգւոյն: . . . Բանին անեղին: Ձռ. Բա-

71. Բարգաւաճական բարեբարոյութիւն : այսպէս վեր. Ձռ. իսկ այլ. բարեբարոյական բարգաւաճութիւն : . . . Ընդդէմ ննջեցելոց : Ձռ. ննջեցելոյ : . . . Երեբառաջեալ ալոց : այսպէս վեր. Ձռ. իսկ այլ. Երերառաջեղծ ... Նախածին ծոցոյ : այլ. Նախադրեալ. Ձռ. Նախնեացն : . . . Ձօրն որոշեալն : վեր. ուժովն : . . . Ուերան ջերոյ : Ձռ. ուերանոյ : Այսպէս ասէ՝ յաճախ գովասանութեամբ յամենայն հաւատացելոց պատուեալք էք առնական համբերութեանց. զի թէ և մարմնոյ աչօք ննջեցիք 'ի հող մահու, որ նախածին որովայն է հողազանգուած ազգիս. ուստի ամենայնքս ծնանիմք իբրև յարգանդէ. և որ դարձեալ զամենայնսն յինքն ընդունէ իբրու գերեզման, սակայն կենդանի քարոզութեն ձերոյ ստէպանք անապառ և անթիւ աշխարհս ամ բարոյ բուսուցանեն մինչև ցայսօր, ըստ Տն բանի՝ պտղաբերք եղեալք, և պտուղ ձեր կացցէ միշտ : ( Յով. ԺԵ. 16 : ) Վասն այսորիկ թէպէտև մահկանացուք էք, և մարմնաւորք, ստեղծագործեալք, և ժամանակաւ սկսեալք. սակայն ըստ արդեանց քարոզութեն ձերոյ, այլև գրովք ձերովք և աւանդութեամբք՝ միշտ կենդանի էք յեկեղեցւոջ. անմահք, անեղծանելիք, մշտնջենաւորք : Այսպէս ասելն զառաքեալսն՝ կենդանիս, անմահս են, ասա 'ի կարգի բանիցս իմանի՝ որդեանքք գործոցն առ եկեղեցի. ապա թէ ոչ՝ ըստ այլ մտաց եւս՝ կենդանի և անմահ են հոգւով և 'ի փառս երանութեն, և յուսով անեղծ յարութեան :

72. Ցըն փոյ ն հոգւոյ Նորա : Այսպէս վեր. Ձռ. իսկ այլ. և այլ ազգ. ն հօր. Առաքեալք իբրև ընտրեալք և զօրացեալք 'ի գործ պաշտամանն՝ միօրինակ են և ասին՝ առաքեալք երից անձանց եւս. բայց ըստ մասնաւոր կարգմանն՝ նոքա որք անմիջաբար ընտրեցան և կարգեցան 'ի Քէ, կոչին Առաքեալք Քի, որպէս երկոտասանքն, այլև սբն Պօղոս : Իսկ որք 'ի մասնաւոր որոշմանէ ինչ ԱՅ ընտրին, կոչին յատուկ Առաքեալք Հոգւոյն սբյ. որպէս Բառնաբաս և Սաւղոս յԱնտոք : ( Գործ. ԺԳ. 2 : ) Նոյնպէս որք յեկեղեցւոյ ընտրին առանձինն, կոչին Առաքեալք եկեղեցւոյ : Բայց յանուանէ Առաքեալ Հօր կոչել՝ ոչ այլուրեք անկ է, այլ Քի յատուկ :

73. Հանգունօրինակ Երևելոյն : այլ. Երևեցելոյն : Քի երևեցելոյն մարմնով՝ դուք ամենայնիւ համաձայն էք, և վարուք և կենցաղավարութեամբ. մինչ զի տեսօղք ձեր անդէն և անդ իմանային՝ թէ աշակերտ էք Քի, վարժեալք ընդ ձեռամբ նորա. ուստի թէև ծածկեցաւ Քս վերանալովն յերկինս, բայց դուք երևեցուցանէիք զնա յերկրի : Եւ սովին իսկ՝ Հօրն ընդ Միածնին փառք էք. ( ըստ Բ. կորն. Ը. 25. ) ձերովք առաքինութեամբք և վարուք մեծացուցանելով զփառս Քի և ԱՅ Հօր : Այլև աշակերտք. առ Քս, ահա յայտնի է, իսկ Հօր եւս կոչել աշակերտ, այս՝ նոր է. բայց զհետ գայ աշակերտութենն Քի, որպէս և ասէր. * Զամենայն զոր լուայ 'ի Հօրէ իմմէ, ծանուցի ձեզ : ‖ Եւ զերկոսին եւս յայտ առնէ միւս ասացեալն. * Յայսմիկ փառաւորեցաւ Հայր իմ, զի պտուղ յոյժ բերիցէք, և եղիջիք իմ աշակերտք : ‖ ( Յովհ. ԺԵ. 8. 15 : )

74. Ազգ+ ն ընփանի+ : Դուք ազգակիցք էք անժամանակ էին ԱՅ. որպէս ասէ, Պօղոս, յաւէժնէ յիմաստասիրէն Արատայ առեալ, ոմանց. աթենացւոցն իմաստասիրաց, պատճառաբանելովն յիշեցոյց թէ մարդ բանաւոր՝ գոլով ազգակից ԱՅ, անմարթ է քարանց և փայտից նմանեցուցանել զԱԾ : ( գործ. ԺԷ. 28 : ) Եթէ զայս բան առնուցումք ըստ իմացական բնութեան ազգակից լինելոյ ԱՅ, այդ ոչ յատուկ գերազանցութիւն ինչ է Առաքելոց. վասն որոյ թուի՝ ձեռնարկութիւն ինչ դնել լռելեայն, այսինքն. եթէ մարդ ըստ բանաւոր գոլոյն առ ազգ-

ԱՅ, դուք ևս առաւել ներքին ընտանութիւն աղգակցեալ ԱՅ էք :

75. Ծուղոյ սպորիդէջէյըյն : Ճռ. սպորիդէջէյըյն : այսինքն, առաքեալք 'ի սփռիջեցելոյն 'ի ծածուկ ծոցոյ Հօրն :

76. 'Ի ֆէնղ ռուէփարանիւփ : Զերով կարգաւորութիւն և հրամանաւ առաքելապանագիրք եղեն 'ի Թուղթ աշակերտացն, Մարկոս, աշակերտ մեծին Պետրոսի, անուանեալն պապուէր. այսպէս գրեն միաբան փր. պլ. Ճռ. բայց վրիպակ է փոխանակ գրելոյ՝ պապուար : Այլև Ղուկաս ասորի ազգաւ յանտիոք ծնեալ, արհեստիւ բժիշկ, զոր առաւել 'ի գործ արկ առ ախտացեալս հոգւով, ըստ ոմանց՝ յեւթանասնից անտի, և աշա յարեալ 'ի սէրն Պօղոս. որոյ հրամանաւ կարծի գրեալ զաւետարանն. և սա եղև մանրամասն պատմող համբարձման Քսի, 'ի գործս առաքելոցն : Անուանակէրն յորուբէ, որոյ անուն Թարգմանի՝ յարութիւն :

77. Բարէառոյ մէղու : Խորին և անլուր բարբառք ազգաց՝ լսելի եղեն 'ի բերանոց ձերոց. զանծանօթ ձայնս օտար ազգաց յայտնեցիք. թարգմանեցիք. զգաղտնի բանս կամ առակս կամ խորհուրդս բացեալ պարզեցիք : Այսու զերրեակ պարգևս հոգւոյն 'ի Թիւ արկանէ, զլեզուախօսութիւն, զթարգմանութիւն և զմարգարէութիւն :

78. 'Ի պափշաճատր պարյուածս : այլ. պափկատար : Առատացեալք և յաջողեալք միշտ 'ի զօրութիւնս նշանաց, 'ի ուսուցութիւնս հաւատացելոց, 'ի պատշաճ պատասխանիս յատեանս իշխանաց. յաջողուածս երկու առնելուրոց. միապէս զօրաւորք 'ի գործել զերկուսն ևս, թէ յեղծանել կամ մահու պատուհասել, որպէս զսափիրա կինն, և թէ 'ի նորոգել. կենդանացուցանել, իբր փաբինոյն : փր. որդեւ :

79. Բանէրէգէս անուն : Յովհաննէս և Յակոբոս եղբարք զեբեդեանքն՝ կոչեցան 'ի Քէ բանէրէգէս, թարգմանեալ՝ որդիք որոտման. բայց ըստ արդեանց գործոցն՝ նոյն անուն պատշաճեցաւ և այլոց առաքելոց. և ոչ ուսանեմք յաւետարանի թէ զբանէրէգէսն իբր մականուն անուն 'ի կիր առնուին 'ի վերայ զեբեդեանց յատուկ :

80. Նշողիտ խայլմամ : այլ. խայլման : 'Ի Ճրագէն կենաց 'ի Քէ՝ նշոյլս միշտ ունելով ձեր, անմոլար ընթացիւք վաստակէիք յաւետարանին :

81. Աչղաղն աղուէ : 'Ի հզօր աջոյն Քսի օրհնեցեալք, 'ի նորոգումէն նշանակ, 'ի ցոյցս կամ 'ի հաստատութիւն նորոգման աշխարհի. զի այն աջ որ հաստատեաց զաշխարհ, նոյն օրհնեաց զձեզ : Այլ տպ. նորոգման նշանակն. բայց փր. պլ. Ճռ. 'ի նորոգումէն. յորս և գրի. նշանակն, բայց վրիպակ թուի :

82. Արուորագոյն : Ճռ. արխագոյն .... երջնայն զօրան : այլ. զօրութէ .... մապ հեպոյ չէր : այլ. մապ հեպոյ տիմոյ չէր : ... 'ի ջերջանիկ վայրէյն սահման : Ճռ. վարոյն : Ընթացք կամ հետք յամենայն 'ի վաստակս ձեր՝ ուղղեալ և կարգեալ էին յերկինս, 'ի մտանել 'ի փառս երջանիկ վայրացն. ոչինչ հոգայիք զաշխարհէ. ոչ մի իրիք երկրաւորաց ակնունէիք :

83. Հարանէկան պարոյն : Այսպէս ձեռ : այլ տպ. հարանեայ : Ուրախութիւն հարսանեաց Գառինն՝ որ 'ի խորան կենդանեացն լինելի, դուք պարակիցք էք, մանաւանդ թէ իբրև մանկունք առագաստի. յորոյ օրինակ յորժամ 'ի ուսուցանէն Յովհաննէս 'ի կոչ հարսանեաց գառինն կամէր երկիր պագանել միոյ յերեցանցն, հրաժարեցոյց նա՝ ծառայակից կոչելով : ( Յայտն. ԺԹ. 9. 10 : )

84. Ուշմարթագուտ : փր. մարփնգուտ : ... Հաստուածքս՝ յաղթողական և ոչ պարփէլի. երջանկենոյագ և ոչ երկրանուանդ, պակասին 'ի փր. օրին :

85. 'Ի սփուրայնոց համագումենից : Գրչագիր օրինակք միապէս ունին զզատուգ համագումենից . զոր իբր անծանօթ 'ի բաց թողեալ են տպագիրք : Թուի ածանց . յարմատոյ գումար բառին . այսինքն գումար , գումար . որպէս և բառքն՝ փէղ , փէղար . տրդ , տրդար . յորմէ համագումեան նշանակէ՝ համախումբ , նմանաժողով . և իմաստքն լինին : Թէպէտև դուք բնութե արդարև մարդիկ էք 'ի նմանակից ստորնականացս , սակայն ըստ անախտութե համագումենից , իսկապէս հրեշտակք էք , բոցաղէղ , հեռի կացեալք օտարացեալք յերկրաւոր կրից ախտականաց : Ծն . համագումեան , այսինքն հաւասար հրեշտակաց անախտակիր էք :

86. Տարափրոհէլ տա 'ի ժժեանց : այսպէս փր . Ծն . իսկ այլ . և այլ տպ . տաէ 'ի ժժեանց . Որովհետև ըստ առաքելական բանին ոչ էք դուք մարմնով . այլ հոգւով , և որոշեալն յերերաց մարդ շնչաւոր , և մարդ անձնաւոր կամ հոգևոր . ( Հռովմ . Ը . 8 : Ա . Կոր . Բ . 14 . ) յայտ է տալ՝ զի ընտրական ձեր կենցաղդ՝ ոչ ըստ մարմնաւորացս է , քան թէ ըստ հոգեղէն հրեշտակաց :

87. Կէրդափարապ տըլադան : Դուք այնոքիկ նշանագիրքն էք , այսինքն օրինակեալք 'ի կենդանակերպսն , որք ըստ կերպից կերպից այլազգամ կամ այլասեռք են 'ի միմեանց , ոմն իբր խոյ , ոմն իբրև ցուլ , ոմն իբրև առիւծ են , սակայն են ժամանս չարէ . միով թւով և համեմատութե կարգեալ են , Էրկանէ հնգեոյն և Էրկուց ձարողացն , այս է՝ երկոտասան կենդանակերպիցն : և յարմարաց փարէր Էրէրէ : այսպէս յարմարաց գրեն փր . այլ . Ծն . միայն այլ . դնէ փարէրաց . իսկ այլ տպ . յարմարողաց Էրէնէ և Էրէրէ : Կենդանակերպքն անուանեալք՝ են իբր վարիչք և յարմարիչք օդային տարեր ընթացից՝ ըստ որոշ շարժութե ամաց և ամսոց , որովք ժամանակք երկրայնոցս հաստատին . ըստ ժէրեւողացն ճահագրութէ : այլ . շարագրութէ . որպէս քերդողքն կամ իմաստասէրք պատշաճ համարեալ են սահմանել զայնպիսի կենդանակերպս , և անուանս դնել աստեղացն . յորմէ բանաստեղծք հնարեալ են առասպելս զանազանս : Բայց սակայն իրացն հաւաստութե 'ի ձեզ յերկոտասանսդ արդարացեալ է . քանզի արեգակն ճշմարիտ Քն զձեզ որոշեալդ քաղաքաւ և արտաքոյ և բարոյիւք՝ ընտրեաց և 'ի մի գունդ ժողովեաց , և ձեօք վարէ և յարմարէ զամենայն կարգս եկեղեցւոյ : Այլ և անուանակոչութիւն նոցա 'ի ձեզ ճշմարտեալ է . գոլով 'ի նոցանէ ոմն՝ նախերական , պատարագելի՝ որպէս խոյն . ոմն գործնական , վաստակաւոր , որպէս ցուլ կամ եզն լծակից կասող . և ոմն արտայական , որպէս առիւծ հզօր և դատիչ մարդկան : Ըստ այսմ և այլոց մնացելոցն յարմարելով 'ի ձեզ՝ մինչև յերկոտասաներորդն :

88. Իէր զառարաէ : Այլ տպագիրք խառնակ դնեն 'ի տեղւոջս . Իէրն զառարաէ լծակից արտայական կասող ցուլենոյ . յղմէշամարդս մարդադաշանէէ Իէրն առիւծ հզօր :

89. Երկոփասան և տրոծեան : Յերկոտասան մասն բաժանել զերկիր՝ եդեալ է ըստ աշխարհագրաց այնր ժամանակի , զոր և ոմանք յարմարեն ըստ այլ և այլ գաւառաց և ազգաց : Բայց ընտրելի ևս է իմանալ ԺԲ բաժանման աստեղաբաշխից և երկրաչափից . որք զերկնային հասարակածն բաժանելով յերկոտասան հաւասար մասունս , զնոյն չափ գծագրեն և յերկրագնտոյս : . . . Ծանիր , զի յաջորդ օրինակքդ 'ի խորհուրդ երկոտասան թուոյն՝ զբառն Երկոփասան ունէին յաւարտ իւրաքանչիւր հատուածոյ՝ ըստ այլ տպագրաց , դնելով Տեառն առաքելոց երկոտասան . . . Թիւք անդամոց երկոտասան . . . կայլակք աղբերաց երկոտասան են . սակայն գրչագիրք միաբան 'ի սկիզբն իւրաքանչիւր հատուածոյ ընթեռնուն , ըստ որում և ուղղեցաք :

ւնէ ։ այս չէք 'ի փր. և Ձռ. բարձրելոյն անուամբն վկայեցան. և անձա-ռենչեան վերագրէնէ ։ այլ. վերէրգէնէ ։ անձնաւորելի անուանն պատկա-նագրեալ նոցա, կամ այնու անուամբ ներքողեալք ։ Որ այլ անզու-գական պատիւ՝ քան 'ի կոչումն սէր և երկրպագելի Երրորդութեան լի-նել Թուակից. զոր 'ի սրտի դաւանէին, և ընդ աշխարհ ամենայն քարո-զէին, զնոյն և յանուան իւրեանց բարձեալ կրէին, իբրև ընծանէ, զի ազգականիցք այ. եւն ։

96. Եւեանանեցն ձայն ։ Այսպէս տասանց նախդրի գրեն փր. Ձռ. փոխանակ՝ յեւեանանեցն ։ Իսկ 'ի գովասանութեն եւթանասնից Աշա-կերտաց դարձուցեալ աստ՝ զկարգ բանիս, անսովորելի խորհուրդ և յայնմ տեսանի ։ ֆանոյի զայոֆանեաց. այսպէս Ձռ. այլ. և տպ. իսկ փր. այոֆանեաց. Թէպէտ և 'ի վերայ այսքան բազմաթիւ ընտրելոց որ բան կարգեցէ նուէր ներբողի առնուլ մի ըստ միոջէ ։

97. Աւէպարանական պարմաբանոսեն ։ Ձռ. պարմանոսեն ։ իսկ փր. չէք ։ ... ինքէան պարմէին ։ Ձռ. ինքէանք ։ ... յոսսոյ փէոսեն ։ Ձռ. յոսսովփէ-ոսեն ։ ... անոսան ջէր ։ փր. ջէրոյ ։ Եօթանասնիցն գունդ առաքեալ 'ի քարոզութեն երկու երկու, դարձ արարեալք առ առաքիչն, յանդիմանա-կաց փն պարկէրի, զեմյանդիմանն Քնի Տն խնդութը պատմէին զզօրու-թն անուան նորա. և ահա լուան մեծագոյն յուսոյ աւետիս. խնդացէք ընդ Գրեւոյ, 'ի վերայ գրելոյ անուան ձերոյ յերկինս. ահա ինքն գրեաց, և ինքն վկայեաց, կոչեալ զնոսա ժառանգս երկնից արքայութեն ։ Եկա-ղեա չնորհնե պապարեայ. այսինքն լիացեալք, զեղեալք ։ փր. ճանն. ։ այլ. պարարէայ ։

98. Եւեանանէկի Երէակի ։ Այլալեզու ազգացն բաժանելոց յեօթա-նասուն և երկու բարբառս՝ դուք 'ի մի լեզու, 'ի մի խօս եղայք համա-հաւաքէք ։ Ձռ. հաւաքէք ։ Կարծեմ եղեն առաջնոցն՝ 'ի բաբելական խառնակութենէ անտի լեզուին առաջնոյ 'ի յայտ եկեալ եօթանասուն երկուց լեզուաց զանազանից ։ Սակայն ոչ ճշմարտեցաւ այդ 'ի վերայ մայր լեզուաց՝ որք կարի սակաւք են. իսկ եթէ յաղագս երկրորդա-կան լեզուաց խնդանայցէ ոք, յոյժ բազմաթիւ են այնոքիկ քան զեօթա-նասունսն ։ Արդ զայլատարազ խօսն զայնոսիկ 'ի մի հաւաքել, ոչ եթէ 'ի մի լեզու փոխել խնդնի, այլ թէ դուք միով լեզուաւ խօսելով եբ-րայականաւ և կամ յունականաւ, այլալեզուաց ամենեցուն լսելի լի-նէիք, հասկանալին զասացեալսն ձեր՝ որպէս թէ յիւրեանց բարբառ լի-նէր խօսեցեալ, կամ թէ ամենեքին զմի բարբառ ունէին. որպէս եղև յաւուր պենտակոստէին ։ Եւ դարձեալ, ըստ միաձայնութեն հաւատոց՝ 'ի մի լեզու, 'ի մի բան դաւանութեն ժողովեցիք զայլալեզու ազգս. ոչ-ինչ արգել կալով զանազանութեն բարբառոյ, զնոյն դաւանութեն լսելի արարիք 'ի Յոյնս և յԱսորիս, 'ի Պարսս, 'ի Հրէայս, յԵգիպտացիս, 'ի Լիւրիկեցիս. 'ի Հռովմայեցիս և 'ի Հայս ։ Սոյնպէս ըստ միութեն կամաց, յօժարելի ազգաց բաժանելոց դաւառաւ, իշխանութը, սովորութը՝ դուք եղայք շաղկապ սիրոյ. բարձիք զհակառակութեն ազգաց և զթշնամութեն, զգեստ զնոքօք արկեալ զՔնի աշակերտութեն՝ որ հաստատեալ կայ 'ի սէրն ։

99. Պռոսապէպէ վայենչլաքանէ. Ձռ. վայենչլաքան ։ ... Թոգոժուանգէ կոյսերի ։ այսպէս փր. Ձռ. իսկ այլ. կոյսերոյ ։ Քարոզութը ձերով ընդ ազգս և ընդ դաւառս համայն երկրի՝ ստանալով ժողովուրդս սեպհա-կանս, արարիք զնոսա դասս դասս. ուրեք դուք լինէիք իբր դաս կամ դասակից առ այլ գլխաւոր առաքեալս. և ուրեք դուք եղայք պարուցն դասապետք արժանաւորք. որպ Տիմոթէոս՝ որ 'ի Կորնթոս և 'ի Թեսա-ղոնիկ և յայլ կողմանս էր դասակից այլոց, կացուցաւ յԵփեսոս դասա-

պետ ։ Եւ 'ի տէրութեն եկեղեցւոյ եղեալք ըստ իւրաքանչիւր աստիճանի և վիճակի՝ ոմանք դատաւորք, ոմանք իբր կայսր գերագահ, ոմանք թագաւորք, ոմանք նախարարք ։ Բայց ամենեքին Էկէղէցիէ ընտրէլյոց. Ժողովք ընտրելոց վասն երկնից՝ և ոչ վասն երկրի ։ Կոճառոնկից, իմփակիցք, պարտակիցք դատակցութեցն Վէհից, գլխաւորաց առաքելոց, կի՞ մանաւանդ՝ վեհագունից հրեշտակաց. զի առաւել խօսի բանս անխափր թէ զառաքելոց, և եթէ զեւթանասնից ։ Կոյտ Կոյոնդ. իբր շեղջք արդեանց, կամ իբր դումար ճոխութեց ԱՅ անվատնելիք, անկողոպտելիք. որովք անմահն ԱՅ փառաւորի ։

100. Կյուրէ հանդիխի ։ Այսպէս փր. Ճռ. ։ Իսկ այլ. Կոյնուրդէ, որ և յարմարի տեղւոյս. այսինքն Ժողով կամ խումբ հանդիսի իմաստութե, հոգևորական ծծային գիտութեն առեհակալք կամ պետք ։ Կամէ ... Վէրնայնոյն ։ այլ. Կայրէ ... Վէրնայնոյն ։ Դուք աստ՝ եղեալք անվրէպ սատարք և կատարիչք կամացն և առնսուութե ԱՅ 'ի գործ փրկութեան աշխարհի. ուր և կամէր ԱՅ, յոր գործ և առաքէր, ընթանայիք յարձակէիք անդանդաղ, աներկիւղ ։

101. Շուրէ ատփէղանիրս ։ Ակնարկէ 'ի բանն (Ցայտ. ժը. 1.) *'Ի վերայ գլխոյ նորա պսակ աստեղեայ յերկոտասանից || ։ Դուք երկոտասանքդ իբրև նոյնչափ աստեղք՝ եղեալք պսակ հարսնութե եկեղեցւոյ. իբրև առիթք միջնորդք՝ քարոզութ̃ խօսեցեալք զեկեղեցի Հարսն Քնի. իսկ լուսաւոր արդութ̃ եղեալք նորա պսակ ։ Ոմանք շուրէ իմացան գգօղ հարսին զարդարեալ աստեղանիշ անկուածովք ։ Արհէսփական ջնէ ։ Առաքեալքդ կամ եօթանասունքդ՝ իւրաքանչիւր այլ և այլ վաստակօք և առաքինութ̃ք եղեալք ճարտարապործ պսակք՝ 'ի զարդ իւրաքանչիւր եկեղեցւոյ. այսպէս Պետրոս պսակ հռովմայեցւոց, Բարդուղիմէոս և Թադէոս՝ հայոց, Բառնաբաս՝ կիպրացւոց և այլք իւրաքանչիւր ։ Եթէ ժողովուրդ իւրաքանչիւր համարի պսակ իւրում առաքելոյ, զոր օրինակ կոչէ Պօղոս ինքեան պսակ զփիլիպեցիս և զթեսաղոնիկեցիս, (փիլիպ. դ. 1 ։ ա. Թեսաղ. բ. 19.) առաւել ևս ըստ անդրադարձութե՝ նոյն առաքեալ պսակ է զարդու իւրումն ժողովրդեան ։

102. Եւթանասուն Բոյսէ ։ Եօթանասնիցդ աշակերտաց խորհրդաւոր օրինակք առեալ եօթանասուն ծառք արմաւենեացն, որք 'ի նշանաւոր ցէղիմ, այսպէս այլ. Ճռ. իսկ փր. 'ի նշան անուանն. որ չյարմարի ։ Ճռ. ցողիմ ։ Ցեղիմ կամ յաղիմ Թարգմանի ևս՝ եղջերուք. և նշանաւոր անուան ունող առ՝ կամ զի եւթանասունքն զօրէն եղջերուաց ընթանային արանային ընդ ամենայն տեղիս, և կամ զի բազումք 'ի նոցանէ քարոզեցին զաւետարանն 'ի կողմանս յայնասիկ ։

103. 'Ի սոյն կարգ ։ Ճռ. 'Ի սոյն 'ի կարգի ։ ... Ճառնիս դրոնափի ։ Ճռ. դրոնագի ։ Բայց կամեցեալ աստ՝ միանգամայն գրել զամենայն յորս պատշաճական կարգութե գովասանական ճառիս, շքեղ իմն համարիմ առել՝ թէ բանն ԱՅ մարդացեալն 'ի սբյ կուսէն ոչ եթէ վայրապար էնչ, այլ մեծի գործոյ նշանակ զորբազունս դաս ձեր՝ Առաքեալս կոչեաց, ոչ ընտրելով միայն՝ այլ և գեղեցիկ թուով երկոտասանից, և եւթանասնից ճոխացուցանելով ։ Քանզի յայն երկոտասան թիւ պարունակեաց զեւթանասուն և զերկուն ։ Զսասան յեօթն բազմացոյց՝ 'ի նշանակ եօթանց յեկեղեցւն փոփոխելի դարուց. իսկ զերկուն յաւելեալ յեօթանասունն՝ 'ի նշանակ սպառնեաց և ներկայիցս են ։ Խորհրդածութե առնէ բանիւս, թէ Տէրն յետ ընտրութե երկոտասանիցն երևեցուցանելով այլևս եւթանասուն և երկուս, (Ղուկ. ժ. 13. ժա. 1.) նշանակեաց թէ տարածումն է այն թուոյ նոցա. այսինքն զնոյն զառաքեալս բազմացուցանէ եօթն ասամբք 'ի քարոզութեան եօթն

անցաւոր ժամանակաց աշխարհի, և երկու յաւելուածովն՝ կատարելով զոր ինչ յերկաքանչիւր յաւիտեանս բարութիւնքն են ։

104. 'Ի ծնողէ նոյն է ։ Բանն որ անժամանակ էութեամբ միածին 'ի հայրական ծոցոյ, եղև 'ի կուս կնոջէ յանարատ է, յատուկ միայն 'ի մօ-րէ՝ առանց կցորդութեան հօր երկրաւորի. անդրանիկ, առաջին ծնեալ, բայց և անհարազատ, առանց այլոյ եղբօր. որ է ասել՝ առաջին ծնեալ, և միակ ծնեալ ։ Աճ ըստ փէտականին, ըստ իմանալի բնութեան՝ որ մնաց անեանի, և ոչ աշաց ։ Ն. Տարք ըստ պարզութեն, ըստ անխառն, անշփոթ և Ճշմարիտ միաւորութեն ։

105. Ըստ ժամանակաց յեղյեղման շրջանուն դարուց ։ այլ. ըստ ամաց յե-ղեղման շրջանուն դարուց ։ Ճռ. ըստ ժամանակաց յեղյեղուն ըստ շրջանուն դարուց ։

106. Ջերկնաւն յեւնանաւնիցն ։ Ճռ. զերկնացն ։ ... զպատաանաւկիր ։ Այսպէս այլ. Ճռ. իսկ փր. զպատանաւնիր ։ ... զերկնեան ։ փր. զերրաւկի. Ճռ. զերրեան ։ ... զերկնաւս լուսափուլայդ ։ Այսպէս փր. որոյ ուղղական՝ լուսատուիչ. ց լուսոյ տուօղ ։ իսկ Ճռ. լուսափոլայդ ։ ... զեւորոյ ։ այսպէս փր. Ճռ. իսկ այլ. զնորոյս ։ 'Ի մէջ բերելով զայլ և այլ իրս ու-նօղս երկակի թուոյ, յայտ առնէ թէ յաւելուած երկու թուոյն՝ թէ յերկոտասանեան, և թէ յեւթանասունեան՝ զամենայն զկատարելութիս, զպիտանութեն և զխորհուրդս փակեալս յերկաւթիւ իրաց բարձեալ բե-րէր առաքելականն պաշտօն ։ Ուստի անդէակք էին և քարոզիչք ա-ռաւանկացն և ներկայիցս, երկնայնոցն և սորինայնոցս. զմարմնոյ պէտս խնամելին և զհոգւոյ. իբր երկու տախտակք օրինաց էին՝ որ 'ի տապա-նակին. իբր երկու լուսատու աչք առաջնորդք մոլորելոց. երկու լու-սաւորք երկնաւորք՝ արեգակն գնացելոցն 'ի Ճշմարտութեն, լուսին շրջե-ցելոցն 'ի մոլորութեն ։ Երկեակ գոյութեն երկնից ունակք, սատեղակա-նին նման՝ աներծք, յստակք, մաքուրք. իսկ օդայնոյն զօրէն՝ թեթևք, ներքոյ անկեալք պէսպէս պատահմանց ։ Կամ, ըստ առաջնոց ոմանց կարծելոյ՝ երկին մածուցեալ 'ի ջրոյ և յօդոյ, այսպէս առաքեալքն բաղկացեալք 'ի հիւթոյ՝ բայց գերիվերոյ երկրային բերմանց ։ Նոյնպէս եդեմայ անախտութեն հալորդք, և մերոյ երկրիս՝ վշտացն և ցաւոց. հնոյ օրինին առօղք և կատարիչք, և նորոյ աւանդութեն աշակերտք և վարդապետք ։

107. Այսփանեաց խորհրդոց ։ Ահա յայսքան խորհրդաւոր պատկե-րաց նկարագրեալք դուք, ոչ առաքեալք միայն եղայք, այլ և նահապետք, դիմագրաւք 'ի մեծամեծ գործս և 'ի վիշտս ։ Ո՛չ խոստովանօղք միայն քնի առ ժողովուրդս, այլև վկայեալք յատեանս իշխանաց ։ Ո՛չ չարչա-րեալք միայն ականց և կամակար վշտօք, այլև նահատակեալք. ժուժկա-լեալք 'ի նոյնս մինչև 'ի կատարած ։ Ոչ մաքուրք միայն՝ անպարտք յա-մենայնի, այլև մարտիրոսք, զարիւն հեղեալ վասն աւետարանին, կամ իբր յանցաւորք սպանեալք ։ Ո՛չ ընծայեալք միայն 'ի զանազան պաշ-տամունս եկեղեցւոյ, այլև նուիրեալք, յանձն առեալ զաշխատութիւն յիւրաքանչիւր պաշտաման մահու չափ ։ Ոչ մատուցեալք միայն բանի կամ թախանձանօք 'ի պաշտօն ինչ բանի, այլև յարգեալք, գովութեք հանդիսացեալք 'ի նմին ։ Ո՛չ պատուեալք միայն 'ի հաւատացելոց, այլ և պատարագեալք, պատարագաց և նուիրաց արժանի դատեալք. մինչ զի զաչս իւրեանց հանել և տալ ։ (Գաղատ. Զ. 15 ։) Այսու օրինակաւ ոչ մարմնաւոր, ըստ մարմնոյ ծախելի բնութեն ելեք յաշխար-հէ, այլ իբր խունկ ծխեալ բուրեցայք առ վերնայինսն, ըստ պօղոսի ձայնին ։ (Բ. կորն. Ե. 15 ։)

108. Զի ես ոչ ։ փր. քանզի ես ոչ ։ ... նորոյ ավէտիս ։ այլ. նորոյս ։

Դուք 'ի հրէական ժողովրդեանն թողեալ պահեցայք ընտրեալ զաւակք նորոյ սիօնի. ապա թէ ոչ՝ նման լինէր և սա ստուերականն Սինայի, լեառն ուր ստուերական օրէնք տուան. զորմէ ողբալով ասէր Եսայի, թէ ոչ թողեալ էր մեզ զաւակ եւն։ (Հռովմ. Թ. 29։) Այլ սակայն համբարձաւ, այսինքն նորա սիոն 'ի ձեռն քարոզութեան ոչ մնացեալ անզաւակ, բարձրացաւ յերկրէ աստի փառօքն Այ, որպէս առ 'ի փրկութիւն նորա անկեալ Ած բանն Բարձեցաւ, խոնարհեցաւ յերկնից իւրով գթութեամբն։

109. Զէօր պարփեցաւ։ Այսպէս փր. Ձռ. և այլ ռայ։ Իսկ այլ. պափառեցաւ։ ... Երկրածինք պէտք։ Ձռ. Երկրածին։ ... փառն ծնծղունեան։ այլ. ծնծղունի։ Ձռ. փառս։ Որովհետև ասէ՝ ձեռօք քարոզութեան ծանուցաւ աշխարհի մեծ խորհրդութեան խորհուրդ և մարդկութեան, և ամենայն զաղտնի գիտութիւնս ածային, ապա ոչ եթէ երկրածինս ոմանս զձեզ ճանաչեմք, այլ յերկինս ծնեալս. հոգեծնունդք, հոգւով ծնեալս, երկրաբնակք, յերկինս բնակեալս, այսինքն ամենայն ինչ ձեր երկնային և հոգևոր է։

110. Այնեղէն կերպին։ Պաշտօնեայք աւետարանին, որք անձամբ անսին զճշմարտութիւն, և Քնի եղեն մերձաւոր ժառանգակիցք, այլև նորա ածային մեծութեան և փառաց կցորդք և վայելողք, ոչ ապաքէն առաւել ևս քան զորդիս մովսիսական օրինին ամբարձեալ կան յոյժ որդեգրութեան պատիւ։

111. Բանին Երիվար։ Հայի 'ի բանն ամբակ. Գ. 15. *Հաներ 'ի ծով զերիվարս քո||։ Աւետարանին քարոզքն ոչ միայն ընդ ցամաքն տարածեցին զպատգամս իւր, այլև ընդ ծով իբրև երիվարք Այ յարձակեցան կոխեցին զալիս՝ եթէ զջալիս, եթէ իմանալիս. բաւական է հայել միայն յանցսն Պօղոսի. տես ծան. 60։ Որով զապստամբ մեշայն սանձեցին Ընթինեայինս բանին։ Ձռ. Ընթինեային բանի. զօրութ. բանին հաւատոյ։ Եւ յափշտակեցին 'ի բռնութէ նորա գանձուց Մեերս։ Ձռ. գանձս։ Հանին յիշխանութէ սատանայի զազգ մարդկան։

112. Զինուորելոյ զօրան։ Զլեգէոն անուանեալ դևսն՝ որք յաշխարհին գերգեսացւոց՝ զմտեալսն 'ի խոզեանն, հեղձուցին 'ի կենդանի ջուր աւազանին։ (Մարկ. Ե. 9. 13.) Լեգէոնն անուն գնդի կամ գումարտակի զօրաց՝ ըմբռնեալ էր զդիւահարն. որ և բանիւ հրամանին Քի բժշկեալ զերծաւ հաւատովքն։ Այլ սա առաքեալքն 'ի բժշկել զհեթանոսս մկրտութեամբ աւազանին, զբռնեալսն 'ի նոսա զդևս հեղձուցին 'ի նոյն ջուր։ Եւ ընկարծըրոյեալ. զկորուսեալ միտս մարդկան 'ի թանձր մոլորութեանց՝ արօրով քարոզութեան գերահերկեցին։ Այսպէս փր. Ձռ. զի 'ի խորս հերկեցին։ Իսկ այլ. և այլ ռայ. հերկեցին։

113. Կրծնից ն մահու։ Այսպէս ձեռագիրք. իսկ յայլ ռայ. կրօնից մահու ընթերցեալ, մեկնէին ոմանք՝ թէ վասն զի կրօնք աւետարանին զմահ մեղաց հրամայեն, սպանանել զանդամս երկրաւորս։ Ըստ ուղիղ ընթերցուածոյ իմանի, զապստամբ և զանհրահանգ ազգ մարդկան հնազանդեցուցին ոչ միայն կրօնից և կարգաց աւետարանին 'ի բարեկարգութիւն վարուց, այլև մահու անգամ առ 'ի պահելոյ զածպաշտութիւն։

114. Հանդիսի կուսութէ փուլին։ Այսպէս ձեռ. զոր այլ ռայ. գնէ եփան։ Զաղտեղասէր բարս և զսովորոյթս մարմնապաշտ մարդկան այնչափ 'ի համեստութիւն կրթեցին, մինչև հանդիսի կամ վարուց կուսութե ընտանեցուցին, լինել ոչ միայն ժուժկալս յանարժան ցանկութեանց՝ այլև յօրինաւոր ամուսնութենէ։

115. Հին արտաքսին վարծին։ Խաչաքարոզիչք յառաքելոց անուն կի

յաշակերտաց զոր ինչ արհեստ ունէին յառաջն, զնոյն 'ի վեր առին և 'ի քարոզութեան աւետարանին : Եթէ մաքսաւորք էին, [illegible] : այլ. [illegible] : [illegible] զմիտս մարդկան և զբարի յօժարութիւնս հանէին 'ի բաժին և 'ի տուրս ԱՅ : Եթէ ձկնորսք էին յառաջն, զոգիս մարդկան ուռկանեցին 'ի կեանս. որպէս և Տէրն ասէր ցպետրոս : Եթէ հալածիչ էր յառաջն, որպէս Պօղոս, զխաչեցեալն ԱԾ քարոզելով հալածէր զխաչահանուս և զուրացողս և զչարս. որպէս զայսն հարցուկ, զեղիմաս մոգ և այլն : Ունէր յաւելուլ և եւս, որ խորանակարն էր արհեստիւ, 'ի քարոզութեանն խորանս ԱՅ զմարդիկ շինէր : Եւ 'ի հնէբանոսաց ոմանց. որք միանգամ 'ի հեթանոսաց անուի ողորմութիւն գտեալք յայս՝ աշակերտեցան, և քարոզք եղեն աւետարանին, [illegible] : Ծն. [illegible] : որքեցին, 'ի բաց մերժեցին զկռամոլ պաշտամունս, խայտառակելով զսնոտութիւն նոցա և զաղտեղութիւն նոյին իսկ տեղեկութեամբ զոր յառաջն 'ի հեթանոսութեան ուսեալ էին : Այսպիսի եղև զունկլիանոս հարիւրապետ, Դիոնեսիոս արիսպագացի և այլք սակաւք առ առաքելովք՝ որք 'ի հեթանոսաց հաւատացեալ, կարգեցան 'ի քարոզութեն : Վասն որոյ զայնպիսեաց խօսի բանս. և ոչ եթէ առհասարակ զամենեցունց՝ որք 'ի հեթանոսաց հաւատացին բիւրաւոր բազմութեն : Այնպէս որ յառաջն բժիշկ էր ըստ մարմնոյ՝ և յարհեստին վճարէր եւս բազում անգամ, 'ի քարոզութեն աւետարանին առանց վճարելոյ՝ հոգւոցն առնէր բժշկութիւն : ամ Ղուկաս : Եւ յաղախնածին : Եղև և այն ոք՝ որ յաղախնայնն ծառայէ առաւել էր, կամ արծաթագին ծառայ. բայց 'ի հաւատս եկեալ և յաշակերտութեն կարգեալ հանդերձ եպիսկոպոսական իշխանութբ, հրամանատու իւրում տեառն եղև. և սա ահա Ոնեսիմոս՝ ծառայ Փիլիմոնի : Եւ [illegible] : այլ. [illegible] : Յայսքան 'ի նուաստ՝ յանարգ վիճակաց աշխարհի ընտրեալք, հասին 'ի գերագոյն շնորհս առաքելական պաշտամանն :

116. Զծովային կղզեօ : Այսպէս վր. Ծն : իսկ այլ. և տպ. նաւ. ծովային : ... [illegible] ... [illegible] : Ծն. [illegible] ... [illegible] : ... [illegible] : վր. [illegible] : ... [illegible] : Ծն. [illegible] : այլ. [illegible] : Զսահմանս և զվիճակ քարոզութեն առաքելոց և աշակերտաց 'ի համար արկանէ, առեալ մասամբ ինչ 'ի Գործոց առաքելոց և 'ի Թղթոց նոցա, և մասամբ յայլմէ աւանդութենէ. և ոչ 'ի դէպ է տեղւոյս ընդարձակել յաշխարհագրական քննութիւնս :

117. Յորում [illegible] : 'Ի գաղատական կողմանն առէ՝ և յեղիմացիս՝ կից ընդ հիւսիս և ընդ արևելս՝ առաւել հաստատուն պահեցաւ առաքելականն բան և աւանդութեն, կամ կրօնք քրիստոնէութեն, քան 'ի բուն սեմեանն յիսրայէլացիս. որով 'ի գլուխ ել գուշակութեն նոյեան՝ բնակել յաբեթեանցն 'ի տան սեմայ. (Ծնն. Թ. 27.) վասն զի Յաբեթայ սերունդք պատսպարեցան յառաքելական վիճակի սեմեանցն Առաքելոց, անկեալք ընդ խնամովք հովուութեն նոցա : [illegible] : այսպէս վր. Ծն : այլ տպ. [illegible] ... [illegible] :

118. [illegible] : Ծն. [illegible] . բայց ուղիղ եւս է [illegible] : Որք՝ ոչ կառօք առէ, ոչ երիվարօք, այլ հետիոտս տաժանմամբք և քրտամբք ընդ ամենայն աշխս երկրի արագեցին անցին՝ առ այնոսիկ որք ոչ անուանն Յի, և ոչ մարգարէից ծանօթք էին. բայց անարգելաբար իբրև զմտաց [illegible], անխափանելի երագութեն, սլացումն, և պայծառապէս իբրև [illegible] փայլուն յա-

տակ փայլական՝ հասեալ առ ամենայն արարածս, լցին զաւետարանն ։

119. Վերածեալ 'ի փառս ։ այլ. վերածնեալ ։ ... փրկողին տն. այլ. փրկչին ։ Այնպիսի տաժանակիր վաստակօք՝ զառհմս ազգաց 'ի խաւարին կռապաշտութե վերածեալ 'ի փառս, թէպէտ և ինքեանք ծնան զնոսա վարդապետութբ և աւազանաւն, բայց ոչ եթէ ինքեանց ծնան, այլ միայն հաստատակաց փրկողին Տն Յսի. մանաւանդ թէ զինքեանս՝ ծառայս ասէին հաւատացելոց, և յամենեցուն բերանոյ աղաղակէր Պօղոս* Ամենայն ինչ ձեր է, եթէ պօղոս, եթէ ապօղոս, եթէ կեփաս ... ամենայն ինչ ձեր է. դուք՝ Քսի || ։ (Ա. Կորն. Գ. 22 ։)

120. Գոչէր հանգոփեանն ։ Առաքեալքն սոքա թէպէտ և անդադար 'ի քարոզութե աւետարանին զբաղեալք էին 'ի զանազան գաւառս, բայց ոչ պակասեցին 'ի կարևոր պատահարկուէն՝ զոր պարտական էին տանել մօրն Այ, որում և ինքեանք էին յաւէտ որդիք՝ քան ծառայք ։ 'Ի հանգիստ մաքրափայլ մարմնոյն առնթեր գտան, և օրհնութք՝ քան թէ խնկովք պատուաւորեցին. նոյնպէս զնա յուղարկաւորեցին՝ որպէս և զորդին զՅս յերկինս ։ Կարի այլազան էր այս դիպուած՝ քան որ առ այլ ումեմն, 'ի խնդրել նորա երթալ թաղել զհայրն, որում ասացաւ՝ թող այլոց թաղել զնա, և դու երթ պատմեա զարքայութե Այ ։ (Ղուկ. Թ. 60 ։)

121. Նշխար և դինի նորանն ։ Ձռ. նոցանն ։ Այս ցուցականք անտրտշաբար կարեն յայտ առնել թէ զՔս, և թէ զՏիրամայրն. քանզի և Տիրամայրն ոչ սակաւ նպաստս մատուցանէր Առաքելոցն 'ի քարոզութե աւետարանին քաջալերութբ և խրատուք ։

122 Յառողջութէ կենաց հանգնեղին ։ փր. կարգնեղին ։ ... մկրտ բնակութէ ։ Այսպէս այլ. և այլ տպ ։ բայց փր. Ձռ. բնութէ. զոր մարթ է իմանալ ածանց. 'ի բառէն բուն, ըստ որում նշանակէ և ս կայան, և լինի նոյն ընդ բնակութեան ։ Զճանապարհ մտից երկնաւոր բնակութեանն բացին առաջի երկրածնաց, ամենեցուն մտանելի ցուցին զերկինս ։

123. Զահեակն հեթանոսաց ։ Զհեթանոսս՝ որք ահեկեանք կամ ձախակողմեանք էին առ հրէայս, ինքեանք աջ կամ աջակողմեանս արարին. զերիցութե կամ զնախապատուութե հրէից յեկեղեցւոջ փոխադրեցին 'ի հաւատացեալս հեթանոսաց. որպէս Յակոբ նահապետ արար առ որդիս Յովսեփայ ։ Այս այն է՝ զոր և Պօղոսի և Բառնաբայ համարձակեալ ասացին առ հրէայս. առ ձեզ նախ պարտ էր խօսել զբանն Այ. և քանզի դուք մերժէք զնա, ահաւասիկ դառնամք 'ի հեթանոսս ։ (Գործ. ԺԳ. 46 ։) Այսու օրինակաւ զհրէական յեռոնարչախութին, այսպէս փր. Ձռ. իսկ այլ. յեռոնարկութին ։ Զյանդգնութի, զանսաստ դիմադրութի հրէիցն իշխանաւոր կապեցին, արհամարհեցին, ասելով նոցա դէմ յանդիման՝ թէ ոչ կարեմք լսել առաւել ձեզ քան Այ. և թէ՝ խստապարանոցք և անթլփատք սրտիւք և ականջօք էք ։ (Գործ. Դ. 19. 20. Է. 50 ։) Այլև զփայլումն երեսաց գեղազարդութէ. այսպէս փր. Ձռ. իսկ այլ. գեղազարդ ։ Զայն լուսափայլ գեղեցկութի դիմացն մովսէսի ցուցին թէ առ պայծառութի նորոց օրինաց աւետարանին՝ իբր ստուեր համարեալ է ։

124. Յարարածոց Երկրի ։ այլ. ասպի ։ ... Բարձրեալ սեղանոյն ։ այլ. Բարձրացեալ սեղանն ։ Յորժամ լցան ճոխացան ասէ՝ այսքան պարգևօք, վաստակովք և բազմամեայ քարոզութբ, ապա նուիրեցան 'ի պատարագ երկնային սեղանոյն՝ բազումք մարտիրոսութբ, և այլք բնական վախճանաւ ։ Եւ նկարագրեալ ։ Կարգեցան հաստատեցան անջնջելի ժառանգութբ 'ի փառսն՝ յոր սահմանեալ էին ընտրութբն Այ. 'ի գլուխ եւ

կատարեցաւ յառաջագրութիւն ԱՅ: Այսպէս դրոշմեալ՝ 'ի վերին գալրութեանն՝ ոչ իմանի թէ յայնժամ դրոշմեցան. այլ թէ՝ ըստ որում դրոշմեալն էր՝ կատարեցաւ: Եւ թէպէտ և կենդանութք ելին յաշխարհէ, այլ ոսկերք նոցա ցամաքեալք ոչ նուազ զօրաւորք են 'ի նպաստ կենդանեացս՝ քան թաշկինակք նոցա և քան գնդանի, որովք բժշկութիւս առնէին: Այլև գրովք իւրեանց միշտ քարոզեն Բարձրաձայնել աւետարանութիւ. Ձռ. Բաղձաձայնել. քարոզեն զյաղթանակ փրկչին և զպտուղ մահու նորա, այն է՝ զմկրտութիւն խորհրդոյ և զապաշխարութեանն և և զյարութեանն:

125. Ձեռնադրութ փոխանորդութեան: Այսպէս այլ. Ձռ. իսկ փր. և այլ տպ. փոխանորդութեանց: Մերում քահանայական կարգի և իշխանութե Առաքեալքն են աղբիւրք իւրեանց ձեռնադրութեն. զոր ընկալան 'ի ՔՍԷ, և մեզ հաղորդեցին: Այսմ ուխտի քահանայութե՝ հաւատարիմ դաշնաւորք են՝ թէ յաւիտեան մնասցէ յեկեղեցւոջ մինչ 'ի կատարած, առաւել քան զուխտ Ահարոնեան քահանայութեանն. այլև վկայք արժանահաւատք անխարդախք՝ թէ կարգ է այս՝ ոչ 'ի մարդկանէ հաստատեալ, այլ առ 'ի յԱՅ. ոչ ումեք առ ուվաւ պարծել առ հարոնեանն կարգ՝ իբրև յԱՅ օրինադրեալ. է՛ այնպէս, բայց ձեռամբ մովսիսի. իսկ նորա քահանայութե անընդմիջաբար 'ի ՔՍԷ ԱՅ սահմանեալ և 'ի վար արկեալ: Զվերջին երկու հատուածսդ մարթ է ուրոյն եւս իմանալ. այսինքն ուխտի կրօնաւորութե կամ կուսութե դաշնաւորք, աւանդիչք. և նծառանկ կարգի եպիսկոպոսութե՝ վկայք առաջինք:

126. Ընկալցուք Ն Քէ: Հաճոյական խնդրուածովք սբց Առաքելոցն՝ զոր առ կենդանութք մատուցանէին վասն հաւատացելոց, և զոր այժմ մատուցանեն յերկինս, ցանկամք ընդունել և մեք մասն փրկութեն, ազատութե 'ի փորձութեց, կամ փրկաւէտ գործոց՝ ըստ բարերար գթութեց ԱՅ. ոչ միայն առ 'ի մեր անձանց օգուտ, այլև 'ի շինութիւն եկեղեցւոյ՝ լինելով պտղաւորք պէսպէս շնորհաց հոգևորաց, 'ի մարմնոց բժշկութիւս, 'ի բաշխումն կենդանարար պարգևաց քարոզութե, և խորհրդոց եկեղեցւոյ: Որով լիցի մեզ՝ վասն նոցա, և ընդ նոսա հանդիպել քաւութե, և արդարութե. Իմոյ հաւատոյ մասին. այսպէս փր. Ձռ. և այլ տպ. այսինքն իմոյ հաւատոցս մասամբ արժանի լինել քաւութե, այնպէս՝ որպէս հաւատամս: Իսկ այլ. 'ի Ձռս. և իմանի. նովին հաւատոյ մասամբ զոր առաքեալքն աւանդեցին:

Զայնակիցք և մեք ընդ սբյ Վարդապետիս՝ աշխատեալքս չափաւորապէս 'ի բացայայտութե բանից նորա, թէ՛և յետինք յարժանաւորութէ, բայց առաւելապէս կարօտեալք, պաղատիմք առ սրբազան գունդս Առաքելոցն՝ շնորհել և մեզ մասն 'ի սիրոյն ՔՍի որով ինքեանք վառեալ էին. քանզի յաջողեսցի մեզ այսու օրինակաւ մշտնջենաւոր փառաւորել զՀայր և զՈրդի և զՍբ Հոգի՝ յերկրպագանչիւր կեանս:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## 'Ի ճառ գովեստի սրբոյն Յակոբայ Մծբնայ Հայրապետի ։

Յօրինող ներբողական ճառին՝ որ 'ի սուրբն Յակոբ Մծբնայ, ոչ ոք յերկուացի զմերս երջանիկ Նարեկացին Գրիգոր ճանաչել. յայտնապէս վկայելով զուգաձայն բարբառոյ նորա ընդ այլոցն ճառից ։ Այլ թէ յորոց պատճառաց յայս եկեալ իցէ բանագրութիւն, ասել ոչ բաւական համարիմք թէ յետ Առաքելական դասուն կամեցեալ իցէ և զՀայրապետացն գումար պատուաբանել յանձն միոյ ուրուք յերևելի Հայրապետաց. որպիսի ոք Մծբնացին է՝ գերահամբաւեալն ընդ ամենայն եկեղեցիս ։ Եւ ոչ դարձեալ՝ քանզի յերկրին ուշտունեաց էր մերս Գրիգոր, կամեցաւ գովասանական ընծայիւք զպարտսն հատուցանել մեծի Հայրապետին՝ որ զայն գաւառ նախ անէծ, և ապա օրհնեաց ։ Այլ խնդրելի է մեզ յատուկ պատճառս յօրինմանն՝ 'ի պատմուէ անտի որ յաղագս նշխարաց սրբոյն Յակոբայ ։ Քանզի Մաղաքիաս ոմն աշակերտ մարուգէի ճգնաւորի՝ գրէ պատմելով թէ ոմանք 'ի հայոց եկեալ խնդրեցին մասն 'ի նշխարաց սրբոյն Յակոբայ. և առեալ տարան ասէ՝ եդին 'ի տեղին որ մերձ է 'ի գաւառն աղձնեաց ։ Իսկ այլ հին մատենագիր հայ մանրամասն ևս զրուցաբանելով ասէ, առեալ հայոց զկող մատին սրբոյն Յակոբայ՝ հասին 'ի գաւառն աղձնեաց, 'ի բլուրն երկաթահանս, ուր խմբեցաւ բազմութի ժողովրդոց, մինչև կոչել զտեղին՝ Առաքելոց բլուր ։ Բարձեալ ապա անտի, իբրև տանէին ընդ զառիվայր լերինն յերկիր ուշտունեաց, արգելան անշարժք, և ազդեցաւ նոցա 'ի տեսլեան՝ անտանօր հանգուցանել զպատուական նշխարն, և շինեցին անդ եկեղեցի 'ի բարձրաւանդակ տեղւոջ, որ այժմ մոգս կոչի՝ ասէ ։ Զայն տեղի գնեաց յետոյ Թագաւորն հայոց որ յազգէ արծրունեաց, շինեալ անտանօր եկեղեցի փառազարդ, և կարգեալ քահանայս և կրօնաւորս ։ Ըստ ցուցանելոյ պատմութենս կայ մինչև ցայսօր տեղին անուանեալ մոգս 'ի գաւառին մոկաց ։ Այլև վարդան պատմիչ գրէ յանուանէ թէ 'ի Նարեկայ վանս կայր ճկոյթ մատն սրբոյն Յակոբայ, և 'ի լեառն ընձաքիարս՝ վանք նորին սրբոյ ։

'Ի պատմելոց աստի մերկանայ ինքնին յատուկ պատճառ յօրինուածոյ Ներբողինիս. այն է՝ մեծարանք նշխարաց սրբոյն Յակոբայ, որ պատուիւրն յայնոսիկ 'ի մերձակայ կողմանս, կամ 'ի նմին իսկ 'ի վանս Նարեկայ ։ Ոչ անհաւան ինչ է և զայն կարծել, թէ առ այնու ժամանակաւ ստացաւ արծրունի Թագաւորն զասացեալ տեղին, և եկեղեցի շինեաց, յորոյ 'ի նաւակատիսն և կամ 'ի տարևոր հանդիսին խօսեցեալ իցէ

սբյ Նարեկացւոյն ընտրողդ։ Այսմ և բանք ինչ ճառին վկայեն յասելն. Կաճառ կացուցաք, պարս խմբեցաք, լապտերս լուցաք || Ճռ. և յայտնագոյն ևս զկնի. * Հիմնեցուցեալ զայս քար գովեստի 'ի շինուած յարկի քումդ հանգստի՝ դաւանարանի այս բարի հովուի || ։ Թուի և ակնարկութիւն իմն առնել՝ 'ի խնդրոյ ուրուք շարժեցեալ 'ի յօրինուած ճառիս, յասելն երկրորդ դիմաւ 'ի համարն Է. * Զի ծանիցես գիտացեալ հայել նկատել խորհրդեամբ իմաստից || Ճռ։

Իսկ թէ յորում ժամանակի կատարեցաւ այս, դեռ հաւանութիս ինչ ուստեք ոչ գտաք. այլ կարծի սովորաբար յառաջ ժամանակաւ քան զԱղօթսն արարեալ։ Յընտրութիւն ընթերցուածոցն հարազատութեան՝ երկուս ևեթ կալաք գրչագիր օրինակս՝ զպօլսեանն, և զփարիզուն։ Բայց 'ի պարզումն գաղտնածածուկ ասացուածոցն առաւել զօրաւորագունիցն երկոցունց նպաստք մեզ պիտոյ են Մծբնացւոյն, և Նարեկացւոյն. զի զօրմէ ճառս է, և որոյ ճառս, յաջմէ և յահեկէ թևալիրք իմաստիցն ծանիցեն։

Բան նուիրական գովեստ Գրիգորի Նարեկացւոյ՝ առն իմաստասիրի, ՚ի մեծ և յերջանիկ հայրապետն ՚ի մեր Յակոբ Մծբինոպոս և վերատեսող սիւնհոդոսին երեքհարիւրեկ ամենայոյ Մծբին ժողովի :

Ա. ԲԱՐՁՐԱՑԻ՛Ր [1] սրտիւ հոգևոր դիմաւոր անձնաւոր, խնկաւոր և խորհրդաւոր. երկնաւոր խորան լուսաւոր գերափառ՝ յաղթօղ սինայի, քերովբէութերին կտակի անկայի և լուծականի, կապտողի և ոչ պծնողի : [2] Դու որ խորոց՝ և կամ կէտ գծի ՚ի միջոց երկուց կառուցեալ՝ սահման ծանուցման վեհին և փոքուն, մահածրին և կենաշնորհին, յարակային և օրաւորին, երկնայնոյն և անցաւորին : [3] Դու գիրն եղծական, և առ հոգին մնացական : Սակս ծառայական միջնորդ օրինին, և տիրականն համակցորդ և սիրապատար աւետարանին : Ի յաշխարհականն պայման ուխտի, և ՚ի վերնայինն շաղկապ բանի : [4] Սուտի յաւէտ իսկապէս պարեալց և կամ կարապետ գոլով նախընթաց սկզբնաշաւիղ աննստուերական պաշտելի տօնեալ երջանկացն : Որ համանեկանն միադրութի համակայութեն առ օրէնս երկրի անկցորդ, և առ հասարակաց իր՝ անհաւասար : Ըստ մարմնային հիւթաւոր աչաց պարագրեալ, և ըստ իմաստից անարգել դիտմանն դուն ինչ նկատեալ : Այլ [5] քանզի անմերձ է բանիս ձգումն առ անհասութիւն ծածուկ խորհրդոյս, որքան քանակութի փոքուն [6] առ ստուարին դիմակ, և անձկականն գիծ առ լայնականն ծիր, և մարմնայինն յօդ առ տիրականն գոյ, և ձեռինն հասումն առ մտացն արագումն, և երկրակոխ հիւթաւոր առ սերափին սրբաբան, և մահացու լուծական առ վերնական կենսածին : Զի որքան անդր և ՚ի վեր՝ կամարն յարկի անդրանկացն կայից վկայի անդանօր հրաշապէս, և ևս քան զէտն գերակայիցն և որդիքն լուսոյ դաւանին :

Բ. Յորոց և զմին աստանօր առեալ ՚ի գովեստ բանից մատուցից : Զի ծանիցես գիտասցես նկատել խորհրդեամբ իմաստից գոյից երիկամանց, թէ

[7] որքան փողլին ներհիւսին՝ կուտին յաւելլին 'ի յոքնատարր յաճախութի չուականն յերկարութ, բազմատիպ պատուածք 'ի Թելս բանի՝ առ միոյս սրբոյս Յակովբայ պատուասիրութի, և իբր 'ի պատահումն զօրաւորի համայն յայտնապէս՝ իսկոյն ամփոփեալ տկար երևին : Որով և առ սոյն բերեալ զբարբառտառիդ, զհասարակացն կցորդութի ազգապետ ցեղականութե, լուսաբնակ և երկնաժառանգ բարձրագահ օրհնաբան էիցն խմբակցութեանցն յիշատակելով :

Գ. Քանզի որպէս 'ի ծիրս աստեղայց զարուսեակն երկնից 'ի ճահէ դասել 'ի շար սկսմանն. և 'ի պատուական ականց զումարտակն՝ զյոքնաշահն և զյաճախագինն. և [8] 'ի մարդս՝ զանհատս հմտականացն. և 'ի նիւթս վեհագունիցն և գեղազանիցն՝ զոսկին ոփերայ, և կամ զքարն ճաճանչաւոր լուսափայլ. և 'ի կոյտս կայից բարձրութե չերանց՝ զսիոն. և 'ի քաղաքս զերուսաղէմ, այսպէս և 'ի գունդս մաքրեցելոց՝ զծանուցեալն և զհռչակեալն : Զի եթէ բարի անուանի ծառ անշնչական հողաբոյս 'ի նիւթոց փայտից՝ պսակաւ տենչալի պտղոյն քաղցրութեան. և անդաստան արգասաւորական պտղածին՝ ըստ առաքելոյ՝ [9] զօրհնութի ընդունի զվերնոյն. և սքանչանի մանանայն հացին՝ սակս երկնի. և ծով դրուատի՝ ունակ մարգարտի, ապա զորպիսի արժանաւոր գովեստ ընկալցի մայրն սկզբնապատիւ, լուսարկու, գեղապանծ քողազարդ : Այլ և [10] շնորհաշուք մօրն սիովնի վերնումն ամրոցի, որ զած ծնաւ մարդացեալ, և օրինակին տեսակաւ զանորակն երկնեցեալ անախտակիր կերպարան :

Դ. Ուստի և [11] աւազանն կենդանարար տիրագոյ, զորբազգեստիցն վերընծայեաց զանհամար ազինս հոգեկրօնս համախորհուրդս՝ դասուց դասուց առաւելութիւն լրական շինութեան եկեղեցական կառուցման, 'ի միաբուն զուգապարութիւն անմահից փառաբանողացն լուսակերպիցն : Քանզի անդ ելանէին ըստ դաւթեան ձայնին՝ ազգք ազգաց, ո՛չ ըզպաշտօնն յակոբայ վկայել պիտակ տիրապէս, այլ զածն երկնի 'ի յերկրի հիւթաւոր կերպիւ տեսա-

նել։ Իսկ ո՛չ եթէ աթոռք արկեալ կամ ձեռակերտական մարդկային բեմի 'ի յերկրի՝ կարծրադատ և կասկածափորձ և վրիպակընտիր՝ մահացու դատել դատողաց։ Այլ դատաւորն համագոյից՝ կշռօղն մըտաց՝ և անգոյիցն նախագծօղ։ Նա եդ զոմանս առաքեալս՝ առ 'ի յինքենէ։ Զոմանս մարգարէս գուշակս ապառնեացն։ Զոմանս աւետարանիչս կենացն բանի։ Զոմանս հովիւս առ տածումն խնամոց։ Զոմանս վարդապետս առ դատումն վարժից, 'ի հաստատել զնոսա 'ի հողմոց խաբէութեան, 'ի վաստակս գործոց պաշտամանն առ նորա։ Իսկ [12] հասարակացն մինչև 'ի շինուածն 'ի յոքունց մասանց միացի յօդեալ մաքրապէս 'ի գլուխն գովեալ տէրունի։

Ե. Աստանօր [13] առ սմին բանի 'ի սոյն միութիւն զուգափայլութեն։ 'Ի շառաւիղէ ելեալ. 'ի գեղեցկաստեղն ոստոց ընձիւղեալ. 'ի նախնեացն բուսեալ. 'ի հարցն վեհից երևեալ. 'ի տոհմէ հզօրէ յայտնեալ. 'ի պարագլխէն արդարոց ծագեալ. աբրահամեան գոգոյն գգուեալ. 'ի վերուստ անտուստ վկայեալ. 'ի յամպոց մաքրոց անձրևեալ. 'ի նորոգ գոյութեանց ցօղեալ. 'ի յելիցն արևու փայլեալ. յեդեմեան դիմացն ընտրեցեալ. 'ի գլխոյ տարածման երկրի պարգևեալ։ Յաջողակն [14] հողմոց զօրացեալ. յակնարկութենէ բարձրելոյն բերեալ. 'ի հարուստ դարուց նկատեալ. հոգւով սրբոյ օծեալ. 'ի կամաց էին կոչեցեալ. 'ի պատճառին բանէ հիմնացեալ. 'ի պարգևէն լուսոյ յարդարեալ. 'ի պսակողէն վկայից հաստատեալ. 'ի բարերարին բերանոյ օրհնեալ։

Զ. Անունն [15] խորհրդական. կրօնքն վերնական. վարքն մաքրական. ընթացքն հրեշտակական. կոչումնն գովական. նկատումնն ուղիղ միական. շաւիղն աստուածական. կիրքն անհասական. աւանդն անշարժական. սէրն անկեղծական. լոյսն անշիջական. հաւատքն անապական։

Է. Այնն [16] յաղթական խմբից հազարաց. բարեհամբաւն 'ի ժողովս ազանց. անուանին 'ի կոյտս բազմաց. արձանագրեալն 'ի մատեանս ազգաց. ցրօղն աներևոյթ գազանաց. ախոյեանն դիմամարտիկ զօրաց դիւաց. քառամաննեակն գեղեցկին լանջաց. նետն

արարողին կապարձաց · աղեղն լարեալ յաղթողին գրկաց · քարն պարսից տէրունեոյն ձեռաց · գայիսոնն ընտիր հզօրին կամաց · գերակացեալն աշխարհիս մասանց · անկցորդն պարտեաց մեղանաց · անունակն նիւթոյ յանցանաց · տարօրինակն մարմնաւորաց ։

Ը · Նոյն ծագեալ 'ի ստորին երկրի [17] ակն արեւու 'ի մէջ աշխարհի · անձնահամայն իսկապէս 'ի հողեղէնսի · միջնորդ կենդանի դատողին բանի · ծիր նհանջման վշտաց տագնապի · սահման կենաց՝ յընթացս ախտի · ահարոն երկրորդ՝ նորս իսրայէլի · ապաքինիչ մահու 'ի խունկ բուրաստանի · նշանակ կենաց 'ի մահու սաստի · ցանկ ջնջական սատակման վճռի · բժշկապետ մարմնոց յօդեալ ընդ հոգի · [18] հրաշացեալ գեղով 'ի դէմս կերպի · զօրութի ազդման 'ի տուր հաղագի · նշոյլ փրկութե շնորհացն Յնի ։ Արդ այսքանեօք նուագօք 'ի զանազանակ մասունս բանի յաւէտ պսակեալ, երջանիկդ 'ի գումարս գնդի հայրապետական մեծարեալ դասուն, ընտրեալ տր նբ Յակովբ ։

Թ · 'Ի հեռաւորաց խուժային [19] պարսկական ազանց դիւցազանց՝ շառաւեղ լուսոյ ածպաշտութեան ։ 'Ի հովուէ որդւոյ քետուրայ որ յաբրահամէ՝ երկրորդ յակոբ նախնոյն գերազանց ։ Փրկողին արեան անբիծ հարազատ՝ 'ի վէմն կենաց կառուցեալ ։ Որ [20] յեւթնեակ բերանոյ լուսապատրոյգ ճաճանչեղ, տիրազօր ճարպաւորական իւղալիր անճառապատկեր և խորախորհուրդ աշտանակակիր ճրագացն տեսանողին ջահացեալ ։ [21] 'Ի վիմաբեր և արձանակառ քարէն փրկութե զօրաբաբելի՝ ակն միատեսող անհասիցն և ծածկեցելոցն, շինեալ հիմն վստահութեան նմին պատկերի՝ զվարս բարիս քմահաճոյս, ոսկի ընդ արծաթ պատուական քարամբք, ըստ պօղոսեան նշանագրութեն ։ Պետ [22] հարց հոգեսնունդ զաւակաց ։ Երրորդական էին պաշտօնեայ, 'ի կանոնագրացն հաւատասահման դաւանաւորաց հարցն նիկիայ՝ քակտիչ լուծանօղ անպատուասատ խզմամբ սուսերաւ բանի՝ արիոսեան բաժանմանն ։

Ժ · Տարացոյց [23] հոգեւոր ժողովրդոցս խրատու · ոչ եղծեալ՝ այլ գրեալ · ոչ մեռեալ՝ այլ կացեալ · ոչ

բարձեալ՝ այլ մնացեալ. ոչ լուեալ՝ այլ ձայնեալ. ոչ ղուղեալ՝ այլ յայտնեալ. ոչ պատեալ՝ այլ պատմեալ. ոչ ամփոփեալ՝ այլ տարածեալ. ոչ կարկամեալ՝ այլ կարկառեալ. ոչ քակտեալ՝ այլ տնկեալ. ոչ ունայն՝ այլ պատարուն. ոչ ցրեալ՝ այլ ամբարեալ. ոչ ստորնային՝ այլ վերնային: 'Ի լայն [24] ասպարիսի՝ երկրիս կենցաղի՝ նահատակ յաղթօղ. ոչ սրով մահացու զինու խողխողեալ, այլ բովանդակապէս աշխարհի խաչեալ. ոչ 'ի փայտ դատապարտութեան սեւեռեալ. այլ 'ի պատուիրանն երկիւղին տր̅ պնդեալ. ոչ բռնաձիգ դահճացն ձեռօք յակամայս պարտաւորեալ, այլ անձամբ զանձն մատուցեալ:

ԺԱ. Իսկ իմաստասիրապէս յեղյեղեալ զկոչումն անուանդ առ 'ի պատկանիցն կցորդութիւն բանիս բարդութեան, ոչ է տարագիր: Վասնզի [25] յակոմբ՝ այսինքն է խաբօղ, ունօղ զընթացիցն գործի եդեմայ, որ է հողեղէն մարմնասէր անասնակենցաղ: Սասն որոյ 'ի դէմս կերպաւորեալ մեկնապէս, որպէս թէ զխարիսխ ունողաց մասանց մարմնոյն անդամոց, որովայնապարար բուռն հեշտութեան ախտից մոլութեան, զնա և զնորին մասին ազգակիցք 'ի ձեռն ըմբռնման ձեռինն ձգման ոտինն աւակաւ ընդ կրունկն բերմամբ, 'ի գլուխ կացուցեալ ըմբշամարտապէս արուեստիւ ելլադական իւղեալ մրցողաց պատկան սարասիւ, խաբեաց քան եթէ յաղթեաց: Ուղղպարզապէս տեսաւորեցաւ կցորդեալ ընդ առաջնոյն կոչման՝ երկրորդիս անուն: Վասնզի նա համասերմ միաբոյս զուգաշաւիղ եղբօրն յաղթեաց: Իսկ [26] երանեալս 'ի հրաշս փառաց մեծս հայրապետ, տոհմ արշակունեաց անուանակերտից, բարձրընտրաց, գահանշանաց, պատուապարգևից, պսակահիւսից, թագաժառանգաց, զկիրս սննդակից աճման հասակին 'ի կռուարանի այսր յաւիտենիս զօրաբար և արիապէս կամ թէ հոգեպէս, իբր կենդանի անձնաւոր զչնչականն քառաքայլ պարտեաց, և գերազանց գտաւ եդովմայ, որպէս նախնին խաբօղ եդովմայ:

ԺԲ. Նու քանզի գեղեցկազան և վայելչակերպ [27] արարչանորոգ ճահաւորեցան մարդկային ընթացք առ

միայնակ յառուցմ՟ն նպատակի ընտրութ՟ե ըստ ժողո-վողին նախասասացութ՟ե , առաջի աչացն ո՟յ գոլ Ճանա-պարհք առն . և 'ի մ՟է փորձեցաւ լինել ըստ վեհին դաւթի գնացքբարի մարդկանս զարմի , և անբիծք յընթացս այս Ճանապարհի համայն երանին , ապա սեռն և փներկեան մտաց տեսութ՟ե զյիշատակեցե-լոյ հովուիս հզօրի սրբոյս Յակովբայ զհի՟մն սկսման և զաւարտ լրման՝ կենցաղոյս աճման՝ յառաջ խա-ղացման՝ տէրամբ վկայեմք : Ու արմատացեալ խարս-խեալ պնդեալ զսա բազկի բարձրելոյն , և 'ի ձեռն ձեռին էին մշակեալ, և կենդանի հոգւո՟յն նորոգեալ : Ուր որ և բանին ո՟յ բարբառ նախաժամանեալ՝ Ճըշ-մարտապէս գլխաւորեցաւ յասելն առ գովեալ գունդ-աշակերտացն , ես ընտրեալ տնկեցի զձեզ, և եդի կազմեցի 'ի մի և 'ի նոյն հի՟մն գովելի , զի դուք յա-ռաջեալ պտղաբերեսջիք : Ու դարձեալ՝ եթէ ես որթ արմատաւոր , և դուք [28] ուռ սաղարթաբեր , և անպարագիրն հայր՝ հանդերձիչ կազմիչ երկրագործ : Ու դարձեալ՝ զանկցորդն ինքեան միութ՟ե՝ առ պըտ-ղոյն բերումն ամայի : Ու ես առ հօրն իւրում պա-տուասիրեալ զբոլորից բարետրութիւն , ամենայն տունկ ոչ իմ արմատացեալ ձեռամբ հօր իմոյ՝ քակ-տեսցի :

ԺԳ. Ու արդ ստուգապէս խոստովանեսցի ոքս այս՝ միացեալ հաստատեալ [29] 'ի տունկն կենաց բարեացն բերրի : Ու ձգեալ ձգտեալ զել շառաւեղի կենացն բանի հովուական ձայնի 'ի վեր քան զերկին , և անդր քան զծով : Ու 'ի դամբանի գոլով երկրաւոր , ընդ բարձրելոյն գտաւ միաւոր : Ու մինչ էրն յերկրի իսկ կենդանաւոր անցաւոր , եղև անձնաւոր մշտնջենա-ւոր : Ու 'ի խիստ վարս կրօնաւոր , վայելչապէս գոյր պսակաւոր : Ու անպատսպար գաւազանաւոր , հո-գեզրահ շնորհիւ զինաւոր : Ու [30] հասարակաց գոյի նիւթաւոր , մարմնացելոյ բանին կերպաւոր : Ու ստա-բիցս աստեաց՝ անկարօտիցն հանգուանաւոր : Ու մսա-պատ գեղպատկերաւոր՝ ըստ արփիաբնակ խմբին լուսաւոր : Ու մաքրակենցաղ վարուք Ճգնաւոր , բազմաժառանգ որդւովք պտղաւոր : Ու ընդ երկ-նային ձրից պատմաւոր , արքայութ՟ե մ՟ն աւետաւոր :

Եւ համօրէն սեռք բանաւոր, նա կրկնակի շնչով հոգևոր։ Եւ այլք կայսերաց հրովարտակաւոր, նա ՚ի վերուստ մեզ պատգամաւոր։ Եւ մարգարէիցն հետոց ուղևոր, հզօրապէս փառօք թագաւոր։ Եւ տնանկօրէն կրիւք տխրաւոր, ընդդէմ վշտաց մահու ահաւոր։ Եւ ՚ի դադարման եղծման շիրմաւոր, արարչական բանիւն սպասաւոր։ Եւ թշուառապէս յերկրի աստ վտանգաւոր, ընդ Քնի սիրով երկնաւոր։ Եւ միակի մերովս աղցաւոր, յոքնապատիկ պատուով բիւրաւոր։

ԺԴ. Եւ արդ յիրաւի զայսքանեաց դրուագս թղխման բանիւն այսր դասեցի։ Քանզի ամենայնիւ բարգաւաճեցաւ վերաճառելովքս [31] տիրապէս՝ քան թէ մարդկապէս։ Յընթացս բանի, յազդումն ձայնի, ՚ի հրաման սաստի, ՚ի համբաւ բարի, յատեանս հրապարակի։ Հոգիս դարձոյց անդրէն ՚ի մարմինս։ Յաջողուածս արար զօրութե։ Մեռեալս կանգնեաց և կենդանացոյց։ [32] Զոմն մահացոյց, և դարձեալ կեցոյց։ Զվիմին մեծի կատարեաց զհրաշս։ Աչաց ընծայեաց վերստին լոյս։ Աւուրս համառօտեալս յերկարաձգեաց։ Զյաճախութե ամաց զգնացս փակեաց։ Նշանս գործեաց մեծապէս։ Զգոյնս հերաց նոր յեղանակեաց։ Ծերութիւն ՚ի տղայութե կանխեցոյց։ Տգեղացոյց զմոլեալ պատկերս։ Ամօթով ծածկեաց՝ քան թէ վերարկուաւ։ Զհասակ օրիորդաց եցոյց պառաւունս։ Եթէ օրհնեաց՝ լցաւ. եթէ [33] անէծ՝ արձանացաւ. եթէ գուշակեաց, կատարեցաւ. եթէ մաղթեաց, խնկեցաւ. եթէ նուիրեաց, ձենձերեցաւ. եթէ բանս եդ, կառուցաւ։ Ընդ երկնայնոցն կցորդեցաւ ՚ի կարգս բանից։ Զթանձրութի դեւմտորի էհերձ. զերկիր բաժանեաց նշանաւ խաչին շեշտակի, քան թէ մովսէս զծովն գաւազանաւն։ Աղբիւրս յանապատի բղխեցոյց։ Յանդընդոց երկրէ՝ ջուրս խաղացոյց։ ՚Ի ստորին ծոցոյ անբաւ խորութե վտակս կոչեաց։ Փրկութի ՚ի թշուառութեց՝ բազմաց աղօթեաց։ [34] Բարեպատեհ ամաց հանդիպեաց։ Զմեծն արքայից օրհնեաց։ Աջ կարկառեաց ՚ի գագաթն՝ զոր հրեշտակք պսակէին։ Իբր առ նուազ՝ լաւ օժանդակեաց։ ՚Ի շուք շնորհի զար-

դու անմարմնոցն տեսաւորեցաւ։ Մատակարար մարդ-
կային կերպին՝ զնոյ պաշտօնեայն հաճեաց։ Ի [35] տա-
պանակի մարմնին, զհոգին յաստեացս փրկեաց։

ԺԵ. Քանզի յիշատակեալ զլաստն ապրացու Նոյեանն փայտի, յորում կեցին նուազք յանբաւից, և իսկոյն 'ի դէմս առեալ զխորհուրդն՝ իմաստապէս տպաւորեցոյց, [36] զաշխարհիւրայովքս պատկեր ծովու ծփեալ 'ի բազմաց, ոչ լուծական ալեօք կործեցեալ, այլ 'ի զանազան պատահմանց շարժեալ, ախտիւ զայրացեալ, մեղօք պղտորեալ, յեղանակօք այլայլեալ, և ընդդիմակայ ներհակօք զիրեարս բախեալ։ Ոմն յաղթէ, և ոմն պարտի, փախնու արշաւէ յանապաւէնն սահման, և անդէն նհանջի։ Իբր գումար կենդանի զօրաց՝ միմեանց պատահեն, և անդէն ցրին, քակտին, լուծանին։ Իբրև ազինք զանազան ազգաց 'ի զուր խռովելոյ յերկրէ կորուսեալ, անշնչապէս բարբառին, անձայն աղաղակեն, անխորհրդաբար խիզախեն։ Կեան և ոչ երևին. գոն և ոչ էանան. են և ոչ ճանաչին. մնան և ոչ տեսանին։ Ոփոփոխումն էից առակեն. զխաղացումն ժամանակացս յայտնեն. զսասանումն աւուրց նկարեն. զանցաւորացս բարձումն գրեն։ [37] Ի ծովու են ղուղակք ահագինք՝ գլխաւորին սաստկութե ղևիաթանն անուանեալ կիտիւ։ Կան և մանունք ընդ նովաւ տկարք, բազմացեալ օտարատեսակ այլազան զարմից։ Բանայ զկոկորդն ըմբռնողական, և ձգէ զնոսա իբր 'ի վիհ մահու. և են նորա նիւթ պորտոյն պարարման։ Կան և յերկրի բռունք բռնադատիչք փոքունց,' որք զօրէն սոցին, իբր նա նոցին։ Կաւ են կերակուր՝ ժանեացն ծախման՝ ձկունք որսորդաց, իբր նոքին՝ կամաց զրպարտչաց։

ԺԶ. Այս ծով մեծ [38] լիածիր և յոքնատարած, տիեզերագրաւ բոլոր էից գոգ ծնելեաց սեռից անքոյթ ծոց, և բնակ բնակի անդորր երևի մարդկան ըստ Դաւթի յատակաւոր կարծր պնդութին, վասն որ արեգակամբ պարարի, սակս որ երկնից բերմամբ պարագրի, վասն պէսպէս չքնաղ իմն իրաց. որ [39] սակաւուն զյոգունս ազդեն, և 'ի բազմին զչնչինսն նշանակեն. մեծն 'ի փոքուն ճանաչի, և դոյզն զյա-

ւէտն պարունակէ։ Հզօրն[40] յանկարծէն պատկառէ, և վեհն 'ի տկարէն ընդոտնի. տեղի յարդարէ ուժ-գինն քաղցուն, և առանց մարտի 'ի բացուստ հերքին։ Նա են միանգամայն յամենից ըղձից զատուցեալ, տրոհեալ, հեռացեալ 'ի հրաշից ծայրս։ [41] Ո՛նող անշնչական՝ հոգւով տնօրինեցելոց։ Մա՛յր՝ որ զ'ի հարուստ դարուց ամբարեալսն՝ 'ի քթթել ական առ-տադրէ, և երկնայնոցն՝ յաւիտենիւս մանկավար-ժէ, և առ ապագայսն ստացողապէս դաստիարակէ։ Ունի[42] մշտածին ինքնաւոր անարօրադիր բոյսս բիւ-րաստեղունս, և ծառս զանազանս։ Սերք սերմանց անճառից ընդգոգեալ 'ի մի. բանականաց տոհմից առ-պարէզ. և ճառք զանդէից աստուստ ընթեռնու։ Ածունէն ոտին հետարան։ Նա[43] և 'ի ծովուէին ճա-նապարհք, և շաւիղք նորա 'ի ջուրս, որ զանհա-սունն ճառ առակէ։ Այլ յաւէտ քատակ զնմանն ունի երկիր զծովու։ Նա են ընդ բնաւին հագներ-գութեանն հայելի ստորին խորհնս անցաւոր մարդ-կան։ Նա խաղաց[44] անդնդապետականաւն ծովակա-նաց՝ սատանայ ընդ մերասեր ազգականութեանս. և նշանակեալ ազդէ յայտնապէս զաղանդն ահարկու-պատրանաց երկրի 'ի շնչելն ուժգին, 'ի փչելն ախորժ օրինակաւ, ցոլման աստեղաց, ըստ տէրունուոյն կան-խասաց բանի։

ԺԷ. Արդ[45] ծանուցաւ իսկապէս համակերտութիւն երկաքանչիւրոցն առ մի կերպարան տեսակի զու-գեալ։ Բայց և 'ի խաղս այպանման ծաղու ընդպահ-կեն կաճառք կացից վերին հրեշտակացն՝ զվիշապն յօդաւոր ընդ պարզականին, և ըմբռնեալ շօշափեն զորսն մահացու՝ հին հնարիցն խորագիտութն ընդ վերնումն դասուն՝ և մարմնաւոր մաքրոցն մարտիկք. և ածեն զսուրն մեծ և զնը՝ զսաստ հրամանի բանին ա՜յ 'ի վերայ կամակոր օձին վիշապի. և իբր զնկուն մի ձագ՝ կապանօք անկասկած բերեն ըստ եսայեայ՝ յոբայ՝ և մեծին դաւթի։

ԺԸ. Այսպիսեաւ իմն պատրաստութ[46] անձին հան-դերձանաց կուռ վառեալ, անկապուտ պնդեալ՝ ան-վան ամրացեալ նախապատիւս սրբոյս յակոբայ, նշխար յիշատակի մասին օրհնութն չափաբերակա-

նի՝ զապաւէնն քառոտանեաց մաքրոց և անմաքրից, զնախակերտն փայտի տախտակ իբրև զհին յիշատակարան հաւուցն անցելոցն, վասն [47] որ 'ի ժամանակին առասպել վարկան, և զհաւատոցն աչս փակեցին առ անցեալ դարուցն յարմարավէպս, և անվրէպ գործս. և իբր թէ չիցէ եղեալ իրին էութին, անպիտան գրեցին զդէմս բանին և պարսաւելի՝ իբրև երկն և ծնունդ շաղակրատ մտաց ընդվայրաճառից։ Քանզի և յայլ ոմն անուն խուժական հեթանոսօրէն փոխաբերեցին ուրուապէս՝ դևկաղիոն ընդ նոյի անել. որև զտապանին յարմարադրութին սադրեցին սովիմք եղանիլ։ Այսու պատճառաւ վրիպեցուցանողաւ՝ 'ի կշտամբանս յանդիմանութէ թերահաւատիցն կացուցանէր զշնորհեալ շերտին զգոյի հատուածս։ Նաև այս էր կասկած վարկածից խորհրդոցն կարծեաց։

ԺԹ. Քանզի ո՛չ [48] իբրև զկեանս համայն իսկապէս, այլ իբր զկենդանեացն հաւաքարան զայս խնդիր դետեաց։ Վասն զի զօրացելոցն 'ի կեանսն բնաւից, 'ի փրկութին ազանց, 'ի լոյսն աշխարհաց, 'ի [49] նպատակն վարուց անբծաց, 'ի յապաստանն տիեզերաց, 'ի գանձն բարձանց, 'ի լուծիչն մեղաց, 'ի զարդն ածադրոշմ երեսաց, 'ի ձիրն արուեստից արարչին կամաց, 'ի խաչն հաստողին փառաց, 'ի վարժարանն կրից կուսանաց, 'ի կացարանն հոգւոյն հոսանաց, աւելորդ ուրեմն 'ի մեծին նպաստ զփոքուն խուզել զխորհրդարան, զգազանային խմբին ջոկարան, առ տիրական բանին ուխտարան, և անպարտելի ձեռինն յաղթարան։

Ի. Ահա յայտնապէս [50] պատրուակ քողոյ բարեզարդութեան ճահաւորական բանիս անջրպետեցաւ, առ ծոցն երկնաւոր, առ տապանն ամենակիր, առ այրն ածընտիր, առ կամսն անպատիր, առ ուղիղ հաւատոյն խնդիր, առ խորհրդոյն ճառագիր, առ դիմակսն ամենագիր, առ եղական պատկերին իր։ Ոչ վայրապար ընթացք. ոչ անկայուն միտք. ոչ վրիպակ հետք. ոչ սասանեալ սիրտք. ոչ անխրատ երիկամունք. ոչ շիջեալ իղձք։ Այլ ամենագոյ արգասիւցեալ շահաւետութք ածականաւ՝ հովիւս այս բարի։

ԻԱ. Մ՛եծն՝ առաջնորդաց. պարծանքն լուսոյ.
[51] յարդարիչն եկեղեցականաց. հանդիսարանն նահա-
տակաց. ախոյեանն յաղթականաց. խրախոյսն համ-
բերողաց. նաւակատիսն մարտիրոսաց. ապաքինիչն
մահու երկանց. սպեղանին խստութե՟ն վիրաց. այցե-
լուն ապաւինողաց. խնամարարն յուսոյ պահողաց.
դուռնն մտից վերնում պարգևաց: [52] 'Ի մատեանս
տփերի անեղծական գրոյ: 'Ի տանէ խոհեմականի
պետութե՟ն բարւոյ: 'Ի ծովէ մեծէ ակն մարգարտոյ:
'Ի դառնարմատ ծառոյ՝ ճաշակ նոր պտղոյ: 'Ի փշա-
գետին անդուոյ՝ սահման դալարոյ: 'Ի մթութեան
ստուերէ՝ նշոյլ մեզ լուսոյ: 'Ի տխրական կայենից՝
շառաւիղ յուսոյ: Յանակնկալ գոյէ ստեղն խնկոյ:
Յանուշակ արդեանց՝ բուրումն ծխոյ: 'Ի [53] մասն սե-
րոյ՝ պարգև զմռսոյ: Սուխրակ մաքրութե՟ն աղբիւր
ջրոյ: Հանդարտ կերպարան՝ հեզութե՟ն հոգւոյ: Կրա-
կարան կենդանի՝ արփիափայլ հրոյ: [54] Ո՛գգաթիւ
բարբարոսականի զարմի անմաքրի, և մերձաւոր հպա-
ւոր ընտանի՝ արեան երջանկի, որդի սեպհականքեռ-
սերմանողի լուսաւորչին մերոյ ս՟բյն Գրիգորի:

ԻԲ. Մ՛ոլք կենաց հաւատոց, ակօսատարք խո-
հեմք՝ ի նաւահանգիստն վերին: [55] Երկնի՟ր լուսաւորք
երկակի երկնի: Երկուորիք ըստ առակողին և ոչ
անորդիք: Կրկին բարեաց տուրք ըստ մարգարէին:
Երկու ընդ միոյ՝ բարձրելոյն քարոզք: Երկու պե-
տական գլխաւորութիւնք վեհից, ոմն սկզբան, և ոմն
լրումն կենաց: Եկեղեցւոյ շինուածոյ երկու տեսա-
նելիք: Երկակի ունկանց լսողաց՝ երկու օրէնսդիրք
փառաց տէրութե՟ն յաջմէ և յահեկէ: 'Ի [56] գաղա-
նային բարոյից՝ նախազգ նուիրելիք: Յանասնական
կենդանեաց՝ ոչխարք պատարագելիք: 'Ի չարեաց
հեթանոսականաց՝ աննուազ բարիք: 'Ի խաւարա-
մնունդ հարց՝ մանկունք լուսոյ, փոխակերպեալք
քմիւ առ այլեց յայլմէ: 'Ի սպանողաց մարմնոց՝ կեն-
դանապարգևք հոգւոց: Եւ այսու առքին ոչ սուն մի
ստորագրին, քան եթէ մեծապանծ պարծանօք 'ի
լոյս ներբողին:

ԻԳ. Եւ թէ պարտ է [57] զտարացոյց փոքուն առ մե-
ծին օրինակ դասել, որպէս սքանչանի թիւրակէ 'ի

խածանօղ մահացու սողնոց առ կենացսնիւթ պատրաստեալ, յորոց ոյք զբժշկայինն միշտ համբուրեն կրթականութի : 'Ի Թորմանէ բոսորակայլակ կաթուածոց քառատանեաց անմաքրից՝ ներկուածք կայսերական հանդերձից : 'Ի զազիր գարշութեանց որդանց, պատուական նիւթք մետաքսէից : 'Ի գետնամուտ և վիմադարան գաղանաց, առ կերպասուցն գեղեցկութի ստեւք սարէից : 'Ի ժանեաց փղաց և կապկաց՝ աթոռոցն յօրինեցան կառուցմունք հանդերձանաց արքայից : Նոյն և 'ի խղխայթից խոտոց արմատոց՝ որդան կարմրութի գունեբանգ բարձից : Այս արդ վայելուչք 'ի տգեղաց, և ընկալուչք յանպիտաց, բարձունք 'ի խոնարհաց, և առաջինք 'ի կըրսերաց, ըղձալիք 'ի վատթարաց, և հրաշալիք 'ի յանարգաց, համակերտ օրինակութք առ չքնաղ ընտրութիւն սրբոցս՝ յարահիւսմամբ ճառիս բաղկացաւ :

ԻԴ. Իսկ զանհնարիցն հնարաւորութի յերգագրութի բանից շարագրել, [58] զկոչողին փառս յաճախէ : Զի 'ի տատասկէ քաղցրութի Թզոյ, և կամ 'ի փշոյ ողկոյզ խաղողոյ ասել փրկողին, ոչ զանկոց այլայլականաց առ օտար բերումն պտղոց, այլ զասուն մնեղեաց բանաւորականաց զկամացն անփոփոխութի : Իսկ սոքա միաբանեալ ընդ միմեանս, ելին յերկրէ ըստ տեսանողին, և սասանեցան յեզանակեցան ըստ դաւթեան երգոցն, որպէս երկիր 'ի նորոգկրօնս, սոքա 'ի վերստին համբոյր և ընտրական բարս: Լամ զի և Նոքա երջանկացն Յակոբա, 'ի [59] յոմանց ազգաց փանաքին մոտախոյզ իմաստական ախտարակաց խորադիմայ հմայից, իբր ստեղծչին ասեմ աղգեցմամբ՝ կոչեցաւ Զգօն, այսինքն է հանդարտ. իբր թէ հեզ. որ է հաստատուն. այս է անփոփոխ. որ է լրութի կատարելութեան. որ և անունն իսկ թարգմանեալ մեկնապէս հիմն է հաճութե : Վասն զի սկիզբն զգօնութե զերկիւղ Տն սահմանեալ ճառեաց սողոմոն : Իսկ [60] անսասանապէս անյեղյեղաբար կարծրակառոյց խարսխեալ անտապալելի, գերատրոհ մնալով տատանման մրրկածին շնչոյ ընդոստման, տանն է նշանակ վիմադրական անվտանգ

անդղրդելի • զոր փրկչականն բան գծագրեաց յաւե-
տարանին ։ Յոր յարկ տիրաբնակ և անձեռակերտ,
շնչաւորակոյտ բանաւորական՝ և երջանիկս այս պատ-
կանեցաւ պնդապէս հոգւով 'ի կամս Նորա յարակ ։
Զոր ազգապէս սորին զսոյն առ սովիմք, 'ի Նմին՝
ազդեցմամբ այսու Թելադրեալ բանն ամենունակ
հայրենի, հաստատուն ասելով 'ի սէր իմ կացէք ։
Եւ դարձեալ, պետն պարու գնդին առաքելականի
օրհնելոյ պետրոս աւետէ, դուք 'ի վէմն կենաց շինիք
տաճար հոգևոր յանարատ քահանայութիւն ։ Եւ պա-
ղոս դարձեալ զնոյն երկրորդէ, [61] դուք 'ի կենդանի
արձանն շինիք 'ի բնակութիւն հոգւոյն այ ։ Եւ դար-
ձեալ, հաստատուն եղերուք, անշարժ կացէք, զտեղի
կալջիք ։ Եւ դարձեալ, որ հաստատեաց զձեզ 'ի սոյն
տր ած է ։

ԻԵ • Եւ արդ՝ [62] 'ի պատճառն յարեալ կենաց՝ 'ի
սկզբնահայրն բարեաց Յն, օրհնաբանեսցուք զնա
'ի Նքս Նորա ըստ սաղմոսողին ։ Եւ վասն Նորին՝ զեր-
կիւղածս անուան փրկողին մերոյ հոգւոյ բարձրելոյն
փառաւորեսցուք ։ Եւ կնիք գլխաւորութեան բանիս
աւարտման՝ զսոսկալի և զպաշտելի անունն այ՝ սահ-
ման փրկութեան և կէտ կենդանութեան նկարեալ դի-
ցուք, իբր զգլուխ մարմնոյ զգայականի՝ առ պայման
կառուցման անդամոյն բերման ։ Եւ քանզի յաղթէ
սրբոյս այս պատիւ սակաւամասնեայ մերս գովեստի,
և [63] գերազանց փառացն նշոյլ՝ առ դասս խմբի երջանի-
կաց պարու, և քան զնմանիմն յաղթական և պայ-
ծառազոյն. և հայաստանեայս պահպանութեան մեր-
ձաւորագոյն. և առ դէմս բանիս մերում տպաւորա-
գոյն. վիճակաւն գաւառանի ընտրութեան մեզ ընտա-
նեգոյն ։ Ուստի և մեք հետևեսցուցաք զսուրհանդակ
բանիս աւետապատճէն նամակամատոյց առ մեծի
հովուիս պատուատարութիւն ։ Յորում ճառս յիշատակի
հրաշապատում դրուատականի՝ և [64] հրեշտակական
լեզուին դիւրերագ և հրանիւթական երգոցն գոր-
ծի, բարեբան բանի յաղթական ձայնի, կասեալ
նհանջի ։ Վասն զի եղ լուսակերպապէս 'ի Թեթև-
թևս բարձրութեան 'ի հովտէս մահացուաց երկրէ՝
յանդրանկացն վեհից վիճակ, 'ի նշան [65] պարգևացն

ուխտի, և կենդանուոյն՝ ըստ ասացելոյն, 'ի միջոյ մե-ղաւորաց փոխեցաւ ։ Քանզի 'ի պատուիրանաց հօր-ւոյն զարթուցեալ և իմաստնացեալ, ատեաց զամե-նայն չարեաց ընթացմունս. և զշուք շնորհին Յնի 'ի պատկեր իւր կերպաւորեաց. և յաղթօղ մահու ե-րևեալ ցուցաւ. և գերակայ ապականութե յայտ-նեցաւ. և զվաստակ աւետաւորական ոտիցն Ձգանց արիապէս 'ի գլուխ իւր կապեաց. և կայսերական գիմոց ահագին տեսաւորեցաւ. և 'ի մաքրականն գործականի սրբութեան ազդուամն աճեցոյց ։

ԻԶ. Խաղաղցոյց վտակս կենդանականս յապառաժ-որատէ ։ Յանզղջական ոգւոյ՝ հառաչանս հեծեծա-նաց հաստատեաց ։ 'Ի տեսանելեաց աչաց արդարա-ցուցիչ արտասուաց վիժակս վայրաբերեաց ։ Իբրև կենդանի զօրեղ՝ 66 մոլութե սատակման սատրեաց ։ Ընդդէմ դիւագունդ դասուն՝ հաւատոցն բանիւ մանչեաց ։ Իբրև նահատակ հանդիսայարդար՝ 'ի կա-տարածի լրմանն գոչեաց ։ Եւ որպէս խրախոյս բո-լորից երկրի, 'ի մրցանակ ճակատուն ձայնեաց ։ Եւ նախաշաւիղ առաջնորդական յանտարակոյսն յարկ հրաւիրեաց ։ Եւ գայթակղելոց անձանց՝ յարուցիչ ձեռն կարկառեաց ։ Եւ զմեղացն կապ՝ աղօթիցն սուսերբ խզեաց ։ Եւ զպակասումն ամաց՝ մաղթա-նացն հայցմամբ կրկնեաց ։ 67 Մահու և կենաց՝ եր-կատեսակ բուրումն բարդեաց ։ Զհանգստեանն ա-ձիւն՝ փրկութե աւանդ մթերեաց ։ Զգրեալ մուր-հակս պարտուցս գոյի՝ պարգևական բանիւ պատա-ռեաց ։ Զարծաթ փրկանաց անցաւոր վարձու՝ ոչ գրաւեաց ։ Ընկաշառ ոստիկան ամենայն հոգւոց խորհրդաբարեաց ։ Վայելչական հանդերձիւ փա-ռաց՝ զինքն զգեստաւորեաց ։ Եւ առաքելորէն պահ-պանմամբ զխայթոց բանսարկուին կոխեաց. և զանձն ընդ փայտ խաչին Յնի՝ տենչանօք կախեաց. և ած-որդւոյն կենդանարար կրիցն հաւասարեաց. և համ-բերական մարտին յաղթութեանն միաբանեաց. և
68 կերպարանին խորհրդոյ կամացն իւրոց կցորդեաց. և նորոգապէս յարութե էական լուսոյն հաղորդեաց ։ Զփականս երկնից խտրոցաւն համայն հերքեաց. Զհեթանոսացն սիրտ՝ 'ի հնազանդութի անն նուա-

ձնեաց: Այլ 'ի նեղութե մեծ անդորրութի մեզ ընդ-արձակեաց: Ընաւկ բարձրելոյն ոտից' 'ի յերկրի աստ հիմնաւորեաց:

ԻԷ. Ժողովրդոց բազմաց անբաւից դասս գումա-րեաց: Կենդանաբաշխ աջ քահանայից' յիմանալիսն համարձակեաց: Զորբոց և զայրեաց հոյլս' ինքեանն ձեռօք պաշտեաց: Ընդ մարմնոյ կարեաց' և զոգւոց կէտս կատարեաց: Այլ հազարապետ կամ մատակա-րար' իմաստութբ բնաւից տնտեսեաց. և առատաբար զօրութբ հոգւոյն առ համօրէնս մասնաւորեաց: 69 Մո-փերս օգտակարս և աշխարհակեցոյցս' մատենա-գրեաց. որով սահմանաւ կշռութե բանի' զշարախօսաց բերանս կարկեաց. և զհերձուածողականն խիստ դառնութի ամենայնիւ իսկ ըմբերանեաց. անշնջական կանոնս յաւիտեանս յարակայեաց: Այլ 70 իբրև զայս մասունս հանդերձանաց բարութեց նիւթեաց, ա-պա մատուցաւ անարատապէս կամաց բարձրելոյն 'ի հոտ անուշից, զենումն հաճոյական և զոհ բանական պատարագ մաքրական և նուիրումն ընտրական բո-վանդակապէս քահանայապետին մեծի, վերնայինն երկրի ընծայեալ: Զի իբրև զդժնեայ գուող մար-տակից' զմարմնոյս չարութի վանեաց. և անուանն իւրոյ յիշատակ' զամենակալ զօրութիւն էին հրաւի-րեաց:

ԻԸ. Այլ արդ' արժանապէս և իրաւաբար 71 համար-ձակութի այսքանեաց փառաց սորին զանձեցաւ: Հոգ-ւով սլացաւ 'ի վեր համբարձեալ յառհաւատչեայ ակնկալութեն: Այլ 'ի մասունս ոսկերաց մարմնոյն' զանծախելի պարգևսն տնկեաց. որով յուսացոյց և եցոյց զյարութին կենդանութե: Խրամակարկատ դատաւ ցանկոյ հաւատոյ: Աշտարակ կանգնեաց զբա-րետիպ դիտաւորութե շնորհին: Արձան հիմնեցաւ գրով նկարեալ քաջալերութե: Մահարձան կենաց կառուցաւ հալածելոց ապաւինութի: Սիւն երկա-թի ձգեցաւ եկեղեցականաց ամրութե: 'Ի պատ-ուար պղնձի պարունակեցաւ, ըստ երեմիայի բանա-կարգութեն: Մինչ զի զհամառօտն գլխաւորելով աստանօր, աշխարհ միանգամայն նովաւ ունի հան-դերձեալ զապագայիցն յուսադրութիւն. և 'ի նոյն

թիկն յեցեալ կայ կանգուն, անդրդուելի նորոգ անկործան, միջնորդեալ երկնի և երկրի :

ԻԹ. Այս նահատակ յաղթող՝ [72] այսր հանդիսի : Այս սպառազէն արի՝ այսմ ճակատու : Այս մարտիկ բարեփառ՝ այսմ ասպարիսի : Այս վկայ ճըշմարիտ՝ այսմ պարգևի : Այս աթոռակալ խնկելի՝ այսմ վեհագունի : Այս պետ պանծալի՝ այսր աստիճանի : Այս դատաւոր դրուատեալ այնմիկ ատենի : Այս պսակաւոր պայծառ՝ այնր հրապարակի : Այս որդի պերճալի՝ այնր քաղաքի : Այս ժառանգ պըճնեցեալ՝ այնմ երուսաղէմի : Այս կամարար օրհնեալ հօրն Ք՟տի : Ոսամ յիշատակեցաք . զսոյն բարձրացուցաք . սովիմք աղօթեցաք . կաճառ կացուցաք . պարս խմբեցաք . լապտերս լուցաք . եւղս անուշութեան մատուցաք . կանթեղս աստեղօրէնս վառեցաք . հուր խորհրդական ընդ խունկ խառնեցաք : Սովիմք լուսաւորեցաք . սովաւ բժշկեցաք . սովին եւ մահու ընկալաք :

Լ. Սրով և հայցեմք 'ի քէն բարերար տէր փառաց Յ՟ս, հօրդ միայնոյ միածին որդի : Բարեգթացեալ հաճեսցիս հայել հոտոտել [73] յայս զոհ պաշտամանս մաղթանաց բանի . և հիմնեցուսցես զայս քար գովեստի 'ի շինուած յարկի քումդ հանգստի դաւանարանի այս բարի հովուի : Եւ փոխադրեսցես մեզ տուն բնակութեան զլուսապաճոյճ գաւիթ տաճարիդ արքայականի : Ոի սովիմք միշտ 'ի քեզ պատուաստեցայց, բեւեռեալ յուսով հաւատոյ պնդմամբ : Եւ գերակայ փորձութեանց գտեալ, անտարակոյս ճանապարհորդութեամբ անարատապէս առ քեզ հետևել : Եւ հոգելից զօրութեամբ օրհնեալ օժանդակեսցես կատարելապէս զայս պատճէն տառի, զի որ ընթերցցի և վերծանիցի, հոգւով քո լցցի . և բժշկեսցի 'ի պէսպէս ախտից կորստականաց անձին և մարմնոյ, բարեխօսութեամբ հայցման աղօթից սրբոյդ Յակոբայ : Սրով կցորդեալ հաւասարեսցուք մասամբ հաւատոյ 'ի փառաւորութեան մեծիդ ժամանել : Ո երրորդական միութիւն էիդ փառաւորեսցուք օրհնառաք ձայնիւ, զՀայրդ երկնաւոր, և զՈրդիդ միածին, և զհամագոյ Ս՟բ Հոգիդ : Սրով փառք, պատիւ և զօ-

մանաւանդ թէ լինելով պարապմունս յառաջընթացս՝ առաջնորդ ան-ոփունէրային, անախալ, անմոլար Երջանիկոցն, որոց պաշտօնս կատարեմք յերկրի։ Ուր հարանէլեանն. (այլ. հարանէլոց անդրանկանն.) Անգ յերկինս իբր հարսն միանան ընդ ընդ Ա.Ղ. բայց այն մոգրոսէՆ, ըծակցութե և բնակակցութե՝ անկցորդ է բնաւ առ օրհնո Երէրէ. յորինաց երկրային հարանութե։ և առ հասարակոց էր. ոչ ինչք համեմատ հասարարակաց սովորութե՝ որ յերկրաւոր հարսանեաց լինին խնդմունք և կայթմունք. ուստի առ մարմնաւոր աչս պարագրեալ են, ծածկեալ, փակեալ. և միայն՝ անարգել գիտողութե մտաց սակաւ ինչ ծանուցեալ։

5. Ես ֆանըէ անմեր է։ Շաղկապ ֆանըէ իբր ըրկ պատճառական առեալ՝ ցուցումն է անցելոյ բանին. որպէս թէ՝ յայն սակս գոյզն ինչ յերկնաւոր հարսնութեն ճանաչեմք, վասն զի ձգումն մտաց և բանի անմերձենալի է առ մեծութե խորհրդոյն. որպէս փոքր քանակն առ մեծն են։ Իսկ եթէ հետևողական առցուք շաղկապ՝ իբր ասել, որով հետև, ըստ այսմ ըմբռնելն իմանալի է բան ինչ առ 'ի լրումն իմաստից ձեռնարկութեն. այսինքն որովհետև առ հասումն երկնաւոր երանական միաւորութե ընդ յերկինս՝ չէ հնար մերձենալ բանիւ, մեծարեսցուք միայն զգերազանցութե շնորհաց և հրաշալի գործոց նոցա. որում զկնի յարմարի, Ցորոց ն զլն են.

6. Ա~ ոփուաբն րդնոկ։ Այսպէս փր։ իսկ այլ. և այլ տող. առ ոփունէրին։ Առաջինն ըմարելի եւս է, և իմանի. որչափ անհամեմատ է փոքր քանակն հանդէպ ստուար և թանձր մարմնոյ։ Իսկ ոփունէրին ընթերցեալ, մարթ է մեկնել. որչափ փոքր մարմինն առ երևումն իւրոյ ստուերին. քանզի եթէ լոյսն 'ի կողմանէ կայցէ, մատնաչափ մարմին ձգէ ստուեր կանգնաչափ։ Եւ անջիկանն. տեղ անձուկ և նուրբ գիծ անհամեմատ է առ լայն ծէր, բոլորակն։ Եւ մարմնայինն յօդ, կազմուածն յօդաւորել, անհամեմատ առ փիրականն գոյ (մր. առ նիւթականն.) առ հոգի, առ հոգեղէն գոյակն՝ որ անբաւ գոյ, և անիրէ մարմնոյ։ Կմ, յօդ մարթ է առնուլ զյօդուած ինչ մարմնոյ, և գոյ՝ զմարմինն ողջոյն. առ որում կարի փոքր է մի յօդուածն։ Եւ ջետինն, ձգումն, շարժումն ձեռին անհամեմատ առ արագութե մտաց։ Եւ որչափ անհամեմատ է երկրակոխ հիւթեղէն մարմինն առ օերաքին, (այլ. առ օերոնէին.) առ արքայից սերովբէին կամ առ հրեշտակս։ Եւ որչափ անհամեմատ է մահկանացու լուծանելի մարմինն տարրեղէն՝ առ վերնական կէնոծին, առ երկնային լուսաւոր մարմինն անեղծական՝ որ ստորայնոցս կենդանութեան է պատճառ։ Այդ՝ յառաջբերեալ օրինակօք զայն կամի ցուցանել, թէ զոր օրինակ իւրաքանչիւր այդոքիկ փոքունք են և ակարք առ իւրեանցն զիմաբաժանեալ, այնպէս և մերոյ մտացս բան և ձգումն չհամեմատի բնաւ երկնաւոր երանական վայելման ընդ։ Քանզի և ըստ տեղւոյն խորհրդածելով, ուրան անդր, որչափ բացակայ և բարձրագոյն քան զերկիր վեցեալ է երանելեացն բնակութի, նոյնչափ, ն նս ֆան զէան գերակայիցն. առաւելագոյն եւս քան զգերակայ իրս, քան ըղթագաւորս և զմեծութիւս, և քան զհրեշտակս իսկ ըստ բնաւոր կատարելութեց նոցա բաղդատեալ, գերազանց ծանուցեալ են որդիքն արքայութեան։

7. Ո՞րտան ֆողէն. Զմին եւեթ յերանելեացն յայնցանէ առից ասանոր 'ի գովեստ, ասել իբր ճաշակ ինչ 'ի փորձ՝ ճանաչել վկայութ մտաց, թէ ո՞րչափ շարակարգին, կամ իբր փողով աղդին, հիւսին, բազմանան Ն յոփնոփաէր յաճախուէն, 'ի բազմապատիկ շատութե, չուանան յէրկարութէն, այսինքն 'ի չուական յերկարութե. կամ 'ի հեռաւոր երկայնութե տեղւոյ. պապուածն 'Ն Նելս ֆանէ. գովասանական բանքն իբրև թեւք

հաստատեալ բանի, իմաստքն են. որ զամենայն վայելչական տեսչի Եկեղեցւոյ 'ի զարդարանս Աջոյն. Եւ առաւել որովհետեւ տեսչի շնորհազարդեալ Մօրն վերնում սիոնի արքայութեն, որ ծնաւ զԱծն մարդացեալ, և նովաւ յորդիս եղ ծնաւ զմեզ ամենայն։ Եւ օրինակին փեսային։ Կատարեծեալ է վերնական գոլ 'ի տեղւոջս փոխանակ ասելոյ՝ և որանին. այսինքն երեւելի և մարմնաւոր բնութեն տեսակաւ երկնեաց՝ ծնաւ զանորակ զաներեւոյթ զանախտ կերպարան Հօր՝ զՈրդին Այ. կամ, անախտաբար ծնաւ զաներեւոյթ կերպարանն։

. 11. Առաջանն կենդանաբար։ Ըստ նմանութեն Աստուծոյն՝ նաև առաջանն մկրտութեն, անախտ արգանդ եկեղեցւոյ, որ 'ի կենսն ծնանի, և փրկագործ է 'ի Տեառն Քսէ հաստատեալ, վերընծայեաց զանհամար ազգս արդարոց՝ ծնունդս հոգևորս՝ միախորհուրդս ըստ զանազան դասուց և կարգաց, 'ի լրումն շինութեն եկեղեցւոյ յերկրի աստ, առ 'ի լինելոյ առաջ պատրաստեալ անմահից հրեշտակաց յերկինս։ Եւ կատարեցաւ զաճայ աստեղն. (սաղմ. Ճիթ. 4։) * Ազգք ազգք Տն ելին յերուսաղէմ, վկայութիւնք իսրայելի ||. Իսկ ոչ եթէ վկայել անդ զպաշտօն յակոբայ ղեւտոն փրկաղէս. որ արդարև տեսար անշահ է։ Կամ բառն ղեւտոն յարկելի է 'ի պաշտօնն. Ելանեն ազգ ազգ յերուսաղէմ ոչ եթէ յատուկ առ 'ի վկայելոյ պիտակ և տեսար օրէնին իսրայէլեան, այլ առ 'ի տեսանել զԱծ մարմնոյ կերպարանաւ։ Ուր և ըստ միաւսում բանի սաղմոսին, արկեալ են աթոռք զատաստանի, ոչ ձեռակերտք մարդոյ զատողութեն, այնպիսի զատողաց՝ որ [illegible] են, խիստ՝ անողոքելիք 'ի զատել, [illegible], կասկածանօք զատին բաղում անգամ քան թէ տեղի տեղեկութեն։ [illegible]. յանձարել զիրաւունս վրիպին, սխալեն, (վր. զատ գրէ, [illegible], [illegible].) և [illegible], մահկանացու գոլով 'ի կենդանութեն միայն առ տրկանեն։ Արդ՝ ոչ այսպիսեաց զատողաց են աթոռքն՝ աթոռքն արկեալք յեկեղեցւոջ, այլ անդ է տեղերաց զատաւորին՝ քննող մտաց, և [illegible] նախագծող, չև ևս եղելոցն յառաջատես։ Եւ ահա սա կարգեաց սահմանեաց աթոռս յեկեղեցւոջ, որոշելով առաքեալս, մարգարէս, աւետարանիչս, հովիւս, վարդապետս եւ։

12. Եւ հաստատեցեր։ Այսպէս ընթեռնու վր. և ընտրելի է, քան թէ ըստ այլ օրն. հաստատեցին եր։ Զայսոսիկ որոշմունս կարգեաց եգ Քս յեկեղեցւոջ, և հաստատեցեր. այսինքն առ հասարակ այլ և ընդ բոլոր եկեղեցիս. մինչև շինուածն կազմեալ 'ի զանազան կարգաց բովանդակեալ՝ միացի 'ի գլուխն Քս։ Այս է բան առաքելոյն. (Եփես. դ. 12. 13.) * 'Ի շինուած մարմնոյն Քսի. մինչև հասցուք ամենեքեան 'ի մի միաբանութի ... 'ի չափ հասակի կատարմանն քսի։ || Արդ՝ 'ի կարգելոց աթոռակալաց եկեղեցւոյ՝ մի է և նա Յակոբ, Հովիւ և Վարդապետ։

13. Առ ոտն բանի։ Յայս հոգեւորական նախապատուութի Հայրապետին՝ յարեցուք և զոր 'ի նախնեացն ըստ մարմնոյ ունի պայծառութի. Իբրև զի գոլով յազգէ պարթեւաց՝ հօրաքեռորդի լուսաւորչին մերոյ, ծագեաց յորդւոցն Քետուրայ՝ որ յԱբրահամէ. ուստի և 'ի գեղեցիկ արմատոյ, 'ի վեհ և 'ի հզօր նախնեաց, 'ի պարագլխեն արդարոց։ 'Ի [illegible] [illegible], յառաջինն իսկ վկայեալ առ Աբրահամ, թէ ազգք և թագաւորք 'ի քէն ելցեն։ (Ծննդ. ԺԷ. 6։) 'Ի յամօրոյ [illegible], 'ի Սեմայ, յԱբրահամէ։ 'Ի նորոգ [illegible]. ոչ իմանի՝ 'ի քրիստոնեայ ծնողաց, այլ՝ 'ի նոր շառաւիղէ պարթեւազանց՝ 'ի Սուրէնեան պահլաւէ, որ առ այլ նախահարսն առի՝ նոր։ [illegible]. 'ի կողմանց եդեմական դրախտին ընտրեալ. որ և արդարանայ՝ թէ՛ 'ի հայաստան համարեցին դրախտն, և թէ 'ի միջագետս տարոց։ 'Ի

կութիւն, և կամ Թերևս 'ի վերայ ախտացելոց ամանց 'ի կեր առել և զխուռնկ բուրվառի: Նշանակ կէնաց, յուսացուցիչ, ձեռնտու կենաց՝ յարժամ ապաւինեցեալ լինէր մահ. և ցանկ շնչական, կենդանին արգելէր կամ խարոց վճռոյ մահու. այսինքն ոչ միայն զվտանգեալսն 'ի մահ ապրեցոյց, այլ և զմերձեցեալսն 'ի մահուանէ կորզեաց 'ի կեանս, զվճռեալ մահու 'նոցա յետս դարձոյց, զհրապարակեցեալ այսու քան զԱհարոնիւ. զի նա զկենդանիսն միայն պահպանեաց, և մեռելոցն չեղև կենդանացուցիչ: Եւ ոչ այսչափ միայն, այլ և բժշկէր զմարմինս՝ յօղեալ ընդ հոգի, կեց ընդ. հոգւոյ ախտացելոցն. այնպէս խնամէր զմարմինսն բժշկութիւն 'ի ցաւոց կամ 'ի մահուանէ, զի և հոգւոցն լինէր բժշկութե. որպէս 'ի բժշկել զխեղ որդին Կեգղոնի՝ բժշկեաց զնա համայն տնովն յազգագոյն մարկինին:

18. Հրաշաշէտւ Գեղով: 'Ի տեսիլ երևելոյն փառաւորեալ հրաշալի լուսով, որպէս երևեցաւ կատարելագործութ Թագաւորին, այլ և մերձ 'ի մահ գոլով տաւոջի աշակերտաց: Այսու նմանօղ մոտեսեալ եղև՝ լուսափայլեալ զխմբք: Զօրաւէտ աղբմանն. զօրացուցիչ 'ի տուրևառ հաղազի կամ շնչոյ. որպէս առ մեռեալ որդի կեգղոնի կաւ տառապանախտան մերձեցոյց 'ի փողս նորա, և փարատեաց զախտն: Ըմպելիք խմելին, զօրացուցիչ քարողողաց բանին, կամ զօրացուցիչ հոգեվարաց: Նշոյլ փրկութէ. այսպիսի նշանագործութեք՝ լուսաւոր միացուած կամ հաղորդութե եղև փրկական շնորհացն Քրի: 'Ի զանազանակ ճառագս բանի: այսպէս փր: խսկ այլ. 'Ի զանազան ճառագս նէրքեղախանի: . . . հայրապէտական դասուն: այլ. չեք հայրապետական:

19. Պարսկական աղանց դիւցազանց: այլ. դիւցազանց աղանց: 'Ի գիցազնոզս ազգաց պարսկականաց՝ դու լուսաւոր շառաւեղ աստուածպաշտութե երևեցար: Սրն Յակոբ 'ի պարթևաց էր. բայց զի տղայ խառն ընդ պարսկաց կայրն աշխարհաւ և ազգութե, յանուն խրեցաց կոչէին: 'Ի հօվուէ որդւոյ: այլ. յամբարմայ: 'Ի քնասրբականացն սերեալ որք էին յաբրահամէ, առ եղև Երկրորդ Յակոբ. և Թէպէտ ոչ 'ի Սահակայ յորդւոյն աւետեաց, բայց նախնոյն Գերադանց, շնորհօքն, առաքինաւ, նշանագործութեք. 'Ի նախնեաց Յակոբ պարծելին խորայելեանքն ըստ մարմնոյ. յերկրորդս՝ ամենայն ազգք՝ որ խոստյէլ նոր կոչեցան: Փրկողին որեան: Աբրահամեան գոլով միջնորդութե քետուրայ, եղև հարազատ, արեւնակից փրկչին Քրի. բայց անճրէծ, ընտիր, գովելի, հաւատարիմ, ոչ զատեալ իբրև ղուլ ազգականցն խորայելեանս: 'Ի վէմն կէնաց, իբրև զնախնեաւն Յակոբ հաստատեալ 'ի վէմին կենդանի Քրի:

20. Յէօթնէակ Քերանոյ: Աշտանակին եօթնաջահեան կամ եօթնջրակրանեան՝ որ 'ի տեսլեան Զաքարիայ. ( Դ. 2. ) յօրինակ առեալ է ժողովոյ հայրապետաց կամ վարդապետաց եկեղեցւոյ. և մի յեօթն քերրանոցն՝ սբն Յակոբ. և եթէ զայլ ես վեց ժամանակակից Հայրապետս խնդրիցեմք 'ի լրումն եօթանցն, ահա Լուսաւորիչն մեր, Սեղբեստրոս, Նիկողայոս, Աղեքսանդր աղեքսանդրացի, Աղեքսանդր կոստանդնուպօլսի, և Աթանաս: Ճրագք աշտանակին էին լուսապատրոյգ, պատրոյգնոցա միշտ լուսաւոր սպիտակ, և ոչ շիջեալ կամ մրոտեալ: Ճաճանչէղ. ( փր: ճաճանչէալ. ) փայլուն: փէրուղջէ, յԱՅ կազմեալ և լուցեալ, և ոչ 'ի մարդկանէ՝ իբրև զճրագս տաճարին: Իւղալիր, յորս ոչ երբեք պակասէր իւղ: անճառադրփէր, որոց ձև և յօրինուած զարմանալի էր, զժուարին 'ի բացատրել. կամ երևեցուցիչք անճառ նմանութե Քրի: Խորախորհուրդ, զազանի խորհրդոց նշանակ, այն է՝ եօթն պարգևաց հոգւոյն սբյ, եօթն խորհրդոց եկեղեցւոյ, լուսաւոր քարոզութե հաւատոց յեօթն դարս աշխարհի:

21 · 'Ի վիմաբեր և աշխատանաւոր։ Երկոքին բառքս զոր ինչ նշանակեն, այսինքն նման վիմի կամ արձանի կանգնեալ, կարծր, անդադրական, անխորտակելի։ Յայտնի նմանաբանեալ քարին առ է՝ որ 'ի նշանակ փրկութեան կամ ազատութեան երեւեցաւ առաջի զօրաբանակին բռն անպատնէն զաքարիայ · ( Զ · 9 · Զ · 10 · ) և էին 'ի նմա եւթն աչք, մի ասին է և Սբն Յակոբ · Մրափէնօղ, անխախտ ակնօղ, նկատօղ անհասանելի և ծածուկ խորհրդոցն նոյ : Որ և առ 'ի հիմն հաստատութեան նորին պարփէրի, այսինքն լինելոյ միշտ անխախտ ակնօղ, շինեաց զվարս բարիս Քրիստոսականս, նմանեալս յոսկի և յարծաթ և յակունս պատուականս, ըստ պօղոսեան նշանագրութեն · այլաբանութեն, ձեւակերպութեն : այլ · շարադրութեն : 'Ի կեր անձինս զառաքելական բանին ( Ա · Կոր · Գ · 10 · 11 · ) յարմարելով 'ի անձինն մարդարքեական · խոր զի վէմ է ինքն Քս եղեալ հիմն, և 'ի նմա աչք՝ վարդապետք եկեղեցւոյ · բայց զի իւրաքանչիւր ուղիղ ուսանիցէ և ուսուցանիցէ, պարտի զգոյշ լինել թէ որպէս շինիցէ և այլն :

22 · Պետ հօտից : Առաջնորդ կրօնաւորաց և մենաստանաւոր հօտից, զորս բազմացուցանէր և խնամէր իբրև զաւակս հոգեւորս : Ուստի առա հօտ, ոչ խմանեն հայրապետք : Երրորդական Էին · յատուկ և ջերմ պաշտօնեայ, զաւանօղ սէր Երրորդութեան, զոլով մի 'ի կանոնադրաց և 'ի սահմանողաց այսր զաւանութեան, այսինքն 'ի հարց ժողովոյն Նիկիոյ, ուր և առաւելու բանի նզովից խոյսա կարեաց զարիոսեան հերձուածողաց այլեւ ընդունելոյ 'ի միութիւն եկեղեցւոյ զշարադրութիւն աբեղ թէպէտև բազում Ջանացաւ նա նենգանօք : 'Ի Ճանանագրացն · տե՛ս · Դ Ճանանագրեցն :

23 · Տարադեայց հովանար : Սբն Յակոբ խոնարհ վարուք և վարդապետութեամբք, և առաջնորդական մեծամեծ գործովք եղև տարադեայց, օրինակ խրատու քրիստոնէական ժողովրդոցս : Եղեն ապաքէն և յայլոց հայրապետաց կամ 'ի սրբազանից արք նշանաւորք սրբութ. և վարուքօք · բայց կամ ծածկեալ անյայտ մնացին, կամ առժամանակ մի եւեթ ծանուցեալ, կամ սակաւուց ժողովրդոց : Իսկ Սբն Յակոբ ոչ այսպէս, ոչ Եղծեալ · ոչ բարձեալ յաշտանակաց, այլ իբր զրով դրոշմեալ : ոչ Թունեալ մոռացմամբ, այլ իբր կենդանի կացեալ, ոչ Ճառեցեալ 'ի միջոյ ժողովրդոց, այլ ընդ նոսա մնացեալ : ոչ լռեալ, ընդ լռութ թողեալ, այլ յայտնեալ 'ի բարեխօսութ և յօրինակ վարուց : ոչ զուգեալ, ոչ ինքն թաքուցանէր զանձն, և ոչ այլք, այլ յայտնեալ : առ ամենեսեին և յամենեցունց : ոչ պարփեալ, իբրև զայլ տարադեայց ինչ մարդկային՝ զոր պատառօք ծածկեն առ նախանձու, զի մի՛ ակնցի յայլոց, և մի՛ զողացի · այլ պարփեալ, ակներև ամենեցուն ցուցեալ, ճառեցեալ : ոչ ամփոփեալ 'ի միում ազգի կամ 'ի տեղւոջ, այլ փարածեալ, ասփռեալ յամենայն ազգս և 'ի տեղիս : ոչ Ճարճատեալ, խնայելով կամ ճշգելով պահեալ ուրեք, այլ Ճարճատեալ · այլոց և տուեալ կամ շնորհեալ թէ ըս վարդապետութ, և թէ ըստ նշխարաց · որպէս 'ի խնդրել հայոց զմասն 'ի սբ նշխարաց նորա՝ անդէն վաղվաղակի շնորհեցաւ : ոչ թաքեալ · ( տե՛ս · օրին · գրէ թաքչեալ · ) ոչ քակեալ 'ի հնութէ ժամանակաց կամ 'ի յաճախ կերպարութէ, որպէս պատահէ նիւթական ինչ տարադեայցի · այլ փնչեալ, որպէս թէ իբրև առանձին ինչ միշտ նորոգեալ : Ո՛չ ունայն, ոչ անգործ կամ անպտուղ մնացեալ, այլ պտղաբերեալ, լցեալ, առատացեալ բարերարութեամբք 'ի պաշտօնեայս իւր, հոգեւոր և մարմնաւոր նպաստս առատապէս մատուցանելով : ոչ ցրեալ, արգելեալ նորա առ ժողովուրդս ոչ ցրեալ մոռացմամբ, այլ ամբարեալ, պահեալ խնամով 'ի պատմութիւնս, յընծայս կամ 'ի մատուցմունս եկեղեցւոյ : Ո՛չ ափոփեալ ·

27. Արբշռնորդ ճահառուրէցան ։ Ընթացք մարդկային վարուցն՝ առ ուղիղ գնալոյ 'ի նպատակ ընտիր և հաճոյական, մանաւանդ 'ի կատարեալ բարի, գեղեցիկ խիծ և վայելչապէս առ 'ի յԱՅ յարմարեալ կարգաւորին, ըստ առակացն. (Ի. 21.) * Առաջի աչաց ԱՅ են ճանապարհք առն. || որպէս և ըստ գաւթայ սաւլոյն. (Սաղմ. ԼԶ. 23.) * 'Ի տե ուղղին գնացք առն, || և թէ երանեալ են անբիծք 'ի ճանապարհի. (ՃԺԸ. 1.) Զառաջին բանն որ յԱռակացն է, ժողովողին ասէ, կամ զի նոյն գրող է երկուցն՝ Սողոմոն, և կմ զի ըստ իմաստիցն կայ և 'ի ժողովողն. (Թ. 1. 2.) * Են արդարք և իմաստունք, և գործք իւրեանց 'ի ձեռին այ են . . . Ամենայն ինչ առաջի երեսաց նորա ։ || Արդ՝ քանզի այս այսպէս է ըստ գրոց, ապա անտարակուսաբար և յայտնապէս վկայեմք, 'ի միտ առնումք զմեր Յակոբայ զհետ [illegible] ղաւարփ [illegible], զընթացս վարուցն 'ի սկզբանէ մինչ 'ի կատարումն՝ առ յԱՅ և առ ԱԾ ուղղեալ. և թէ բաղուկ [illegible] Հօր արմատացուցեալ անդէաց զնա, և ձեռն [illegible] էին, աջոյն հօր Որդւոյ մշակեաց զնա, և Հոգին կենդանի նորոգեաց, 'ի նմա կատարելով խոկապէս կանխասացաբանին ՔՍի՝ առ աշակերտսն ասացեալ. Ես ընտրեալ տնկեցի զձեզ և այլն. (Յոհ. ԺԵ. 16.) և թէ՝ Ես որթ, և դուք ուռ. և հայր իմ մշակ և այլն ։ Եւ [illegible] բնթէան, զայն որ չէ յինքն հաստատեալ, միացեալ, եցոյց զուրկ 'ի պտղաբերութէ լինել ։ (ԺԵ. 4. 5. 6 ։)

28. Ո[illegible] տաղարթաբէր, և անդարագիրն ։ մր. տաղարթարար, զանդարագիրն ։ Ինքն ՔՍ իբրև որթ հաստարմատ. աշակերտքն՝ ուռ տերևաբոյս և ողկուզաբեր, և Հայրն անսահմանն ամենազօրն՝ իբրև երկրագործ խնամօղ ։ Որպիսի ապա պտուղն այնպիսում այգւոյ լինիցի, ածային և յերկնաւոր սեղանոյն միայն ճաշակելի ։

29. 'Ի փանքն կենաց ։ Յիրաւի ապա խոստովանեսցի՝ թէ մեր Սուրբս հաստատեալ միացեալ էր 'ի տունկն կենաց 'ի ՔՍ, բարբռոյն բէրբի, ասաւտ կամ բեղնաւոր 'ի բարիս ։ այլ. բէրի. և մարթ է ասել զոյական առնուլ, այսինքն 'ի բերս բարեաց. և ըստ իմաստիցն այս յաւելուած կարէ յարել թէ առ տունկն կենաց, և թէ առ որդն Յակոբ ։ Յայլ ապ. մեկնաբանութեանս եդեալ է, բարեացն բէրբի ։ Որ և բարգաւաճ արդարութեամբ զծաղիկս շառաւիղի հոգւական ձայնի վարդապետութեան՝ ձգեաց բարձրացոյց 'ի վեր քան զմայրին, քան զօգտային երկինս. և անոր քան զծով, ուր մեծնկամ կոխեցին մարդիկ, և հաշակեցին զանուն նորա ։ 'Ի պտղեանն, 'ի գերեզմանի կալով հողեղէն, փառքս, ընդ բարձրեալոյն ԱՅ միացեալ էր՝ ոչ միայն հոգւովն, այլ և զզօրութեն նորա առնելով յանկերս իւր ։ Այլ և մինչ դեռ կենդանի էր յերկրի անզգաւոր, եղև անմեռելոր, հոգևոր մշտնջենաւոր. զի հոգի եղեալն 'ի ՔՍ մի մեղցի յաւիտեան՝ ասացաւ ։ (Յոհ. ԺԱ. 26 ։) Եւ 'Ի խոհս հուր ։ Թէ և խրթին կենաց կրօնաւորեալ, արժանի դատեցաւ առաջնորդական պատկի ։ Անդադադար, անդէն ոք՝ գաւազան ևեթ առնելով ճգնաւորի, հոգւովն զբաղաւորեալ էր աչխարհս շնորհօք ։

30. Եւ հասարակաց ։ այլ. հասարակացս ։ Ըստ հասարակական կարգնաց բնութեան՝ նմանութեան իբրև զայլ մարդիկ. բայց վարուք և շնորհօք կերպարանակից ՔՍի ։ Եւ սփոփեցս. այլ. 'Ի սփոփեալս ։ Թէպէտ և 'ի տոհմայնոց ասաի էր, բայց նմանեալ անկարօտ հրեշտակաց՝ յաղթող կարեաց մարմնոյ ։ Եւ մատաղ գեղարդիկերաւոր. մր. գեղարդիկերաւոր. բայց ուղիղ ևս ընտրեցաք ըստ այլում ապ. զնել գեղարդիկերաւոր, այսինքն ունող զգեղ կամ զբիծ, արատաւոր, զի այս յարմարի առ գի- մարմաժամանեալն՝ չարաւոր, և խմանի. Թէպէտև մարմնով կամ 'ի մաղ պատեալ բծաւոր էր անաչեմ, բայց նման երկնային մարմնոց՝ անբիծ

բուսաւոր ։ Եւ մոփրանջենդող . կուսակրօն վարուք առանձնացեալ . բայց ոչ անպտուղ 'ի հոգևոր որդւոց՝ զորս ծնաւ վարդապետութք, մկրտութեամբ աւազանին, և ձեռնադրութք ։ Եւ ըստ էրէնայէն . ըստ ամենայն հոգևոր պարգևացն՝ ամենայն ուրեք պատուեալ և հռչակեալ . բայց նա անփոյթ արարեալ մարդկային փառաց՝ զարքայութիւն ԱՅ միայն աւետարանէր ։ Եւ համօրէն ունտփ . այլ . ունտփս . բոլոր մարդկային ազգս՝ բանաւոր միայն է . իսկ նա կրկին հոգւով ըստ եղկայի ճոխացեալ , մարդարէութեամբ և նշանագործութեամբ ։ Եւ այյփ հոյսէրոց . այլք 'ի մարդկանէ իշխանաւորք մեծամեծք՝ 'ի կայսերաց բերեն հրովարտակս . 'ի կայսերաց պատգամաւորին . իսկ սա 'ի վերուստ յերկնից պատգամաւորեալ ։ Կամ , խմացեալ ըստ ընտրութեան յաթոռ եպիսկոպոսական՝ այլք հրովարտակօք կայսերաց կարգեալ լինէին յայս կամ յայն աթոռ . իսկ սա 'ի վերուստ յայտնութեամբ կոչեցեալ յաթոռ ։ Եւ 'ի դատդաւման ։ յեղծանիլ մարմնոյն մահուամբ՝ եղև շէրմաւոր , գերեզմանական , թաղեալ անծանօթ . բայց սքանչելեօք ոսկերացն ցուցանի վկայի՝ լինել գործօնեայ արարչական զօրութեան ԱՅ ։ Եւ Եշոստատղէս , մշտամեր կենօք յերկրի աստ վանգաւոր , նեղեալ անկեալ զանազան վտանգաց . բայց սիրով 'ի Քս միացեալ՝ երկնային ոմն ցուցաւ ։ Եւ մանկի . ըստ մերում բնութե միայն եղև՝ նեղեալ անկեալ կարեաց կամ ախտոյից . բայց բազմապատիկ շնորհացն պատուով և գերազանցութեամբ եղև 'ի բիւրամին՝ բիւրաւորաց եղև ձեռնտու , առաջնորդ , ցանկալի , և օրինակ ։

31 . Տէրազէս փան Եէ մարդկազէս ։ այլ ազգ . մարդկաէքար ։ Իրաւասար՝ և ոչ յաւելորդս ինչ գտանեցի աստանօր զայսքան հատուածս կամ ձևս բանից . քանզի զկնովին ճոխացաւ այսպիսիւք սքն Յակոբ՝ առաւել իշխանաւոր , քան թէ եղև մարդ ծառայական . 'ի վարդապետել և 'ի քարոզել , 'ի հրամայել և 'ի սաստել . 'ի հրաշագործել յառեանս իշխանաց , 'ի հռչակ հարկանել ընդ ամենայն կողմն , յայսմ ամենայնի առաւել տիրական եղանակ երևէր 'ի նմա՝ քան թէ մարդոյ տկարի և աղաչաւորի . որպէս և 'ի գործոց անտի նորա ասացաք՝ զի կեանք և մահ , առողջութի և լուսաւորութի , ամք կենաց մարդկան , դիմաց պատկեր . օրհնութի և անէծք , հող և ջուր , ամենայն ախտոյից խնդիր , և գերագաւ պետութիք անգամ ընդ իշխանութեամբ նորա գոգցես հնազանդեալ էին ։ Զայսոսիկ ահա ընդարձակեալ տեսանես 'ի յաջորդսդ ։

32 . Զմն մահացայ ։ Զաղքատն որ մեռեալ ձևացաւ առ 'ի զողորմութի առնուլ , արար զի մեռաւ իսկապէս . զոր դարձեալ կենդանացոյց 'ի խոստովանել ընկերին զհարբէութին ։ Եւ այսու զՆՆմն Թեծի , զՊետրոսի հրաշսն կատարեաց , 'ի տալ նորա մահ՝ անանիայ խորոզի կնաւն հանդերձ , և կեանս՝ Տաբիթայ բարեգործի ։ Կամ , հրաշս ասէ՝ զքայլելն սքյն Յակոբայ 'ի վերայ գետոյն՝ ըստ նմանութե պետրոսի 'ի վերայ ծովուն ։ Ոմանց յերկարեաց զկեանս՝ տալով առողջութի . և այլոց համառօտեաց զկեանս , որպէս զմանաճրհէին և զպխուխն ։ Այլև նշան զարմանալի գործեաց յանամօթ աղջկունսն՝ որք զնա ծաղր արարին . զի արար զնոսա եղև պառաւեալս , զսեաւ հերս նոցա փոխեալ 'ի սպիտակս . փԳէղաջայ . մր . փԳէղ Էջայ զլերբ գէմս նոցա , ամօթով ծածկելով քան թէ քօղով ։

33 . ԵԲէ անէծ ։ Յորժամ արդար սաստիւք անէծս արձակեաց , հատանանեցաւ կատարեցաւ անվրէպ . որպէս յանիծանելն զգաւառ Արշարունեաց . կամ յորժամ ցամաքել ասաց աղբերն՝ առ որով լուանային անպարկեշտ աղջկունքն ։ ԵԲէ նոժէրէաց ։ ԵԹէ մատոյց պատարագս , ՃՆՃԷէէջաւ , ընդունելի եղև , որպէս 'ի յարուցանել զորդին կեդրոնի՝ պատարագեաց նախ , և այնու յարոյց ։ ԵԲէ Էանս Էչ . ԵԹէ ասաց բանս

քինչ, հաստատեցաւ այն. որպէս յասել աշխարհագրաց ըստ կատակս թէ փուշ անկեալք, և ոչն եւս պատասխանի՝ եղիցի լաւ բանի ձեռում, անգէն տունկքն 'ի փուշս դարձան : Ընդ Երէխայնոյն : Ընկերակից եղեհրեշտակաց՝ որք 'ի տաղմանել նորա և 'ի վարդապետել մերձ առ նմա կային. որպէս եւեւս մեծն Կոստանդիանոս : Զեւնյրոսէ : Զթանձրութի կամ զնեղքոյս հողոյ եհերձ պատառեաց, բաժանեալ զայն նշանաւ խաչին, առաւել հրաշալի քան թէ մովսէսի զծովն բաժանել զաւազանաւն. զի անդ լոյծ բնութիւն բաժանէր, իսկ աստանօր անդամակաղ խորութիւն գետնի պատառեալ, ապշեցուս բղխեաց յանձինուրանեզուոյ. այս գործեցաւ յերկրին աշտուներաց կամ ալձեաց, կանգնելով անաանօր երկրասատան վէմս :

34. Բարեպաշտեհ անուն : Յաղթողակ և ցանկալի գլխաւոր ժամանակքն՝ յորում եկեաց սրբն Յակոբ ; խաղաղութի գոլով եկեղեցւոյ, և ազգաց բարեաց գալ 'ի քրիստոնէութիւն, և յանձնութիւն ածապետ հայրապետաց. և առ նովաւ մեծն արքայից Կոստանդիանոս, զոր և օրհնեաց զնելով զաղն 'ի գլուխ նորա, թէպէտև տեսանէր զնա պատկեալ 'ի հրեշտակաց. նիզքն իբրև լաւ կամ զօրաւոր հոգեւորական իշխանութիւն՝ ձեռն մասոյց կայսերն իբրև ակապի. և 'ի նմանէ փեսաուրեցաւ. տեսապայծառացեալ՝ հրեշտակակերպ տեսլեամբ : Արդ վասն և ծաղկեցոր, Կոստանդիանոս անուան կամ խնամատար մարդկայինն քաղաքական կենաց և իշխանութիւն՝ կատարեաց յամենայնի զկամս պաշտօնէին Այ, մեծ եւս համարեալ հնազանդել նմա՝ քան տիեզերաց լինել հրամանատու :

35. 'Ի փառաւորն ծաղկեն : այլ. Դ փառաւոր ծաղկեն : Տեսանելով զնյն Յակոբայ փակեալ զանձն 'ի տառապանակի մարմնոյն, կամ իբրև մարմին ամփոփեալ 'ի նոյնան տապանի, ջանացաւ տարրեցուցանել զհոգին յասփէտս, յաշխարհական ամբոխմանց և 'ի վտանգաց : Քանզի յուշ ածեալ զապրեցուցիչ լաստափայտն Նոյեան՝ յորում սակաւք եւեթ ոգիք ութ՝ ապրեցան յանբաւ մարդկանէ, և 'ի միա առեալ զխորհուրդ իրացն, յանձն իւր եբեւեցոյց : Իսկ թէ որ է խորհուրդն, այն թէ՝ աշխարհ ամենայնիւ ծովու նման է, և թէ 'ի հեղձուցիչ ծփմանց աշխարհի նա միայն ապրի, որ պատսպարեսցի 'ի տապանի իբրև զնոյեանն : Զայս եդեալ մերոյ ներբողաբանիս, սկսանի առաս վայելուչ ընդարձակութիւն, և ուրեք ուրեք մթին տասցուածով, առաջի դնել զնմանութիւն ծովու և ծովայնոց առ աշխարհս մարդ՝ և առ մարդկայինս. և զայս առնէ 'ի համարն ԺԵ. ԺԶ. ԺԷ :

36. Զաշխարհ նաւայովքս : Տպաւորեցոյց, այսինքն նկարագրեալ առաջնորդեաց սրբն Յակոբ, թէ աշխարհս կենցաղական՝ իւրայլին համադամանօք կամ բերմամբք պսպղէր ծովու է, այսինքն պատկերեալ 'ի ծովէ. ծովու համգոյն բաղմածուփ, ոչ ջրային ալեօք, այլ զանազան պատահմամբք յուզեալ, ախտիւք բնաւորականօք, մեղօք պղտորեալ. յեղանակօք, փոփոխմամբ ժամանակի կամ հասակի այլայլեալ. և բազում գիմամարտ անցիւք շփոթեալ : Զայս՝ եթէ 'ի պատկերին կամիցիս տեսանել, մատիր կաց մօտ 'ի ծով ալէկոծեալ : Տես զնաւորդ յալեաց անտի տո յաղթէ, 'ի վերայ գլորանելով, և տո պարփի, յաղթի 'ի ներքոյ ցածնլով. տո փախչի, տո արշաւէ ընթանայ յանդադարաւ ոտհման, 'ի ցամաքն կոյս յափուռս, և իսկոյն յետս ընկրկի. իբրև գունդ զօրաց կենդանականաց պատահէն միմեանց բաղխելով, և վաղվաղակի ցրուելն, զատանելն 'ի միմեանց, լուծեալ ցածնուն : Որպէս ամբոխ իմն զանազան ազգաց խառնելոց այսր անդր խուռնապեալք, բարբառ՝ աղաղակ՝ խնդախուռն, բայց ոչ շունչ 'ի նոսա, ոչ յօդաւոր ձայն, ոչ խորհուրդ.

յայս առնէ զանարգութիւն կամ զնուաստութիւն ։ Մեծն 'ի ծովուն ։ Ձուկն մեծ ձկանցն 'ի փոքր նման ձուկն. կամ ընդարձակ մասն ինչ ծովու ձկանցն 'ի ծովակն ըստ ալէկոծմանն, և ըստ ընթացից ջուրց ։ Կամ, որչափ և փոքր ինչ իցէ երևեալն 'ի ծովէ՝ զմեծ ինչ ցուցանէ. քանզի ոչ կարծի բնաւ թէ 'ի լոյծ և յանդորր տարրէ ջրոյ այնպիսի ինչ ծնանիցի. ժժմունք, և սողունք մանունք, և պէսպէս խխունջք ծովային՝ առաւել զարմանս բերեն քան զգազանաքայինս ։ Եւ ծովն Ովկիանու. գունդնաքեալ ինչ զառաւելագոյն պարունակէ, առնի շուրջ զերկրաւ. իմն, մարդն փոքր և գունդնաքեալ՝ զծով մեծ և ընդարձակ շուրջ զերկրաւ ունի նաւակաւ. գոյգն լաստիւ շրջեալ պատի զտարածութիւն ծովու, ըստ բանի իմաստութեն. (Ժղ. 5 ։)

40. Հզօրն յանկարծէն ։ այլ օրին. յանկածէն. բայց ուղիղ է անկարծ, որ յայլ գիրս ևս նշանակէ՝ անարգ, նուաստ, ոչ կարծեալ ինչ ։ Յայսմ բանէ համեմատութեն զնի ընդ ցամաք և ընդ ծով ։ Ցամաքն զետին՝ որ հզօրն է անդութեամբ և անշարժութեամբ, պատկառէ յանարգ 'ի լոյծ և 'ի շարժուն ծովէ ։ և վէհն, ցամաք՝ որ ըստ դրից բարձր է քան զծով խոնարհագոյն, բազում անգամ ընդ ոտիւք նորա անկանի ։ Այսպէս ուժգինն, ցամաք զօրաւորն տեղի յարդարէ տաղտուկ, այսինքն կակուղ, մեղմ և թոյլ ջրոյն, և առանց կռուոյ 'ի խոյսաց հեռքեն, հեռացեալ մեկնին 'ի միմեանց ։ Աւասցեալքս յայտնի են 'ի յուզմունս կամ յածելութեն ծովու. յորժամ զայրացեալ զեղացեալ ալեացն, կամ 'ի մակընթացեալ ջուրցն, կոխեն զցամաքն, և առաս ցածուցեալ 'ի բաց գնան ։ Մարթ է այլազգ ևս առնուլ զբանս 'ի վերայ ծովու և մարդոյ, հզօր և վեհ զծով կոչելով առ ըս բնութեն ջուրցն և ընդարձակութեն ։ Ահագինն այն ծով անկանծէ 'ի ոտս մարդոյ, և ընդ նորա ոտիւք անկանի՝ ճարտարութեամբ ընդ ամենի ալիս ճանապարհ առնելով փոքր տախտակաւ. որով աստուծոյն այն ասպր լինի ձեռնելի մարդոյ. և առանց մարտի կռուոյ գնայ իւրաքանչիւր 'ի բաց, ծովն յիւր դող, և մարդ 'ի նաւահանգիստ ։ Եւ են թարգմանչքն ։ Երկիր և ծով այսպիսի համագամանօք և այլևս գազանի յատկութեամբ հեռացեալ զատուցեալ են յամենից բաժնից. այսինքն կամ ինքեանք չունին առ իրեարս ընտանութեն ինչ անարգ, կամ մարդիկ չկարեն լինել նոքօք զամենայն որբ ըղձանամ. կամ որչափ այլ ևս ցանկամ մարդիկ և ջանամ իմանալ տեղեկանալ համագամանց երկրի և ծովու, արգեանց նոցա շարժմանցն, փոփոխմանց, և դրից, ոչ կարեն հասու լինել բովանդակ պատճառացն և կանոնաց և համեմատութեն. այլ գտանեն զայնս հեռացեալս 'ի հրաշիցն ծայրս, յոյժ հրաշալիս, և անհասանելիս բնաւոր քննութե. յաջորդօքն բացատրէ զհրաշալիսն առացեալ ։

41. Ծնող անձրևոյն ։ Այս բանք անտրոշապար թուին խօսել զցամաքէ և զծովէ. բայց կարգ ատացուածոցն առաւել զցամաք ցուցանէ. զի ուրոյն առնու զծով յետոյ յաւելն, են և 'ի ծովու և այլն ։ Երկիր կամ ցամաքն առէ՝ անկենդանի ծնող է շնչաւորաց, հոգւոց փնօքինեցելոց, որք հողով են շաղխապեալ ։ Եւ է մայր, որ զի՞ն հայրաւոր տարրոց, զծածկեալսն 'ի ծոցի իւրում 'ի բազում զարուց հետէ, կամ 'ի սկզբանէ արարչութե՝ արտադրէ 'ի ... զայս եթէ առցուք ըստ բնական արդիւնաւորութեն, իմանի՝ 'ի փոքր ժամանակի յառաջ բերէ ։ Բայց իմացեալ զմարդկային մարմինս, զթաղեալսն 'ի բազում ժամանակաց արտաքս բերէ յանկարծ յարութեամբ ։ Եւ Էպիփանոսին. այլ օրին. Էպիփանոսի ։ Աւժամանակեայ արդիւնաւորութեամբ, կամ զշնչաւորսն ծննդագործելով, որ է յաւիտենիս այսորիկ, ուսուցանէ զերկնայինսն, 'ի մէտ առնուլ զհոգևորսն ։ և առ ... առ հանդեր-

մարդկան է ծով խորովքն կենդանեաց. զի որպէս անդնդային ծովակա-նաց ալեաւն՝ գլխաւորն լեւիաթան խաղայ ընդ այլոց կիտից, ըստ նորա օրինակին և սատանայ խաղայ ընդ մըրաւէր ագֆանաաբէն. ընդ մերում բնութեան 'ի դրախտին. և միշտ նշանակեալ ազգէ, զի կուցանէ կամ նեղ-գործէ յայտնապէս զաղանդաւոր զի եւր մոլորեցուցիչ պատրանօք 'ի ընճէք ուծգէն, 'ի ծէճէ ախործ: այսպէս փր. այլ առ. ընճէն ուծգէն, ծընճէ ալխոյծ: Առաջինն յարմար է բանիս. այսինքն 'ի շնչել ծովու կամ ցամաքի ուժգին հողմով, կամ 'ի փչելն մեղմ և ախորժական օդով, ցուցանէին հնարք սատանայի՝ զի կամ ահարկուս մոլորեցուցանէ զմար-դիկ, և կամ հրապուրանօք հեշտալեաց. դժուարին և դառն ցուցանէ զճգնաւորութիւն, դիւրին և անուշակ՝ զմարմնաւորութիւն. կամ, առ այս ոք բանիւք ծանր փորձութեամբք, և առ այն՝ հեզանիւ ամբք փաղաքշա-նօք: Նմանեալ է այսու ցուլան ատփեղոց, որպէս և ակերն անուանեաց զնա, * աւանէլի զսատանայ անկեալ յերկնից իբրև զփայլակն. || (Ղուկ. Ժ. 18.) կամ ըստ միւսումն. Առաւեալ անկցին յերկնից: (Մատ. ԻԴ. 29.) զի զօրէն փայլական կամ աստեղ լուսաւոր է, զուարթացու-ցանէ՝ հեշտալի իրօք, այլ 'ի ներքս դառնացուցանէ, Թիւմաւորէ, ըստ բանի յայտն. Ը. 11, անուան աստեղն՝ դառնութիւն:

45. Ծանոսդա խոխողէս: Առաջեւելովքս՝ թէ և համառօտիւք, բայց ցուցաւ որպէս համանիէրդութէ Երէտանչէրոցն, համանմանութիւն կամ կցորդութիւն երկնի և ծովու, առ մի կէրդորան, 'ի մի խորհուրդ կամ 'ի նշանակութիւն մարմնոյ մերոյ և աշխարհի և սատանայի: Եւ թէպէտ ը առաջելումդ՝ խաղայ սատանայ ընդ մարդկան պատրանօք և փորձութեամբք, սակայն և ինքն լինի 'ի խաղս և 'ի ծաղր. զի կածառք գերակայիցն հրեշ-տակաց ընդդահկէն, նուածեն, ձգձգեն՝ որպէս զվիշապն յօդաւոր, ըղ-մարմնական զլեւիաթանն, ընդ պորղաննէն, նոյնպէս զանմարմինն զսա-տանայ, խափանելով կամ 'ի յայտ ածելով զպատրանս նորա, ապա առ-նելով կամ օգնելով մարդկան ընդդէմ սատանայի: Որով ընդ վերնումն դասու հրեշտակաց՝ և ծարծաւոր ծաւրոցն ծարփէկ, մաքրեալքն 'ի մարդ-կանէ զինուորեալք ԱՅ, ընծանէաւ չօշափէն, 'ի յայտ բերեալ խայտառա-կանեն զհէին խարդախանս սատանայի՝ որովք որսայրն 'ի մահ, և զսուր սատանայն ԱՅ 'ի վերայ ածեալ կամակոր այնմ վիշապի, նկուն առնեն զնա իբրև ձագ մի անզօր, ըստ բանից մարգարէից:

46. Անչէն հանդերշանոց: Արդ՝ ահա և նախատպատկեն 'ի մաքրեցե-լոց անտի սրբո Յակոբ՝ այսպիսի հոգևոր հանդերձանօք կամ զինուք ա-մուր վառեալ կամ սպառազինեալ, անկապտելի և անյաղթելի ամրա-ցեալ, ընդդէմ սատանայի և հնարից նորա ևն: Ասա փր. ընթեանու. այդախեա նեն պադքրտափուտէ . . . կուաա ղառնաշ: իսկ այլ. պարբտապանէ անչէն հանդերշանոց կառալարեալ: Եւ թէպէտ այսպէս սպառազինեալ էր նա, ներխաւր յեղափակի, սակայն այս ասէ 'ի լրումն իմաստիցն. զի զհետ եղև, խնդրեալ իբրև յիշատակարան ինչ օրհնութէ կուտաՆէրակնէ. այսինքն չափաւոր օրհնութեան կամ նղաւոց՝ ընախնակէրփ, զառաջին չէ-նեալ տախտակն ծովու, զապաւէնն սպր ապրեցան կենդանիքն ամէ կ-անէկք. իբրև զհին կամ հաստատուն յիշատակարան հաւուցն անցելոց, նախահարցն կամ ժամանակացն անցելոց: Ասելն՝ կուտաւոր օրհնու-թե, իմանի թէ ըստ պիտանութե նոյեան տապանին՝ որ 'ի մարմնաւոր ազատութե միայն շինեցաւ, և թէ ըստ կիրառութե սրբոյն Յակոբայ, որ 'ի մանաւոր բժշկութեան 'ի կիր արկանէր զմասն տապանին:

47. Վառն որ 'ն ծածանակէն: Պատճառ 'ի խնդրել լինելոյ սրբոյն Յակո-բայ նոյեան տապանին՝ էր հաստատութե անցից Ջրհեղեղին. զոր ոմանք առ այնու ժամանակաւ յառաւելս համարեցան, փակեալ զսա ... հա-

26. Կղզւոյն Նո յոյն ։ մի ձեռ. Գոլոյն ։ այլ ձեռ. Չենդանի յոյն Նո ահաւոր ։ Անուանն հոգի՝ է գերագոյնից և ձայն կենդանի, ոչ միայն երբեք նշանակէ չ ... այլ զի ընդհանրապէս գերիվերոյ է քան զամենայն անուն նիւթականաց. զի յայտարար է նորութեան, թեթևութեան, մշտաշարժ ազդեցութեան, որով և կենդանութեան նշանակէ ։ Ահաւոր մեծանուն, զոր ինքն խոստութիւն, զօրութիւն՝ գերագոյնից անուան, երկրպագելի. բայց յանկարծ բարութեան՝ հոգի հեղուն է ես, և ոչ բարկութեան էն ։ չոտի խոնարհութ, այսինքն տիրուհւոյ. կամ խոկապես կռութ, որ 'ի քեն համագերձեցաւ կամ պատրաստեցաւ 'ի ծննդեան զՍրբեն ... ։ փերծոր. մի ձեռ. ծոր ։ . . . ծաղկեղական. մի ձեռ. ծաղկական. մաղթանաց մերոյութեան կարապետի, ձեռնադրողի համագոյակիցն ... մի ձեռ. համագիր ... ։ . . . մարգարէին. ըսկզբնայն խնամին՝ հայցուածովք մարդակրան զատուց կամ ժողովոյ մանձանց ։

---

## Նորին Գանձ 'ի սուրբ Եկեղեցի ։

ԳԱՆՁ [1] բարձրալի բարութեան մեծին՝ գտեալ և ծածկեալ ։ [2] Լրուէ անթերի՝ բերող համայնից. և դու ինքն 'ի բնաւս ։ Որ [3] ոչ իսկ տանէր երկինն վերին՝ անվայր քո խորան՝ եթերն անմատոյց, անջրպետ ընդ քեզ զարմից հրանիւթից, ցուցար սահմանեալ անքանակ պատկեր. [4] գթութեանց խնամոց 'ի յաթոռ փառաց՝ թագաւոր բարձանց՝ 'ի վեր քան զբան ։ Ահա ընկալցիս զաղերս աղօթից՝ յարմարեալ խնկօք յայս յարկ նուիրեալ սբ եկեղեցի, աղաչեմք ։

Բախձան պերճալի՝ [5] կոչումն ընտանի՝ ձայն ախորժելի՝ անպարագրելի ։ Որ 'ի թևս թեթևս հողմային օդով ամենավստահ կառավարութեամբ բազմեալ տիրապէս՝ արկեր քեզ գահոյս յառակս խորհրդոյ աւետեաց ելլցն լրման՝ ածօղդ 'ի յարմար զիրին կատարումն՝ նկատեալ զվայր քոյին բնակութեան ։ Յաւէտ անջրպետ՝ և յոգիս մեր միշտ ։ Ո՛ումն աթոռ՝ և զայլն պատուանդան ։ Տեղի լուսատարր ազանց բոլորից ։ Ահա ընկալցիս ։

Իմաստագործ անսխալաստեղծ՝ պատշաճակերտ կազմիչ համայնից ։ Որ [6] յսկզբնաձեռն յառաջակաւոյց՝ զայս կերպարան հրաշազարդ իրի համձեցար ըն-

նել։ Նախ զբանակն՝ ապա զբազմեալն։ Զգեցեր զերկին՝ և անդ զերկնայինսն։ Հաստատեցեր զադին՝ և զկնի զԱդամ։ Օ յօդուած տապանին՝ և ՚ի նմա զապրեալսն։ [7] Տաղաւար նախնւոյ հիւրընկալութեն աբրահամեան։ Օծեալ արձան և տուն այ։ Սանդուղք մեր ելից և հետք իջման։ Ահարոնեան վրան պաշտաման։ Կտակ մատենի, դատիչ խօսողաց՝ բարձր գաքիվին ընտրութե։ Մեծին սողովմոնի՝ տաճար լուսակիր, լեառն տն և տուն այ։ Ամբարձեալ նշան յազգս հեռաւորս՝ փողով ձայնարկու կոչման աշխարհի՝ ըստ տեսանողացն զանձառ քո խորհուրդ։ Ահա ընկալցիս։

Գեղապաճոյճ [8] աշտարակ կանգնեալ, երկաթեղէն սիւն անկործանելի, և պատուար ամուր եդեալ պղնձի։ Ոսկիաձոյլ աշտանակ լուսոյ։ [9] Կղզի պարփակեալ ալեօք ամլութե։ Անփոփոխելի երկրորդտեսութծին եզեկիելի։ [10] Նոր հրաւիրմամբ եկեալ ՚ի ծուրայ. ՚ի խնդիր իմաստից դիմեալ ՚ի սաբայ. յատարասերմ ազանց քանանու. յօժարընթաց ՚ի բաբելոնէ։ [11] Խոցեալ ոգի սիրով փեսային։ Գուռն հիւսեալ մայրատախտակօք։ Քարինք բիւրեղք Է կալկեհանաց։ Պաղպաջունք արփիանկարք՝ մահարձանօք արծաթեղինօք։ Քաղաք կենդանի շինեալ այ։ Հոգւոյ ազդեցմամբն խօսեալ Յոհի։ Լեառն պարարտ՝ մածեալ սրբութբ։ Ահա ընկալցիս։

Ուրախ լեր դշխոյ հարսն պանծալի՝ պսակաւոր [12] մեծ զարմանուհի։ Բազմազաւակ կուսութբ բերկրեալ։ Որ ՚ի սկզբան անդ գծագրեցար, և աստ ՚ի նորումս համդերձեցար՝ ոսկիափայլ շքնաղ գոյութբ։ Յեղանակաւ կոչմանն հագարու՝ փոխեալ ազախնոյն ՚ի սինայէ ՚ի սաղիմ։ Եկեալ ինքնին անդրանիկն հօր՝ առնուլ զքեզ կցորդ ընդ լքեցելոյ ազինն յակոբայ։ Արկեալ քեզ հիմունս պաշտելւոյ՝ զառաքելոցն գումարութիս։ Աստեղանիշ լուսաւորութբ բոցաճաճանչ շքով պաճուճեալ։ Յարգանդ մաքուր և ՚ի ծնունդս անախտս՝ երկնեալ անդստին ժառանգս այ։ Որ է օրինակ առձեռն՝ յուսով ակնկալութեան զխաղաղութի գտեալ իսկապէս։ Ահա ընկալցիս։

Բաքունն լուսոյ հզօր թագաւոր փեսայն երկնա-

ւոր՝ անճառ խորհրդով ՚ի հանդէս խնճոյից պարու՝ կարգեաց քեզ [13] կանոնս անփոփոխելիս։ Բազմամասնեայ օրինակ կերպից ՚ի նոյն տեսուչ բոլոր էութե՟ ՚ի կերպարանս բիւրատեսակս առ ՚ի չինուած կաթողիկէի։ Հասակ տոհմից զանկազանութե՟ ՚ի մի ժողովող հնազանդութե՟։ Տուն և տեղի և յարկ ծածկութի։ Ճարակ տօթոյ՝ և վէմ օգնականի։ Մարմնագոյից հոգիածիր։ Օ՟ծ ընդ մարդկան ընտանեցուցիչ։ Համանունակ ազանց կուտելոց։ Յոյս քաւութե՟ պարտաւորելոց։ Նախացուցակ համարձակելոց։ Կատարելոց անձանց խմբարան։ Ահա ընկալցիս։

Իմաստութե՟ն հօր բնակութի [14] եօթնաստեղեան սեամբք կառուցեալ։ Յորում օրհնեալն պատարագի ՚ի սպանդ կամաց ճաշակման երկնաւոր հացին՝ ՚ի գահաւորակ ս՟քյ սեղանոյն։ Կենաց մանանայն և գառն երկնաւոր՝ որ բառնայ զմեղս կենդանեաց և ննջեցելոց։ Նոյն ինքն ամենայն և յամենայնի՝ զենումն մեծ քան զհաբելին։ Որ զցրուեալսն տնօրինէ յանբանադատ եկաւորութին։ ՚Ի գիրկս ստեանց սիրով քաղցրութե՟ կոչէ ձեռամբ յամրոցն անմատոյց՝ փախուցելոցն պատսպարան։ ՚Ի վերնայարկ սրահն հոգեկիր՝ ուր զաշակերտսն զարմանագրեաց։ Յորում եղիցին կարգեալք զօրութե՟ գահերիցութիք վերադիտողաց. ՚ի պատիւ աւուրս քո ուրախացեալք՝ [15] ունողք անկեան անբծացն պարու։ Օ՟հայրապետն մեր՝ եպիսկոպոսօք՝ քահանայիւք և սարկաւագօք։ Օ՟վարդապետս՝ դպրօք և հոգիապայծառ վարժապետական շնորհիւ։ Օ՟թագաւորն մեր իւրովք զաւակօք, և որք ընդ նովաւ են իշխանութիք, պետութիք և զինուորութիք՝ հարազատ սիրով օրհնեալ յամենից։ Ահա յիշեսցես և ողորմեսցիս հոգւոցն հանգուցելոց յուսով յարութեան. խնդրեմք։

Եւ ես առաւել զյորդորութի՟ սիրոյ։

Բոտել [16] վերստին զմերժեալսն առ ՚ի քէն՝ միջնորդութե՟ բազմելոցն ՚ի քեզ՝ աղաչեմք։

Գտեալ ակն [17] պատուական մարգարտի անճառ ներգործութե՟ յաշխարհիս ծովու՝ Մարիամ ս՟բ ա՟ծածին։ Դուստր լուսոյ և մայր սիօ՟նի։ Անձեռագործ հիման հաւատոյ ճշմարիտ պատկեր։ Որոյ այսօր օրհ-

նակի անուամբ օծեալ կնքեցար ։ Հարսնարան միոյ բանին մարմնացելոյդ առ 'ի քէն ա̃յ ։ Բարեխօս[18] ը̃ քեզ ընկալցիս առ 'ի հաշտութի̃ պարտաւորելոցս՝ զշառաւիղն անմահից կենաց զկարապետն կոչման ս̃ց , և զպսակն մարտիրոսաց , առաքելովք և մարգարէիւք։ Եւ որ մերն է Լուսաւորիչ՝ հանդերձ միանձամբք ճգնաւորօք ․ որք են ժառանգք ա̃յ՝ ծնեալք յորդեգրութի̃ ս̃բ աւազանաւն՝ անանջրպետ հոգետոհմութ̃ ։ Յորում[19] կրկին հայցեսցես նորոգել ըզփոքրն 'ի մեծ լայնութի̃ փառաց՝ անպարունակ բացարձակութ̃ զմայրն մաքուր զաւակօք հանդերձ՝ ուխտիւք պսակելովք յայնմ առագաստի յաւուր ահաւոր երևման մեծիդ ա̃յ։ Եւ այժմ ողորմեաց մեզ տէր ա̃ծ մեր՝ ըստ մեծի ողորմութե̃ քում ։

---

## Ծանօթ․ 'ի Գանձս Նարեկացւոյ ։

1․ Բողջյալն բուրումն ծծին ։ մի ձեռ․ գանձ պատուական ծծին ։ Որ՛դ զանձ ցանկալի՝ ոչ մասնաւոր ինչ բարւոյ , ոչ ոսկւոյ կամ արծաթոյ կամ ականց , այլ ծայրագոյն և անբաւ բարութե̃ ։ Գտեալ և ծածկեալ զտեալ 'ի հաւատացելոց , և ծածկեալ յանհաւատից ։ Կամ , զտեալ հաւատովք , և ծածկեալ տեսութ̃ ։ Կամ , չափաւոր ծանօթութ̃ զտեալ , բայց ըստ էութե̃ և անհասութ̃ ծածկեալ ։ ․ ․ ․ Գրեալ 'ի զանձս , զի դէմք բանիցն առ Ած են՝ և ոչ առ Եկեղեցի՝ յերիս առաջին տունսն , Գանձ բաղձալի , Բախճան պերճալի , Իմաստագործ անտեսալատեղծ , ուր 'ի կատարածին ևեթ կան բանք պատշաճեալք առ եկեղեցի ։ Իսկ 'ի չորրորդ տանէ և անդր առ եկեղեցի հային դէմք բանին ։

2․ Լրութ̃ անեզերի ։ Լիութիւն աննուազելի․ թէ՛ և առատութեամբ ընուս զպարգևածս , այլ 'ի քեզ ոչ թերանայ բնաւ ։ մի ձեռ․ լրութիւն անտեղի , և մարթ է իմանալ՝ ոչ փակեալ 'ի տեղւոջ․ ոչ այնպիսի լրութե̃ որպէս թէ զանօթ ինչ կամ զտեղի լնուցու ։ Բերող համայնից , տարող կամ կրող 'ի քում զօրութե̃ զամենայն ինչ․ և դու ինքն․ մի ձեռ․ ինքնին․ բայց և դու ինքնութ̃ կաս 'ի ներքս յամենայն ինչս․ պարփակիչ ամենայնի , և պարփակեալ յամենայնէ ։

3․ Զոր ոչ նոյն տանէր ։ Դու զոր ոչ տանէր յինքեան երկինն վերին , անձայր տօ նորան , անչափելի քո սեպհական խորան , որ է Եբէէրն անմափոյց , հրեղէն վայր անմատչելի մարմնաւորաց ։ անջրպետ ընդ մեզ , որ և է խորոց ընդ մէջ քո և զարմից հրեշտակաց , դու այդպիսիդ ցուցար սահմանեալ կամ ամփոփեալ 'ի յէքս , կամ ցուցար սահմանեալ մարդեղութ̃ , անփանոլ պարփակէր , անչափելի կամ անպարագծելի խակութե̃ ։ Բայց աստ մի ձեռ․ այլև լուծմունքն ընթեռնուն , անանջրպետն ընդ մեզ և զարմից․ և մեկնի անդ՝ անորիշ 'ի հրամանութիցն ցուցար սահմանեալ , Ը որում ասի՝ և սերովբէք կային շուրջ զնովաւ․ բայց անե̃

տրկէ անդ և զկիւան՝ անշրջելիք ։ Ըստ կարգի մնացին , այլև ըստ ձեռ · ընտրեցայք գնել անփական պտղիներ · բայց զպտղիներն մարթ է տալ և ՚ի յաջորդն , պտղիէր Գրատսէնց ։

4 · Գրատսէնց խնամոց ։ Դուն եւս թագաւորութ բարձրեալ՝ բազմեալ յանթառ փառաց , բայց և գթութեց խնամոց , այսինքն լի գթալք , ամենախնամ , որ և ՚ի վեր է քան զամենայն բան , այսինքն եթէ մեծութիւնք , եթէ գթութիք ։ Ընկալցի՛ս զաղօթս յորդորեալ խնկօք · մի ձեռ · խնամոցն ։

5 · Կոլլածիօնի ընդանի ։ Պէսպէս կոչմամբ բնտանի մարդկան եղեալ , երբեմն բանխօսան կամ խորախոութե ընդ ամենայն բարութե , բայց միշտ մեծաւ անպարագրելի , անբովանդակելի խնկութե և անհասութե ։ Որ ՚ի բնո ։ Ամենարկէ զանսփակ եղբլեալի · գլ · ա · յորում հոգի վերացեալ գայր ՚ի հիւսիսոյ · և ՚ի վերայ ամպոյն կամ աթոռոյ բազմեալ նմանութիւն կերպարանաց մարդոյ ։ Արդ դու ասէ՝ երբ ոչ եւեք փակեալ ուրեք , երբեմն ՚ի թեւս հողմոց տիրապէս բազմեալ անարգել ընթացիւք , կազմեցեր քեզ գահոյս յառաջ խորհրդոյ · մի ձեռ · յաղագս խորհրդոյ · ՚ի նշանակել զխորհուրդ բարերարութե քո , կամ աւետաւոր պարգևացդ՝ զոր կամէիր ածել ՚ի վայելուչ կատարածն · այն է՝ թեթևընթաց գահոյիւք ընթանայիր գտանել զվայր բնակութե քո՝ զեկեղեցի ։ Ըստ մի ձեռ · ընթեռնու · նկարեալ զվայրս փառ բնակութեանն ։ Յաւէտ անշրջելի · միշտ և ամենայնիւ անշրջելեալ , զատուցեալ ՚ի մէնջ՝ անչափութեբ և անհասանելի բնութե , բայց սիրով և խնամօք և աղդմամբ յոգնիս մեր մերձ ։ Զոր առնա , զերկինս քեզ աթոռ կոչեցեր , և զոյն , զերկիր՝ պատուանդան ։ Բայց դու ինքն ես տեղի լուսափառ · լուսաւոր բովանդակիչ ամենայն աշխարհաց՝ ունելով զհամայնս ընդ քով իշխանութե և նախախնամութեամբ ։

6 · Որ շրջից բնաշխարհ ։ մի ձեռ · ընթեռնու · որ շրջից բնաշխարհ յառաջնորդէ զայս կերպարան հրաշագործեւ համեստ լինել ։ Նախ ղբնախս ։ Դուն ամենախնամ ՚ի գործել , անսխալ ՚ի յօրինել ՚ի սկզբանէ անտի ըստ պատշաճ կարգի պատրաստեցեր զամենայն նոցին համայնից ։ մի ձեռ · նոյնոք ։ Նոյնպէս և զխորհուրդ եկեղեցւոյ նախակարգեցեր իմաստութե , զնիւթական եկեղեցւոյ զօրինակն պատրաստելով յառաջնմէ ։ Անդէն յառաջին ձեռնարկելն և ՚ի կառուցանել զաշխարհ , համեցար տալ զօրէն կի զնմանութեն այսմ սքանչելի իրացս ։ Նախ ղբնախն · յառաջ կազմելով զբնակարանն , և ապա զբազմեալն կամ զբնակեալն ՚ի նմա ։ Որպէս ասէ նախ յէգէջէր , տարածեցեր զերկինս , և ապա զերկնայինսն՝ զհրեշտակս բնակեալս ՚ի նմա , ըստ կարծելոյ ոմանց վարդապետաց · զորմէ տե՛ս ՚ի Նարեկն · բան հն · լուծ · 56 ։ Կամ , երկնայինս մարթէ իմանալ զպարս լուսաւորաց ։ Նոյնպէս նախ զադեն դրախտն հաստատեցեր , և ապա զադամ բնակիչ նորա · նախ զտապանն կազմեցեր , և ապա ժողովեցեր զապրեալսն ՚ի նմա ։ Այսպէս երկինք և դրախտ և տապանն յառաջակառոյցք՝ տիպք եղեն նիւթական եկեղեցւոյ · նշանակեալ թէ նախ կազմի այս , և ապա լինի տեղի Ա՟Յ , հրեշտակաց և մարդկան հաւատացելոց ։ Զայս առաւելութե նիւթական եկեղեցւոյ հաստատէ ընդդէմ շաղակրատ թոնդրակեցւոց · զորմէ տե՛ս գարձեալ ՚ի բանն հն · լուծ · 40 · 41 · 42 · 43 ։ Նոյնպէս այսմ իրի նախատիպ օրինակք էին տաղաւարն աբրահամու , վէմն օծեալ յակոբայ , և սանդուղքն երևեալ նմա , վրանն ահարոնեան , տաճարն սողոմոնի · այսք ամենայն նախ կառուցան կամ ձևացան , և ապա յիւրաքանչիւր խորհուրդ կամ ՚ի պէտս կատարեցան ։

7 · Տաղաւար նախնեաց ։ մի ձեռ · տաղաւար նախնոյն հիւրընկալութե աբրահամեան · և մարթ է պարզել , տաղաւարն նախնի կամ յառաջադոյն

տարապագս բերցեն || ԵՆ. կամ զեսայեայն. Կ. 6. * Ամենքեան 'ի սաբայ եկեսցեն ... և զփրկութիւն տն աւացեն զաւետիս ։ || Ցօփարեուէրմ. յայլասեռ ազգաց քանանացւոց եկեալք 'ի ժողովուրդն հրէից, որպէս և յօծարընեաց, յօժարութբ յարեալքն առ հրէայս 'ի բաբելացւոց անտի 'ի դարձի գերութեան, այս ամենայն եղեն առհաւատչեայ նախընծայ նշանակք հեթանոսացն ժողովելոյ 'ի նոր եկեղեցիս ։

11. Խոշեղ ոգի օփրոմ ֆեռայեն ։ մի ձեռ. խոշեղ օփրոմ յոգիս ֆեռայեն ։ Բան երգոցն. * Խանդաղակաթ եմ սիրով. || (Ը. 5. Ե. 8 ։) Դրուան հիւանդ ։ Եկեղեցին անձնաւոր՝ իբրև կենդանի քաղաք ԱՅ, ունի զդուռն կազմեալ մայր փայտիւք, կամ ըստ երգոց. Է. 9. եղեւնափայտիւք. որք են խորհուրդքն՝ ընդ որս լինի մարդկան մտանել յեկեղեցի ։ փարէտ, պատուականք յեկեղեցւոյ՝ զանազան պարգևք ծծայինք ։ պաղպաղեան. զանազան առաքինիք իշխանուեց՝ պայծառք, զօրաւորք՝ օրենսք և կանոնք ամրացեալք՝ իբրև մարտկոցք ։ Այլաբանութեամբ 'ի կէր առնու զբան երգոց ։ (Է. 9.) Այսպէս եկեղեցի իբրև հարսն խօսեցեալ է Քի՝ ըստ առաքելոյ ։ (Բ. կոր. ԺԱ. 2 ։) և ըստ սաղմ. ԿԷ. 16. լեառն պարարտ լութբ շնորհաց, յորում սրբութի մածեալ է անկորուստ և անաղտ ։

12. Մեծ ղարմանուհի ։ Եկեղեցի իբրև հարսն Քի թագաւորին՝ է դշխոյ պսակաւոր կամ թագուհի, և այն է 'ի մեծ զարմանս հրեշտակաց՝ մարդկան բարձրանալ 'ի տեղնութ ԱՅ, ըստ երգոցն 'ի հիացումն կարգեալ, կամ զարմանալի յօրինեալ ։ (Զ. 3 ։) Բաղմաղաւոհ. կոյս գորով անախտ՝ անշաղախ, բայց և բազմորդի առաւել քան զհրէական եկեղեցին, որ կարի սակաւս 'ի հեթանոսաց առացաւ յածպաշտութիւն. իսկ նոր եկեղեցիս զանբաւս յամենայն ազգաց ։ Որ և 'ի հնումն գծագրեցար օրինակօք և գուշակութբք, իսկ 'ի նորումս հանդէրջէցար, առգեամբք կատարեցար՝ յօրինեցար չփնաղ գոյութբ իբրև ոսկի զարդուք ։ Ցեղանալաւ նուման. ըստ օրինակին՝ որով հագար աղախինն կոչեցաւ 'ի հրեշտակէն, նոյնպէս դու յաղախնային հեթանոսաց կամ 'ի մինայէ հին օրինաց փոխեցար 'ի սաղիմ նոր օրինաց և ածպաշտութեան ։ Այլազգ. ընթեռնու ձեռ. օրին. հանդէրջէցար, ոսկէտփայլ չփնաղ գոյութեամբ յեղանակաւ. նուման հագարու փոխեալ յաղախնոյն 'ի սիոն 'ի սաղեմ ։ Բայց դու ոչ պարզաբար 'ի հրեշտակէ կոչեցար, այլ ինքն միածինն եկն անձամբ՝ առնուլ զքեզ իւր հարսն, փոխանակ լքեալ ազգին յակոբայ, ըստ բանին երեմ. ԺԲ. 7. * Լքի զտուն իմ, թողի զժառանգութիւն իմ || ԵՆ. և կամ ըստ Եսայ. Ա. 8. * Լքեալ թողցի դուստր սիոնի || ԵՆ ։ Արիէրլ քեղ. Քս արկ քեզ հիմունս զդասս առաքելոց ։ ձեռ. արիէր քեղ ։ ասփեղանիր. ձեռ. այսչափ միայն ընթեռնու. ասփղանիր լուսաւորութբ պճնեալ ։ Նշքին առաքեալք՝ որք ըստ նախնութեան եղեն քեզ հիմն, ըստ մեծապայծառ գործոցն՝ եղեն աստեղք զարդարիչք նորոյ երկնից, իբրև պսակ 'ի գլուխ քո՝ ըստ յայտն. ԺԲ. 1. Ցարգանդ մափառ, մաքուր արգանդիւ մկրտութե՝ անարատ ծնունդս երկնեալ, ոչ մարմնական ցաւովք, այլ աւետարանական վաստակօք ծնար ժառանգս մկրտութբն ։ Որ է օրինակ առաջեան. և այսպիսի ծնունդ է յայտնի ցոյցք աներկբայելի յուսոյ՝ թէ հեթանոսք զխաղաղութի գտին ընդ ԱՅ ։ կամ, այս որդեգրութ շնորհաց՝ է օրինակ կամ առհաւատչեայ ժառանգութեն փառաց ։ Իսկ ձեռ. օրին. այսպէս ընթեռնու. որ առաջեան յաւատ անէշալութ խաղաղութ գտեալ ։

13. Կանոնս անֆոխելիս ։ ձեռ. անֆոֆոխելիս ։ Փեսայն երկնաւոր Քս որ է և վարդապետ լուսոյ ճշմարտութե, նոյն և թագաւոր հզօր 'ի տալ զօրէնս, առ 'ի բարեկարգութիւն և 'ի շուք հարսանեացն սահմա-

Նեաց մշտնջենաւոր կանոնս դաւանութեան հաւատոց, վերկական խոր-հրդոց, օրինաց և դատաստանի։ Բաղմաձանեայ. զանազան կարգս, աստիճանս, պաշտամունս, 'ի նոյն փեսուն, բայց կարգեալս, յարմարեալս 'ի մի կազմած բոլոր մարմնոյն։ 'Ի Ներըպարանս Բիւըապեսակս, 'ի ձևս զանազան յօքնապիսիս, բայց ամենայնն յարմարեալ պատկանեալ 'ի մի չինուած խոնոդնիկէ, այսինքն միոյ գմբեթի. զոր օրինակ 'ի չինուած գըմբեթի քարինք տաշեալք զանազան ձևով պատկանին 'ի մի մարմին կամարայարկ, նոյնպէս յեկեղեցւոջ զանազան աստիճանք և պաշտամունք 'ի մի լրութիւն կարգեալ են։ Իսկ ձեռ. գնէ. 'ի նըժն Բիւըապեսակս աս չինուած խոնոդնիկէ. և մարթ է պարզել, 'ի բազմատեսակ սովորութիւնս՝ վարմունս, բայց ուղղեալս 'ի մի շինուած։ Հատոյ փոհմոյ։ Ցեկեղեցւոջ կան անձինք ըստ զանազան հասակաց և սեռից, այր և կանայք, ծերք և տղայք, ճոխք և տնանկք, նոյնպէս որ հայ, որ յոյն, որ ասորի, որ լատին, բայց ամենեքին 'ի մի հնազանդութիւն կոչեցեալք ընդ միով գլխով։ Տօն ն փեղի ն յարի ծածկուբէ։ Ձեռ. համառօտ. հատոյ փոհմիյ զանազանուբէց առ միով եփղն յարի ծածկուբէց. որպէս թէ՝ զանազան հասակք 'ի մի տեղի և յարկ ծածկեալ, բնակեալ։ Ճարոյ փօնոյ. 'ի տապի փորձութեանց և վշտաց՝ հովանի. և վէմ օգնական, հալածելոց 'ի մարդկանէ, պարտաւորելոց յատենի, վտանգելոց յաւիթս մեղաց։ Կոգիտջէր. տաւող մարմնաւորացս զհոգին որք 'ի դրոշմի և 'ի քահանայութեան։ Ջեռծ ընդ մարդկան ընփանեցուցիչ, հաշտեցուցիչ խոստովանութեանց և ապաշխարութեանց։ Համանանոյ ազանց, անուանակից բազմութեանց մարդկան 'ի մի կուտելոց. զի այս կոչի ժողով և եկեղեցի. և նոյնպէս տաճարն և բանաւորն՝ եկեղեցի անուանի։ Բայց զայս բառ մարթ է իմանալ և ս՝ համայնունակ, այսինքն համահաւաքիչ ազգաց ժողովելոց 'ի պաշտօն ածային, 'ի կարդացմունս, 'ի լսել բանին այ, յորոց ոչ զոք 'ի հաւատացելոց արտաքս թողու, այլ ընդունի նաև զապաշխարօղս և զերախայս։ Պարտաւորելոց մեղօք՝ յուսացուցիչ է քաւութեան։ Նախացուցակ համարջակելոց. որք ազատք են 'ի խղճէ, և համարձակք առ ած, այնպիսեաց նախ ցուցանէ զխորհուրդն եկեղեցւոյ, զնոսա յառաջ կարգէ 'ի ժամ ածային պատարագին։ Բայց ձեռ. ընթեռնու՝ նախացուցակ ամէառջելոյ, և լուծմունքն գրէ համէառջելոյ, և մեկնէ՝ համարձակելոց, ակնարկելով թէ յօրինակն կայր երկաքանչիւր ևս ընթերցուած։ Կոփառեկոյ անջանոյ; արանց կատարելոց վարուք և իմաստութբ՝ հաւաքիչ 'ի բուն ատեան եկեղեցւոյ։ Մարթ է կոփառեալս իմանալ և զվախճանեալսն՝ զորս եկեղեցի ժողովէ ընդ հովանեաւ իւրով, և որոց օժանդակէ աղօթիւք և պատարագօք։ Իսկ ձեռ. գնէ. կոփառեկոյ անջանոյ խրէբարար։

14. Եօնսապեղեան սեամբ։ Ով տուն իմաստութեան հօր՝ հաստատեալ եօթն լուսաւոր սեամբք, այսինքն եօթն խորհրդովք, եօթն պարգևօք հոգւոյն սրբոյ։ Ցորում օրհնեալն քն պատարագի 'ի սղանդ կեճաց, կամաւոր զենմամբ՝ առ 'ի ճաշակել իբրև հաց երկնաւոր 'ի վերայ բեմի սրբոյ սեղանոյն, 'ի բառնալ զմեղս կենդանեաց և ննջեցելոց։ Իսկ ձեռ. ընթեռնու, ճաշակման հացի գահաւորական սեղանոյն ... որ ճառանց զմեղս ննջեցելոցն։ Իսկ զյաջորդն, նոյն խուհն ամենայն և յամենայնի, իմացեալ վքնէ ըստ ածութեան, տես 'ի Նարեկն. ղզ. 6։ Բայց աստ խորհրդաբար ևս իմանի. այսինքն բոլոր քն կայ 'ի պատարագի, և նոյն յամենայն սեղանս և 'ի պատարագս, տես 'ի Նարեկն. խէ. լծ. 9։ Ով դշրուեալն. զզրուեալն 'ի ճանապարհս մեղաց, կամ 'ի հոգս աշխարհի փնօրինէ, իբրև 'ի տուն ժողովէ, հաւաքէ անբռնադատ եկաւորութբ, ըստ հրաւիրելոյ տանուտեառն յընթրիսն պատրաստեալ՝ տանից զք

քննիցի. յորժամ նա Տիրամայրն իբրև դատաստանաւ մատուցեալ յաղաչել. այլ ասուրբք իւր հետևօղք ձայնակիցք ասիցեն զԱմէնն։ Զշնորհատուին անմահից։ Զոր Յովհաննէս մկրտիչ ասել շնորհալից կենաց՝ կամ զի անդէն յարգանդի մօր սկիզբն կալաւ ծնչային կենաց, և կամ զի քարոզութիւն և մկրտութիւն պատրաստեաց զճանապարհն 'ի կեանսն անմահս։ Եւ ասի դարձեալ, նորաղեփ նոյման ուրէոյ, այսինքն յառաջընթաց առ 'ի կոչել զաւուրսն կամ զընտրեալսն. կամ զի սկզբն կոչելոց 'ի Քնէ՝ առաջին եղև յովհաննէս՝ յարգանդի մօրն կարդեալ յառաքելութիւն։ Զդասն նորփիրոաց, զմեծն Ստեփաննոս, հանդերձ այլովք ևս անուանելովք Սրբովք, որք են ժառանգք ԱՅ ծնեալք նա աւազանաւն յորդեգրութե, անանջրաղեփ հոգեպոհմութէ, անփոփոխելի կամ անմեկնելի ազգականութեամբ հոգւոյ. զի կնիք մկրտութեն անջնջելի՝ յազգ ԱՅ դրէ զմարդն, թէև զշնորհ որդեգրութեն կորուսանիցէ. զոր օրինակ և առ մարդիկ ծնունդ թագաւորի միշտ թագաւորազն է, թէպէտև յանցանօքն 'ի թագաւորութէ անկանիցի։ Այլազգ ընթեռնու ձեռ. ծառանիֆ ոյ ծնիցէայ յորդեգրութէ փոյեն ասուրէ առաղանաւ. աւր զի դեմք բանին են տապաւորն առ նա Ածածինն, և ոչ առ եկեղեցի, զհամբոյ յարմարիցի փոյեն ասել զաւազանն մկրտութե, բայց եթէ՝ զի աւազանն նմանութէ է կուսական արգանդին։

19. Կրկին հայցեսցես։ Յաղագ խնդրուածս քո՝ 'ի վերայ շնորհաց հաշտութեն՝ հայցեսցես դարձեալ ով Ածամայր՝ նորոգել զհոգին, զայժմու փոքր շնորհ կամ զվիճակ որդեգրելոցն 'ի մեծ լոյսութէ, յընդարձակութէն փառաց երանութե, անպարտան բազարձակութէ, այնպիսի ընդարձակութեք որ մնաց անբովանդակելի է։ Զմայրն մատոյր. այս բացատրութե է անցելոյն. նորոգել զորդեգրելոցս եկեղեցի՝ զզինուորեալս իւրովք մաքուր զաւակօք, ուխտիւ պահելով, ժողովոլ պսակելոցն յերկինս, յառաջ դալստեան մեծի ԱՅ։ Այլազգ ընթեռնու ձեռ. այսինքն յորժամ կրկին հայցեսցես նորոգել զհոգին 'ի մեծ բարութէ. անպարտան բազարձակութէ զմայրն մատոյր զաւակօք հանդերձ ուխտիւ պահելով յայնմ երկնային առագաստին յառաջն մեծի յերևելոյ մեծին։ Նորոգութե ասէ զվիճակալ երկրաւորս եկեղեցւոյ որդեգրելոցն՝ ընդ երկնաւորն եկեղեցւոյ թագաւորելոցն 'ի փառս. քանզի ամենայնիւ տարօրինակ է այս և այն. այլ վիճակ է շնորհաց, և այլ փառաց։ Որդիութի է և այս, և այն, բայց այս սկսեալ, և այն՝ լցեալ, այս՝ կորնչելի կամ արատելի, այն՝ յաւէրժ և անքծաւոր. վասն որոյ այս կից ընդ երկիւղի, և վշտաց և ճգանց. իսկ այն՝ ազատ յամենայնէ. յոր վայելեսցեն այնոքիկ եւեթ՝ որք ահիւ և դողութեամբ աստանօր զանձանց փրկութիւն գործիցեն։

## Նորին Գոանչ ’ի մէջ Խաչի ածընկալ:

ԳՈԱՆՉ[1] անքննին, ծածկեալ մեծութիւն, զօրեղ ահաւոր, միշտ բարի: Երեքսրբեան անսահմանելի, օրհնանուն կենդանի: Անճառ իսկութիւն փակեալ ’ի զգալեաց: Համագոյ անթարգմանելի: Անհասանելի հեռաւոր, և անընդմիջելի մերձաւոր, անմահ թագաւոր: Ահա խնկեսցին մաղթանք մեր առաջի քո ամենակալ. աղաչեմք:

Որպէս համայնից էից[2] ’ի կուսից քառից ’ի մի եղելութիւն զերկիր հաստատեցեր: [3]Խորհուրդ կրկին ձեռնարկ վերստին. ընդդիմակ միջոց միջնորդաց երկուց՝ եղծման և նորոգութեան, տեսութեան կենացդ փայտի: Ահա խնկեսցին:

’Ի բարձունս անբաւս[4] անհետազօտելի գովեստիւ տօնեալ՝ ահեղ անմատոյց: Յանհանգչելի նուագ ներբողից ազգաց հրանիւթից՝ պանծալի երգով պսակեալ ա̄ծ բոլորից: ’Ի սահմանս երկրակշռութեանց երկնից՝ ’ի թևս չորից արփիակերպից՝ բազմօք կարգեցեր քեզ պատիւս անպատում: ’Ի դրախտն ադինայ՝ ’ի տնկոյն պարտեաց ազդեալ ձայնեցեր ’ի ծառն օրհնութեան: Ահա խնկեսցին:

Գուշակ գարնայնոյ ’ի թուիչս ամբարձման՝ յօրինակ երկնի կամաց գթածիդ,[5] ’ի լաստն ամրացոյ նոյեան տապանին: Պատկեր փրկութեան, կերպարան հրաշից, ապաստան յուսոյ, գեր ’ի վերնայինսն զնոր ժողովուրդս ուխտիւ միջնորդեալ ’ի թևս խաչիդ՝ առ քեզ մատուցես: Ահա խնկեսցին:

Ո՛վ[6] գիր մատենի մատինդ այ՝ կենսունակ տախտակ անխորտակելի. և աւանդ նորոյ օրինի սրբամասնութեց անեղծանելի: Լուսմն ցուցմանց կանխապատմութեց աւետեաց ըղձից: [7]’Ի բիւրուց հիւթից մեզ ’ի յօգնութիւն սոյն իսկ ծանուցար: Տիպ պաշտելի, գրաւ աշխարհի, շաւիղ անհետազօտելի՝ արեամբ արարչին նկարեալ ’ի փառս լուսոյ: Ահա խնկեսցին դարձեալ խնդրուածք մեր՝ առաջի քո ամենակալ. աղաչեմք:

Ընդունեցան պետ, և ձիր[8] իմաստից տէր յս̄ քս̄.

միայն ուսուցիչ զանիմանալիսն՝ որ ոչ գծագրի յայսմ յաւիտենի ։ Պատկեր հօր անհաս 'ի վեր քան զբան ։ Ուղղեալ յայս նշան՝ հաստատեա սովին պընդութիւն զսիւնս աշխարհի ։ 9 Պահեալ ամրութիւն ըստ քումդ իրաւանց՝ զհովուապետս խաշանց քոց բանաւոր հօտի ։ Զեպիսկոպոսունս՝ երիցամբք և սարկաւագօք ։ Զվարդապետս՝ դպրօք և բնաւին իսկ պաշտօնէիւք եկեղեցականօք ։ Զթագաւորն մեր իւրովք ծննդովք, հանդերձ պետական նահանգօք հնազանդեցելովք ։ Արասցես լինել երկիւղածութիւն սրտի՝ խաչիդ պարծանաց 'ի քեզ զօրացեալ ։ Ահա խնկեսցին ։

'Ի քեզ համբառնամք զձեռս, զմիտս և զզգայութիս հոգւոց իմաստից ։ Արձանացուսցես զմեզ անշարժ պնդութիւն ընդ հովանեաւ թևոց Տէր խաչիդ ։ Զարքայութիւն յաղթող ։ Զդատողութիւն անպատիժ ։ Զիշխանականսն հանդարտս, Զզինուորութիւն խրատեալս ։ Ձիավարժիցն տուր սանձս ։ Սոսկականացն անբծութիւն. հետևակացն խրախոյս, քաղաքայնոցն պատուէր. նաւորդացն լրութիւն, ուխտաւորացն սփոփանս, ննջեցելոցն հանգիստ, և համօրէն ժողովըրդեան քում սովիմբ ամրութիւն, պաշտպանութիւն, քաւութիւն, առողջութիւն և ողորմութիւն օրհնեալ յաւիտեան ։ Ահա յիշեսցես և ողորմեսցիս ննջեցելոցն յուսով յարութեան. հայցեմք ։

Եւ ես առաւել զյորդորումն սիրոյ ։

Բոտել զմարմինս մեր 'ի մի շաւիղ ընտրութեան հոգւոյ սիրոյն որ առ տէր. խնդրեմք ։

Պահպանութիւն խնամոց՝ խնդրողին զխաղաղութիւն
10 միշտ յերկրպագուացս ։ Պաշտպանութեամբ ծնողի փրկչին և մարմնարանի անպարագրելի սրբոյն մարիամու աստուածածնի և միշտ կուսի ։ Աղերսիւ և աղաչանօք մկրտչին Ջուրբք զհոգին հրաւիրողի՝ կարապետին մեծին Յովհաննու ։ Պաղատանօք թագաւորելոցն օծութեամբ հոգւոյն առաքելոցն սրբազգեստից ։ Նահատակութեամբ նախկին վկային սրբոյն Ստեփաննոսի՝ որ է որդի անդրանիկ փրկագործ կրից երկրորդն ադամայ ։ Արգահատութեամբ և աղօթիւք արի երջանկաց մարտիրոսացն կատարելոց ։ Խոստովանողական դաւանութեամբ

ամէն Գրիգորի Հայաստանեայցս լուսաւորչի և յանմերձենալին նուիրողի։ Մշտապաշտօն բազկատարածութեամբ մաքուր միանձանց։ Այլ ամենայն ընտրելոց պատկերացն ընդ քեզ խաչակիր վարուք յաւուրն մեծի։ Այլ այժմ ողորմեաց մեզ տէր ած մեր՝ ըստ մեծի ողորմութեան ։

---

## Ծանօթութիւնք ՚ի Գանձ Խաչին ։

1. Գանձ անփնին ։ ձեռ. պարունակութիւն ։ Ցայս գանձ գեղջք բանիցն են առ Ած կամ առ Քս, բայց միայն հինգերորդ տունն առ Սբ Խաչն ուղղեալ է ։ Երեքտորբեան անուանեալ ։ Երիցս Սբ կոչմամբ օրհնեալ, բայց այսու ոչ սահմանի սրբութիւնքն. և ոչ՝ եթէ բիւրիցս եւս կրկնեսցի ։ Օրհնաբանեան կենդանի, որ օրհնիս և ձայնաչիս անուամբն՝ կենդանի, հակառակ սուտ աստուածոցն՝ որք անկենդանիք են ։ (Գործ. ԺԴ. 4. 24.) համագոյ անփոփոխելի. աստ համագոյ ոչ այնչափ բնութենակից իմանի՝ քան թէ ՚ի միասին գոյօղ, ամենեցուն և ամենայնի գոյակից, բայց որպէսն՝ անթարգմանելի, անձառելի. զոր և յաջորդն յայտ առնէ, անհասանելի հետաւոր ։ ձեռ. անուանեալ. հեռի՝ բացակայ եւ յամենայնէ՝ ըստ էութեան, ըստ կարողութեան և ըստ ամենայն կատարելութեանց, առանց կարելոյ ումեք հասանել մտօք կամ առացմամբ. բայց միանգամայն անընդմիջելի մերձաւոր. այնչափ մերձաւոր ըստ ներկայութեան և ազդեցութեան և տեսութեան, զի ոչ մի ինչ կարէ ընդ մէջ մտանել կամ զատանել, կամ թագուցանել. առաւել ՚ի ներքս մտա եւս յիւրաքանչիւր իրս՝ քան նոքա յինքեանս. կարէ լոյս զատանիլ յարևէ, և ջերմութիւն ՚ի հրոյ, այլ ՚ի քէն ոչ մի ինչ ։ Եւ ո՞ զայս ՚ի միտ առնուլ կարիցէ կամ թարգմանել ։ Երկաքանչիւր առացուածքդ կան և ՚ի Նարեկն. ԻԴ. 1 ։

2. ՚Ի չորից տարերց ։ ՚Ի քառեակ կողմանց աշխարհի՝ բաղադրութեամբ չորից տարերաց՝ ՚ի մի եղելոյն, ՚ի մի կազմած հաստատեցեր զերկիր ։ Ըստ բացատրութեան առեալն բողէից՝ յայտ առնէ զտարերս՝ որք են բաղկացուցիչք բովանդակ նիւթական գոյից. և մարթ է առնուլ երբ բացառական հոլով ՚ի բողէից, թողեալ զնախդիրն վասն սկսանելոյ ըղտունն Բ գրով ։ Կամ, բողէ իմանալ զչորս կողմն աշխարհի՝ զարևելս, զարեւմուտս, զհիւսիս և զհարաւ. և ՚ի չորից տարերց՝ զքառեակ զիրս նիւթականաց, որ է վեր, վայր, աջ, ահեակ. մի զի այսուքիւք կապակցին առ միմեանս մասունք աշխարհի՝ ըստ մերձակայութեան և ըստ հեռակայութեան, և բացակատարեն զմի ամբողջ կազմած՝ զոր Աշխարհ կոչեմք ։

3. Խորհուրդ նշին ։ ՚Ի չորից տարերաց և Ը քառեակ զիրս յօրինեալ զաշխարհս, ցուցեր այսու զերկրին խորհուրդ, և յետնորդ վերոյն, զայլ միւս կատարումն նոցա ։ Մի խորհուրդ այն է՝ թէ միաբան բաղկացութեամբ քառից ներհակ տարերաց՝ յօրինի եղանէ այս գեղեցիկ կազմած աշխարհի ։ Եւ միւս խորհուրդ, թէ ՚ի հակառակելովն ՚ի չմիաբանել տարերաց՝ քակտումն և այլայլութիւն ի վերայ հասանէ՝ կամ միոյ միոյ նոցա, և կամ բովանդակին եւս ։ Եւ սոյն այս է յետնորդ վերոյն. զի փոփոխումն նոցա զայլ նմն կերպարան ՚ի ներքս ածէ ։ Այսոցիկ բացատրութիւն է զկնի եկեալն, ընդդիմոկ միջոց ։ լուծ. ընդդիմակաց ։ Այն

բաղադրութիւն 'ի տարերաց ներհակաց՝ է զի ՚ամփոփ միջոց կամ պատ-ճառ միջնորդաց երկուց, երկուց հակառակ կամ որոշեալ իրաց, որ են Եղծումն, և Նորոգումն. վասն զի տարերք համեմատ չափով զուգախառ-նեալք՝ նորոգեն և յօրինեն զիրս. իսկ անչափութիւն ինչ 'ի ներքս ան-կեալ՝ եղծումն ածէ: Այսպէս 'ի հակառակութենէ տարերացդ՝ յեղ-ծանիլ միոյն այլ ինչ նորոգեալ ծնանի: Արդ՝ քառեակ տարերացն զե-մամարտ ներգործութիւն՝ ցոյցք կամ օրինակ է փէսութէ չենոցդ փոյփ. որ քառաթև է ըստ թուոյ տարերաց, և քառանկիւն ըստ զդից աշխար-հի. և լինի միջոց մահու և կենաց. մահու եղև միջոց՝ յադամ, և կե-նաց՝ 'ի ՔՍ. կամ, ինքնին կենաց գոլով սաքթ, առ անհաւանան լինի յեղծումն. ըստ այնմ: * Զի ծառ խաչին՝ կորուսելոցն յիմարութիւն է. այլ փրկելոցս մեզ՝ զօրութիւն այ: || ( ա. կոր. ա. 18: )

4. Անհեթաղիփեւն Գովքուոիւ: Ցանցաւ բարձրութիւն երկնից միշտ անքննելի գոլեալ օրհնաբանեսցեն, և անհանգիստ երգովք հրամա-թեցն պատկեալ ԱՅ Քոլոբէց. ձեռ. յաւելու, պատկեալ դէմք: 'Ի սահ-մանս Երկրակչութենց. այս հաստատած զնոյն իմաստ անցելոց բանիցն երկրորդէ, առեալ զխորհուրդ տեսլեանն եսայեայ և եզեկիէլի: Սահ-մանն երկրակչութեան՝ իմանի երկինն օդոյ, որ պատեալ զերկրաւ՝ կչռ-ուանի զնա և անխախտ: Արդ՝ աստ, յօդն վերացեալ 'ի մէջ առաձա-լին, 'Ի Բնոյ ըրէց, 'ի չորեքթևեան 'ի լուսաւոր կենդանիսն և յանիւսն չորեքկերպեանս կարգեցեր քեզ պատիւ անպատում. զի ձեռք և կեր-պարանք անուոցն, շարժումն նոցա անհանգիստ, հնչիւն նոցա, այլև արտաքնոյն տեսաննելոց յայտ առնէին զանպատում փառսն ԱՅ: (Եսայ. զ. 2. 3: Եզեկ. ա և Ժ:) 'Ի Տրօփոփն ադինայ: Թէպէտ և անմարմինք և անյեղքան փառաւորեալ դու յերկինս յանլռելի օրհնաբանից. սակայն խոնարհեցար իջեր 'ի գրախտն ադինայ, 'Ի փնջոյն պարտէզ. այսպէս ընթեռնու և մեկնէ լուծմունքն, որ յարմար եւս է՝ քան թէ ըստ այլ. ասել, պարփէալ: 'Ի ծառոյն գիտութեան որ եղև առանց պատ-ուիրաց, յանցանաց, անիծից, ազդեալ ադամայ՝ ձայնեցեր կոչեցեր զնա 'ի ծառն օրհնութեան, առ փայտ խաչին: Եթէ կամիցի ոք ընթեռնուլ պարփէալ, իմանալի է տրական հոլով, այսինքն պատուեցելումն ադամայ ազդեցեր զխմել 'ի ծառն օրհնութեան: Այսել կամի բանիւս, որպէս ան-բաւ են քո փառք և պատիւք՝ անլռելի հաշակեալք յերկինս, նոյնպէս անբաւ են գութք խնամոցդ առ մարդն՝ ցուցեալ յերկրի, որով զդրախ-տին ադինայ՝ զանեղին պարտեաց՝ տարար քեզ զնալի փոխանակ երկնից. ոչ 'ի հրեշտակաց ուղղ առաքեցեր 'ի խնդիր յանցուցելոյն, այլ դու ինքնին եկեր յայց, զխորհուրդ փրկագործութեանդ յայտնելով. մինչ զի հրեշտակացն բերանք որք յերկինս մեծացուցանէին զքեզ, սկսան այ-նուհետև օրհնել յերկրի և 'ի խաչին:

5. 'Ի լոափն ամբրաշտոյ Նոյեան փաղանին: Այսպէս ամբարշտոյ ընթեռնու. ոչ միայն այլ տպագիր, այլև ձեռագիր օրինակն, նոյնպէս և լուծ-մունքն զնէ՝ 'ի յամբրաշտոյ լոափն, և բացատրէ՝ յամուր լաստն, աղդ առ-նելով եւս՝ ոչ լինել բայ, զի ոչ խնդրէ աստ՝ ամրացուցանել 'ի լաստն նոյեան. իսկ այլք յետոյ եդեալ են ամրացոյ, հայելով 'ի նման բան ներքոյի մծբնացւոյն. համար ժն: Արդ իբրև ածանցական առեալ զբառդ, այսինքն ամրացու, անդամակալ, կմ տեղի ամրանալոյ, իմաստք բանիցն են: Դու ինքն Տէր, ըստ նմանութեան աղաւնոյն՝ որ չիւղ ձի-թենւոյ 'ի բերանին, 'ի թռիչս զուարթացեալս եկն հանգեաւ 'ի յամրա-կան լաստն նոյեան, իբր գուշակ գալստեանդ զաղաղաբերութեան. յօրինակ Երինէ, (ձեռ. Երինոյ.) իբր նշանակ թէ երկինք հաշտեալ են ըստ կա-մաց քթածին. ոչ եւս հեղեղօք և սահմանօք պատուհանաւ զերկիր, այսպէս

# ՑՈՒՑԱԿ

## Պարունակելեաց 'ի Մատենիս ։

| ԵՐԵՍ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԱԼ |
|---|---|---|---|
| 11 | 4 | աշխարհապարունակ | 11 աշխարհապարունակ |
| | 19 | Եւ 11 եա 'ի քիլս | Եւ 12 եա 'ի քիլս |
| 53 | 34 | յարմարէ զմերս | 55 յարմարէ զմերս |
| 54 | 4 | Որում անսահման | 56 Որում անսահման |
| 68 | 24 | անպատկառելի | անպատկառելի |
| 72 | 9 | այգ արփիակիզըն | այգ արփիակիզըն |
| 85 | 25 | միջնորդաւ էութեան | միջնորդաւ էութեան բանի |
| 173 | 43 | Ղուկ. | Ղուկ. |
| 229 | 28 | կամ յոյո | կամ յոյս |
| | 36 | հանդէս հաւատոց | հանդէս հաւատոց |
| 244 | 29 | Յեղանակաւ կոչմանն | Յեղանակաւ կոչմանն |
| 206 | 28 | առ եշախանն. | առ երախանն. |
| 250 | 27 | Երկաքանչիւր սատա-ցուածքդ | Երկաքանչիւր ստացուածքդ |

*Tip. ed Edit. li RR. PP. Armeni di S. Lazzaro*
*in Venezia.*

